# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

---

ՀԱՆ Ի ՀԱՅ

Հ. ԱՐՍԷՆ ԿՈՄԻՏԱՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԻ

Ի ՄԽԻԹԱՐԵԱՆՑ



Ի ՎԵՆԵՏԻԿ

Ի ՎԱՆՍ ՍՐԲՈՅՆ ՂԱԶԱՐՈՒ

1864

# ՊԱՏՃԱՌՔ ԻԼԻԱԿԱՆԻՆ

Կայր 'ի միջոյն հելլենացւոց, թէ Աղէքսանդրոս Պարիս, որդի Պրիամոսի արքային Տրովադայ, առևանգեալ զՀեղինէ կինն Մենելաւոսի արքային Լակեդեմոնի և Սպարտայ, պատճառս կամ բարուրս տուեալ՝ յարոյց 'ի վրէժխնդրութիւն զնիզակակից հելլէնսն, որ առ քինու առաջնոց ինչ զրկանաց և նորոյն՝ տասնամեայ պաշարմամբ և պատերազմաւ աւերեցին զՏրոյա, այն ինքն իսկ է Իլիոն կամ Իլիոս, յորմէ անուն զանուն իւր այս մեծ հոմերական, զոր և ոչ իւիք օրինօք մարթ է Եղեան ասել, բայց եթէ հնով իմն մրիպակաւ։

Աւանդութեամբ կարգեալ դայր մինչև ցհոմերոս, իբրև ընդ ամս երկերիւր՝ կամ թէ քան՝ երկերիւր, և անցք իմն անցեալ 'ի 'ի տասներորդ ամի անդ ընդ բանակն հելլենականն, այսպիսի ինչ։

Ագամեմնոն արքայ Միկենեաց և արգոսացւոց, եղբայր Մենելաւեայ, զօրավարութ ընտրեալ և իշխանապետ բանակին, թշնամանէ զրկանօք իւիք զԱքիլլևս՝ զպատերազմողն քաջ 'ի զօրավարաց, զպատճառն դիւցազն անպարտելի, որոյ արտմեալ ընդ անիրաւութիւնն և ընդ անարգանս պատուոյն՝ երդնու մի ևս մտանել 'ի մարտն, և մեկնի 'ի խորանս իւր։ Այսմ զգասա լեալ տրովացւոց, խրախուսեալ հարկանեն զհելլէնս՝ մինչ մերձ յայրել լինել զնաւս նոցա։ Յայնժամ Աքիլլեայ յելից իրացն ինքնին զանգիտեալ, և զիջեալ ևս յաղաչանս Պատրոկլի սիրոյ սրբելւոյ իւրոյ քաջի՝ առաքէ զնա իւրով զինուն 'ի կռիւն. սակայն մեռանի անդ Պատրոկլոս 'ի քաջէն Հեկտորէ։ Աքիլլևս՝ անողոքելին առ անձնային փարելի մաղթանս իշխանացն, զարթնու 'ի վրէժ քինու արեան սիրելւոյն, անկանի 'ի տրովացիսն, հարկանէ կոտորէ վանէ, մինչև սպանանէ զՀեկտոր՝ զպաշտպանն քաղաքին, որով և մեծարեալ իմն համարի անդ տրոյական պատերազմն։ Բայց ապա խանդաղհեալ յանկերս ծերունին հօր նորա Պրիամոսի՝ հնարհէ նմա ընդ փրկանաց զմարմին որդւոյն։ — Գլխաւոր մասունք մի-

պէս այսպէս աւանդեալ կայքին յաղգին, հանդերձ նկարագրօք բա-
րուց անուանի դիւցազանցն:

Հոմերի Թողեալ զայլ եւս մէկայն՝ զառաջինս եւ զվերջինս, զայս անցս եւեթ՝ հերկեւ յիսուն եւ երկուց կամ երից աւուրց՝ ամենու-նուն խորոց դիւցազնական տաղիցն ըստ օրէնս քաջի Ճարտարի, որ ոչ պատմիչ է, այլ քերթող եւ վիպասան՝ ստեղծիչ եւ յօրինիչ պէսպէս բնական եւ գերապանծ գեղեցկութեանց, որոց եւ զանձ խակ է այս քերթուած սքանչելի, ծնունդ՝ պարզ մտաց եւ եռանդուն հանճարոյ. ընդ նոսին եւ պատմական եւ իմաստասիրական աւանդից շտեմարան, Ճշգրիտ նկարուք բարուց՝ հանգամանաց գիտութեանց՝ կրօնից եւ օրինաց դիւցազնական դարուցն նախնեաց: Հանդերձ այդոքիւք՝ լի է սա միանգամայն եւ բարոյական խրատուց եւ հրահանգաց իմաստուք եւ օրինակօք՝ որոց մտադիւրութեամբն ընթեռնուցուն, վկայեալ յԱրիստոտէլէ եւ յՊղատոնէ մինչեւ 'ի սուրբն անդամ Բասիլիոս, ուրեք պարզ եւ ուղիղ զխրատ բարւոյն ստեղծանելով, եւ ուրեք՝ միտս 'ի հակառակէն ընծայեցուցեալ:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

---

## ԵՐԳ ԱՌԱՋԻՆ

## ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հրաւիրեալ զՄուսայն նուագել զոխն Աքիլլեայ եւ զորս անտի հարուածս բանակին, հարցանէ ապա թէ զինչ եղեւ սկիզբն աղետիցն, եւ պատմել տանու իբրեւ 'ի գլխոյ նորա:

Քրիսէս քուրմ Ապոլլոնի եկեալ 'ի ճամբարն Յունաց փրկանաւորել զգերեալ դուստրն Քրիսէիս՝ մերժի յԱգամեմնոնէ առ որում կայր 'ի պարգեւ. 'ի վրէժ նորին մահ արձակէ Ապոլլոն նետիւքն 'ի բանակ անդր: Աքիլլեւս ժողով խմբէ՝ իմանալ եւ տեսանել զհնարս փրկութեան. Կալքաս գուշակ՝ պատգամ տայ դարձուցանել զդուստր քրմին. զայրացեալ կագին Ագամեմնոն եւ Աքիլլեւս. յանձն առնու Ագամեմնոն տալ զՔրիսէիս, բայց սպառնայ առնուլ փոխարէն զմրցանակն Աքիլլեայ զաղջիկն Բրիսէիս. Աքիլլեւս ծանրացասումն՝ թշնամանեալ զնա եւ երդուեալ ձեռնթափ 'ի պատերազմէն լինել վասն անիրաւ զրկանաց պատուոյն, մեկնի գնայ, տայ զաղջիկն: Ի ձայն ողբոց նորա հասանէ մայրն Թետիս, խոստանայ նմա վրէժխնդրութիւն եւ հատուցումն արհամարհանացն: — Քրիսէիս յուղարկի առ հայրն, եւ մահն դադարէ 'ի զօրուէն: — Թետիս ելեալ յերկինս՝ աղաչէ զԱրամազդ առնուլ զվրէժ որդւոյն, եւ հատուցանել զպատիւ նորա՝ տալով զօրութիւն տրովացւոց 'ի վերայ Յունաց. եւ նա հաճեալ ակնարկէ: Հերա աստուածուհի ամուսին նորա կասկածեալ զերան, քանզի սիրելի տրովացւոց էր, խռովի եւ գժտի ընդ Արամազդայ. այլ Հեփեստոս որդին 'ի մէջ անցեալ՝ խաղաղէ զնա, եւ մատուցեալ ամենեցուն զուարթութեան բաժակ երեկորին, երթան 'ի քուն:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԱՌԱՋԻՆ

### ՄՐԱՑՈՒԹԻՒՆ . ՈՒԽՏ

ԶԱքիլլեայ Պելէածնի, աստուածուհիդ, ըզքէնն երգեա
Զկորուսիչ եւ բիւր ցաւոց աքայեցւոցն աշխատաբեր,
Որ զդիւցազանց 'ի դըժոխս արի անձինս ընկէց բազմաւ,
Եւ զէշ արկ ըզնոսին շանց եւ հաւուց առ հասարակ,
Եւ կամացն Արամազդայ գայր ելանէր խորհուրդ 'ի գլուխ,
Յորմէհետէ միանգամ 'ի վէճ եկեալ երկփեղկեցան
Ատրիդէս արանց արքայ եւ Աքիլլէս աստուածազարմ:
Իսկ արդ ո՞ զդոսին 'ի դէց արկ ընդ միմեանս հեռեւ 'ի մարտ: —
Լետոեայ Ձեւսն որդըզգեան. որ բարկացեալ ընդ Թագաւորն
Ախտ եռացոյց ժանտ 'ի զօրն, եւ ժողովուրդք սատակէին,
Զի Ատրիդէս անարգեալ արհամարհեաց ըզՔրիսէս քուրմ.
Որ եկըն սա եհաս յերագաթեւ նաւս աքայեանց
Ի դըստերըն գերեդարձ անբաւ բերեալ զին փըրկանաց.
Ոսկի գաւազանաւն ըզգըլխապաւեղն Ապոլոնի
Զաղաւրօշն 'ի ձեռս առեալ՝ աքայեցւոց մատեաւ յաղերս,
Առ երկոսին մանաւանդ Ատրեանս՝ իշխանըն զօրավարս.
Ատրիդայք, եւ համագունդ այլ ամրաքարձդ աքայեցիք,
Տացեն ձեզ աստուածք ոլիմպական յարկաց բընակք
Քանդել զքաղաք Պրիամու եւ դարձ 'ի տուն առնել բարեաւ:
Արձակեցէք ըզսիրելի դուստր իմ, զփըրկանս ընկալարուք,
Ակն ածեալք յորդւոյն Դիոյ 'ի դիպաձիգն Ապոլոնէ:
Անդ այլք ամենեքին հաւան գըտան աքայեցիք
Պատկառել 'ի քըրմէն եւ ընդունել զպայծառ փըրկանսն,
Իսկ Ատրեանն Ագամեմնոնի ոչ թըւեցաւ մըտացն հաճոյ,

Այլ չարաւ գործուցեալ՝ յաւել եւ սաստ ըսպառնալեաց .
Մի՛ ես, ծեր, առ գոգաւոր նաւացս ընթեր գըտեից ըզքեզ
Դեգերեալ աստանօր կամ միւսանգամ եկեալ այսրէն,
Գուցէ ցուպ աստուածոյդ եւ վարսակալ քեզ չօգնեսցէ :
Չարձեմ' նըմա ես գերեդարձ մինչեւ հասցէ 'ի ծերութիւն
Անդ 'ի տան մերում յԱրգոս 'ի գաւառէն իւրմէ հեռի
Ցոստայնին գործ պարապեալ եւ անկողնոյըս լեալ հաղորդ .
Ե՛րթ աղէ, մի՛ զիս գըրգռեր՝ զի ողջանդամ դարձցիս անդրէն :
Զայս ասաց, եւ ծերունւոյն զահի հարեալ անսաց բանին,
Եւ եկեալ գընայր լըռիկ ըզբազմագոչ ծովուն եզերբ .
Անցեալ ապա մեկուսի՝ հեղոյր մաղթանս յոյժ ալեւորն
Առ արքայն Ապոլոն՝ որդի Լետով վարսագեղին .
Լուր ինձ, արծաթաղեղն, որ ըզՔրիւսէ շուրջ պահպանես
Եւ զդիւցականըն Կիլլա, եւ Տենեդեայ իշխես հզօր,
Զմինթեանդ, թէ քեզ երբեք պըսակեցի շըքեղ տաճար
Կամ թէ բնաւ ցըլուց ուայծից ճենճերեցի քեզ յոյր ազդերս,
Օ՛ն արդ դու եւ ինձ ըղձոյն կատարեա զուխտ պաղատանաց .
Տուժեսցին դանայեցիք զիմ արտասուս քով սըլաքօք :
Զայս կացեալ նորա յաղօթս, եւ Ապոլոն լըւաւ Գուշակն .
Ի գագաթանց Ողիմպեայ յարեաւ եւ էջ նա սըրտմըտեալ,
Զլայնալիճն արկեալ զուսովքն եւ ըզկապարճըն զամրափակ :
Հաչեցին նետք 'ի շարժել անձինն 'ի յուսս զայրացելոյն,
Եւ դիմեալ խաղայր գընայր իբր գիշերոյ հանգունաւոր :
Զօդաւ նըստաւ բացէ նաւուցն եւ ըզփըքին արձակեաց,
Եւ ճայթումն հընչեաց ահեղ յարծաթափայլ աղեղանէն :
Ընդ ջորիս նախ ընդհարաւ եւ ընդ բարակս երագոտունս .
Իսկ ապա եւ 'ի նոսին իսկ առաքեալ նետ դառնութեան,
Հար, եւ ցանդ խիտ առ խիտ բորբոքէին մարմնոց խարոյկք :
Աւուրս ինն ընդ ճամբարն ընթանային նետք աստուածոյն,
Եւ 'ի տասնին Աքիլլէւս ըզբազմամբոխն յատեան կոչեաց .
Զի սմա 'ի միտ արկ Հերա սպիտակածըղին աստուածուհի,
Խնամ ածեալ դանայեանց՝ զորոց մահուանըն տեսանէր :
Որ յորժամ ժողովեալ գումարեցան ակըմբահոյլ,
Անդէն քաջոտն Աքիլլէւս յարուցեալ կաց եւ խօսեցաւ .
Ատրիդէս, մեզ այժմ անդրէն ծովայածուկ ընդ կրուկ դառնալ
Հասցէ կարծեմ, թէ միայն 'ի մահուանէս ճողոպրեսցիմք .
Զի համայն պատերազմ եւ մահ պարտէ զաքայեցիս :
Այլ արդ աւէք հարցանեմք ըզձայնապատում զոք կամ թէ քուրմ,
Եւ կամ երազագէտ, — զի եւ երազն յԱրամազդայ, —
Ասել՝ առ ինչ ցասուցեալ այսչափ Գուշակն է Ապոլոն .
Զի կամ ուխտիցս ինչ արգելոք կամ թէ զոհից դընէ նա մեզ :
Վայելեալ թերեւս յընտիր ընտիր գառանց ուայծից ճենճերս՝

Հանճեցի այնուհետեւ ըղձատատակուամբ 'ի մէնջ կարծել:

Արդ սա զայս խօսեցեալ՝ նըստաւ, յարեաւ յերաստ նոցին
Թեստորեանըն Կալքաս՝ հաւահմայիցն յոյժ վեհագոյն,
Քաջահմուտ որոց կային, որ հանդերձեալքն եւ որ անցեալք,
Եւ նաւացն յԻլիոն աքայեցւոց էր առաջնորդ
Առ իւրում գուշակութեան, զի նմա Գուշակն ետ Ապոլոն.
Որ ընդ բարւոյն կամեցեալ նոցա եւ զայս ճառեալ ասէ.

Աքիլլէս, Արամազդայ սիրուն, պատուէր տաս ինձ պատմել
Ըղձայրութեան Ապոլոնի զհեռաձգիդ արքային մեծ.
Բայց ցուցից արդ ես զայն. սակայն ուխտեա դու եւ երդուիր,
Ճըշմարտիւ յօրդորամիտ օգնել բանիւք ինձ եւ ձեռօք.
Զի անշուշտ համարիմ՝ թէ բարկացցի այր մեծազօր
Բնաւից տէր արգիացւոց, որում անսան աքայեցիք:
Քանզի բուռն է թագաւոր՝ ցասուցեալ առն անուազի.
Զի թէպէտ եւ առ օրին ամոքեսցէ զըրրամըտութիւն,
Ոխս ապա 'ի սըրտին պահէ մինչեւ հանցէ 'նդ կատարին.
Արդ դու տես եւ խորհեա՝ թէ արդեօք զիս ապրեցուցես:

Առ որ քաջոտն Աքիլլէս պատասխանի ետ եւ ասէ.
Զոր գիտեսդ՝ ծն դու խրախոյս առեալ պատմեա զգուշակութիւն.
Զի երդուեալ յԱպոլոն 'ի սիրելին Արամազդայ,
Յորմէ դու, Կալքաս, հայցեալ՝ դանայեցւոց հանես պատգամս,
Ոչ ոք 'ի քեզ՝ կենդանեաւս եւ մինչեւ աչքս հային յերկրի՝
Ձեռըն ծանր արկցէ երբեք առ գոգախոր լաստափայտիւքս,
Յամենայն 'ի դանայեանցս, ոչ Ագամեմնոն իսկ թէ ասես,
Որ արդ հըզօր վեհապետ պանծայ լինել աքայեցւոց:

Յայնժամ քաջալերեալ բարբառեցաւ հմայօղն ամբիծ.
Ոչ ուխտից ինչ ըղձաւ եւ ոչ զոհից զըմէ նա մեղ,
Այլ 'ի պատճառս քըրմին զոր անգոսնեաց Ագամեմնոն,
Ըղձաւորըն չարձակեաց եւ ըզփըրկանսն ոչ ընկալաւ.
Սըմին իրի ցաւս աւարիկ ետ քաջաղեղըն եւ տացէ եւս,
Եւ զարձուսցէ ոչ 'ի մէնջ ըզծանր օրհասըս սրածութեան,
Մինչեւ խայտակն օրիորդն հատուսցի հօրըն սիրայնոյ
Առանց գընոց փըրկանաց, եւ ածցի զոհ սուրբ 'ի Քրիսէ.
Թերեւս յայնժամ ողոքեալ յուսասցուք հաշտ առնել ըզնա:

Սորա զայս ասացեալ՝ նըստաւ, յարեաւ յակումբ նոցին
Դիւցազն Ատրիդէս Ագամեմնոն ամենիշխան,
Տըրտմագին՝ լի բարկութեամբ սըրտմըտութեան սիրա թըլփայորդ,
Եւ աչք իւր նըմանեալ փայլակնացայտ հրոյ կայծականց:
Եւ նախ առ Կալքաս խէթիւ զիմօք բարբառեցաւ.

Չարեաց գուշակ, ինձ երբեք հաճոյական ինչ չասացեր..
Սիրելի քեզ հանապազ չարիք 'ի սըրտդ են գուշակել,
Իսկ բան բարի չխօսեցար ըղձաւ եւ ոչ հաներ 'ի գլուխ:

Դանայեանց եւ արդ յատեան ըղձապատում եղեալ ճառեա,
Որպէս այն թէ ամին իրի գընէ մեզ վէրս Աղեղնաւորն,
Իբրեւ զի ես ընդունել յանձին չկալայ զշքեղ փրկանս
Օրիորդին Քրիսէիսի, յոյժ տըռփեալ զնըքն 'ի տան ունել՝
Առաւել նախամեծար քան զինս ընտրեալ Կղիտեմնեստրէ
Զհարազատն իմ ամուսին, զի չէ ստորեւ ինչ քան ըզնա
Ոչ մարմնովն եւ ոչ բարուք ինչ ոչ մըտօք եւ ոչ գործովք։
Այլ եւ այնպէս տալ 'ի գուրս, այդ թէ բարւոք թըւի, կամիմ.
Իմ կամք՝ ժողովրդեանս է փրկութիւն, եւ ոչ կորուստ։
Բայց ինձ պարգեւ 'ի պատիւ վաղվաղակի պատրաստեսջիք,
Մի անշուք միայն մնացից յարգիացւոց, որ չէ արժան.
Տեսանէք ամենեքին՝ զի մըրցանակս յինէն գընայ։
Առ այս քաջոտն Աքիլլէւս աստուածազարմ կըրկնեաց անդրէն.
Մեծափառդ Ատրիդէս, ժըլատ քան զընաւս եւ ընչաքաղց,
Զիարդ քեզ մեծանձինքն աքայեցիք տացեն պարգեւս։
Ոչ ուրեք ինչ գիտեմք հասարակաց մըթերս 'ի դէզ,
Այլ որ էրն ինչ քաղաքաց հարեալ աւար՝ բաժանեցաւ,
Եւ զօրուս ոչ ինչ 'ի դէպ բերել կուտել զայն վերըստին։
Սակայն դու զմանկամարդն արձակեսջիր այժմ առ աստուածն,
Եւ աքայիկքս երեքկին եւ չորեքկին քեզ հատուսցուք,
Թէ Արամազդ տացէ քակել զամրապարիսպ Տրոյա քաղաք։
Առ այս պատասխանեալ Ագամեմնոն ասէ անդրայ.
Մի այդպէս, թէպէտ ճարտար ես, Աքիլլէւս աստուածանման,
Գողանար զմիտսըդ, զի ոչ եզերս զինեւ, ոչ պատրեսցես։
Քեզ պատիւ կամիցիս, իսկ ինձ նըստել այսպէս թափուր,
Եւ պատուէր 'ի վերայ դընես ինձ տալ ըզսա 'ի գուրս . . .
Բայց եթէ զմիտս իմ հաճեալ աքայեցիքըն մեծանձինք՝
Մատուսցեն փոխարէն արժանաւոր ինձ պատարագ։
Իսկ թէ չտայցեն, ես ինքնին իմով գըլխով եկեալ առից
Կամ ըզքոյդ կամ զԱյասայն պարգեւ, եւ կամ զՈդիսեւսին
Հանեալ տարայց, և դառնասցի որում երթայցն ես 'ի վերայ։
Այլ զիրացըդ միւսանգամ ըղկնի ուրեմն տացուք խորհուրդ.
Իսկ այժմ ըն ըզսեաւ մակոյկն արկեալ 'ի ծովն աստուածային,
Արարեալ եւ աջողակ նաւազս 'ի ներքս, եւ զզոհն հանեալ,
Ամբարձցուք եւ զնա ինքն ըզգեղեցկայտն Քրիսէիս.
Եւ մի ոմն իշխան լիցի առաջնորդ այր խորհրդական,
Էաս, կամ Իդոմեն, կամ Ոդիսեւսըն դիւցազարմ,
Կամ թէ դու Պելիսածինդ՝ ահեղագոյն քան զամենայն որեարդ,
Զի մատուցեալ զոհս՝ ընդ մեզ ըղհասատարեղն առնիցես հաշտ։
Առ այս խեթիւ անհարկելով ասէ քաջոտն Աքիլլէւս.
Ո՛ զգածեալ լըրբութեամբ եւ զօշաքաղ միտք եւ խորհուրդք,
Զիարդ ոք յաքայեցւոց սըրտի մըտօք լուիցէ բանից՝

Ճանապարհ ուրեք երթալ կամ քաղաքս կրաուել ընդ առս։
Չեկի ես 'ի դըրդիս ընդ արտաքացւոց ախպաւորաց
Պատերազմել սատանոր՝ որոց յես չէք ինչ մեղուցեալ.
Զի չառին երբեք զանդերայս իմ յաւարի և ոչ ըղձիս,
Եւ ոչ հասանուն 'ի Փթիա զալարողեղ մարգագարմանն
Զարտորայս աղարտեցին, քանզի բազում ինչ են ընդ մեզ
Լերինք հովանաւորք եւ մծապոչ ծովուն անդունդք.
Այլ քեզ ով ժըղովրդ եւ լիրբ, երբք ըղձես՝ զի խընդասցես,
Ի խընդրել զՄենելաւոյ վըրէժն և զքոյդ 'ի արտաքացւոց,
Այ չընկընծիծ, զոր չածես ինչ ըղմըտաւ, չառնես ինչ փոյթ.
Նա 'ւանեկ եւ ըղպարգեւս անձամբ յինէն սպառնաս շորթել,
Յոր բազում եղէ վաստակ, աքայեցւոց ետուն մանկունք։
Ոչ երբեք հաւասարակ ընդ քեզ պարգեւս ինչ ժառանգեմ
Մինչ աքայիկք քանդեսցեն ըզբարեշէն տրովեանց ոստան.
Եւ սակայն զաւաւելն ահաւասնաւանդն արշաւանին
Պաշտեն ձեռքս իմ այսորէնի. իսկ ժամ յորժամ գայցէ բաշխել,
Քեզ պարգեւք մեծամեծք, իսկ իմ սակաւ ինչ արդտահեշտ
Ընկալեալ զընամ 'ի նաւս յետ տաժանմանց պատերազմին։
Այլ գործայց այժմ 'ի Փթիա, զի լաւ է յոյժ երթալ 'ի տուն
Մահկաձև հանդերձ նաւուք, եւ ոչ աստէն կալ անպատիւ
Ժողովել քեզ կուտել մըթերս ընչից եւ ստացուածոց։
Եւ անդէն պատասխանի արքայն արանց Ագամեմնոն.
Ո՛հ արդ ասի երթ ուրեմն, եթէ քո յայդ յօժարի սիրտ.
Չաղաչեմ ըզքեզ մընալ վասն իմ, կան շուրջ զինև եւ այլք
Որ զինէն պատուեսցեն, եւս առաւել զգօնն Արամազդ։
Ատելի քան զամենայն դիւցազնունսդ արքայս ես ինձ.
Զի միշտ կագք քեզ եւ կըռիւք եւ պատերազմք են սիրելի։
Թէ հըզօր ես զօրութեամբ, աստուած սակայն շնորհեաց քեզ զայն։
Ե՛րթ չըւեա 'ի տուն քոյով նաւօք եւ քով ամախախիւք,
Միրմիդոնացդ անդ իշխեա, զի ես չառնեմ ինչ փոյթ ըզքէն,
Եւ ոչ յախեցըդ խըժմամ, նա եւ սպառնամ քեզ աւասիկ։
Քանզի Գուշակն Ապոլոն հանէ յինէն ըզՔրիսանեայ,
Ըզնա ես իմով նաւաւ եւ ընկերօքս իմով յղեցից.
Եւ եկեալ ինքնին 'ի վրանդ, առեալ տարայց ըզքո պարգեւ՝
Զգեղեցկայօնն Բրիսէիս, որպէս զի քաջ տեսցես 'ի միտ՝
Քանիօն վեհ քան ըզքեզ իցեմ, եւ այլ ոք սարսեսցէ
Դընել զանձն իւր հաւասար ինձ եւ ընդ իս գալ 'ի կռիւս։
Զայս ասաց եւ ցաւք հարան 'ի Պելիդեանն, և սիրտ նորա
Ի լանջսն թաւարծիս 'ի կըրկնակի հերձաւ խորհուրդ.
Թէ արդեօք յաղջերէն զյեսանասուրն հանեալ սուսեր
Գողեսցէ զնասին 'ի բաց, եւ զԱտրիդէս անդէն սպանցէ,
Թէ ցածուսցէ զբարկութիւնն եւ ըզզայրոյթս արգելուցու։

Մինչ դեռ նա մտայոյզ ծփէր 'ի սիրտ իւր եւ յոգի
Եւ զմեծ թուրն 'ի պատենից ձգէր, յերկնուստ հաս Աթենաս
Առաքեալ 'ի Հերայ սպիտակաձեռն աստուածուհւոյն,
Որ 'ի սրտէ զերկոսին սիրէր սերտիւ եւ խնամարկէր:
Կաց յետոյ, կալաւ զհերացն խարտեաշից զՊելէեանն,
Երեւեալ նմին եւեթ, իսկ տեսանէր ոչ ոք յայլոց:
Սոսկացաւ Աքիլլէս, եւ 'ի թիկունս դարձեալ կոյս՝
Ծանեաւ զՊալլասն Աթենաս, զի ահեղ զաչսն զահաւորս.
Եւ առ նա բարբառեալ զերագաթեւ արձակեաց ձայնս.
Իսկ առ ի՞նչ եկիր, դուստր ասպարակիրն Արամազդայ,
Զի զթըշնամա՞նսն տեսցես զատրէոսեանն Ագամեմնոնի.
Բայց սակայն ասեմ քեզ, որ եւ 'ի լրումն հասցէ կարծեմ,
Իւրովք գոռոզութեամբ կորուսցէ զանձն իւր դա թերեւս:
Անդրէն խաժակն Աթենաս աստուածուհին ասէ առ նա.
Յերկնուստ եկի զսրտմտութիւն քո հանդարտել՝ թէ անսայցես,
Եւ առաքեաց զիս Հերա սպիտակաձեռն աստուածուհի
Որ 'ի սրտէ զերկոսեանդ սիրէ սերտիւ եւ խնամարկէ:
Լռեսցիր արդ 'ի կռուոյդ եւ մի ձգեր ձեռն 'ի սուսեր.
Այլ բանիւք չափ նախատեսջիր՝ որպէս զիարդ եւ տայցէ դէպ:
Ահա զայս ինչ քեզ ասեմ՝ որ ոն եւ ոն կատարեսցի.
Զոհեսցին քեզ երբեմն երեքպատիկ շքեղ պարգեւք
Փոխարէն թշնամանացդ. այլ զանձն արգել եւ լուր դու մեզ:
Աքիլլէս քաջոտն առ նա պատասխանի տուեալ ասէ.
Պարտ է զձերդ եւ արժան, աստուածուհի, պահել զպատուէր,
Թէպէտ յոյժ եմ սրտմտեալ. զի մեծապէս լաւ այնպէս է:
Որ աստուածոց հաւանի՝ եւս առաւել լուիցեն նմա:
Ասաց՝ խրթեաց զարծաթին երախակալ ծանու ձեռամբն,
Եւ անդրէն արկ 'ի պատեանն զսուսերն մեծ, եւ ոչ հեստեաց
Ի խրատուցն Աթենասայ, եւ նա գնաց եւ յՈլիմպոս՝
Յակումբ այլոց դիցն 'ի յարկս ասպարաւորն Արամազդայ:
Իսկ Պելէեանն անդրէն կրկին կսկծալի լուտանաց ձայնս
Արձակեալ առ Ատրիդէս՝ լռէր ինչ ոչ 'ի ցասմանէն.
Ո՛վ զմրեալդ 'ի գինւոյ, շնաչեայ դու եղջերուասիրտ,
Ոչ դրօշիւ արիաբար զրահել ուրեք 'ի պատերազմ,
Ոչ երթալ դարանամուտ ընդ նահատակս աքայեցւոց
Իշխեցեր դու երբեք, զի յաչըս քո մահ թուի այդ:
Լաւ եւս նըստել է ապաքէն յաքայեցւոցն 'ի մեծ բանակ
Եւ զպարգեւսն յափշտակել՝ զոյր ինչ ընդ քեզըն մրցիցի:
Ազգակեր թագաւոր, ոչընչաքեայց հրամանատար,
Թէ ոչ, հաստատ, Ատրիդէս, յետին նըւաղ զըղջուէիր զայս:
Այլ ասացից քեզ ահա, նա եւ երդումըն մեծ երդուայց.
Այո՛ յայս մականն երդուեալ, որ ոչ եւս այլ բողբոջեսցէ

Ոչ ըստեղն եւ ոչ տեսրեւ՝ զամ մ՝ 'ի լեռին լըքեալ զկըտրօնն;
Եւ այլ ոչ զալարասցի, զի պղինձ եղերծ շուրջ ըզնոսա
Ըզսաղարթ իւր եւ զկեղեւ, եւ այժմ որդիք աքայեցւոց
Իրաւարարք՝ օրինապահք Արամազդայ՝ կրեն զայն 'ի ձեռս.
Եւ արդ այս աւասիկ երդումըն մեծ եղիցի քեզ.
Աքիլլեայ կալցի անշուշտ երբեմն անձուկ զաքայեանց զունդ՝
Որոց թէպէտ սրտատանջ՝ ոչ մարթասցես լինել նըպաստ,
Բազմակոյտ ամբոխութիւն յորժամ Հեկտոր մարդախոշոշ
Սատակեալս արկցէ տապաստ, եւ դու զքո սիրտ պատառեսցես
Մորմոքեալ մըղձկեալ զի զքաջն աքայեցւոց պատուեցեր ոչ։
Զայս ասաց Պելէեանն եւ զգաւազանն ընկէց յերկիր
Զոսկեպալար բեւեռազարդն, եւ ինքն անդրէն անց բազմեցաւ.
Բայց անդուստ Ատրիդէս ծանրացասումըն քինախոյզ։
Անդ պիլեանց ճարտար խօսնակն յարեաւ Նեստոր քաղցրաբարբառ,
Յոյր 'ի լեզուէն քան զմեղր անոյշ ծաւալ ծորան բանքն հոսէին,
Ում անցեալ արդէն երկրորդն էր ազգ մարդկան յօդաձայնից՝
Ոյց ընդ իւր 'ի դիւցային Պիլոս սընեալ կեցեալ կանխաւ,
Իսկ յերրորդացն 'ի մէջի Թագաւորէր նա ինքն յայնժամ։
Ի սոցաւն խորհուրդ բարեաց ատենախօս եղեալ ասէ.
Ո՛վ աղէտք, սուգ արդարեւ մեծ հասանէ յաքայեան մարզ,
Ցընծասցէ Պրիամ անշուշտ եւ պրիամեանըն մանկերամ,
Եւ որ այլ եւս տրովեանք՝ 'ի սիրտս իւրեանց խընդասցեն յոյժ,
Թէ վասն այսր ամենայնի լուիցեն ըզձէնջ 'ի վէճ եկեալ,
Որ 'ի վերդ էք խորհըրդիւ՝ 'ի վեր կըռուով 'ի դանայեանց։
Այլ ունկըն դիք, զի յինէն կըրտսերագոյն էք երկոքեան։
Է իմ է'նդ այրընտիր քան զձեզ որեար կեցեալ երբեմն;
Եւ նոքին իսկ երբեք առ արհամարհս ոչ կալան զիս։
Զի չտեսի համբուն ուրեք արս այնպիսիս եւ տեսից ոչ,
Որպիսի Պիրիթոսն էր եւ Դրիաս՝ հովիւքն ազգաց,
Եւ Կենեւս, Եքսադիոս եւ Պոլիփեմ աստուածանման,
Եւ էգեանըն Թեսեւս՝ հանգունեալ անմահից այր։
Զի սնուցին նոքա հըզօրք քան զերկրաւոր ըզնան մարդիկ,
Ինքեանք իսկ հըզօրք, եւ ընդ հըզօրըս մարտուցեալք՝
Ընդ գազանըս լեռնորդեայս, եւ սոսկալէս սատակեցին։
Եւ արդ ես ընդ սոսին կենցաղեցայ՝ յերկրէ եկեալ
Հեռաստանէ 'ի Պիլեայ՝ նոցուն ինքեանց հրաւիրանաւ,
Եւ իմովսանըն զօրութեամբ խառն ընդ նոսին մըղէի զմարտս,
Իսկ յայժմուս ոք երկրածին մահկանացուաց՝ կըռուել չիշխէր։
Եւ սակայն՝ իմ խորհըրդոց միտ դընէին եւ բանից ունկն.
Ունկընդիր լերուք եւ դուք, զի լաւ է յոյժ ունկընդրութիւն։
Ի սմանէ, դու թէպէտ վեհ, մի զօրիորդն յափըշտակեր,
Այլ թողցես՝ իբր աքայեանց եսուն որդիք զամ մի պարգեւ.

Եւ մի՛ դու, Պելեածին, 'ի կռիւ կացցես ընդ արքայիս,
Քանզի ոչ հասարակ ընդ քեզ պատուոյ վիճակեցաւ
Թագաւոր մականակիր՝ որում շնորհեաց փառս Արամազդ ։
Իսկ եթէ դու քաջ իցես, յաստուածուհւոյ ծնեալ մօրէ,
Զօրագոյն է սակայն սա, քանզի բազմաց է իշխեցող ։
Ատրիդէս, եւ դու լռեա 'ի մաղձիդ • ես աղաչեմ
Ցածուցանել յԱքիլլեայ զրտմտութեանդ մրմռումն,
Որ պատուար մեծ աքայեանցս ամենեցուն է չար մարտին ։
Տրտմեալ առ սա պատասխանի տայ արքայն Ագամեմնոն •
Քաջ իսկ 'ի դէպ, ծերունիդ, բարբառեցար զայդ ամենայն •
Բայց ձըկար անցուցանել այդ այր զայլովք ամենեքումբք,
Իշխել կամի համայնից, ինքնակալել բոլորեցունց,
Եւ ընաւից տալ հրաման, յոր ոչ կարծեմ յանկուսցէ զոք ։
Իսկ թէ զնա պատերազմօղ եդին աստուածքն յաւերժականք,
Մի եւ թո՞յլ ինչ տան նմին՝ եպերանաց լուսալ բանիւք ։
Իսկ դիւցազն Աքիլլէս հատեալ ըզխօսսն անդրէն կրկնեաց •
Արդարեւ իսկ վատաբանց եւ թարմատար ոք կոչեցիմ,
Հըպատակ թէ քեզ կայցեմ յամենայնի զոր ասիցես •
Զայդ այլոց պատուիրեսջիր, եւ մի առ իս տայցես հրաման •
Իմ ո՛չ եւս յայսմհետէ հնազանդել քեզ եդեալ 'ի միտ ։
Ասացից ինչ քեզ եւ այլ, եւ դու 'ի խորս արկ զայն սրտիդ •
Վասն աղջկանն աղագաւ՝ ձեռօք ինչ ես կռուեցայց ոչ,
Ոչ ընդ քեզ, ոչ ընդ այլում, զի զառուրբս ձեր յինէն հանէք •
Իսկ որ այլ ինչ կան առ իս յերագաթռիչ 'ի սեաւ նաւին,
Ցայնցանէ եւ ոչ ինչ առեալ տարցիս բռնի յինէն •
Թէ ոչ՝ փո՛րձ աղէ փորձեա, զի եւ սոքա լիցին հասու,
Անդէն եւ անդ թուխ արիւնդ ըզգեղարդեամբըս ցայտեսցի ։
Այսպունակ աղեղնաբան սոցա խօսիւք պատերազմեալ՝
Ցարեան եւ լուծին զատեանն առ նաւս աքայեցւոց ։
Պելեանն եղեալ գնաց 'ի վրանս ու՛ 'ի նաւս հարթայարմարս
Որդւովն հանդերձ Մենետեայ եւ իւրոյին զինուորակցօք ։
Իսկ Ատրիդէս անդր 'ի ծով զմակոյկն երագ խաղացուցեալ,
Նաւավարս ընտրեալ քըսան 'ի նոյն, մուծեալ զոհ աստուածոյն,
Անդր ածեալ զեառեղեցոյց եւ զգեղեցկայտօն Քրիսանոյշ,
Եւ առաջնորդ՝ Ոդիսեւս լիահանճարն ամբարձաւ յայն ։
Արդ եղեալ նաւէին սոքա 'նդ շաւիղսն խոնաւուտ •
Եւ հրաման սրբելոյ ժողովրդեանն ետ Ատրիդէս,
Եւ նոքա սրբէին եւ ամայեին զխոհերան 'ի ծով,
Եւ բազմանդըս զենուին Ապողոնի զընտիր ընտիր
Զուարակաց եւ նոխազաց՝ զամուլ զանբիծ ծովուն ափամբ,
Եւ ճենճերըն ծըխախառն ոլորտացեալ յերկին կըցէր ։
Ցայս ընդ ճամբարն ըզբաղնուին սոքա, սակայն Ագամեմնոն

Ի սաստեցն առ Աքիլլէս ըմպատճառելեաց կասէր ինչ ոչ.
Այլ որ իւրն էին անդէն քարոզք եւ ժիր ըմպատաւորք՝
Զերկոսին՝ զՏալթիբիոս եւ զԵւրիբատ ձայնեալ առէ.
Արիք երթայք 'ի խորանն Աքիլլէսի՝ որդւոյն Պեղեայ,
Զձեռանէն առեալ ածէք ըզգեղեցկայարն Բրիսէիս.
Իսկ թէ ոչ տայցէ, ինձէն եկեալ առից անձամբ իմով,
Բազմամբոխ զօրութեամբ, որ աւաղին լիցի նըմա:
Զայս ասացեալ յուղարկեաց, յաւել եւ սաստ պատուհաս:
Գնացին նոքա յակամայս առ անբերրուն ծովուն ափամբ
Եւ հասին 'ի վրանս եւ 'ի նաւկնեար Միրմիդոնաց,
Եւ գտին ըզնա նստեալ առ խորանաւն եւ սեաւ նաւուն:
Աքիլլէս 'ի տեսանելն անդ ըզնոսին չեղեւ ուրախ:
Ցարքայէն սոսկացեալ եւ պատկառեալ կային նոքա,
Չհանէին ձիկ իսկ անդամ եւ զնա ինչ ոչ հարցանէին:
Սակայն նա խելամուտ եղեալ 'ի միտս իւր առէ.
Ողջոյն, քարոզքդ, հրեշտակք Արամազդայ՝ նա եւ մարդկան.
Մերձ մատիք. չէք ինչ առ իս դուք մեղապարտ, այլ Ագամեմնոն,
Որ ըզձեզն առաքեաց զօրիորդէն Բրիսէիսէ:
Արի, քաջըդ Պատրոկլէս, երթ ած 'ի դուրս այսըր զաղջիկն
Եւ տացես դոցա տանել. եւ երկոքին կացցեն վկայք
Առ աստուածոց երջանկափառս եւ առ մարդիկ մահկանացուս,
Եւ առ ժանտ թագաւորին, եթէ երբեք յետ այսորիկ
Եղեց պէտոյ փրկել զայլս 'ի դժընդակ կորըստենէ.
Զի հաստատ մոլեգնոտ նա 'ի խորհուրդըս մահաբերս,
Եւ համբուն ինչ ոչ գիտէ հայել յառաջ համայն եւ զկնի,
Զի նմա զնաւուքն առբեացին աքայեցիք պատերազմեալք:
Զայս ասաց, լըւաւ Պատրոկլ ընկերակցին սիրեցելոյ,
Եւ ածեալ 'ի վրանէն զգեղեցկադէմըն Բրիսանոյշ
Ետ տանել, եւ նոքա յաքայեցւոց դառնային նաւս.
Եւ կինըն յակամայ կամս ընդ նոսին գնայր հետեւեալ:
Իսկ Աքիլլէս յընկերացն ուրոյն միայն նըստաւ եւ լայր
Զըստափառակ ծովուն եզերբ՝ ակընկառոյց 'ի լուրթ անդունդս:
Եւ ըզձեռսըն կարկառեալ սիրայնոյ մօրն աղաչէր յոյժ.
Ո՛վ մայր, զի կարճակեաց տեւաօրեայ ծընար դու զիս,
Պարտ էր գէթ որոտագոչ ո՛լիմպականն Արամազդայ
Պարգեւել ինձ պատիւ. արդ ոչ եւ գոյզն ինչ զիս պատուեաց.
Աւասիկ Ատրիդէս իշխանապետ Ագամեմնոն
Անգոսնեաց զիս եւ եբարձ տարաւ զպարգեւս՝ իւր վըտարեալ:
Զայս ասաց արտօսրաթափ, լըւաւ նըմա նազելին մայր
Որ նըստէր յալըս ծովուն առ ալեւոր հարամբ իւրով:
Նոյն ժամայն ել 'ի ալիտակ ալեաց անտի զերդ շամանդաղ,
Եկն եհաս, յանդիման նորա նըստաւ մինչ աշխարէին,

Եւ ձեռամբ դրդուեալ ըզնա՝ ձայն արձակեալ բարբառեցաւ.
  Որդեակ իմ, զի՞ լաս, եւ զի՞նչ 'ի միտսըդ անկաւ սուգ.
Մի՛ ծածկեր 'ի սիրտ՝ խօսեաց, զի երկոքեան լիցուք տեղեակ։
  Դառնահառաչս յոգւոց ելեալ ասէ ցնա ժիրն Աքիլլէւս.
Գիտես, զի՞ է ասել գիտողիդ քեզ զայս ամենայն։
Ի քաղաքն Էէտիոնեայ 'ի Նուիրական չոգաք Թեբէ,
Եւ յաւեր եդեալ զայն՝ զաւարն ողջոյն ածաք այսրէն,
Զոր ուղիղ բաժանեալ յինքեանս որդիք աքայեցւոց,
Ընտրեցին Ատրիդեայ զգեղեցկադէմըն Քրիսէիս։
Բայց ապա կորովաձիգն Ապողոնի քուրմըն Քրիսէս
Եկն 'ի նաւսըն սրարշաւս աքայեցւոց զինազգեստից՝
Անպայման բերեալ փրկանս առ 'ի Թափել ըզդուստըն իւր,
Վարսակալ 'ի ձեռս առեալ զաղեղնաւորն Ապողոնի
Ոսկեղէն գաւազանաւն, աղերս հանէր արկ աքայեանց,
Մանաւանդ առ երկոսեան պետս ամբոխին առ Ատրիդիս։
Անդ այլոց առհասարակ հաճոյ թուեցաւ աքայեցւոց
Ակն ածել 'ի քուրմըն եւ յանձն առնուլ զշքեղ փրկանսն.
Իսկ Ատրեանն Ագամեմնոնի ոչ հեշտալի եղեւ միտացն,
Այլ չարաւ արձակեալ՝ ըսպառնալեաց եւս յաւել սաստ։
Սրբամըտեալ ալեւորին՝ ել եւ գընաց դարձեալ անդրէն.
Լըւաւ ուխտիցն Ապողոն, զի սիրելի յոյժ էր նըմա.
Առաքեաց յարգիւացիս ըզչարաչար զնետըն սըլաք.
Զօրք շեղջաշեղջ մեռանէին, ընթանային նետք աստուածոյն
Համօրէն ընդ ճամբարն աքայեցւոց լայնածաւալ։
Իսկ հըմուտ մեզ գուշակ պատմէր զպատգամս հաստաղեղան,
Յայն նախ ես խնդրոյն պատուէր՝ ածել զաստուածն 'ի հաշտութիւն։
Բարկութիւն կալաւ զԱտրիդ, եւ յարուցեալ վաղվաղակի
Սպառնալիս բարբառեցաւ՝ որ վըճարեալ իսկ են ահա։
Քանզի զնա երագաթեւ նաւաւ խայտակն աքայեցիք
Յըղարկեն 'ի Քրիսէ, ածեն եւ Տեառնըն դահամունս.
Եւ զսա դեռ եւս 'ի վըրանէս առեալ գնացին նուիրակալեալք,
ԸզԲրիսեայն դըստրիկ՝ զոր ինձ աքայեցւոց ետուն մանկունք։
Այլ թէ դու կարող ինչ ես, քաջի որդւոյդ հաս 'ի թիկունս.
Աղերս յՈլիմպ երթ յԱրամազդ, եթէ բանիւ ինչ կամ արդեամբք
Օճան ինչ հեշտութեան ետուր երբեք սըրտի նորուն։
Զի բազում անգամ լըւեալ եմ քեզ պարծել յապարանս հօր
Ասելով թէ դու եւեթ ըզԶըրուանեանն ամպրոպային
Դու լոկ յանմահսըն պահեցեր 'ի դըժընդակ եղերանէ,
Մինչդեռ այլ ոլիմպականք նըկըրտէին կապել ըզնա,
Եւ Հերա եւ Պոսիդոն եւ Աթենասն ինքնին Պալլաս։
Իսկ երթեալ աստուածուհիդ լուծեր ըզնա 'ի կապանաց,
Կոչեալ յերկայնն Ոլիմպոս անդէն եւ անդ զհարիւրաձեռնեայն,

Զոր Բրիսարեւս կարդան զիք, իսկ ամենայն տուր Էդեկմի. —
Քանզի սա զօրութեամբ ըղձարքն հուրով զանցուցանէր, —
Որ եկեալ առ Զըրրաւանեանսն ակրձայեալ բաղձի փառաց,
Ցորմէ զնցն երջանկաց զուհի հարեալ՝ չէջեաւն կասել.
Արդ քո զայս յուշ արարեալ՝ նկատ մեա եւ բաւան հար ըղձընդայն,
Որ Թեբրեւս հանձեալ տրտմագայցոց կալ զօրավէգն,
Եւ զպաշտօնեան 'ի նաւախելս եւ առ ծովուն շուրջ փոթորկեալս
Սատակել, զի զհամ աղցեն բողոքեալ զթագաւորին,
Ծանիցէ եւ Ատրիդէան Աղամեմնոն իշխանապետ
Զխուր մինաս, զի զդաշնաւորանցն աքայեցւոց ոչ մեծարեաց:
Եւ նոցա պատասխանի անդէն Թետիս արտասուալից.
Ո՛հ որդեակ, եւ զի՞ երկնեալ ըզքեզ մնուցի ծընունդ Թըշուառ:
Ո՛ թայր քեզ անարատօր եւ անվըրթար նըստել առ նաւս,
Զի մօտալուտ քեզ օրհաս առ կամօքդ կայ եւ ոչ հեռի.
Արդ գըտար վաղամեռիկ եւ վըշտատես քան զամենայն,
Քանզի զքեզ 'ի վատթարատար ժամու ծընայ յապարանս:
Այլ զայդ բան՝ փայլակնաձգուարձն Արամազդայ յուռեկըն պատմել
Ես խնձէն 'ի ձիւնափայլն երթայց յՈլիմբ, եթէ լուիցէ:
Սակայն դու նըստեալ այժմիկ առ արըրնթաց լաստափայտեւքդ
Ոխացիր աքայեցւոց եւ 'ի մարտէն լեր ձեռընթափ:
Զի երէկ յՈվկիան առ անպարագիւտ եթովպացիսն
Ի խրախտանս չոգաւ Ոլիմբոզ եւ զկնի նորա գիք համօրէն.
Բայց յաւուրն երկոտասան դարձեալ այսրէն գայ յՈլիմպոս:
Նոյնժամայն երթամ 'ի տունն ոսկեղէնակեան 'ի պղընձակերտ,
Եւ առ ծունկսն անկեալ՝ աղերս ունեմ 'ի հաւան ածել ըզնա:
Զայս խօսեալ մեկնեցաւ, թողեալ անդէն զնկըն 'ի տեղւոջն
Ի զայրոյթ սըրտամրմռութեան՝ գեղեցկամէջ կընոջն 'ի սակս
Ակամայ եւ բըռնաբար առ 'ի նմանէն հափշտակելոյ: —
Իսկ Ոդիսեւս 'ի Քրիսէ եհաս ածեալ ըզզոհըն սուրբ:
Սոքա իբր այն էին մըտեալ նաւահանգիստն 'ի խորագոյն՝
Զառագաստս ամփոփեալ զետեղեցին 'ի սեաւ լաստին,
Իջուցեալ հապ պարանօք յեցուցին զկայմն 'ի կայմընկալն,
Եւ ըզնա թեւածակօքըն վարեցին 'ի նաւակայան:
Ընկեցեալ ըզխարիսխսըն եւ կապեալ զպարաւանդակս,
Ելին եւ ինքեանք առ հասարակ յեզր 'ի ծովուն,
Եւ ըզզոհն արտաքս հանեին կորովաձիգն Ապողոնի:
Ել եւ ինքըն Քրիսէիս 'ի ծովաշու լաստափայտէն,
Զոր համբարեալն Ոդիսեւս տարեալ անդէն 'ի բագինն անդր
Եւ 'ի ձեռս աւանդեալ սիրելւոյ հօրն՝ ասէ ցնա.
Ո՛ Քրիսէս, Աղամեմնոն արանց արքայն զիս առաքեաց
Բերել քեզ ըզդըստերիկդ եւ Փոեբոսի զենուլ զոհ սուրբ
Ի վերայ դանայեցւոց, զի քաւեսցէ զմեզ արքայն տէր,

Որ զարդիս բազմահառաչ սուգ արձակեաց յարդիւնացիս ։
Զայս ասացեալ եւ 'ի ձեռանն, եւ ընկալաւ նա խընդութեամբ
Ըզդըստրիկ իւր սիրասուն . իսկ նոքա զզոհն աստուածոյն զմեծ
Կայուցեալ անդէն կարգաւ զգեղեցկաշէն բագնաւորն շուրջ,
Ապա զձեռսըն լըւացեալ՝ առին բարձին ըզմուրկըն սուրբ ։
Մեծաբարբառ աղօթէր նոցա Քրիւէս բարձկատարած .
Լուր ինձ, արծաթաղեղն, որ ըզՔրիւսէ շուրջ պահպանես
Եւ զդիւցականըն Կիլլա, եւ Տենեդեայ տիրես հզօր.
Լըւար դու եւս աղաչէն յառաջագոյն պաղատանաց,
Եւ զանձն իմ մեծարեալ՝ հարեր ուժգին զաքայեանց ազգ.
Օ՛ն արդ դու ինձ եւ ըզայս կատարեա զուխտ խընդրըրուածոց,
Վերացո 'ի դանայեանց ըզժանտ մահուն նետենաւոր ։
Զայս յաղօթսըն իւր ասաց, եւ Ապողոն լըւաւ Գուշակն ։
Իսկ ապա յետ աղերսիցն եւ ցանելոյ զորբրութեան մուրկ,
Զըսպանդին ուլն յողն ածեալ եւ փողոտեալ մորթեցին նախ,
Եւ զազդերսըն յօշեալ՝ ճարպոյն համակ պատեցին շուրջ,
Եւ երկպատկեալ՝ արկին ընդ քօղ պատառ պատառ կտորս հում հում։
Ծերն 'ի շերտս այրէր փայտից եւ սեաւ գինի ընդ քօղ հեղոյր,
Իսկ մանկտին առ իւր 'ի ձեռանն ունէր շամփուրըս հինգարձենս ։
Եւ ազդերըն յորժամ կիզան եւ զփորոտին ճաշակեցին,
Զայլըն մանըր կտորեալ՝ հարեալ 'ի անեգս անդըր շամփրոց
Խորովեցին հըմտաբար, եւ զամենայն առին 'ի բաց ։
Ի գործոյն իբրեւ հանգեան եւ ըզխընջոյսն յօրինեցին,
Ճաշեցին՝ մինչ զուգաչափ խորտկաց այլ ոչ կարօտէր սիրտ ։
Զըմպելեաց եւ զկերակրոց իբրեւ զքաղցն հանին փափաք,
Զխառնարանըն մանկըտւոյն լըցեալ գինեաւ մինչեւ 'ի վեր՝
Բաժակօք մատուցեալ բաժանեցին ամենեցուն ։
Եւ ապա զտիւն ողջոյն զաստուածն երգով հաշտ առնէին
Գեղեցիկ օրհնութիւն հանեալ մանկունքն աքայեցւոց,
Նուագելով զԱղեղնաւորն, եւ նա լըսեալ խընդայր 'ի սիրտ ։
Իսկ արեւն իբրեւ դարձաւ 'ի մայրն եւ եկն եհաս նըսեմ,
Առ նաւին ապաւանդակս յայնժամ ննջեցեալ 'ի քուն մըտանին ։
Այգածին մինչ Առաւօտըն վարդամատն երեւեցաւ,
Ելեալ անդէն չուէին 'ի մեծ բանակն աքայեցւոց,
Եւ յաջողակ զհետ արձակեաց հողմ Ապողոն կորովաձիգ ։
Զկայմըն կանգնեալ՝ զառագաստըն պարզեցին նոքա սպիտակս .
Ելից հողմ զառագաստին ծոց եւ ծըփանքըն ծիրանիք
Առ կողիւք նաւուն ուժգին գոչէին շուրջ 'ի գնալ իւրում,
Նա զալեօքըն սահարկէր հասեալ անցեալ ըզճանապարհն ։
Իսկ յորժամ յաքայեցւոց ժաման եղեն 'ի մեծ ճամբար,
Ի ցամաք ձըգեալ հանին ըզյաստատափայտըն թըխաթոյր
'Դուաղն 'ի վեր, եւ զերկայն նեցուկս արկին մոյթս 'ի ներքոյ,

Եւ ճեղքանք ալեկոծեցան ընդ նաւատորմն եւ ընդ վէրանս :
 Սակայն նա սրտամբըռնէր առ արագընթաց նըստեալ նաւուք
Պելէաւոյ մարդկեղն որդին՝ Թեթեւն ոտիւք քաջն Աքիլլէւս.
Ոչ ուրեք երթայր եւ գայր յարանց ատեան փառապարգեւ,
Եւ ոչ 'ի պատերազմ, այլ 'ի սրտոտին հալէր մաշէր՝
Անդ կացեալ, եւ 'ի խօշխեան ցանկայր մարտից եւ 'ի գոռալար :
Իսկ յորժամ յետ այնորիկ երկոտասաննն եղ առաւօտ
Եւ գնային յՈղիմպոս յաւէրժ աստուածքն ամենեքին՝
Արամազդ 'ի գլուխ պարուն, ոչ մոռացաւ յայնժամ Թետիս
Զպատուէրս իւրում որդւոյն, այլ 'ի մկանանց սլացեալ ծովուն
Ել ընդ այգն առաւօտեալ 'ի մեծ երկինս եւ յՈղիմպոս.
Եւ եգիտ զահեղագոչըն Զըրուանեան նըստեալ ուրոյն
Ի բարձրածայր գագաթան սարաւանդեալն Ողիմպոսի :
Անդ նըստաւ դէմ յանդիման, եւ ահեակաւ կալեալ զծընգացն
Եւ աջովըն կարկառեալ մատամբք 'ի կզակ նորա ներքին,
Աղերս զայս առ Զըրուանեանն արքայ մատոյց առ Արամազդ.
 Արամազդ հայր, թէ երբեք օգնեցի քեզ յանմահից դասս
Բանիւ ինչ կամ գործով, լից ըզսըրտիս զայս ցանկութիւն.
Պատուեսցիր ինձ զիմ որդեակ՝ սակաւակեաց գըտեալ քան զայլս,
Զոր եւ արդ արհամարհեաց Ագամեմնոն արանց արքայն,
Զի զըրաւեալ ունի զպարգեւն անձամբ անձին յափըշտակեալ :
Այլ դու զվրէժ իւր, Ողիմպեանդ ամենիմաստ հա՛ն Արամազդ,
Տուր տրովեանց ըզյաղթութիւն, մինչեւ գիցեն աքայեցիք
Ըուք ուրեմն որդեկիս եւ ըզպատիւն աճեցուսցեն :
 Զայս ասաց, բայց Արամազդ ամպըոպային չխօսեցաւ ինչ,
Այլ յերկար նըստէր անձայն. իսկ բուռն 'ի ծունկսն հարեալ Թետիս՝
Նոյնպէս կայր մընայր փարեալ, եւ միւսանգամ դարձեալ ժըտէր.
 Արդ խոստումն ինձ հաւաստեաւ տուեալ ուրեմն ակնարկեսջիր,
Կամ յուրանա կաց, քանզի չէք ինչ քեզ երկիւղ. զի ծանեայց քաջ
Քանիօն անարգագոյն 'ի դիցանուշս իցեմ 'ի բնաւս :
 Մեծ հառաչեալ Արամազդ ամպրոպայինն՝ ասէ ցնա.
Գործ դըժնեայ՝ թէ գըրգռեցես զիս զալ Հերայ յատելութիւն,
Եւ նա զիս սանդարամետակաց բանիւք գըրգռեալ զայրացուսցէ.
Որ եւ այժմէս իսկ յանմահ դիւցն 'ի հենգնի կայ միշտ ընդ իս,
Ասել զինէն թէ 'ի մարտըս տրովացւոց լինիմ նըպաստ :
Այլ արդ դու դարձիր 'ի բաց, մի՛ զքեզ Հերա գիտասցէ ինչ.
Ցիմ վերայ հոգդ ամենայն՝ մինչեւ տարեալ հանից 'ի յանդ :
Այլ ահա եւ գըլխովս ակնարկեցից քեզ յերաշխիս,
Որ այն ինձն է մեծագոյն նըշան յանմահս լինելն կուսէ,
Զի չէ իմ ինչ յեղյեղուկ, եւ ոչ պատիր, ոչ անկատար
Զոր եւ ինչ միանգամ գըլխովս իմով ակնարկեցից :
 Ասաց, եւ ակնարկեաց կապոյտ յօնիւքըն Զըրուանեանն.

Ցանկամահ դըրախտոյ Թագաւորին աստուածեղէն շարժեցան փառքըն,
Եւ ըղձերըն տատանեալ դըղըրդեցոյց զՈլիմպոս:
Զայս ասեալ նոցա խորհուրդ՝ ելեալ գնացին առ 'ի միմեանց,
Նա 'ի ծով խոր սուզեցեալ յարփիաձեան Ոլիմպոսէ,
Արամազդ յիւր ապարանս. յարեան բոլոր դիք յաթոռոցն
Հօրն իւրեանց ընդ առաջ, համարձակեալ եւ ոչ ուրուք
Գալըստեան նորա մընալ՝ յառըն կացին իւր առաջի:
Նոյ բազմեցաւ անդ նա 'ի գահ, բայց 'ի Հերայ ծածկեցաւ ոչ.
Զի ետես եթէ եկն եւ 'ի խորհուրդ ընդ իւր եմուտ
Արծաթաթաթիկըն Թետիս, դուստրըն ծերոյն ծովականի:
Առ Զըրուանեանն Արամազդ անդէն սըրտակեղ բանիւք ասէ.
Ո՞վ ընդ քեզ, է նենգամիտ, 'ի դից անտի մուտ 'ի խորհուրդ.
Միշտ է քեզ սիրելի՝ առանձնաբար յինէն կալով
Սահմանել գաղտնի խորհուրդս, եւ ոչ յանձին կալար երբեք
Պատմել ինձ ինքնախորհ՝ զոր խոկաձեան ինչ միանգամ:
Եա նըման պատասխանի հայրըն մարդկան եւ աստուածոց.
Մի կարծիր ամէն ինչ, Հերա, գիտել ըղձիս իմ զամենայն,
Դըժուարին քեզ եղիցի, թէպէտ եւ իմ ես ամուսին:
Իսկ թէ 'ի դէպ ինչ է լսել, ոչ ոք յայնժամ այլ ոչ 'ի դից
Եւ ոչ 'ի մարդկանէ լիցի յառաջ քան զքեզ գիտակ.
Բայց զոր ես ինչ ինքնուրոյն զատ յաստուածոց արկից ընդ միտ,
Զամենայն ինչ զայնպիսի մի հարցաներ եւ մի քըննեա:
Աչագեղն արդոյն Հերա դարձոյց անդրէն պատասխանի.
Անողորմ Զըրուանեան, բան զինչպիսի բարբառեցար.
Իմ վաղուց իսկ յառաջմէ ոչ ինչ հարցեալ եւ ոչ խուզեալ,
Այլ անհոգ եւ անկասկած որ ինչ կամիսն 'ի միտ դընես. .
Բայց զանգիտեմ յոյժ 'ի սիրտ՝ եթէ զուցէ խաբեաց ըզքեզ
Արծաթաթաթիկըն Թետիս, դուստրըն ծերոյն ծովականի:
Զի կանխեալ առաւօտեալ նըստաւ առ քեւ, կալաւ զծընգացդ,
Որում անշուշտ անկանէիցեր կարծեմ պատուել զԱքիլլէս,
Եւ սատակել առ նաւուք զաքայեցւոցն ըզբազմութիւն:
Զայս առ նա պատասխանի ամպրոպայինն ետ Արամազդ.
Ա՛յ թըշուառ, միշտ 'ի կարծիս եւ 'ի կասկած, չեմ քեզ թաքուն.
Սակայն ոչ ինչ կարասցես հանել 'ի գլուխ, նա մանաւանդ
Ի սըրտէս անկանիցիս, եւ դառնագոյն լիցի քեզ այն:
Եւ թէ այդպէս ինչ իցէ, այն եւ հաճոյ ինձ եղիցի:
Այլ կարկեա, նիստ լըռիկ, եւ հրամանիս լեր ունկընդիր,
Գուցէ ո՛չ ինչ օգնեսցեն քեզ որչափ դիք են յՈլիմպոս՝
Ի դիմելն յորժամ ըզձեռս անհըպելիս արկից 'ի քեզ:
Զայս ասաց, եւ մեծարոյն զահի հարաւ աչեղն Հերա,
Եւ կարկեալ նըստաւ անմռունչ՝ 'ի կոր ըղձիրտըն կործանեալ.
Հեծեցին 'ի տաճարին Արամազդայ դիքն երկնաւորք:

Հեփեստոս պանծալիարուեստ ընկեցին առար նոյա ոտից,
Ի հաճոյս լուսածրղին Հերայի մօրըն սիրայնոյ.
Դըժընդակ այս աղաղէն լըցին գործեան սանդարբելըք,
Երկրածնեան մահկանացուաց վասն եթէ դուք 'ի կռիւ կայցէք,
Եւ աղմուկ արկցէք յանմահս, եւ ոչ համեղ ինչ կերակրոց
Եղիցի հեշտութիւն, քանզի զըլեն վատթարագոյնք:
Եւ ես մօրըս տամ խրատ, թէպէտ ինքնին է իմաստուն,
Քաղցրութեամբ ըղձիցս հաճել զԱրամազդայ հօր սիրելոյ,
Զի մի զայրացեալ եկեալ 'ի վէճ հայրըն ըզխրախճանս մեր խառնեսցէ,
Զի թէ կամ լինիցի ոլիմպական շանթընկեցին
Յաթոռոցըս վըրդովել... զի ահագոյն ոյժ է նա:
Այլ դու զնա կակուղ բանիւք ողոքելով ամոքեսցես,
Եւ անդէն հաշտ եւ հաճոյ ընդ մեզ դարձցի Ոլիմպականն:
Ասացեալ, եւ յարուցեալ առ ըզբաժակըն կրկնատաշտ,
Եւ 'ի մօրըն սիրոյնոյ եդեալ մատուցան՝ ասէ ցնա.
Ժուժեա, մայր իմ, եւ համբեր, թէպէտ 'ի հոգ սըրտածըմլիկ,
Գուցէ զքեզ ըզսիրելիդ աչօք 'ի զանից տեսցեն հարուած,
Եւ յայնժամ ոչ բաւեցից, սիրտ տըրտմալից, օգնել ինչ քեզ,
Զի դըժնէ եւ դըժընդակ է Ոլիմպեանն 'ի զինամարտ:
Զի եւ այլ երբեմըն զիս, 'ի ժամանելըս յօգնութիւն,
Ա՛ռ զոտիցս ընկէց 'ի բաց յաստուածակոփ սեմոց տանն:
Զօրն 'ի բուն հոլովս տարեալ, եւ յարեւուն 'ի մըտանել
Ի Լեմնոս անկայ նուաղ շընչով յոգիս իմ ապաստան.
Անդ զիս արք Սինտացիք զանկեալս անդէն առեալ բարձին:
Յայն բան Հերա ժըպտեցաւ աստուածուհին սպիտակաձեռն,
Եւ ժըպտելով ընկալաւ յորդւոյն ձեռաց ըզդաւաշխուրանն:
Իսկ նա զեցն այլոց ընդ աջ մատուցանէր ամենեցուն
Զաստուածեղէն քաղցր ըմպելին 'ի թակուկէ անուշ հանեալ:
Եւ անհաս զարթեաւ քըրքիջ 'ի զեցն երանաւ երջանկափառ,
Իբրեւ տեսին զՀեփեստոս 'ի տաճարին ժըրացեալ 'ի սպաս:
Այսպաւնաւ անդ զօրն ողջոյն մինչեւ 'ի մուտս արեգական
Խրախճանային՝ մինչ զուգաչափ այլ պարենի չկարօտէր սիրտ,
Ոչ չքնաղ ջութակին՝ որ 'ի ձեռին Ապողոնի,
Ոչ Մուսայց՝ որ փոխ առ փոխ նուագէին քաղցրաձայնիւք:
Իսկ 'ի մայր յորժամ դարձաւ արեւակին փայլուն ճաճանչ,
Սոքա մեկն իւրաքանչիւր գնացին 'ի նինջ 'ի յարկս իւրեանց,
Ուր միում միում սենեակս էր հանճարեղ մըտօք շինեալ
Հեփեստոսըն՝ հոյանուն կաղն յերկոցունց ոտից իւրոց:
Յիւր մահիճս եւ Արամազդ փայլատակողն երթ ոլիմպեան՝
Ուր յառաջըն նընջէր, մինչ ըզնա նիրհ տանէր անոյշ.
Անդր ելեալ 'ի քուն եղեւ, եւ ոսկեգահն առ իւր Հերա:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Լնուլ խորհելով զխոստումն առ Թետիս՝ առաքէ Արամազդ երազ չար եւ խաբեբայ առ Ագամեմնոն՝ 'ի յոյս յաղթութեան, ձեռն 'ի գործ առնել մարտին առ վաղիւ: Ցարուցեալ նորա՝ յառաւօտն կոչէ զաւագանին 'ի խորհուրդ վառելոյ զզօրն 'ի կռիւ, բայց եւ զաղտ զեկուցանէ նոցա, թէ խիթացեալ ընդ կամս զօրականին՝ կամի կեղծեօք փորձել զնոսա. եւ գումարեալ զամբոխն՝ պատճառի զփախուստ 'ի պատերազմէն: Նոքա անգէտք մտաց նորա, դիմեն 'ի նաւսն՝ առնուլ եւ փախչել: Ոդիսեւս խրատեալ յԱթենասայ՝ խափանէ զնոսա, եւ դառնան անդրէն 'ի ժողով. Ոդիսեւս եւ Նեստոր յորդորեն զնոսա մղել զպատերազմն. Ագամեմնոնի քաջալերեալ զնոսա՝ մատուցանէ զոհ Արամազդայ, հրաւիրէ զաւագորեարն 'ի կոչունս: Ապա հանդէս համարոյ զնդացն Յունաց եւ նաւուց: Ծանուցեալ տրովացւոց զկազմութիւն եւ զարշաւանն նոցա հանդերձին եւ նոքա փութանակի, որոց եւ հանդէս առնի կարճ 'ի կարճոյ:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԵՐԿՐՈՐԴ

### ԵՐԱԶ. ԲԻՈՎՏԻԱ ԿԱՄ ՀԱՆԴԷՍ ՆԱՒԱՑ

Այլք 'ի դից եւ սպառազէն քաջնեքն արք ըզգայգն 'ի քուն,
Բայց աւկայն Արամազդայ հատանեալ էր քաղցրը քուն յաչաց,
Եւ Աքիլլեայ 'ի սրտին խորհէր նոթձնել պատիւ եւ փառս
Եւ զամբոխ աքայեցւոց կորուսանել զնաւատորմիւն:
Իմաստուն այս խորհուրդ նմա թուեցաւ 'ի միտըս իւր,
Առաքել զԵրազըն չար առ Ատրեւդէան Ագամեմնոն.
Եւ առ նա ձայն արարեալ՝ երագաթեւ ասէ բանիւք.
Արի երթ, Երազ չար, յաքայեցւոց ձեպընթաց նաւս,
Եւ մըտեալ 'ի խորանն առ Ատրեւդէան Ագամեմնոն՝
Զամենայն որպէս իմ եւըն պատուիրեմ՝ ճառեա ստուգիւ:
Համախուռն ըղհերապանծ աքայեցիս վառել շտապաւ
Տուր հրաման, զի արդ առցէ զլայնափողոց տրովականցն ոստան.
Քանզի ոչ եւս յերկպառակս իմ են անմահքն ոլիմպաբնակք.
Հերայի աղերս արկեալ ած 'ի հաւան զամենեսեանն,
Եւ եղերըն մօտալուտ ընդոստուցեալ գայ տրովացւոց:
Այսոց նա զայս, եւ Երազըն առեալ զպատգամն էլ եւ գընաց,
Եւ հասեալ փութանակի յերագ քաջախս աքայեցւոց,
Եւ մըտեալ առ Ատրեւդէան Ագամեմնոն՝ եգիտ ըզնա
Զի ննջէր 'ի խորանին՝ քուն անուշակ հեղեալ զնովաւ:
Եւ կացեալ 'ի վերայ՝ Նեղեան որդւոյն համանըման
Նեստորի՝ զոր Ագամեմնոն պէր զհամօրէն մեծարէր ծերս,
Նըմանեալ նըմին Երազըն աստուածեղէն ասէր առ նա.
Ի քո՞ւն կաս, Ատրեւսի ձիավարժին քաջի որդիդ.
Ոչ է պարտ խորհրդական առն ըզգիշերն 'ի գլուխ քունել՝

Որում յանձն են ժողովուրդք եւ այդքան հոգք տառապանաց։
Արդ ինձ միտ դիր փութով. յԱրամազդայ գամ քեզ հրեշտակ՝
Որ ըղքէն 'ի բացուստ անտի խնամ ունի եւ գութ։
Համագունդ ըղվարսադեղ աքայեցիս վառել ճեպով
Եւ քեզ պատուէր, զի արդ առցես ըղլայնուղին քաղաք տրովեանց,
Քանզի ոչ եւս 'ի հերձիս ինչ են անմահքն ո՛լիմպաբնակք.
Ողոքեալ Հերայի զամենեսեան ած 'ի մի կամս,
Եւ չարիք ըսպառնացեալք հասցեն տրովեանց յԱրամազդայ։
Բայց դու լեր այդմ ուշակալ, եւ մի՛ լիցին քեզ մոռացօնք
Ի մեկնել եւ թողանել քաղցր եւ անոյշ քընոյդ 'ի քէն։
Զայս ասաց եւ անց գընաց, թողեալ ըղնա ինքն անդանօր
Ածել զայն ինչ ըղմըտաւ որ չէր 'ի գլուխ ելանելոց։
Զի Պրիամու քաղաքին կարծէր հասու լինել այն օր,
Ցըխմա՛ր, եւ չէր խելամուտ՝ զինչ Արամազդ գործել խորհէր.
Զի ցաւըս տակաւին եւ հեծութիւնս էր ածելոց
Տրովացւոց եւ դանայեանց 'ի քաջազօր ճակատամարտս։
Ի քնոյն զարթեաւ, բայց դեռ ունէր զիւրեւ բարբառն աստուածեղէն,
Ցարուցեալ նըստաւ կանգուն, եւ ըզգեցեալ փափուկ շապիկ՝
Գեղեցիկըս նորակերտս, արկաւ զիւրեւ լօդիկ մի մեծ.
Ի մաքուր ոտիցըն թաթս արկ կապեաց մոյկըս վայելուչս,
Եւ զսուսերըն արծաթազամ ուսընդանուլթ ածեալ կախեաց։
Ա՛ռ 'ի ձեռն ըղղաւազանըն հայրենի պյաւէրժ անեղծ,
Եւ նովաւ պատենազէն աքայեցւոց չոգաւ 'ի նաւս։
Արաւօտըն դիցանոյշ ելեալ յերկայնն եկն Ողիմպոս
Արամազդայ եւ անմահից այլոց լուսոյն աւետաւոր։
Նա պատուէր հրամանի քաջաձայնից եւ քարոզաց
Ածել առնել գիսակապեղ աքայեցւոց 'ի հրապարակ.
Որոց անդէն քարոզեալ, ժողովեցին նոքա հապճեպ։
Բայց առեան նախ խորհրդոյ նըստաւ ծերոցըն մեծանձանց
Առ նաւին նեստորեան՝ պիլոսածնին թագաւորի.
Զորըս նա հոլաբեալ՝ խոհեմադարդ կազմէր խորհուրդ.
Լըւարուք, սիրելիք. աստուածային եկն յիս երազ
Ի քուն քաղցըր գիշերիս, յոյժ Նեստորի քաջին նըման
Երեսօք՝ կերպարանօք եւ հասակաւ համեմատեալ.
Եւ կացեալ 'ի վերայ գլխոյս՝ առ իս բան զայս բարբառեցաւ.
Ննջես, ձիավարժին քաջի որդիդ Ատրէոսի.
Ոչ է պարտ խորհրդականն առն ըղգիշերն 'ի բուն քունել
Որում յանձն է պատերազմս եւ այդքան հոգ տառապանաց։
Արդ դու ինձ միտ դիր փութով. յԱրամազդայ գամ քեզ բանբեր
Որ առ քեզ 'ի հեռաստ անտի խնամ ունի եւ գութ։
Զհերարձակ աքայեցիս եւ քեզ հրաման վառել համօրէն
Ճեպ 'ի ձեռաց, զի այժմ առցես ըղլայնափողոց տառան տրովեանց,

Զի այլ ոչ եւս են անմահքն ո՛չ խմբարանակք անմիաբան ·
Աղաչեալ համոզեաց Հերա 'ի մի գլորեսցին,
Եւ վտանգ առ դուրս հասեալ կայ տրովադացւոց յԱրամազդայ :
Այլ դու կա՛լ զայդ 'ի մըտի : Զայս ասացեալ՝ Թռուցեալ գնաց ,
Եւ քունըն քաղցրանիրհ առ 'ի յԷնէն Թօթափեցաւ :
Բայց տեսէք՝ Թէ վառեսցո՞ւք արդեօք զորդիս աքայեցւոց ·
Այլ 'ի փորձ մատեայց ես նախ՝ որպէս արժան իսկ է բանիւք ,
Եւ հրամանն տաց ելանել փախչել 'ի նաւս յոլովատախտ ·
Իսկ դուք այլ ըք այլուստ յորդոր ձայնիւք լերիք խափան :
Զայս խօսեալ նորա՝ նըստաւ , եւ 'ի նոսա յարեաւ Նեստոր
Աւազինին Պիւլոսի հրամանատարըն իշխեցող ,
Որ 'ի սէր բարեաց նոցին՝ Ճառեալ ասէ յատենի անդ ·
Ո՛վ սիրելիք , զօրագլուխք արգիացւոց եւ խնամակալք ,
Եթէ այլ ուրուք զերազդ յաքայեցւոց լինէր պատմեալ,
Սուտ դատեալ ապաքէն բայց 'ի բաց հրաժարէաք ·
Իսկ որ մեծն յաքայեցիս պանծայ լինել՝ արդ նա ետես :
Ո՛ն եկայք զի վառեսցուք Թերեւս զորդիս աքայեցւոց :
Ասացեալ զայս՝ յատենէ անտի սկըսաւ երԹալ 'ի բաց ·
Եւ նոցա յարին կացեալ՝ հովուին արանց եղեն հըլու
Մականակիր Թագաւորքն · եւ ժողովուրդն ընԹանային :
Զոր օրինակ գունդագունդ մեղուաց դըրոհք ասպատակեն
Ելս գտեալ զեռացեալ 'ի քարածերպ գըլխեալ վիմէ ,
Եւ ըլանեան ողկուզօրէն 'ի գարնայնոյն վերայ ծաղկանց՝
Կիսոց այսր եւ կիսոց անդր խուռնախիտ սաւառնելով ·
Այսպէս ազգք նոցա բազումք 'ի նաւեկներոյն եւ 'ի վրանաց՝
Լայնախոր ծովափանցն 'ի հանդիպոյ տողեալ գնային
Յարմատորմ 'ի հրապարակ , եւ 'ի նոսին եւայր Համբաւ՝
Հրեշտակն Արամազդայ՝ Ճեպ տալ գնացելոցն , եւ խըռնէին :
Կուտակէր հանդիսարանն եւ 'ի ներքոյ հեծէր երկիր
Ի բազմել ամբոխիցն , եւ էր շըշուկ անդ խառնաձայն :
Քարոզք ինըն մեծաղաղ աղաղակելովն յաղաղակէին ,
Լռել եւ ունկըն դընել Թագաւորացըն դիւցազանց :
Հազիւ հող բազմեալ խուժանըն զետեղ առեալ 'ի նըստարանս ,
Հանդարտեալ 'ի շըշընջմանց , յարեաւ արքայն Ագամեմնոն
Ի ձեռին կալեալ ըզգաւազըն՝ մեծաջան գործ Հեփեստեայ ·
Հեփեստոս ետ զըրուանեանն Արամազդայ Թագաւորի ,
Արամազդ պարգեւեաց Արգոսասպան պատուիրակին ,
Եւ արքայն շնորհեաց Հերմէս ձիավարիկըն Պելոպեայ ,
Արդ Պելոպս աւանդեաց Ատրէոսի հովուին արանց ,
Եւ Ատրեւս 'ի մեռանելն 'ի խաշնաւէտն եԹող Թիեստա ,
Եւ Թիեստա եԹող ապա յԱգամեմնոն՝ կրել 'ի ձեռս
Եւ տիրել կըղզեաց կըղզեաց եւ Արգոսի համայնոլոր :

Արդ նորա 'ի նոյն յեցեալ՝ բան զայս ճառեաց արդեանցւոց.
Ո՛վ սիրելիք, քաղցրագունդքդ գանայեան, Արեայ մանկունք,
Զըրուանեանն Արամազդ պաշտարեաց ծանր 'ի զըմբաղ գլխ,
Անդզօրին, որ յաւաղջ խոստումն ետ ինձ եւ ակնարկեաց
ԶԻլիոն ամբապարխալ յաւէր եղեալ՝ երթալ 'ի տուն.
Իսկ զարդիս, նենգ չարաբուեան նիւթեալ զինեւ, տայ ինձ հրաման
Ձեռս 'ի գլուխ գաւճալ յԱրգոս, յետ ծախելոյ բազում ամբոխ:
Այսպէս հաճոյ լեալ արդեօք գերագօրին Արամազդայ
Որ զբազմաքաց յօդունց բարձումն հիմն 'ի յարեւ ընկէց տապալ,
Եւ տակաւին տապալեսցէ, զի բուռն է յոյժ իւր զօրութիւն:
Իսկ կորանք են այս եւ յաւէտ տաղագայից թէ լու լիցի՝
Այսպէս զուր այսչափ եւ այսց աքայեցւոց զումարտակաց
Պատերազմ անկատար պատերազմեալ եւ մաքառեալ
Ընդ արեար տակաւաւոր, եւ չեւ ինչ ցայժմ եղեալ զըրաւ:
Զի թէ կամ լինիցի աքայեցւոցս եւ տրովադեանց
Կըռեալ զաշն հաւատարիմ տանել հանդէս մեղ համարոյ,
Տրոյացւոց զալ ժողովել՝ որչափ իցենն տաս երդաբնակք,
Իսկ մեք 'ի տասնեակըս ջոկեսցեմք աքայեցիքս
Եւ մէն մի այր 'ի տրովեանց 'ի մատռուակ մեզ առնուցումք,
Շատ եւ շատ ինչ տասնեակք մնայցեն կարօտ մատռուակի:
Այսչափ առեմ աւաւել լինել զորդիսդ աքայեցւոց
Քան զտրովեանս որ բնակաւորքն իցեն ըրնիւք 'ի քաղաքիդ.
Բայց յոլով աւանաց նիզակաձօձ արանց թիկունք
Կան հասեալ, որ ընկըրկեալ զիս չըտան թոյլ խրախուսելում
Հարկանել աւերակել ըզբարերբնակդ Իլիոն բերդ:
Անք ինն եակ անցին զնացին առ մեծին Արամազդայ,
Փըտեցան նաւափայտից գերանք, լուծան եւ պարանք.
Ամուսինք մեր, այանդրի տըղայ մանկունք մատաղօրեայք
Անդ 'ի տունս ակընկալեալ նըստին, եւ մեզ գործոյս հանդէս
Յոր եկեալ եկաք այսրէն՝ այսպէս զըլխ ցարդ անվըճար:
Այլ եկայք յոր ինչ ասեմս հաւանեսցուք բոլորեքեան.
Փախիցուք 'ի քաղցր երկիր մեր հայրենի՝ նաւալուղակք,
Զի ոչ եւս այլ յայսմհետէ զՏրոյա կալցուք ըզլայնուղի:
Զայս ասաց եւ ըզսիրտս ամենեցուն անդէն 'ի խառնն
Հան շարժեաց 'ի լանջս ելբեանց ոյց չէր զդաղանին լըւեալ խորհուրդ:
Փոթորկեցաւ հրապարակն իբրեւ զալեաց ծովու կուտակ
Զիկարեանն անդընդոց՝ զորըս Հարաւ եւ Հիւսիսի
Յարոյց՝ հըրոս տատուցեալ յամպըրտապաց հօրն Արամազդայ:
Եւ զօրէն իմըն Զեփիւռ ծածանէ զնար ինչ անդաստան
Թափ անկեալ մըրըրկապէր եւ ըզհասկօքն տապատակեալ,
Հրապարակն ամբողջն հանդոյն տատանեցաւ, եւ զփոյթին
Ի նաւէնեարն արշաւէան, եւ ընդ ոտիւք նոցա փոշի

Փողեալ ելեալ ծառանայր, նոքա միմեանց տային խրախոյս
Բուռն 'ի նաւսն արկանել, յաստուածային ձգել 'ի ծով,
Եւ ըզփոսսըն հորդէին. ձայնոցն յերկինս եհաս գոչումն
Ի տուն 'ի տուն ձգելոյ, եւ ըզնաւացն առնուին մոյթս:
Անդ անհրաման 'ի բախտէն աքայեցւոց հասանէր դարձ,
Եթէ չէր Հերայի առ Աթենաս բան զայս խօսեալ.
Աւաղ, վահանակրոջն Արամազդայ դուստր անվըկանդ,
Ի տուն այսպէս ուրեմն՝ 'ի հայրենի բընիկ երկիր
Փախնուցուն արգիւսցիք ընդ անդընդոց լայն մըկանունս,
Եւ պարծանքս Թողուցուն Պրիամոսի եւ տրովադեանց
Զհեղինէն արգիւհի, յոյր սակս յոլովք յաքայեցւոց
Ի Տրովա կորեան, 'ի բուռն եւ յանձկալի երկրէն նըշդեհք:
Այլ արի արդ 'ի բանակս աքայեցւոց զինազգեստից,
Ողոքէ քո յոյժ բանիւք՝ զայր այր արգել զիւրաքանչիւր,
Եւ թոյլ մի՛ տացես 'ի ծով զձօձձեմական վարել նաւկնեար:
Զայս ասաց եւ Աթենաս լըսաւ խաժակն աստուածուհին.
Վազս առեալ Թափառնակի էջ յՈլիմպեայ 'ի գագաթանց,
Եւ հասեալ փութապէս յաքայեցւոցն երագ քաշտս՝
ԶՈդիսեւս ըզհանճարեղն եգիտ նըման Արամազդայ,
Զի կայր ձեռն ինչ չարկեալ 'ի նաւըն սեաւ գեղեցկասախտ,
Զի անկեալ 'ի սիրտ նորա եւ 'ի յոգին էր ցաւըն սուգ:
Իսկ խաժակն Աթենաս մատուցեալ մերձ ասէ առ նա.
Մազգեղնորդ Լայերտեան, բազմահընար քաջդ Ոդիսեւս,
Իսկ արդ այսպէս 'ի տուն, 'ի բնադաւառդ անձկակարօտ
Փախչիցիք ուրեմն՝ 'ի նաւսդ անկանելով 'ի յոգնատախտս,
Եւ պարծանքս Թողուցուք Պրիամոսի եւ տրովադեանց
Զարգիւհին Հեղինէ՝ որ վասն յոլովք յաքայեցւոց
Ի Տրովա կորեան՝ 'ի քաղցր հայրենական երկրէն հեռի:
Այլ դու մի՛ դըլար դադարեր, արի յամբոխն եւ աքայեանց
Եւ խօսիւքդ ողոքանօք զիւրաքանչիւր այր խափանեա,
Եւ տացես մի՛ թոյլ 'ի ծով զձօձձեմականսն արկանել նաւս:
Զայս ասաց, եւ նա ծանեաւ զաստուածուհւոյն ձայնի բարբառ.
Ընթանալ դէմ եդ, ընկեց յանձնէ զկըրկնոցն, առ եբարձ զայն
Քարոզն Եւրիբատէս Իթակեցին որ զհետն երթայր:
Ատրիդէսն Ագամեմնոնի անցեալ գնացեալ ինքն ընդ առաջ՝
Ա՛ռ ըզգաւազն 'ի նմանէ զհայրենաւանդ զյաւէրժ անեղծ,
Եւ չոգաւ նովիմբ 'ի նաւըս պղընձավառ աքայեցւոց:
Զո՛ր եւ որ թագաւոր կամ պատուաւոր գըտանէր այր,
Ըզնոսա մատուցեալ ամոք բանիւք յետ նահանջէր.
Դիւցազինդ, ոչ վայելէ քեզ իբր ըզվատ ոք վեհերել.
Այլ ինքնին դու նիստ քեզէն եւ բազմեցո զմիւս ժողովուրդն.
Զի հըմուտ չես հաւաստեաւ՝ Ատրիդեսի զինչ միտք իցեն.

Փորձէ արդ, ո՜ գիտէ հարցէ զորդիս աքայեցւոց։
Ոչ լըւաք ամենեքեն զոր ինչ ասացն 'ի խորհրդեան,
Գուցէ չարիս՝ սըրտմըտեալ՝ աքայեցւոց որդւոցս ածցէ.
Քանզի մեծ է բարկութիւն դիւցասընունդ թագակալի.
ՅԱրամազդայ է պատիւն, եւ սիրէ զնա զգօնն Արամազդ։
Իսկ զոր յռամիկ արանց տեսեալ յաղաղակելն անդ ըմբըռնէր,
Հարկանէր գաւազանաւն եւ կըշտամբէր 'ի սաստ բանից.
Ա՜յ չըւառ, նիստ անխըլիրտ, այլոց ձայնի լեր ունկընդիր՝
Որ 'ի վեր են քան ըզքեզ, դու վատասիրտ եւ տաղտկար,
Ոչ մարտից ինչ ուրեք, ոչ խորհրդոց 'ի համարի։
Ոչ բոլոր աքայեցիքս արքայասցուք աստ ապաքէն.
Չէ բարւոք յոգունցն իշխել, մի ոք եւեթ իշխան լիցի,
Մի թագաւոր, ում շնորհեաց կորովամտին Զըրուանայ ձեռ
Իրաւունս եւ գաւազան՝ թագաւորել տիրել նոցա։
Այսպէս սա ճոխճեմելով ըզզօրականըն տնօրինէր,
Որ դարձեալ 'ի հրապարակ անդր 'ի նաւուց եւ 'ի վրանաց՝
Դիմէին 'ի ձայն հընչման, որպէս յորժամ գոչող ծովուն
Մռընչեն ալիք 'ի մեծ ափունս եւ գոռան խորք անդընդոց։
Արդ բազմեալ կային այլք 'ի նըստարանսն եւ ընկալձեալք։
Թերսիտէս դեռ միայնակ շաղակաշուրթըն կարկաչէր,
Որ հըմուտն էր 'ի սըրտին շաղփաղփ խօսից եւ խառնաղանձ՝
Ատաւիր եւ անհեթեթ ճամարտակել ընդ թագաւորսն
Որ զինչ եւ ծաղրածուն թըւէր նըմա յարգիւացիս։
Ոչ քան զայս ոք լեպեշտի 'նդ Իլիոնիւ եկեալ էր այր,
Խեղ աչօք եւ միով ոտամբըն կաղ եւ սապատողն,
Ուսքն 'ի լանջսըն կորովեալք, իսկ 'ի վերուստ կուռէ սրագլուխ,
Եւ 'ի լեշկըն կառափին ցըցուէր անօսր աղուամազ սուղ։
Ատելի էր մանաւանդ Աքիլլեսի եւ Ոդիսեայ,
Զորըս ցանդ թըշնամանէր. այլ արդ դիւցազն Ագամեմնոնի
Սուր ճըչիւ ձըգէր լուտանս, իսկ ընդ նըմին աքայեցիքն
Անհնարին տրտմեալ ըզչարէին 'ի սիրտս իւրեանց.
Սակայն նա բարձրաբարբառ զԱգամեմնոն ամնէր գըլորով.
Ատրիդէս, արդ զի՞ տըրտունջ կամ եւ իւիք իցես կարօտ,
Պըղընձով լի են վըրանքդ, եւ 'ի խորանդ ընտիր ընտիր
Կանայք կան բազումք, զորըս յառաջ քան զամենայն
Քեզ շնորհեմք աքայեցիքս՝ յորժամ զաւար ինչ առնուցումք։
Միթէ ոսկւո՞յ եւս կարօտիս՝ զի ոք բերեալ մատուցէ
Ի տրովեանց քաջաձիոց յԻլիոնէ, որդւոյն փըրկանս՝
Զոր ածիցեմ ես կալ եւ կապ, եւ կամ թէ այլ ոք յաքայեցւոց.
Կամ թէ զկին ոք աղջկամարդ՝ զի տըռփութեամբ յօնուցուս զայն,
Եւ 'ի քեզ առցես ուրոյն. այն իշխանի չէ ինչ պատշաճ
Ի չարիս վարել հանել մըղել զորդիս աքայեցւոց։

Է՛ լորդք բըծկանք չարակնեղք, աքայուհիք՝ ոչ աքայիկք,
Ո՛ն 'ի տուն դարձցուք նաւուքս, եւ զդա լըքեալ թողցուք այսրէն
Ըմբոշխնել հալէլ զպարգեւսն աստ 'ի Տրոյա, զի գիտասցէ
Թէ իցեմք ինչ արդեօք օգուտ նորին մեք, եթէ ոչ:
Որ եւ այժմ զԱքիլլէս՝ ազնուագոյն յոյժ քան զինքն այր,
Անարգեաց, քանզի զպատիւն անձամբ կորզեալ յինքըն եհան:
Բայց 'ի սիրտ Աքիլլեայ բընաւ չէք մաղձ, այլ կայ յորսայս.
Թէ ոչ, Ատրիդ, օն եւ օն՝ յետին նըւագ զայս խըռէիր:
Զայս ասաց նախատելով զԱգամեմնոն զհովիւն ազանց
Թերսիտէս՝ առ որ խաղոյն հուպ Ոդիսեւսն հասեալ դիւցազն
Եւ խեթիւ հայեցեալ 'ի նա սաստեաց ծանըր բանիւ.
Թերսիտէս լեզուագար, թէ եւ ճըռուող ճառամաբան,
Կարկեա՛ջիր, մի՛ դու միայն ընդ թագաւորս խեռել ժըտիր:
Ոչ կարծեմ քան ըզքեզ վատթարագոյն զայլ ոք լինել
Ցընդհանուրս որ եկին ընդ Ատրիդեանս այսր յԻլիոն:
Մի արդ յածեալ 'ի բերան ըզթագաւորսըն՝ ճառասցեր,
Մի եպեր չըփեր զնոքօք, եւ մի՛ դարձի ակն ունիցիս.
Զի չգիտեմք ըստուգիւ զիարդ այս գործք վըճարեսցին,
Թէ բարեա՛ւ՝ եթէ չարաւ դարձցուք որդիքս աքայեցւոց:
Արդ այժմիկ Ատրիդեանն Ագամեմնոնի՝ հովուէն ազգաց՝
Զուր նըստիս պարսաւադէտ, թէ նմա պարգեւս առատ շնորհեն
Դիւցազունքըն դանայեանք, եւ թըրթրակես բան ըզկըծիչ:
Սակայն յայտ ասեմ քեզ, որ եւ եղթեալ հասցէ յամենայն.
Եթէ այլ եւս ինչ ըզքեզ գըտից շամբշեալ՝ իբր աստ արդէն,
Մի եւս այլ այնուհետեւ յուսս իւր կացցէ գլուխ Ոդիսեայ,
Եւ ոչ յայնմ ինչ հետէ Տելեմաքեայ կոչեցից հայր,
Եթէ ոչ կալեալ ըզքեզ եւ 'ի ձորձոց այտի լերկեալ՝
Ի մեկնոցէդ ըզշապիկդ եւ որ ծածկենըն զամօթոյդ,
Այնպէս ըզքեզ վարեցից յերագաթեւ նաւս յաւէնէս
Գանալից կոծանաւոր չարակոշկոճ խայտառակեալ:
Զայս ասացեալ՝ ըզթիկունսն եւ զուսս եհար գաւազանաւն,
Ինք կարկամեալ կըծկեցաւ, յաչացն անկան յորդ արտասուք:
Երաշխեալ արիւնաներկ կապուտակեալ եղ 'ի միջնոցն
Ընդ ցըպոյն ոսկեղինաւ. 'ի նիստ եղեւ նա պակուցեալ,
Եւ կըսկըծեալ՝ այլանդակ հայեցուածով ջընջէր զարտօսր.
Իսկ նոքա, թէպէտ ծըմըրեալք, ծաղր խնդին քաղցր հեշտին զնովաւ,
Եւ այր յընկեր նայելով այսպէս ինչ մին ասէր ցըմիւս.
Բազմերամ գիք, արդարեւ բիւրս Ոդիսեւս գործեաց բարիս,
Քաջութեան առեալ խորհուրդս եւ զպատերազմ յարդարելով.
Իսկ արդ զայս ինչ լաւագոյն յարգեացւոց կատարեաց գունդ,
Զի զըրբախօս հայհոյիչդ 'ի կաճառացս արգել կարճեաց:
Ոչ եւս ըզնա միւսանգամ ժըմերտ ոգին ընդոստուսցէ

Բամբասել ըզթագաւորս երգիծանօղ լեզուանութեամբ ։
Զայս ամբոխն ասացին, իսկ Ոդիսեւս քաղաքաւերն
Յոտն եկաց մականն 'ի ձեռս, եւ Աթենաս մերձակայն առ իւր
Ի նմանութիւն քարոզի սաստեաց լռել ժողովրդեան ,
Զի առաջինք եւ վերջինք աքայեցւոց մանկունք համօր
Ըզպատգամսըն լուիցեն եւ ըզխորհուրդն առցեն 'ի միտ ։
Եւ նա նոցին 'ի բարիս ատենախօս եղեալ ասէ .
Ատրիդէս արքայ , զարդիս կամին ըզքեզ աքայեցիք
Բազմաբարբառ մահկանացուաց առնել առակ նշաւակի .
Ոչ տանին զխոստումն 'ի գործ , զոր յանձն առեալ ուխտեցին քեզ
Ի սկըզբան արշաւանիս 'ի ձիաբոյծն Արգոսացւոց ,
Մինչ զԻլիոն չեւ քանդեալ զամրապարիսպ՝ չառնել քեզ դարձ ։
Զի զօրէն մատաղերամ մանրիկ մանկտոյ այրի կանանց
Ողբս առեալ ընդ միմեանս կողկողին դառնալ 'ի տուն ։
Տառապելոյն իրաւունս համէ 'ի դարձ վիշտ վըտանգին .
Զի ամսով չափ եւեթ 'ի տար անկեալ ոք յամուսնոյն՝
Ի յողնալուծ ծընգի նաւին , զոր փոթորիկք ձըմեռնատանջք
Եւ խռովոտ մըրըրկայոյզ ծով պաշարեալ պըտտեցուցեն ։
Իսկ արդ մեզ , այս իններորդ է աւասիկ բոլորեալ ամ
Զի աստէն կամք զեղեալ . արդ ոչ սըրտմտիմ աքայեցւոց
Տըխրատել առ մահկաձեւ նաւուք , սակայն ոչ ինչ ընդհատ
Ծանականք են յամենալ , եւ դարձ առնել ունայնաձեռն ։
Համբերեցէք , սիրելիք , ժամանակին ակըն կալայք ,
Զի ուսցուք՝ եթէ Կալքաս բանիւք թէ ոչ գուշակիցէ ։
Քաջ իսկ զայս ունիմք 'ի միտ , եւ էք վըկայք ամենեքին
Զորս երէկ եւ յեռանդ օրհաս մահուն չառ եւ գընաց .
Մինչ յԱւլիս աքայեցւոցըս գումարէր նաւահանգիս
Եղեռըն Պրիամու եւ տրովացւոց հասուցանել ,
Եւ մեք շուրջ զաղբերակամբ եւ 'ի բագինսըն նուիրականս
Անմահիցըն զոհէաք զընտիր ընտիր սպանդըս զենմունս
Ընդ վարսաւորըն սօսեաւ ուստի բըղխէր աղբիւրն յըստակ ,
Անդ նըշան մեծ երեւեալ վիշապ մի օձ թիկնակարմիր ,
Սոսկալի , զոր ինքըն նոյն իսկ Ոլիմպեանն եհան 'ի լոյս ,
Ի ներքուստ բագնին ընդոստ ել եւ դիմեաց սողուն 'ի սօսն ։
Անդ էին ձըռնձըղկի փափկիկ ձագուկք՝ մանկտի մանրիկ՝
Ի ծայրի անդ դիտակացն ընդ սաղարթիւքըն ծալարեալք ,
Ութ մ'՚ի թիւ՝ ընդ որում մայրն էր իններորդ՝ ծընողն որդւոց ։
Անդ նա ինքն եկեր զնոսին՝ մինչ ձըձուէինն ողորմ ողորմ .
Մայրըն ձիչ բարձեալ թըրթռէր ըղձանկըռեալքըն սիրատուն .
Եւ զնովաւ դալար տըւեալ կալաւ զթեւոյն 'ի գուժելն անդ ։
Իսկ զորդեակն իբրեւ կերաւ ըզձըռնձըղկն եւ զնա ինքնին ,
Եւ ըզնա նըշանակերտ կացոյց աստուածն որ զայն եցոյց .

Քանզի զնա վիմատառեալ կործանեաց Զբրուանեայն ձեռ ,
Եւ կայցէ մեզ ընդ խոցըն պատուհասին ըմբռնչացեալք :
Այսպէս անդ գրժնէ նշխարք դեռ 'ի վերայ հատոյն զոհեցս ,
Եւ Կալքաս եա ընդ եա սաէր անդէն հրմայելով . —
Զի՞ անշըշունչ համրացայք , պայծէցիքըդ վարսագըլուխք .
Զայս Արամազդ խորհրդական երեւեցոյց մեզ նշան մեծ ,
Անագան , յամրահաս , որ ոչ երբէք կորիցեն փառք :
Որպէս սա զձրնձրղկէն եկեր մանկունս եւ ըզնա ինքն ,
Ութ մ' 'ի թիւ` ընդ որում մայրն էր իններորդ` ծընողն որդւոց ,
Նոյն եւ մեզ ամըս նոյնչափ պատերազմեալ մարտիցուք անդ ,
Իսկ ապա 'ի տասներն առցուք զքաղաքն արձականերս : —
Նորա զայս ինչ ճառեալ` արդ ամենայն 'ի լրումըն գայ:
Բայց աղէ զանեղի կալջիք , պայծէցիքըդ քաջասրունք ,
Աստ համօրէն` մինչեւ ըզմեծն առցուք ոստան ըզՊրիամու :

Զայս ասաց , մեծ գոչեցին արգիւացիք , — եւ նաւքըն շուրջ
Հընչեցին ընդդէմ ահեղ յաքայեցւոց աղաղակէն , —
Ի գովեստ առեալ ըզբանն աստուածայնոյն Ոդիսեւսի :
Առ որս ապա Գերենեանըն խօսեցաւ Նեստոր ասպետ .

Աստուածոցըն երդուեալ, հանդոյն շաղակրատէք խօլ մանկըտւոյ
Որոց չէ ինչ փոյթ բընաւ իրաց մարտի պատերազմաց :
Իսկ յո՞ դաշինքըս մեր առցուք եւ ըզդաշանց մերոց երդմնիս .
Արդ 'ի հո՞ւր երթիցեն խորհուրդք մարդկան եւ տեսչութիւնք ,
Անապակն հեղեալ նուէրք , եւ աջք յորսոց վստահացեալք .
Քանզի զուր բանակռիւ լինիմք եւ ոչ ինչ ժամանեմք
Մարթել խելս ինչ հընարից` հարուստ մի լեալ աստ ժամանակ :
Ատրիդէս, դու իբր յառաջին անդրդուելով կալեալ խորհուրդ`
Ի զօրաւոր դուպարածս արգիւացւոց լեր առաջնորդ ,
Եւ թողջիր հաշել մաշել որք առանձինն յաքայեցւոց
Մի կամ երկուք առնեն խորհուրդ , — եւ ոչ յարգիւնս ինչ եկեսցեն , —
Զի դարձցին յԱրգոս մինչ չեւ զապարակքըն Արամազդայ
Ծանուցեալ զաւետիսն` եթէ իցէ սուտ եւ թէ ոչ :
Արդ ասեմ թէ ակնարկեաց ամենազօրըն Զբրուանեան
Ցաւուրն` յորում ելին արգիւացիք 'ի սրընթաց նաւս
Նախճիրս եւ օրահաս ածել բերել տրովագացւոց .
Զի յաջմէ փայլատակեալ երեւեցոյց նշան յաջող :
Վասն որոյ , մի եւ մի ճեպեսցի ոք դառնալ 'ի տուն`
Չեւ ուրուք ընդ ումեք 'ի տրոյացւոց կանանց քնեալ ,
Եւ վրէժ խընդրեալ զՀեղինեայ զառեւանգին եւ զհեծութեանց :
Իսկ թէ ոք անհընարին է խանդակաթ դառնալ 'ի տուն ,
Թող բուռն հարցէ զգեղեցկատախտ եւ զթոյրաթուխ նաւէն իւրմէ ,
Զի քան զայլս յառաջագոյն հասցէ մահուն եւ օրհասի :
Բայց , արքայ , եւ դու քեզէն խորհեսջիր քաջ , այլում անսա .

Մի խոտան ինչ եղիցի քեզ որ ինչ ես ասացից բան։
Ընտրեսջիր, Ագամեմնոն, զարս ըստ ցեղից եւ ըստ տոհմից,
Զի տոհմի՝ տոհմ 'ի Թիկունս հասանիցէ, եւ ցեղի՝ ցեղ։
Որ թէ այսպէս առնիցես եւ անսայցեն քեզ աքայեանք,
Ծանիցես՝ ով վատն իցէ 'ի գունդապետս եւ ո յազգաց,
Եւ ով քաջն իցէ արդեօք. զի խուռնաբար մրցիցեն.
Եւ թէ զքաղաքն յաստուածուստ ինչ չունիցիս վանել վանդել,
Թէ յարանցդ անարիութեանց եւ 'ի մարտի խամութենէն։
Եւ նորա պատասխանի Ագամեմնոն իշխան, ասէ.
Օ՜ն եւ ծն, ծեր, յաղթես դու զորդիս աքայեցւոց։
Օ՜չ թէ, հայր Արամազդ եւ Աթենաս եւ Ապողոն,
Տա՜ն ինձ էին այսպիսիք աքայեցւոց խորհրդակիցք.
Յայնժամ մերձ ընդ մերձ քաղաքըդ Պրիամու Թագաւորին
Կործանէր 'ի ձեռաց մերոց առեալ եւ աւերեալ։
Բայց Զրուանեանն Արամազդ ասպարազէն՝ խառնեաց յիս ցաւս
Որ յումպէտ զիս 'ի կագ եւ 'ի կռիւս խառնաւանէ։
Ահա ես եւ Աքիլլէս 'ի գռռութեան բանս ոգորեալ
Գժտեցաք զօրիորդէն, եւ դառնութեանն ես եղէ սկիզբն.
Իսկ թէ զամ մի համամիտ գլցուք, այլ ոչ եւս յայնմհետէ
Յապաղումն ինչ կործանմանն անկցի տրովեանց եւ ոչ խուն մի։
Այլ արդ ծն երթայք 'ի ճաշ, զի խմբեսցուք ընդպատերազմ.
Այր ընդ իւր սուր սրեսցէ, յօրինեսցէ կազմ եւ զասպարն,
Առատապէս արկցէ բուստ օդապարիկ երիվարաց,
Եւ մանր ընդկառքն զննեալ 'ի գուպարած ապաւսցէ ուշ,
Զի ահեղ պատերազմաւ զօրըն ցերեկ տացուք ճակատ։
Զի ոչ դուլ ինչ եւ դադար անկցի կռուոյ եւ ոչ դոյզն ինչ,
Եթէ ոչ եկեալ գիշեր որոշեսցէ զարանց կորովս։
Ըզլանջօք առն անձնապահ վահանին փոկ ընդ քրտան հարցի,
Եւ ձեռն իւր զնիզակաւն աշխատ լիցի վաստակաբեկ,
Քրտնեսցի եւ երիվար ձգել ընդկառն ողորկաշէն։
Իսկ զոր ես ոք 'ի մի կողմ 'ի ճակատէն տեսանիցեմ
Ի մնալ մէտ եւ յօժար առ զալարուն կարկուրէիւք,
Ոչ զերծցի իւր բաւական փրկել 'ի շանց եւ 'ի հաւուց։
Զայս ասաց, եւ 'ի ձայն արգեացիք գոչեցին մեծ
Իբր ալիք 'ի բարձր ափունս, յորժամ զիմել շարժէ հարաւ
Ի քարաժայռ գահաւանդ, զոր ոչ երբեք Թողուն կոհակք
Ի խուժել ալէպէս հողմոց յարձակելոց աստի անտի։
Յարուցեալ ընթանային զբաղեալ սփռեալք 'ի նաւս իւրեանց.
Հրատ արկեալ՝ ծուխ ըստ վրանս հանեին վրանս եւ ճաշեցան։
Այլ այլում 'ի գից զոհէր յաւէժաբար մշտագոյից,
Հայցէր ապրել 'ի մահուանէ եւ 'ի խաղմէ մարտակռուին։
Իսկ արանց արքայն մատոյց Ագամեմնոն եզըն մի ամանդ.

Գարարակ հինդեմեան առ Զրուանեան ամենազօր ,
Եւ ըղձերաքն հրաւիրեալ՝ ըղպեստ հանուր աքայեցւոց .
Նախ քան զայլս ըղՆեստոր եւ զԹագաւորն Իդոմենեւս ,
Եւ ապա 'առ նոցանէ զերկրին Էյասս , զորդին Տիդեայ ,
Եւ վեցերորդ զՈդիսեւս զԱրամազդայն զուգահանճար :
Ինքնակամ եհաս առ նա Մենելաւոս աձեղադոռ ,
Զի գիտէր յանձին իւրում՝ յինչ գործ եղբայր իւր պարապէր :
Զոր զեղամբքն բոլորեալ առին բարձին ըղմուրին 'ի ձեռս ,
Յորս յաղօթս Ագամեմնոն կացեալ արքայ՝ բարբառեցաւ .
Մեծափառ վեհդ Արամազդ՝ ամպրոպաթուխ՝ արփիաբնակ ,
Մի մըտցէ արեգակն եւ մի հասցէ նըսեմ խաւար ,
Մինչեւ ես ըղՊրիամեան հարթայատակ այրեսցաւէր
Փըլուզից ըղասուն , եւ ըղդրունսն յախերիմ զատեցայց հուր ,
Եւ զՀեկտորեան լանջապանակն 'ի կուրծըս իւր խորտակեցից
Պատառեալ 'ի սայր պղնձի , եւ յոգնախուռնք զեւրեւ համհարզք
Բերանսեալ 'ի փոշւոյ՝ ատամանցն ատցեն զերկիր :
Ասաց զայս , սակայն նըմա զայն Զրուանեան ոչ կատարեաց ,
Ըղպատարագսն ընկալաւ , բայց եւս յաւել Թըշուառաքերան :
Իսկ ապա յետ աղօթիցն եւ ցանելոյ զաղբրութեան մուրկ
Զըղպատնոցին ուլն յոլն ածեալ եւ փողոտեալ մորթեցին նախ ,
Եւ զազդերցն յօշեալ ըղթամբ՝ Ճարպածիւ համակ պատեցին շուրջ ,
Եւ երկպատիկեալ՝ արկին զնոքօք պատառ պատառ կտորս հումհում :
Եւ զնոսա խարուկէին անտապարթուն փայտից չեռուիք ,
Եւ զընդերսն շամփրեալ՝ ըղկայծակամբք ունէին հրոյն :
Իսկ ազդերըն երեւ կիզան եւ զփորոտին Ճաշակեցին ,
Զայլըն մանըր կտորեալ , հարեալ 'ի սայրս անցըր շամփրոց՝
Խորովեցին հըմտաբար եւ զամենայն առին 'ի բաց :
Ի գործոյն դադարեալ եւ յօրինեալ ապա զխընջոյս ,
Ճաշեցան մինչ զուգաչափ խորտկաց այլ ոչ կարօտէր սիրտ :
Զըմպելեաց եւ զկերակրոց երբեւ զքաղցին հարին փափաք ,
Ասել սկըսաւ առ նոսա Նեստոր ասպետըն Գերենեան .
Աթրիդէս վեհափառ , արանց արքայդ Ագամեմնոն ,
Մի եւս այլ ձիգ ըղբանիւք անհանգիցիմք , եւ մի 'նդ երկար
Ըղգործս յապաղեսցուք զոր ետուն աստուած 'ի ձեռըս մայ :
Ո՜ն աւետեալ քարոզից բարձեալ ըղձայն գումարեսցեն
Ար նաւէնեարն ըղժողովուրդ պատենաւորն աքայեցւոց .
Իսկ մեք՝ միահաղոյն այսպէս ընդ մեծ զօրն աքայեանց
Դիմեսցուք վաղվաղակի յարուցանել ըղբուռն Արէս :
Զայս ասաց . արքայն արանց Ագամեմնոն չարար ապախտ ,
Իսկ եւ իսկ եա հրաման քաղցրաձայնիցըն քարոզաց
Ձայնել 'ի մարտ պատերազմի զգանգուրագեղ աքայեցիս .
Կարդացին սոքա քարոզ , նոքա ձեպով խռնմք առին հաւ :

Որ զԱտրպատականն կալեն՝ ընթանային մարդակերն արքայք
Կարգս ընտրել, եւ խաժամուժն Աթենաս 'ի մէջ նոցա
Մեծագին աստղարն 'ի ձեռս՝ անծերականն՝ անմահացուն ,
Ցոր կախեին ծոցք հարեւր 'ի վերջաւորս՝ համակ ոսկիք ,
Մէն քաղցրըր փողփողեալ, մին մ' 'ի հարեւր արջառոյ գին ,
Իւ ոստոսցեալ աստառակէր ընդ բազմամբոխն աքայեցւոց՝
Ցորդորել վարել յառաջ. եւ արկ հանուրց 'ի սիրտ կորով
Կալ անդուլ անդադար մրցել ճակատս եւ գուպարել։
Եւ անդէն պատերազմն քաղցրացաւ նոցա քան զդարձ
Ի նաւակսն գոգաձեւս 'ի հայրենի սիրուն գաւառ ։
Զոր օրինակ հուր ծախիչ 'ի բարձրածայր լերին կատար
Հրրդեհէ զանտառ մայրի եւ փայլակեն նշոյլքն 'ի բաց ,
Նոյն եւ սոցա 'ի խաղալն՝ յանհեղահրաշ 'ի պղնձոյն
Ճառագայթ բոցաճաճանչ արփաթեւեալ զեթայր յերկին ։
Եւ զօրէն խմբին հաւուց թռչնոց գբրոհք՝ հոյլ խուռներամ,
Սագաց կամ թէ կռնկանց՝ երկայնավզից կամ կարապաց ,
Ի մարգին ասիական ընդ կայիստրեան շուրջ հոսանացն
Այսր եւ անդր սաւառնեալք թեւապարեալ խայտան շողան
Ցնչանելն հարօրանալ կարկաչաձայն , եւ մարգն հնչէ ։
Սոյնպէս սոցին բազմամբոխք 'ի նաւեններոյն եւ 'ի վրանաց
Ի դաշտ անդր յորդորեալ ծաւալէին 'ի Սկամանդրեան ,
Եւ ահագին թնդէր գետին 'ոտիւք նոցուն ու երիվարացն ։
Եւ կային 'ի Սկամանդրեան մարգագետինն 'ի ծաղկաւէտ
Բիւրք բիւրուց , որչափ փըթթին տերեւք՝ ծաղկունք գարնանաբուսիկք ։
Եւ հանգոյն թանձրախիտ ճանճենոյ ճեռ բազմաժողով
Որ 'ի գարնան հովուական շուրջանակի շրջին թափառ
Ընդ ժամանակ գարնայնոյ , մինչ կաթն ըղձոյլսն ոռոգանէ ։
Նոյնքանիք ընդդէմ տրովեանց աքայեցիք գիսակապեալք
Ի դաշտի անդ կային խանձեալք յարիւն՝ լըղել զնոսա ։
Եւ զոր օրէն բազմարօյլ այծից հօրանս արք խաշնարածք
Դիւրաբար ընտրեալ մեկնեն՝ թէ խառնեսցին յարօտս ուրեք ,
Նոյն եւ զսոսին պետք 'ի ռազմ յօրինէին յայս կոյս եւ յայն՝
Ի գուպար շահատակել. ընդ որս արքայն Ագամեմնոն՝
Աչք եւ գլուխ իւր հանդէտ փայլակնաձգուարձն Արամազդայ ,
Եւ Արեայ՝ միջոյն կամար , կուրծք քաջալանջ՝ Պոսիդոնի ։
Օրինակ խմբին զուարակ քան զամենայն է պերճ յանդեայս ,
Զի յերընջուցն 'ի նախրացն երամակին շըքեղ նազի ,
Զայդ նըմին զԱտրիդէս յաւուրն յայնմիկ եդ Արամազդ
Պանծալի եւ գերափառ 'ի բազմագունդ դիւցազանց պար ։
Ոգեցէք ինձ արդ , Մուսայք՝ ոլիմպեան տանցըն բնակաւորք , —
Քանզի դուք աստուածուհիք էք մերձակայք՝ բնաւից հրմուտք ,
Մեք շըշունջ եւեթ լըսեմք , եւ ոչ ինչ ոչ գիտեմք համբուն , —

Ո՛յք ոմանք զօրագլուխք Դանայեցւոցն էին եւ պետք։
Իսկ ամբոխին չառնիցեմ եւ ոչ անուամբ չափ յիշատակ,
Ոչ եթէ տասըն թէ լեզուք եւ բերանք տասն յիս լինիցին,
Եւ բարբառ անհատական, եւ պղընձի գուցէ յիս սիրտ․
Բայց թէ Մուսայք ողիմպուհիք վահանաւորոյ Դիայ դըստերք
Ցուցարարք լիցին հանուրց զԻլիոնիւ գումարելոց։
Արդ զիշխանսըն նաւապետս եւ զհամօրէն ասացից նաւս։
Բէովտացւոց Պենելէւս եւ Լէիտոս էին իշխանք,
Ընդ նոսին Արկեսիլաւ, Պրոթոյենովր եւ Կլոնիոս․
Եւ որ բնակէին 'ի Հիրիէ եւ որ յԱւլիան էին քարուտ,
Ի Սքինոս եւ 'ի Սկոլոս եւ յԵտէոնն 'ի բլրաղարդ,
Ի Թեսպիա, 'ի Գրէա եւ յընդարձակ Միկալեսոս,
Որ նըստէին զՀարմայիւ եւ զԻլեսեաւ եւ զԵրիթրիւք,
Որ զԵլէոնն ունէին եւ ըզՀիլէ եւ զՊետէոն,
ԶՕկալէ եւ զՄեդէոնն ըզգաստակերտըն բարեշէն,
ԸզԿոպայս եւ զԵւտրեսիս եւ ըզԹիսբէ աղաւնաւէտ,
Որ գարձեալ զԿորոնիա եւ զխոտաւէտն Հալիարտոս,
Որք ունէին զՊլատէայն, որ 'ի Գլիսաս էին բնակեալք,
Որ զՆերքնաթեբս ունէին զգեղեցկաշէն գիւղաքաղաքն,
Եւ զՕնքեստոս նուիրական՝ զպոսիդոնեան շքեղն անտառ,
Որ զԱռնէ զողկուզալիցըն բնակէին, որ զՄիդիա,
Եւ զՆիսա գիւցական եւ զԱնթեդոնն ըզհուսկ վերջին․
Սոցա նաւք զնոյին յիսուն, 'ի մէն միում յիւրաքանչիւր
Պարմանիք բէովտացւոց հարիւր քըսան ելեալ մարտիկք։
Որ յԱսպղեդոնն բնակէին ու'ի մինիեանն Որքոմենոս,
Ասկալափոս իշխէր նոցա եւ Յալմենոս՝ ծնեալ Արէսի,
Զորս Արեայ քաջին ծընաւ Աստիոքէ կոյս ամօթղած
ՅԱզեդեանն Ակտորի տանն ելեալ մեկնեալ 'ի վերնայարկ․
Զի նա ինքն ընդ նըմին անկեալ քունեաց գաղտագողի․
Եւ սոցա նաւք երեսուն գոգեալք՝ կարգեալ ընթանային։
Փովկէացւոց Սքեդիոս եւ Եպիստրոփ կային իշխանք՝
Ուստերք մեծանձինն Իփիտոսի Նաւբոլիդեան․
Որ զԿիպարիսն ունէին եւ ըզՊիթոնն քարակոշկոռ,
ԸզԿրիսայն աստուածեղէն եւ ըզԴաւլիս եւ զՊանոպեւս,
Եւ որ շուրջըն բնակէին զԱնեմոռեաւ, զՀիամպոլիւ,
Եւ որ մերձ առ գիւցայինըն նըստէին Կեփիսոս գետ,
Որք ունէին զԼիլէայն՝ ըզԿեփիսեայ զաղբերակամբք․
Եւ սոցա քառասուն զնոյին ըզհետ նաւք սեւաներկք։
Եւ սոքին զփովկէացւոց կազմէին ռազմ անցեալք 'ի կարգ
Բէովտացւոց առընթեր յահեակ թեւին 'ի զէն վառեալք։
Լոկրացւոց՝ Ոյիլեանն առաջնորդէր երագն Էաս,
Կոտակն, եւ ոչ որչափ Էասն էր մեծ Տելամոնեան,

Այլ յոյժ նիազ, վասըն զի փոքր էր հասակաւ, կըտաւազըրահ,
Քաջատէգ քան զհամօրէն հէլլէն որեար եւ զաքայեկ.
Որ զԿինոսն ունէին, զԿալլիարոս եւ զՕպոյս
Եւ զՊեսա եւ Սկարփէ եւ զգանկալեալն զԱւգիէս,
ԸզՏարփէ եւ զԹրոնիոն՝ ըզԲոյագրեայ շուրջ յորձանօքն.
Եւ սոմա սեւաթոյր զնայքն ըղհետ նորա քառասուն
Լոկրացւոցըն բնակելոց յանդիոյս Եւբեայ նուիրականի:
Իսկ զօրութեան փըրատողք Աբանտք՝ Եւբեայ բընէին բընակք,
Քաղկիսի, Իրետրիոյ ողկուզաւէտն Հիստիէայ,
Կերինթեայ ծովափնեի եւ բարձրաբերձ Դիոն չնաղն,
Որք ունէին զԿարիստոն եւ 'ի Ստիրա կային բնակեալ,
Շառաւիղն արիական իշխէր նոցա Եղեփենոր,
Քաղկոդոնտեան, մեծանձանցն աբանտացւոց քաղաքապետ.
Զհետ իւր զնայքն ժիր Աբանտք գիսակաւորք ընդ ծոծորակ,
Արք կըռուոյ՝ նիզակօք զինել հացեօք կարկառելովք
Բեկանել ըղլանջապահ զըրահս 'ի կուրծս ախոյենաց.
Քառասուն նաւք եւ սոմա զնայքն ըղհետ Թըխասեւակք:
Եւ որ զԱթէնս ունէին զգեղեցկակազմն աւանաշէն,
Զազգ մեծանձինն Երէքթեւսի, զոր անդ ուրեմն Աթենաս
Սընոյց դուստր Արամազդայ՝ զցորենաբեր երկրէն ծընունդ,
Եւ յԱթէնըս նըստոյց 'ի պարարուն իւր մեհենին,
Ուր ըզնա նոքին հաշտ առնեն գառանց յաշտիւք եւ զուարակօք
Ի դառնալ եւ բոլորել տարեաց մանկունք աթենացւոց,
Առաջնորդ սոցուն որդին Պետէոսի էր Մենեսթեւս՝
Որում չէր ոք զըտեալ համանըման այր երկրակոխ
Յարդարել զերիվարս 'ի ռազմ եւ զարս ասպարակիր.
Նեստոր եւեթ գուպարէր ընդ իւր, զի էր երիցագոյն.
Եւ ըզսորին նաւք յիսուն սեւաթորմիք զնայքն ըղհետ:
Եւ Էաս 'ի Սալամնէ երկոտասան ածէր քաջախս.
Եւ տարեալ կացոյց ուր գունդք լատեալ կային աթենացւոց:
Իսկ որ զԱրգոսն ունէին եւ ըզՏիրինս պարըսպաւոր,
ԶԵրմիոնէ եւ զԱսինէ 'ի խորագոյն ծոցին նըստեալս,
ԸզՏրիզէն եւ զԷիոնս եւ զայգեւէտն Եպիդաւրոս,
Որք ունէին զԷգինա՝ զՄասէս՝ մանկտին աքայեցւոց,
Էր նոցա զօրապետ Դիոմեդէս ահեղագոռ,
Եւ Սթենելոս՝ մեծանուն Կապանեւսի սիրուն զաւակ.
Ընդ սոսին երրորդ գընայր Եւրիալոս այր դիւցատիպ՝
Համբակըն Մեկիստեայ տալայոնեան Թագաւորին.
Սոցա գլուխ էր համօրէն Դիոմեդէսն ահեղագոռ,
Եւ ութսուն ըզսոցա զնայքն ըղհետ սեաւ լաստափայտք:
Իսկ որ զՄիկենս ունէին ըզբարեշէնըն դաստակերտ
Եւ ըզհարուստըն Կորինթոս եւ ըզԿլէոնս վայելչակազմ,

Ըղձակոյկսըն գեղատախտ ընդ լըրթագոյն խորան անցանել,
Առիթդէս ինքնին, զի չէր ինչ նոցին փոյթ ծովավաստակ։
Իսկ բնակչաց Բուպրասիոյ եւ Էլիսեայ նուիրականին,
Որչափ ինչ Հիրմինէ եւ Միրսինոս սահմանակալ
Եւ վէմն Ոլենեան եւ Ալիսիոն բովանդակեն,
Սոցա չորք էին իշխանք, եւ տասըն տասըն նաւ երագ
Մէն մի ում զհետ խաղային՝ բարձեալ ամբոխ Եպէայց մեծ։
Կիտոցն Ամփիմաքոս եւ Թալպիոս կային իշխանք,
Մինն որդի Կտէատու, միւսն ակտորեանն Եւրիտոսի·
Իսկ այլոց՝ ամարինկեանն իշխէր քաջազնըն Դիովրէս,
Չորրորդացն էր իշխեցող Պոլիքսինոս աստուածակերպ՝
Զաւակն Ագասթենի աւգիասեան թագաւորին։
Ոյք էինն 'ի Դուլիքեայ, եւ յէքինայց սրբազնափայլից՝
Ի կղզեաց որ կան յայնկոյս ծովուն հանդէպ Էլիսեայ դէմ,
Փիլէւսեանն առաջնորդէր նոցա Մեգէս արիատիպ,
Զոր ծընաւ սիրելին Արամազդայ Փիլէւս ասպետ,
Որ խռովեալ հօրն երբեմն՝ 'ի Դուլիքի պանդըխտեցաւ·
Ընդ սմա սեւորակ վարեալ գային նաւք քառասուն։
Ոդիսեւս տանէր ածէր ըզմեծասիրտ կեփաղլենեայս,
Որ զրաւէին զԻթակէ եւ զՆերիտոն տերեւաշարժ,
Որ բնակիչքըն Կրոկիլեայց եւ առապարն Էգիլիպեայ,
Որ զԶակինթոսն ունէին եւ 'ի Սամոս շըրջաբընակք,
Որք ունէին եւ զցամաքըն եւ բնակէին 'ի հանդիպոյ,
Ոդիսեւս իշխէր սոցունց ըզգօնն հանգոյն Արամազդայ·
Նաւք ըզհետ սորա գնային կարմրածընոտք երկոտասան։
Էտոլեանց առաջնորդէր Թոաս որդին Անդրեմոնի,
Որ 'ի Պլեւրոն բնակացեալք, 'ի Պիլինէ եւ յՈլենոս,
Ի Քաղկիս ծովափնեայ եւ յապառաժըն Կալիդոնի· —
Զի չէին 'ի միջի քաջասըրտին Ինէւսի ձնաք,
Չէր եւ ինքն, եւ էր մեռեալ Մելէագրոս խարտեշագեղ· —
Ամենայն ինչ յանձն 'ի սոյն էին՝ տիրել Էտոլացւոց,
Եւ ըզկնի իւր սեւաթոյր անցանէին նաւք քառասուն։
Կրետացւոց զօրավարէր Իդոմենեւս նիզակաւոր,
Որ զԿնոսոս ունէին եւ ըզԿորտին պարըսպափակ,
ԸզԼիկտոս, ըզՄիլետոս եւ զԼիկաստոս սպիտակաթոյր,
ԸզՓեստոս եւ զՀռիտիոն ըզբնակաւէտն աւանաչէնս,
Եւս եւ այլք որ 'ի Կրետէ հարիւրըքաղաք բնակէին շուրջ։
Արդ սոցա փառաշուքէնն Իդոմենեւս առաջնորդէր,
Եւ հանգոյն մարդախողխողն Ենիալեայ Մերիոնէս·
Նաւք ութսուն ընդ սոսա հետեւէին սեւատեսակք։
Հերակլեան Տլեպոլեմոս ըսկայազօրն եւ յաղթանդամ
Ածէր նաւս ինն 'ի Հռոդեայ զքաջայանդուգըն հռոդացւոց,

Որ 'ի Հռոդոս բնակէին յառաջ երկու կարգեալք կազմեալք,
Ի Լինդոս, 'ի Յէլիսոս, 'ի Կամիրոս ամբոխակերանց:
Զօրագլուխ էր սոցա Տլեպողեմոս մեծընդառուր,
Զոր ծնաւ Աստիոքէ՝ հերակլեականն արուորութեան,
Որ ած ընդ յԷփիրեայ 'ի Սելլէէսին գետակէ՝
Աւերեալ քաղաքս յոլով դիւցամանկունց քաջորդերոյ:
Զարգացեալ Տլեպողեմոս 'ի բարեկերտ անդ ապարանս՝
Ըզքեռին բազում անդէն ըզհօր իւրում ըզսիրելին,
Ըզյեցեալն յալեւոյթ զԼիկիմնիոս՝ ոստ արիական:
Կառուցեալ նաւս խիտ եւ խիտ եւ հաւաքեալ ամբոխ բազում,
Փախըստեայ գնաց ընդ ծով. քանզի նըմա սպառնացան այլք
Ուստերք եւ Թոռունք հերակլեան արիութեան:
Իսկ ինքըն մոլորեալ՝ հասս 'ի Հռոդոս տառապագին.
Բնակէին ցեղք եռատոհմ, Արամազդայ լեալ սիրելիք՝
Որ աստուածոց եւ մարդկան առ հասարակ ինքնակալէ.
Եւ մեծութիւն աստուածայքանչ հեղ 'ի նոսա Զըրոսանեան:
Իսկ Նիրեւս երեք ածէր նաւս 'ի Սիմեայ մակաւասարս,
Նիրեւս ուստր Ագլայիայ եւ արքային Քարոպոսի,
Նիրեւս՝ առնանազգեղն այր յԻլիոն եկաւորեալ
Քան զայլ դանայեցիս՝ ըզկնի ամբիծ Պելիասծնին.
Այլ կնոտ էր եւ սակաւ երիթայր ըզհետ իւր ժողովուրդ:
Որ զՆիսիրոսն ունէին եւ ըզԿրապաթ եւ ըզԿասոս
Եւ զԿոսն ուստն Եւրիպիլեայ եւ ըզկղզիսն Կալիդնեայս,
Փիդիպպոս եւ Անտիփոս ըսպայապետք էին նոցուն,
Երկոքին Թեսաղոսի հերակլեան արքային ձետք,
Ոյց ըզհետ երեսուն գոգուն քաշանիք գնային տողեալք:
Իսկ որչափ ինչ միանգամ 'ի պելասգեան կային Արգոս,
Որք յԱլոս էին բընակք եւ յԱլոպէ եւ 'ի Տրեքին,
Որք էինն 'ի Փթիա եւ Հելլադա գեղեցկակին,
Եւ կոչէին Միրմիդոնք, եւս եւ Հելլէնք եւ աքայիկք,
Այսոցիկ Աքիլլէս յիսուն նաւաց էր իշխեցող:
Բայց սոցունց ոչ պատերազմն ահեղապաչ գայր ինչ 'ի յուշ,
Զի եւ չէր որ նոցին զօրավարէր կարգեալ 'ի ռազմ.
Քանզի քաջոտն Աքիլլէս դիւցազն 'ի նաւսն անկեալ դընէր
Վասն աղջկանըն սրտամըտեալ՝ վարսագեղին Բրիսէիսի,
Զոր Թափեալ առեալ էր իւր 'ի Լիռնեսեայ բազում Հըգամբ,
Կործանեալ ըզԼիռնեսոս եւ ըզպարիսպըն Թեբայեցւոց.
Արկ տապաստ եւ ըզՄինէս եւ զԵպիստրոփ մըկընդամոլս՝
Ուստերըս սելեպեանն Եւենոսի Թագաւորին.
Վասըն նորա նըստէր տըրտում, բայց յառնելոց էր հուպ ընդ հուպ:
Որք ունէին զՓիլակէ եւ զՊիրասոս ծաղկազգեստ,
Ըզնուիրեալըն Դեմետրի զանդս եւ զԻտոնն ըզմայր խաշանց,

Եւ զԱնտրոն ծովեզերեայ եւ զախղաւէտըն Պտելէոս ,
Այնոցիկ առաջնորդէր Պրոտեսիլաւ արիական՝
Մինչ կենդանին էր , իսկ յայնժամ ունէր ընդ հողըն սեւ ։
Կին նորա քըրձքըրձեալ ցըռեալ մընայ 'ի Փիլակէ
Եւ տուն նորա Թերակատար , զի սպան զնենգըն այր դարդանացի
Ի վազել իւր 'ի նաւէն յառաջ քան զայլ աքայեցիս ։
Բայց չէին անիշխանք , թէ եւ 'ի գութ պետին հաշէալք ,
Այլ շառաւիղն արեսեան կարգէր զնոցին ռազմ Պոդարկէս ,
Զաւակըն փիլակեանն Իփիկլեայ խաշնաւէտին ,
Եղբայր հարազատ մեծահոգւոյն Պրոտեսիլայ ,
Ի տիոց կըրտսերագոյն , իսկ նա երէց եւ քաջարի
Դիւցազն արիական Պրոտեսիլաւ , սակայն ամբոխն
Ոչ կարօտէր սալարի , այլ փըղձկէին յանձուկ քաջին .
Եւ ընդ նմա քառասնաթիւ գնային ընդհետ նաւք սեւորակք ։
Բնակեալոցն 'ի Փերէս առ ծովակին Բիբէական ,
Ի Բիբէ , 'ի Գլափիրայս եւ Յաւողկոս գեղեցկաշէն ,
Գեր նաւուց մետասանից էր Ադմետոյ սիրուն որդին
Եւմելոս՝ զոր յԱդմետէ ծընաւ կանանց դիւցազնուհեայն ,
Ալկեստիս , չըքնաղագեղն 'ի դըստերաց Պելիասայ ։
Որք էին 'ի Մեթոնէ ու'ի Թաւմակի կալեալ կայանս ,
Ունէին զՄելիբէա եւ զՈլիզոն առապարին ,
Փիլոկտետ իշխէր նոցա քաջահըմուտն աղեղնաւոր՝
Նաւուց եօթանց , նաւավարք 'ի մէն միում ելեալք յիսուն ,
Արք յաղեղըն քաջափորձք կալ եւ կըռուել կորովաբար ։
Սակայն նա 'ի կղզւոջն սաստիկ ցաւօք տանջեալ դընէր
Ի Լեմնոս գեղեցկական , ուր զնենգըն որդիք աքայեցւոց՝
Չարաչար հարուածեալ 'ի նենգամիտ օձէն՝ լըքին ։
Անդ անկեալ կայր ցաւած , բայց Փիլոկտետ արքայն ընդ հուպ
Էր 'ի յուշ արգիացւոցն անդրէն գալոց առ նաւակօքն ։
Անձկաբեկք թէպէտ 'ի պետն , այլ եւ սոքա չէին անգըլուխ ,
Զի Մեդոն հարճածընդին Ոյլեւսի կարգէր կազմէր ,
Զոր Հռենէ ծընաւ քաջին քաղաքաւերն Ոյլեւսի ։
Որ զՏրիկկէ ունէին եւ զԻթոմէ լեռնակուռակ ,
Որ զքաղաքն Էքալիացւոյն Եւրիտոսի զՕքալիա ,
Ասկլեպեայ կըրկին ուստերք բազմարուեստք նոցա կային ,
Բըժիշկք ճարտարագէտք՝ Պոդալիրիս եւ Մաքաւոն .
Եւ սոցա երեսուն գնային ընդնմին նաւք գոգաւորք ։
Որոց էին Որմենիոն , որոց աղբիւրն Հիպերիա ,
ԶԱստերիոն որք ունէին եւ զՏիտանոս սարս ըսպիտակ ,
Եւրիպիլոս վարէր զնոսա՝ շըքեղ զաւակն Եւեմոնի .
Եւ սորա թըղթաթուի ընդհետ գնային նաւք քառասուն ։
Որ զԱրգիսսայն ունէին եւ բնակէին 'ի Գիրտոնէ ,

Ընթանային, հեծէր գետին՝ որպէս յորժամ Արամազդ
Բարկաճայթ փայլատակմամբք զՏիփովեւսիւ թօղէ զերկիր
ՅԱրիմայս՝ ուր աւանդեն զՏիփովեւսի լինել խշտիս.
Ընդ ոտին նոցին տրոփել՝ այնպէս երկիր մեծ թառանչէր,
Եւ սաստիկ յապատակի հատեալ ընդ դաշտն անցանէին։
Իսկ տրովեանց եկըն հրեշտակ յապարակիրն Արամազդայ
Մըրըրկոտն երագ Իռիս՝ աղխտաբեր բօթ 'ի բերան։
Նոքա. 'ի դրունըսըն Պրիամու յատեան կային եղեալ երասա
Համօրէնք միահամուռ երիտասարդք եւ ծերունիք։
Մատուցեալ երագոտն Իռիս եւ գոյժ արկեալ ասէր,
Նըմանեալ ձայնիւն որդւոյն Պրիամոսի Պօլիտեսեայ՝
Որ դէտ նըստէր տրովացւոց, վըստահ յոտիցն երագութիւն,
Ի կատարըս շիրմի Եսիետի ալեւորին,
Ուշ եդեալ՝ երբ 'ի նաւացն յարձակիցին աքայեցիք.
Ի նըմին նըմանութեան խօսեալ ասէ շուրթամբն Իռիս.
Հանապազ, ով ծերունիդ, քեզ սիրելի են բանք բազում
Իբր երբեմն 'ի հաշտութեան, բայց արդ յարեաւ մարտ անհրաժեշտ։
Ի բազում ռազմունս արանց բազում անգամ հասեալ է իմ,
Այլ ոչ ուրեք այսպիսի եւ ոչ այսչափ տեսեալ հրոսակ.
Զի համգոյն յոյժ տերեւոց կամ աւազոյն՝ թիւ խուռնախիտ
Դիմեալ ընդ դիւրն ասպատակեն տալ պատերազմ ըզքաղաքաւս։
Քեզ, Հեկտոր, մանաւանդ պատուէր դընեմ այսպէս առնել.
Զի յոլով նիզակակիցք 'ի մեծ ոստանս են Պրիամու՝
Այլք յայլոց այլալեզուք 'ի բազմացունդ մարդկան զարմից,
Նոցին այր իւրաքանչիւր տացէ հրաման՝ որոց իշխէն,
Նոցուն կացցէ զօրավար՝ քաղաքայնոցն արարեալ ռազմ։
Զայս ասաց, չեղեւ Հեկտոր աստուածուհւոյն ձայնի անհաս,
Եւ անդէն լուծեալ զատեանն ընթանային 'ի զէն 'ի զարդ.
Բանային դրունք համօրէն եւ ժողովուրդն 'ի դուրս զեղոյր
Հետեւակք, կառամարտիկք, եւ շառաչիւն հատաւ ուժգին։
Քաղաքին յանդիման բըլուր մի է բարձրադիտակ
Ի դաշտին առոգի շուրջանակաւ պարաշըրջիկ,
Զոր արք կոչեն Բատիիա, իսկ դիք շիրիմ ժիր Միւրինէ.
Անդ յայնժամ որոշեցան տրովադացիք եւ գունդ սատար։
Տրովեանց պէտ էր պրիամեան մեծըն Հեկտոր սաղաւարտախրոխտ,
Ընդ նըմա յոգնախուռըն բազմագունդ քաջագօտիք
Վառեալք ըսպայակոյտք նիզակաձօձ խրախուսանօք։
Իսկ գընդըն դարդանացւոց ձեռն Անքիսեայ իշխէր արին
Էնիաս՝ զոր յԱնքիսեայ ծընաւ Աստղիկն աստուածերան,
Աստուածուհի 'նդ մահկանացուին 'ի դարեւանդս Իդայ նընջեալ։
Ոչ միակ, այլ ընդ նըմին Անտենորի կըրկին մանկունք՝
Արքելոքոս ւԱկամաս՝ բոլոր մարտից քաջահըմուտք։

Որ առ Իգայ ստորոտով 'ի Զէյլա բնակեալքն էին
Տրովեանք ճոխք, եւ ըմպէին ընդթուխ վտակս Էսեպոսի,
Կայր նոցա զօրավար Լիկայոնեան ուստր հոյակապ՝
Պանդարոս՝ որում ինքնին ըղլայնալիճն ետ Ապոլոն:
Ցորոց ձեռս Ադրեստիայն էր եւ քաղաքն Ապեսոսի,
Եւ զՊիտիւնայն ունէին եւ զբարձրըր լեառնըն Տէրիայ,
Ադրեստոս իշխէր նոցուն եւ Ամփիոս կըտաւաճօշ,
Զոյգ որդիք պերկոսեանըն Մերոպսի որ քան ըզբնաւս
Հըմտագոյն էր ըղձուԹեան, եւ ոչ տայր Թոյլ որդւոց իւրոց
Ընթանալ 'ի պատերազմըն մարդասպանձ, եւ ոչ լըւան.
Զի սեաւ մահուն օրահաս ճակատագիրք տանէին զնոսա:
Իսկ որ բնակեք 'ի Պերկոտէ եւ Պրակտիոն շուրջանակի՝
ԸզՍեստոս եւ զԱբիդոս եւ զԱրիսբէ կալեալք ըզմէհ,
Նոցա գլուխ՝ Հիրտակեանն էր Ասիոս արանց իշխող,
Ասիոսն հիրտակեան՝ զոր բերէին անդր յԱրիսբեայ
Ձիք աշխէտք վըթխարիք 'ի Սէլլէիս գետոյն ափանց:
Ածէր Հիպպոթոոս նիզակաւորք Պելազգեանց գունդ,
Զայնոսիկ՝ որոց պիզուածըն Լարիսսա էր բնադաւառ,
Ոյց իշխէրն Հիպպոթոոս եւ Պիլէոս Արեայ բողբոջ,
Երկոքեան տեւտամեան Լեթեայ զաւակք պելազգացւոյն:
Ակամաս ըզԹրակս ածէր ընդ դիւցազն Պիրոսի,
Զորս 'ի մէջ բովանդակէ Հելլեսպոնտոս մըրըրկածուփ:
Եւփեմոս կիկոնացւոցն էր զօրավար տիգաւորաց,
Որդեակըն կէադեան դիւցազնեանն Տրիզենոսի:
Պիրէքմէս ածէր զՊէոնս ըղլայնալիճ աղեղնաւորս՝
Ի հեռուստ յԱմիդոնէայ, 'ի յորդահոսն Աքսիոսէ,
Աքսիոս, որոյ նոր երկիր՝ ականակիտ ծաւալին ուխք:
Պափլագոնեաց էր իշխան Պիլեմենի սիրտ քաջազօր,
Ցէնեաց՝ ուստի ջորւոցըն վայրենեաց է ազգատոհմ.
Կիտորոս սոցա էր, եւ բնակէին 'ի Սեսամոս,
Եւ զգետովըն Պարթենեաւ 'ի հոյակապ նըստէին յարկս,
Ի Կրոմնա, յԷգիալոս ու'ի բարձրաբերձ Երիթինայս:
Ոդիոս Հալիզոնեաց եւ Եպիստրոփ էին իշխանք,
ՅԱլիբեայ 'ի հեռուստ՝ ուստի ծընունդք են արծաթոյ:
Միսացւոց պետ էր Քրոմիս եւ Ենոմոս հաւահըմայն,
Բայց 'ի սեաւ օրհասէն հըմայուԹեամբքըն ոչ ապրեցաւ,
Այլ 'ի ձեռս երագոտին Էակիդեայ եղեւ նըկուն
Անդր 'ի գետն՝ ուր եւ այլոց 'ի տրովացւոց խեԹկէր 'ի մահ:
Փորկիս ածէր զփռիւգացիս եւ դիւցախառն Ասկանիոս
Ի սարէ յԱսկանիոյ, եւ տապէին խառնել 'ի մարտ:
Մէոնից էին Մեսթլէս եւ Անտիփոս ըսպասաւարք՝
Զաւակունք Տալեմենի, զորըս Գիգեան ծընաւ ծովակ,

Որ ածէին եւ զՄէոնացին սերացեալս առ Տմողոսիւ ։

Իսկ Նաստէս էր գումնդասալար կարիացւոց խժաձայնից
Որ զՄիլետոս ունէին եւ զԹաւաթուփ լեառն Փթիրաց ,
Եւ զհոսանսն Մէանդրի եւ զբարձրայօն Միկաղէայ սարս ։
Արդ սոցուն առաջնորդ Ամփիմաքոս էր եւ Նաստէս ,
Նաստէս ու Ամփիմաքոս , պայծառ մանկունք Նոմիոնեայ՝
Որ բարձեալ եւ ոսկի զինայր 'ի կռիւ զօրէն աղջկան ,
Խօլամիտ , ոչ ինչ օգտեալ ընդ գրժընդակ կորստեան դէմ ,
Այլ 'ի ձեռս Էակիդեայ երագոտին անկաւ սպանեալ
Անդր 'ի գետն , եւ Աքիլլեւս մարտիկն զոռ տարաւ զոսկին ։

Սարպեդոնն էր Լիկիացւոց պետ եւ Գլաւկոս անվանաւոր
Ի բացուստ 'ի Լիկիոյ՝ 'ի յորձնուանցն Քսանթոսէ ։

876

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԵՐՐՈՐԴ

### ԵՐԴՄՈՒՆՔ. ՏԵՍԻԼ Ի ՊԱՐՍՊԷՆ. ԱՂԵՔՍԱՆԴՐԻ ԵՒ ՄԵՆԵԼԱՒԵԱՑ ՄԵՆԱՄԱՐՏՈՒԹԻՒՆ

Իբրեւ կազմեալ կարգեցան իւրաքանչիւր զօրավարօք,
Տրովայեան արամբեանք 'ի ձայն աղաղակի զօրէն հաւուց,
Որպէսունակ ընթանան ընդդէմ երկնից կռունկանց կռինչք՝
Որ փախուցեալ 'ի ձմեռայնոյ եւ յանհնարին թօնչնկեցաց՝
Թռչին աւետալ ընդ հոսանս Ովկիանու գոչման կանչիւք,
Նախճիրս արանցըն Թզնեաց եւ օրահաս տանել մահու,
Եւ 'ի բարձանց օդապարիք ածեն նոցա մարտ դըժընդակ:
Իսկ բոցաշունչք բարկութեան աքայեցիք գալթէին լուռ,
Խրախուսեալք 'ի հոգիս օգնել միմեանց՝ կալ 'ի թիկունս:
Օրինակ իբր 'ի գլուխ լերին հեղու հարաւ ըզմէգ՝
Ըզհովուաց դըժպըհեհն, իսկ գողոց հեշտ քան ըզգիշեր,
Եւ այնչափ ոք նըշմարէ՝ որչափ թէ քար ինչ ընկենու,
Այնպէս 'նոց ոտիւք նոցին փոշի մըրըկեալ յարուցեալ գայր
Ցընթանալ իւրեանց ընդ դաշտն յապաստանակի անցանելով:
Իսկ իբրեւ այն ինչ մերձ էին յարձակ յարձակ խառնել յիրեարս,
Ի տրովեանց նախահարակէր Աղէքսանդրոս աստուածանման,
Ընձենի զուսովքն արկեալ եւ զկորովի աղեղն եւ զսուր,
Եւ կրկին գեղարդունըս ճօճելով պղընձատայրս
Զայնատուր լինէր քաջացն արգիւացւոց առհասարակ,
Ախոյեան գալ ելանել՝ կըռուել ընդ իւր յանդուլթ դաւպար:
Զոր տեսեալ եւ ծանուցեալ Մենելաւոս՝ Արեայ սիրուն,
Զի մեծաքայլ ընթացիւք յառաջէր գայր քան զըզաւամարտակն,
Որպէս առիւծ ուրախըլլուկ 'ի մեծ մարմին ինչ հանդիպելով՝
Եւ գըտեալ ցընծացեալ՝ կամ զեղջերու եւ կամ զայծեայր,

Զոր չարաչար լափլիզէ՝ Թեպետ եւ յետին յարձակեցին
Երագոտուհիքըն գամփռունք եւ եռանդուն երիտասարդք.
Սակէս յակն արկանել զԱլէքսանդրեան աստուածատիպ
Բերկրեցաւ Մեննէյաւոս, յուսայր առնուլ վրէժ 'ի ժամանէն.
Եւ անդէն 'ի կառացն հանդերձ զինուքն ոստեաւ յերկիր:
Այնմ ըղձասէր լեալ եւ տեսանել աստուածակերպն Ալէքսանդրոս
Զի 'նդ նահատակին երեւէր, զարհուրեցաւ յանձին իւրում,
Ի մահուանէ խուսափելով ընկըրկեցաւ յընկերաց խումբ,
Զոր օրինակ 'ի լերին Թէ ոք տեսանել մացառս վիշապ՝
Փախեաւ յետս ոստուցեալ եւ ընդ անդամսըն գնաց դողումն,
Ցետս ընդ կրունկըն դարձաւ եւ ներկան այտք իւր 'ի դալուկն.
Այսպէս յետս յամբոխն եմուտ յոխորտաբնութեաց տրովադացւոց
ՑԱտրորդեայն զահի հարեալ Ալէքսանդրոսն աստուածանմանն:
Զայն տեսեալ Հեկտորի՝ Ձաղեաց բանիւք երգիծանաց.
Դըժ-Պարիս, գեղեցկադէմ, է կնամոլիդ դու հրապուրիչ,
Երանի Թէ անծընունդ էիր ամուլին կորընչէիր:
Ես ընդ այդ իսկ կամէի, եւ առաւել էր շահաւէտ,
Քան 'ի կեղծ այդպէս ու'ի խէթ կասկածանաց լինել այլոց:
Ի ծաղր անշուշտ հաստանեն վարսաւորեալքդ աքայեցիք
Ախոյան զքեզ քաջ կարծեալ առ'ի տեսիլ կերպարանացդ,
Այլ չէք զօրութիւն յոգիդ եւ ոչ ոյժ եւ կորով:
Այդպիսեա՞դ միթէ դու ծովագնացեկ լաստափայտիւք
Ընդ անդունդս հատեալ անցեալ սիրայօրդոր ընկերակցօք,
Եւ մըխեալ յօտարածինս հափշտակեցեր կին գեղապանծ
Ցերկրէ հեռաստանէ՝ զպատերազմօղ արանցըն նոս,
Հօրդ 'ի տոյժ մեծ, քաղաքիս եւ ամենայն ժողովըրդեանն,
Իսկ Թըշնամեաց խընդութիւն, եւ ծանր ամօթ քեզ կորանաց:
Զի՞ սիրելոյն Արեսի չկացեր հանդէպ Մենելաւեայ.
Առնուիր զայրն 'ի միտ, զոր ամուսինն ունիս զաւազդ:
Ոչ օգնեսցեն ինչ քեզ քընար եւ ոչ պարգեւք Աստղկան,
Ոչ խոպոպք հերացդ, ոչ գեղ, մինչ ընդ փոշի Թաւալեսցիս:
Այլ երկչոտ յոյժ են տրովէանք, ապա Թէ ոչ՝ վաղուց արդեաւք
Զգենուիր զքարեայ շապիկն ըստ արժանի չարեաց գործոցդ:
Եւ նըմա պատասխանի աստուածանմանն Ալէքսանդրոս.
Ցիրաւի են կըշտամբանքդ, Հեկտոր, եւ ոչ յանիրաւի.
Ցամենայն ժամ քո սիրտ իբրեւ զտապար է անվեհանդ
Որ ընդ բուռն մըխի վարեալ 'ի ճարտարող մայրեւորէն
Ի հարկանել զնաւափայտ, եւ զԹափ բազկին առն յաւելու.
Այսպէս միտք են աներկիւղ եւ անսասան 'ի քում սըրտիդ:
Մի՛ զգանկալի ձիրս ոսկի Աստղկան ինձ պախարակեր.
Չեն բընաւ աստուածոց մեծապայծառ օժիտք խոտան,
Որ զինչ նոքին շնորհեսցեն եւ չառնուցու ինչ ոք ըստ կամս:

Արդ թէ կամ է քեզ դառնալ ինձ 'ի դուպար եւ մաքառել,
Բազմեցո զայլ տրովայեցիսդ եւ զաքայեանս առ հասարակ,
Իսկ 'ի մէջ զիս եւ զԱրեայ սիրասիրունդ Մենելաւոս
Արկէք 'ի կռիւ զՀեղինեայ եւ ստացուածոցն ամենեցունց.
Եւ որ այր ոք յաղթական եւ զօրաւոր ցուցցէ հանդէս,
Զըստացուածսն առեալ համայն եւ զկինն 'ի տուն իւր ածիցէ.
Իսկ այլոց՝ սէր եւ դաշինս հաւատարիմ կռեալ ուխտից՝
Բնակեսջիք դուք յարգաւանդ Տրոյա, նոքա դարձ առնիցեն
Անդրէն յԱրգոս 'ի ձիարոյծ, յԱքայիա գեղեցկականին:
Զայս ասաց, եւ Հեկտորի զբանսն լուեալ՝ զուարթացաւ յոյժ,
Եւ 'ի մէջ անդր անցեալ եւ զնիզակին կալեալ միջոյ՝
Արգել ըզգունդըս տրովեանց, որ եւ զտեղի առին ամենէն:
Մըտանէին հերարձակ աքայեցիք 'ի նա 'նդ աղեղն,
Ըղձեա դէպ կալեալ վիմօք եւ արձակեալ բըռնաքարամբք:
Բայց գոչեաց մեծաձայն՝ արքայն արանց Ագամեմնոն.
Արգիլեցիք, կացէք՝ մանկունք աքայեցւոց, մի՛ դընէք ձիգ,
Զի ասել ինչ խոստանայ մեզ բան Հեկտոր սաղաւարտաձօձ:
Զայս ասաց, եւ նոյն հետայն 'ի կըռուելոյն առեալ նահանջ
Կացին լուռ, եւ Հեկտոր ընդ երկոսին ձայնեաց ասէ.
Լուարուք ինձ, տրովադեանք եւ քաջազարդունք աքայեցիք,
Ըզբանս Աղէքսանդրի՝ յորոյ պատճառս յարեաւ այս խազմ:
Տայ տրովեանց եւ աքայեանց այլոց պատուէր բոլորեցուն՝
Ընդ գետնին արօտաբուեր դընել ըզզէնսըդ գեղեցիկ,
Իսկ միայնոյ 'նդ Արեսի սիրեցելոյն Մենելաւեայ
Զհեղինեայ դալ 'ի մէջ եւ զհամօրէն ընչիցն 'ի վերայ.
Եւ որ յաղթօղ ոք գըտցի եւ ուժգնագոյն 'ի հանդիսին,
Զըստացուածսն առեալ բոլոր եւ զինքնին կինն 'ի տուն տարցի,
Իսկ այլք՝ սէր եւ դաշինս ուխտի կռեսցուք անդրդուելիս:
Ասաց զայս, եւ կարկեալ կացին լըռիկ առ հասարակ.
Բարբառեցաւ առ նոսա Մենելաւոս խրախուսաձայն.
Ունկըն դիք արդ եւ ինձ. զի մեծն յիմ սիրտ հարկանի ցաւ.
Այն ունիմ այժմ որոշել արգիւացւոց եւ տրովացւոց,
Զի բազում ժուժկալեցէք չարախատավատ տառապանաց
Յերեսաց իմոյ կռուոյս ւԱղէքսանդրի յանդըգնութեան:
Այլ ուրուք ճակատագիր եւ մահ 'ի մէնջ է պատրաստեալ,
Թող մեռցի, եւ այլքդ անդէն վաղվաղակի բաժանեսջիք:
Բայց ածէք բուծըս կըրկին, գառն ըսպիտակ եւ սեաւ որոջ
Երկրի ւԱրեգական, ածցուք մեք գառն Արամազդայ,
Եւ զարին Պրիամոս ածջիք կռել զդաշինսն անձամբ.
Զի որդիք են նորուն ամբարտաւանք եւ ուխտադրուժք,
Գուցէ զանց ոք արարեալ՝ զԱրամազդայ լուծցէ զերդմունս:
Պատանեաց մանկագունից միտք ըզբօսեալ են հանապազ.

Իսկ յորըս ծեր ըզ գըլայի՝ նըկատեսցէ յետս եւ յառաջ,
Զի որ լաւն ինչ երկոցուն իցէ կողմանց՝ գայցէ յարդիւնս ։
Ասաց զայս, եւ խընդացին աքայեցիք եւ տրովադեանք,
Ցուսացեալ զըրաւ լինել աղետական պատերազմին ։
Զերիվարսըն նահանջեալ կարգաւ՝ իջին ինքեանք 'ի վայր,
Եւ մերկացեալ 'ի զինուցն՝ եդին զնոսա յերեսս երկրի
Մօտ 'ի մօտ առ միմեանս, եւ սուղ ինչ էր գետին ընդ մէջ ։
Իսկ Հեկտոր պատուիրակս յղեաց երկուս 'ի քաղաք անդր
Ածել փութով ըզգառինսն եւ հրաւիրել ըզՊրիամոս ։
Եւ արքայն Ագամեմնոն զՏալթիբիոս առ արձակեաց
Ի գնդաւոր նաւսն եւ ետ պատուէր բերել գառինս երկուս ·
Եւ նա չեղեւ անլըսօղ աստուածայնոյն Ագամեմնոնի ։ —
Բայց Իրիս՝ ձիւնաթեւն եկն Հեղինեայ պատգամաւոր
Նըմանեալ տալոջ նորուն, կընոջ որդւոյն Անտենորի,
Զոր ունէր Թագաւորն Հելիկայոնն անտենորեան
Զգեղեցիկն 'ի դըստերըն Պրիամու զԼաւոդիկէ ։
Եգիտ ըզնա յապարանսըն զի կըկէր ոստայն մի մեծ
Ի կըրկնոց ծիրանեգոյն՝ նըկարեալ մարտս 'ի նմա բազումս
Ըզտրովադեանց ձիավարժից եւ պղընձազըրահ աքայեցւոց,
Զորս 'ի ձեռաց Արեսի վասն իւր կըրեալ համբերէին ։
Առ որ մերձ մատուցեալ Թեթեւընթացն ասէ Իրիս ·
Արի եկ, հարսըն սիրուն, եկ տեսանել սըխրալի գործս
Ըզտրովադեանց քաջաձիոց եւ պղընձազգեստ աքայեցւոց ·
Որ յառաջն 'ի միմեանս զարտօսրալից ածէին ռազմ
Ի դաշտի անդ՝ տենչացեալք սաստակչական գուպարածին,
Արդ նըստեալ կան լըռելեայն, — եւ դադարեալ է խաղմին դոռ, —
Խոնարհեալք յեցեալք յասպարսն, երկայն արդունք յերկիր վարսեալ ։
Բայց Արիսի սիրելին Մենելաւոս եւ Աղեքսանդր
Երկայնաձիգ գեղարդամբք ըզքէն 'ի կռիւ անցանիցեն,
Եւ դու կըն սեփական յաղթականին անուանեսցիս ։
Զայս խօսեալ աստուածուհւոյն՝ էարկ 'ի սիրտ իւր քաղցր անձուկ
Առ այր իւր առաջին եւ առ քաղաքն եւ առ ծընողսն ։
Եւ անդէն առեալ զանձամբ տեռ լուսաներկ եւ պճողարկեալ,
Դիմեաց եւ յաստապատէն, գորովալիր բըղխեալ արտօսր ·
Ոչ միայնիկ, այլ ըզհետ նորա գնային նաժիշտք երկու,
Էթրէ դուստրըն Պիտթեւսի եւ աչաղեղըն Կլիմենէ ·
Եւ հապճեպ փութով հասին մինչ մօտ 'ի դրունսն Արեւմըտեան ։
Իսկ Պրիամոս, Պանթոոս եւ Թիմիտէս ընդ Լամպոսի,
Կլիտիոս, Հիկետաւոնն արիականըն շառաւիղ,
Ուկալէգոնն եւ Անտենովր՝ խոհեմազարդք եւ երկոքին,
Անդ առ դրունս Արեւմըտից նըստէին ծերք ժողովըրդեանն,
Ի մարտից ալեզըրն լուռք, սակայն բանեղ քաջախօսնակք,

Ի ճպռանց նմանութիւն որ 'ի մայրիս անտառախիտ
Նըստեալ յոստըս ծառոյն ընդփափկականին արձակէին ձայնս։
Այսպիսիք կային նըստեալ յաշտարակին՝ առաջնորդքն Իլեանց.
Որոց տեսեալ զՀելէնէ զի դիմեալ անդր 'ի բուրգըն գայր,
Բանիւս Թըռչունս առ միմեանս ցածըն ձայնիւ բարբառեցան.
Չիք պարսաւ ինչ Տըրովադեանց եւ քաջազարդ Աքայեցւոց
Այսպիսւոյ վասըն կնոջ ցաւոց կրել այսըս բազում.
Ո՛ն եւ ո՛ն, զանմահհեցն աստուածուհեաց բերէ զպատկեր։
Բայց եւ այնպէս, այդպիսի Թէպէտ եւ է, դարձցի նաւօք,
Մի մեզ ինչ եւ որդւոցս ըզմեր կըսկիծ Թողցի եղեալ։
Ասացին զայս, Պրիամոս ձայնեաց սակայն ըզՀելէնէ.
Այսր առ իս մատուցեալ, սիրուն որդեակ, նիստ իմ հանդէպ,
Զի տեսցես զայրդ առաջին եւ ըզխնամիսդ եւ զբարեկամս։
Չես դու յիս մեղապարտ, աստուածքըն են ինձ մեղաւոր պատճառօք,
Որ զԱքայեցւոց գըրգռեցին զարտասուաբեր յիս պատերազմ։
Զի եւ զայրըն զայն ինձ անուանեսցես զպարթեւհասակ,
Ո՛վ իցէ Աքայեցին այն այր քաջազն եւ մեծանձնեայ։
Են են այլաքէն եւ այլք գըլխով չափ բարձրագոյնք,
Այլ ոչ տեսին աչօք ուրեք՝ զայնպէս գեղոյ նըմանութիւն,
Ոչ զանձկէնն ըզչորք փառաց. զի Թուի լինել այր Թագաւոր։
Հելէնէ՝ կանանց չըքնաղըն՝ արար բանիւքս առ նա դարձուած.
Պատկառելի ես, սիրելի սկեսրայր իմ, ինձ եւ ահաւոր.
Ո՛վ Թէ մահ չարախառնեալ քաղցր էր լինել ինձ 'ի ժամուն յայնմ
Յոր զհետ որդւոյդ այսր եկեալ՝ լըքի զեղբարս եւ զորըսկապան
Եւ զդըստրիկն իմ սիրասնունդ եւ զանձկալի հասակակիցս։
Այլ այսմ ոչ պատահեալ, արդ հալեցայ ես յարտասուս։ —
Բայց այժըմ զայն ասացից՝ զոր հարցանես եւ որոնես.
Ատրիդէս է նա ինքըն ամենիշխանն Ագամեմնոն,
Յերկուս զեմս՝ եւ Թագաւոր բարի եւ զօր պատերազմօղ.
Նոյն եւ տայգր էր լըրբենւոյս, եԹէ եղեւ երբեք զի էր։
Զայս ասաց, եւ ալեւորըն ըզքանչացեալ ընդ նա՝ գոչեաց.
Ո՛վ երջանիկդ Ատրիդէս, բարեմըխտակ եւ քաջաբախտ,
Յարժանի 'նդ քեզ են ձեռամբ Աքայեցւոց մանկունք բազում։
Միջամուխ եղէ երբեմն եւ յայգեւէտն 'ի Փռիւգիա,
Ուր տեսի փռիւգացիս երասանաձի որքան յոլով,
Ոտրեւսի ժողովուրդ եւ զիւցախառըն Միգդոնի,
Որ բանակ հարեալ կային յայնժամ առ ափըն Սանգարեայ.
Զի հասեալ նիզակակից ընդ նոցին ես Թըւեցայ դասս,
Յաւուրն՝ յորում եկին Միասաւընիքըն անդր այրատիրաք.
Այլ ոչ այնչափ ինչ էին՝ որչափ խոյաակն Աքայեցիքդ։
Երկրորդ ապա զՈդիսեւս տեսեալ ծերոյն՝ եհարց անդրէն.
Ե՛կ ասա ինձ եւ զայս, որդեակ սիրուն, ո՛վ իցէ դա

Գըլխով չափ նուազագոյն քան զԱտրիդեան Ագամեմնոն,
Իսկ ուսովք Թիկնաւէտ 'ի տեսանել՝ եւ լայնալանջ:
Զէնք նորուն անկեալ գետնի ընդ բազմաբեր երկրին երեսս,
Սակայն ինքն համագոյն խոյոյ 'ի ձեռն գնայ 'ի կարգս արանց.
Խոյոյ զինքն համեմատեմ թաւագեղխաւ գեղմնաբարձի՝
Որ ընդ մեծ հօտ լուսափայլ ոչխարաց յածեալ երթեւեկէ:
Առ այս ետ պատասխանի Հեղինէ ծնունդ Արամազդայ.
Իսկ դա՝ Լայերտեանն է Ոդիսեւս լիահանճար,
Սնեալ 'ի ժողովուրդն առապարին Իթակէի,
Ազգի ազգի հնարից հմուտ եւ խորհրդոց իմաստութեան:
Խոհականն Անտենովր կրկնեալ անդրուստ ասէ առ նա.
Արդարեւ, ով կին դու, զայդ ճշմարիտ յոյժ ասացեր:
Զի եւ այսր աստուածայնոյն Ոդիսեւսի եկեալ երբեմն
Հրեշտակութեամբ ըզքէն 'գ Արեայ սիրեցելոյն Մենելաւաւ,
Ես հիւրոցն ասպնջական եղէ 'ի տան պատուասիրեալ,
Եւ ըզբարս երկոցուն ուսայ եւ զիմաստն հանճարեղ:
Արդ մինչ եկեալ խառնէին 'ի տրովացւոց մեր երախանս,
Ի կալ յոտին՝ լայն ուսովքն անցուցանէր Մենելաւոս,
Բայց 'ի նստել երկոցուն՝ շքեղագոյն էր Ոդիսեւս:
Իսկ յորժամ բանս եւ խորհուրդս հիւսէին 'ի հրապարակ,
Ընդ ոլորտս մրտեալ Մենելաւեայն ընթանայր ձայն,
Կարճառօտ, այլ ներբախօս. քանզի եւ չէր ճոխաբան ոք,
Նա եւ ոչ ընդվայրաձայն, կամ թէ կրտսեր եւս էր տիովք:
Այլ երբեւ յառն Ոդիսեւս բազմահանճար յարուցեալ կայր,
Կայր հայէր 'ի խոնարհ, զաչսն 'ի գետնին կառուցեալ,
Ոչ յառաջ ըզգաւազանն ոչ յետս կոյս տարաբերէր,
Այլ ունէր անշարժելի՝ տխմարի տղին ոքես գոռնակ,
Մինչ կարծել ըզնա ցասկոտ ոք եւ պանդոյր ամենեւին:
Իսկ յորժամ 'ի լանջաց անտի զուժգինն արձակէր ձայն
Եւ ըզբանսն 'ի նմանութիւն ձմեռային ձիւնաբերաց,
Ոչ եւս այլում մահկանացուի տան էր մրցել ընդ Ոդիսեայ,
Ոչ եւս այլ ընդ Ոդիսեան կերպ հայեցեալ զարմանայաք:
Ալեւորն՝ երրորդ զԱյաս տեսեալ՝ անդրէն հարցումն առնէր..
Ո՞վ է միւս աքայեցին այդ այր քաջազն եւ յաղթանդամ,
Գըլխով եւ լայն ուսովք չափ՝ յարգիացիսն երեւելի:
Այժմ Հեղինէ երկայնապատ, վեհն 'ի կանայս, կրկնեաց անդրէն.
Այն Այաս է վիթխարի՝ աքայեցւոցն ամուր պատուար.
Իսկ անդուստ Իդոմենեւս կայ դիցանման 'ի կրետացիս,
Եւ զիւրեւ կրետացւոցն ըսպարապետք կան հոլովեալ:
Ըզնա սակս սիրունն Արեայ Մենելաւոս հիւր ընկալաւ
Անդ 'ի մեր ապարանս՝ յորժամ հասեալ գայր 'ի Կրետեայ:
Այլ արդ զայլըն տեսանեմ զբոլոր խայտակն աքայեցիս,

Զորս յականէ ճանաչել եւ յանուանէ տալ գիտեմ·
Բայց ոչ մարթեմ նշմարել զերկուս իշխանս ժողովրդոց,
ԸզԿաստորըն ձիավարող եւ զբռնամարտ Պոլիդեւկէս՝
Զեղբարսն իմ զհարազատս, որ զմիոյ մօր լուծաք երկուսեան ։
Արդեօք չեկի՞ն ընդ սոսա 'ի ցանկալւոյն Լակեդեմոնէ,
Թէ եկեալ այսր ընդ սոսին անդնդահերձ նաւատորմիւ՝
Այժմ ոչ կամին մտանել ընդ արս 'ի մարտ պատերազմի,
Խղճացեալ յամօթոյ եւ 'ի յոգունց որ յիս եղեն ։
Ասաց զայս, բայց ըզնոսին ունէր երկիր կենդանատուն
Անդ 'ի նոյն Լակեդեմոն 'ի բնադաւառըն սիրատարփ ։ —
Իսկ ընդ քաղաքըն նուիրակք զուխտի դաշնան ածէին զեղ,
Գառինս երկուս, եւ զգինի զուարթարար՝ անդոյ պտղոյ՝
Ի տիկ մի այծենի, եւ Իդէոս բերէր քարոզ
Խառնարան մի պաղպաջուն եւ ըմպանակս ոսկեձոյլս·
Եւ զծերունին մատուցեալ յարուցանէր սովին բանիւք·
Օ՛ն արի, Լաւմեդոնեանդ· աւագանին կոչեն ըզքեզ
Ձիամարտիկըն տրովեանց եւ պղնձազէն աքայեցւոց՝
Գալ 'ի դաշտ անդր իջանել, զի կռեսջիք դաշն անսուտ երդմանց·
Եւ սիրելին Արիսի Մենելաւոս եւ Աղէքսանդր
Ըզկնոջէն մարտիցեն յերկայնաբուն աեգ նիզակօք,
Եւ ըզհետ յաղթողին երթիցէ կինն եւ ըստացուածք·
Իսկ այլք սէր եւ դաշինս ուխտից կռեալ վաւերականս,
Ի Տրոյա մեք բնակեսցուք յարգասաստուր, դարձցին նոքա
Անդրէն յԱրգոս ձիաբոյծ, յԱքայիա գեղեցկակին ։
Զայս ասաց, եւ սոսկացեալ ծերոյն հրաման ետ ընկերացն
Ըզկառսըն լծել, զոր անդանդաղ ածին 'ի գործ ։
Անդր ելեալ Պրիամու՝ ձգեաց յետկոյս զերասանակն,
Եւ առ նովին Անտենոր հեծաւ յերկձիւսըն գեղեցիկ,
Եւ կալան ժիր զերիվարսն 'ի դաշտ ընդ դրունս Սկեւմբեան ։
Իսկ յորժամ ժամեալ եղեն առ տրովացիսն եւ աքայեցիս,
Ի վայր իջեալ 'ի կառաց անդր յերկիր ճարակաշատ՝
Ի մէջ անդր անցին գնացին տրովադացւոց եւ աքայեցւոց ։
Եւ անդէն եւ անդ յարեաւ արանց արքայն Ագամեմնոն,
Յառնէ եկաց եւ Ոդիսեւս բազմահանճար, եւ ալերձ քարոզք
Զանմեռից ուխտս գեղցն ածեալ, խառնեալ զգինին 'ի խառնարանն,
Առեալ ջուր ձեռնալուայի՝ Թագաւորացն հեղին 'ի գաւառս ։
Եւ ձգեալ դաստակաւն Ատրիդեսի զդանակն հանեալ՝
Որ առ մեծաւ պատենիւք կախեալ կայր միշտ իւր սուսերին,
Մազս 'ի գլխոց կտրեաց գառանցն, եւ զայն առեալ տային նուիրակք
Բաշխեցին յաւագորեարն աքայեցւոց եւ տրովադեանց,
Յորս Ատրիդէս մեծաձայն յաղօթս կայր ձեռս ամբարձեալ·
Արամազդ հայր, իշխեալ յԻդայ՝ շքեղ եւ վեհափառ,

Եւ դու եւս Արեգակն՝ ամենատես, ամենալուր,
Եւ դուք Գետք եւ Երկիր, եւ որ 'ի խոր սանդարամետս
Ըզզենացեալսըն պատժէք, եւ զորս երդումն երդնուցուն սուտ,
Վըկայք լերուք դուք եւ զերդմունսըս պահեցէք անդրդուելս։
Զի թէ եղէ Աղեքսանդր ըզՄենելաւ սպանանիցէ,
Նա կալցի այնուհետեւ ըզՀեղինէ եւ զինչս ողջոյն,
Եւ մեք դարձ արասցուք 'ի լաստափայտսըն ծովաչուս։
Իսկ խարտեաշ Մենելաւոս զԱղեքսանդրոս եթէ սպանցէ,
Զհեղինէ տրովացիք եւ զինչս ողջոյն տացեն 'ի դուրս,
Եւ տուգանըս տուժեսցեն արգիւացւոց ըստ արժանի,
Որ եւ յապայս յազգ մարդկան հանդերձելոց եղէ զըրոյց։
Իսկ Պրիամոս եւ որդիք թէ Պրիամու չառնուցուն յանձն
Ինձ տուգանս հատուցանել՝ ուր Աղեքսանդր անկցի տապաստ,
Ես եւ յայնմ իսկ հետէ փոխան տուժին տաց պատերազմ,
Կացեալ աստ՝ մինչեւ հասից 'ի կատարած այսըր կըռուոյս։
Ասաց, եւ ըզգառինսըն փողոտեալ յանգութ պղընձ՝
Ընդ գետնին արկ զայնոսիկ՝ որ թաւալգլոր խաղային անդ
Թափեալ անկեալ 'ի յոգւոց, զի պղինձ ըզզօրըն ջըլատեաց։
Իսկ առեալ ըզգինին 'ի թակուկէն դաշխուրանօք
Հեղուին նըւէր, եւ դից մըշտընջենից աղերսէին,
Եւ մին մի ոք զայս ասէր 'ի տրովացւոց եւ յաքայեցւոց.
Արամազդ մեծ, գերափառ, եւ որ եւս այլ անմահ աստուածք,
Որ ոք նախ դըրժեալ զաշխին եւ ըստ երդմունս անցանիցեն,
Այնպէս որպէս զգինիս այս՝ ուղեղ նոցին հեղցի յերկիր՝
Եւ նոցունցն եւ զաւակացն, եւ ամուսինքն ընդ այլս անկցին։
Ասացին զայս, այլ նոցա Զըրուանեանն ոչ կատարեաց զայն.
Իսկ առ նոսա Պրիամոս Դարդանեան զայս բարբառեցաւ.
Ունկըն դիք ինձ, տրովադեանք եւ քաջասրունք աքայեցիք,
Զի դարձեալ ընդ կըրունկ մեկնիմ գնամ 'ի հողմուտն եւ Իլիոս,
Քանզի լինել չհանդուրժեմ ականատես սիրուն որդւոյս
Ընդ Արեսոյ սիրեցելում Մենելաւեայ մենամարտին։
Արամազդայ գիտելի եւ անմահից այլ աստուածոց,
Ո՛ւմ որդւոց կայ յերկոցունց մահուն վախճան ճակատագրեալ։
Ասաց այրն աստուածակերպ, առեալ 'ի կառսն եդ ըզգառինսն,
Ամբարձաւ եւ նա ինքն եւ զերասանսն յետեւոյս ձըգեաց,
Եւ առ իւրեւ Անտենովք յերկձիան հեծաւ 'ի վայելուչ.
Արդ սոցա դարձ արարեալ գնային անդրէն յետս յԻլիոն։
Իսկ Հեկտոր՝ ձեռն Պրիամեան, եւ Ոդիսեւս աստուածային
Նախ ըզվայրըն չափեալ, ապա զվիճակսն առեալ 'ի ձեռս
Ի պղընձի մի արկեալ տատանէին 'ի գըլխանոց,
Թէ ո՛ նախ յառաջադոյն արձակեսցէ զաշտէն պղընձի։
Իսկ ամբոխըն պաղատէր՝ ձեռս առ աստուածսըն համբարձեալ,

Եւ այր այր յաքայեցւոց եւ 'ի տրովադեանց զայս ասէին.
Արամազդ հայր, երկնակալ յԻդայ՝ շքեղ եւ վեհափառ,
Որ ոք զամ մի զբանսներդ 'ի մէջ կողմանցս արկ երկոցունց՝
Ըզնա տուր սատակմամբ 'ի դըժոխոց սուզանել տուն,
Իսկ մեզ սէր միաբանութեան եւ զաշն ուխտի լինել անխախտ:
Զայս ասացին, իսկ մեծն Հեկտոր սաղաւարտաշարժ՝ աչք 'ի թիկունս
Շարժէր զվիճակսն, եւ սաստիւ իսկոյն վիճակըն Պարիսի:
Ապա կարգաւ բազմեցան ուր երիվարքն օդապարիկք
Կային խրոխտանչիւր եւ նըկարէն զէնք եւ կողմանցք:
Բայց անդուստ ասաւել զուարթըն ընդեղեցիկ զէնսն ընդենոյր
Դիւցազն Ալէքսանդրոս՝ այրն Հեղինեայ գեղածամին:
Յառաջ քան զամենայն արկ ըզբարձիւքն ըզսըրնապանսն
Ընտիրս եւ ազնուակերպս ճարմանդօք արծաթէկիւք.
Եւ ապա 'ի վերայ լանջացն ըզզրահսն ագանէր
Զեղբօր իւրոյ զԼիկայոնի, եւ իւր 'ի ճահ պատշաճեցաւ:
Ապ՝ արկաւ ուսընդանուտ ըզպղընձի թուրն արծաթազարդ,
Ըզվահանն յետ այնորիկ ըզմեծայաղթ, թանձր եւ բազմաւոր.
Եւ 'ի գլուխն ազդոյց հուժկու զճարտարագործըն սաղաւարտ
Ըզձիաձեղ՝ յոր 'ի վերուստ ահեղ ծածէր գաւրգամանակ.
Առ՝ նիզակ մի հզօր՝ ձեռին իւրում դիւրորագոյն:
Ի նոյն օրէնս եւ արիական Մենելաւոս վառէր զէնուք:
Արդ յերկոցունց ճակատուց երբեւ ոչքս զինուորեցան,
Խաղացին յասպարէս յաքայեցւոց մէջ եւ տրովադեանց
Խաւթաւեալ խոժոռ ակամբ, եւ ըզտեսողս կալան զարմանք
Ըզձիախրոխտ տրովադեանս եւ զբարձապարծ աքայեցիս:
Մատուցեալ նոցա յերեսս յասպարիսին 'ի չափածոյ՝
Ծածէին ըզնիզակսըն ը՛նդ միմեանս սըրտմըտութեամբ:
Եւ նախ Ալէքսանդրոս զերկայնաստուերն ընկէց զնիզակն
Եւ եհար ըզվահանն Ատրիդեան զբոլորաձեւ.
Ոչ եբեկ ըզպղընձին, այլ՝ կորացաւ սայր իւր կըրկնեալ
Ի հաստատաբեկ ասպարէն. իսկ Ատրիդէս Մենելաւոս
Պղընձոփիկ երկրորդ խաղաց՝ առ Արամազդ հայր մաղթելով.
Արամազդ տէր, տուր հանել ըզվրէժս 'ի նախ զըրկողէն զիս
Ի դիւցազն Ալէքսանդրէս, եւ ընդ ձեռամբ իմով պարտեա.
Զի սոսկասցի ամենայն 'ի վերջածին մարդկանէ ոք՝
Որ խորհեսցէ զհիւրընկալն օտարասէր երախտաւոր:
Ասաց, եւ ծոծելով արկ ըզնիզակն երկայնաստուեր,
Եւ եհար ըզվահան Պրիամեանն զբոլորակերպ:
Թափ ընդ ասպարըն փայլուն անցեալ զընաց նիզակն ուժեղ,
Եւ երթեալ մխեցաւ ընդ բազմարուեստ լանջապանակն
Եւ յայնկոյս 'ի սնակուշտն հատեալ՝ զքղամիդն եհերձ աշտէն.
Խուսափեաց եւ անդրեցաւ նա 'ի մահուն սեւ օրհասէ:

Արփիկէս հանեալ ըզթուրն յարծաթազարդ՝ վերացուցեալ,
Կափեաց ուժգին 'ի խորան զըլխանոցին՝ յոր ջախջախեալ
Ցեռակ չէրս եւ 'ի քառակ փըշրեալ անկաւ 'ի ձեռանէն։
Վայեաց Արփիկէս վերականեալ 'ի լայն երկինս·
Արամա՛զդ հայր, չէք 'ի դիս եղեռնագործ ոք քան ըզքեզ·
Ըզգըլխաւոն Ալեքսանդրի ակն ունէի՛նդ կատարին հանել,
Արդ սուսերս յիմում ձեռին խորտակեցաւ, եւ 'ի նանիր
Ի բաղկէս սլացեալ գընաց մըկունդս անգործ 'ի նմանէ վըէպ։
Ասացեալ՝ դիմեաց կալաւ զձիաձարի սաղաւարտէն,
Եւ քարշէր՝ յառաջադարձ աքայեցիան տարածեալ դէմ·
Իսկ խըրրացն ասեղնագործ խեղդէր ըզնա զփափուկ ուղանին,
Որ արկեալ ընդ կըզակաւ՝ գըլխանոցին պըրկէր 'ի կապ։
Եւ անշուշտ վարէր տանէր եւ ժառանգէր պարծանս անբաւ,
Եթէ չէր սուր նըկատեալ Արամազդայ դուստրըն Աստղիկ,
Որ զըռնամահ արջառոյն եղեւ ըզփոկն առ 'ի նմանէ,
Եւ ունայն սաղաւարտն ըստուար ձեռինն եղթայր ըզհետ,
Զոր առեալ յայնժամ դիւցազն առ բարձաղէն աքայեցիս
Գլորեալ ընկէց, եւ բարձին ընկերակիցք իւր մըտերիմք։
Միւսանգամ յարձակեցաւ պըղընձանիւթ նա գեղարդեամբն
Ըսպանանել ցանկացեալ, այլ զինքն Աստղիկ յափըշտակեաց
Հեշտեաւ զօրէն աստուածուհւոյ, եւ թանձր ըզնա ծածկեալ մըգով
Տարաւ եդ յանուշահոտ 'ի սըրսկապան իւր բուրաղուարթ·
Եւ չոգաւ ինքըն կոչել ըզՀեղինէ, զոր եւ եգիտ
Ցաշտարակին 'ի բարձու, եւ շուրջ զնուրեւ շատ տըրովուհեաց։
Եւ ձեռամբըն բուռն հարեալ ըզհոտաւէտ խըլայէն ցունց եւ,
Եւ զդէմս առեալ պառաւոյ հինօրէի՝ բարբառեցաւ,
Զասրագործին՝ որ նըմա մինչդեռ բնակէրն 'ի Լակեդեմոն
Վաստակէր յըստակ ասուխս եւ մինչեւ յոյժ սիրէր ըզնա·
Ի նոյն ինքըն աստուածուհին կերպարանեալ Աստղիկ ասէ·
Արի եկ, Ալեքսանդրոս ըզքեզ կոչէ դառնալ 'ի տուն·
Կայ նա ինքըն յառագաստին եւ 'ի գահոյս ձախարակեայս
Փայլեալ 'ի գեղ եւ 'ի ձորձս, եւ ոչ ըզնա համարեսցես
Կըռուեալ ընդ առն եւ եկեալ, այլ թէ 'ի պար գնայցէ ուրեք,
Եւ կամ այն ինչ դադարեալ 'ի խաղալոյ՝ նըստեալ կայցէ։
Զայս ասաց, եւ ըզսիրտ նորա 'ի լանջըս իւր արծարծ·
Որ տեսեալ ըզպարանոց աստուածուհւոյն ըզհրաշագեղ,
Եւ ըզլանջըսն ցանկալի եւ զլուսալիր ակնոցիս,
Պակեաւ, եւ յանուանէ ձայնեալ անդէն բարբառեցաւ·
Ո՛վ վեհաղն, եւ զի՞ բնաւ կըրթիս պատրել զիս յայդպիսիկ·
Միթէ՞ այլ եւս ուրեք 'ի բարեշէն շինուածոց
Փռիւգիոյ կամ հեշտալւոյն Մէոնիոյ զիս վարեսցես·
Իցէ՞ եւ անդ 'ի յօդաձայն մարդկանէ զոք քո յակն առեալ։

Քանզի արդ Մենելաւեայ պարտեալ զդիւցազն Աղեքսանդրոս՝
Կամի զնա զատեալս առնուլ անդրէն տանել 'ի տուն,
Ցո՞յն արդեօք տղայս այժմիկ մանկաւ հասեալ կաս տատանօք:
Օ՜ն երթ նիստ առ նմա եւ յաստուածոց մեկնեաց շաւղաց,
Եւ այլ մի՛ եւս անդրէն դարձցես ոտիւք քովք յՈղիմպոս,
Այլ առ նմին տառապեսցիր ցանգ եւ նմին կաց պահապան,
Մինչեւ ըզքեզ ամուսին կամ աղախին արասցէ իւր:
Իսկ ես՝ անդր ոչ գընամ, — զի եւ լիցէ իսկ ինձ բասիր, —
Զանկողինս իւր յօրինել, զի տրովուհիք առ հասարակ
Ծաղր յետոյ զիս առնիցեն. եւ են 'ի սիրտ իմ ցաւք անչափ:
Իսկ առ նա սրտմտեալ աստուածազանն Աստղիկ ասէ.
Մի՛ զըրգռեր զիս, եղկելիդ, գուցէ ցասմամբ թողից ըզքեզ,
Եւ այնչափ ատեցից, որչափ սաստիկ սիրեցի ցարդ,
Եւ 'ի կողմանց երկոցուն նուաթեցից ոխս գըժընդակս՝
Ի տրովեանս եւ դանայեկս, եւ կորիցես դու չարամահ:
Այսպէս ասաց, եւ երկեաւ Հեղինէ դուստր Արամազդայ,
Եւ գնաց քօղածածուկ 'ի լուսափայլ պատեալ 'ի շղարշ,
Լուռ եւ գաղտ 'ի տրովուհեաց. կարապետէր աստուածուհին:
Ի գեղազարդ ապարանս իբրեւ հասին Աղեքսանդրի,
Աղախնայքն այնուհետեւ զգործովքն իւրեանց գային ընդ փոյթ,
Իսկ չքնաղն 'ի կանայս 'ի բարձրայարկ գնայր առագաստն:
Եւ նմա ժպտասէրն Աստղիկ առեալ աստուածուհին
Եւ բերեալ զահաւորակ մի արկ հանդէպ Աղեքսանդրի.
Նըստաւ անդ Հեղինէ, դուստր ասպարօղն Արամազդայ,
Զաչկունսն յետս դարձուցեալ՝ զայր իւր բանիւքս յանդիմանեաց.
Եկեալ կաս 'ի մարտէն. — յանկարծ անդէն կորընչէիր
Ի քաջէ սպանեալ առնէ՝ որ էր նախկին իմ ամուսին: —
Պարծէիր յառաջ՝ զԱրեայ քան զսիրելին Մենելաւոս
Կորովով եւ բազկաւ 'ի վեր լինել եւ գեղարդեամբ.
Այլ արդ արի՛ ձայն տուր երթ Արեայ սիրուն Մենելաւեայ՝
Իջանել դարձեալ անդրէն միմեանց ընդդէմ 'ի կռիւ մարտի:
Բայց ես խըրատ տամ զըլլալ, եւ մի՛ 'նդ խարտեաշ Մենելաւոս
Ի վերայ գալ դէմ ընդդէմ եւ գուպարել յանդըգնաբար,
Մի գուցէ լիցիս անդէն առ 'ի նմանէ նիզակակուր:
Իսկ առ նա բան զայս Պարիս բարբառեցաւ պատասխանի.
Մի՛ կին դու դառն այպանօք ըզսիրտ իմ մի՛ երգիծաներ:
Զի զարդիս՝ ինձ յաղթեաց Մենելաւոս ընդ Աթենայ,
Եւ նըմա՝ ես միւս անգամ, քանզի եւ մեզ մերձ կան աստուածք:
Այլ արի, եկ 'ի սէր ամուսնութեան երթամք 'ի քուն.
Զի ոչ երբէք այսպիսի տըռփուամբ ըզմիտս հասեալ կալաւ,
Նա եւ ոչ մինչ զառաջինն 'ի բերկրալից Լակեդեմոնէ
Հափափեալ զքեզ ծովէի անդընդահերձ նաւափայտիւք,

Եւ զուգեցայ 'ի Կրանայէ կղզւոջ սիրով եւ անկողնով,
Որպէս այժմ եմ խանդակաթ, եւ զիս ունի անոյշ փափաք:
Ասաց. եւ գնայր 'ի մահիճն յառաջ եւ կինն զկնի նորա.
Արդ սոքա 'ի գահոյսն նընջեցին քանդակածոյս:
Իսկ Ատրիդէսն ընթանայր գազանաբար ընդ բազմամբոխն
Ցանկն ուրեք արկանել զԱլեքսանդրոս աստուածանման.
Այլ չկարաց ոք 'ի տրովեանց եւ յանուանի նիզակակցաց
Ցուցանել անդ զԱլեքսանդր Արեայ սիրուն Մենելաւեայ:
Զոր թէ ոք տեսանէր, ոչ ծածկէին առ գութ սիրոյ,
Զի հաւասար սեաւ մահուն ամենեցուն էր ատելի:
Բայց խօսեցաւ ընդ նոսին արանց արքայն Ագամեմնոն.
Լուարուք ինձ, տրովացիք եւ դարդանեայք եւ օգնականք.
Սիրելոյն Արեայ յայտնի է յաղթութիւն Մենելաւեայ:
Զհելենէ արգիացին ընչիւքն ողջոյն տուք դուք 'ի դարձ,
Եւ զտուգանսն հատուցէք՝ որպէս զկարգ եւ վայելէ,
Որ եւ յազգս հանդերձելոց մարդկան գնասցէ հռչակ յաղագս:
Զայս ասաց Ատրիդէս, եւ գովէին այլ աքայեցիք:

461

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՉՈՐՐՈՐԴ

### ՈՒԽՏԻՑՆ ՑՐՈՒՄՆ. ԱԳԱՄԵՄՆՈՆԻ ՀԱՆԴԷՍ ԱՌՆԵԼ ԲԱՆԱԿԻՆ

Աստուածոցն յոսկի յատակն ակումբ առեալ զԱրամազդաւ՝
Ըզբանիւք անկանէին, և 'ի նոսին արգոյն Հեբէ
Զըմպելին աստուածեղէն մատուցանէր ոսկի նուագօք.
Անուշին մի'ստ միւսմէ՝ յոստան տրովեանց ակընկառոյցք:
Անդ յայնժամ Զըրուանեանն ընգէլանէր կըսկիծ բանիւք
Ի զայրումն ածել զՀերա յառակաւոր 'ի սոյն բարբառ.
Երկոքին յաստուածուհեաց՝ Մենելաւեայ են ձեռընտուք,
Հերայն արգիւացի և Աթենաս Պահպանեայեա:
Մեկուսի սակայն բազմեալ և 'ի զըննին կացեալ բերկըրին.
Իսկ սըմա՝ ծաղրասէրն Աստղիկ ցանգ մօտ կայ 'ի թիկունս,
Եւ զօրհաս ճակատագրին առ 'ի նմանէն անցուցանէ,
Եւ թափեաց արդ ևս ըզնա, մինչ կարծէր զանձն իւր մերձ 'ի մահ:
Բայց յաղթումն՝ է Արէսի սիրեցելոյն Մենելաւեայ.
Սակայն մեք առցուք խորհուրդ՝ թէ յո՞ր դէմս իրքըդ շըրջիցին,
Պատերա՞զմ անդըրէն չար և դըժընդակ ճակատամարտ
Ցարուցուք 'ի կողմանսն, եթէ արկցուք սէր հաշտարար:
Եթէ այս հաճոյ և քաղցըր եղիցի բոլորեցունց,
Թող քաղաքըն Պրիամու թագաւորին բնակեալ լիցի,
Եւ զարգոսեանն Հեղինէ տարցի անդըրէն Մենելաւոս:
Զայս ասաց, և Հերա և Աթենաս մընչեցին լռու.
Նըստէին առ միմեամբք, մըրմընջէին տրովեանց չարիս:
Կարկեալ կայր Աթենաս ցասուցեալ հօրն Արամազդայ,
Ձիկ չեհան, բայց ամեհի առնոյր ըզնա սըրտմըտութիւն.
Իսկ Հերայոյ սիրտ ժուժկալեաց ոչ բարկութեանն, այլ խօսեցաւ.

Անպարտոյն Զքրոսնեան, բան ողջախոհ բարբառեցաւ.
Զի՞ կամիս ըղձապատակս առնել գերբեւ եւ ընդունայն,
Եւ զքրտունս որ քրտնեցի յերկս՝ եւ ձիանն իմ յոգնեցան
Ի ժողովել զօրս յեղերուքն Պրիամու եւ մանկըտւոյն։
Ե՛րթ արա, իսկ այլք ընդ քեզ դիք համօրէն հաւանիմք ոչ։
Արամնազդ ամպայարոյց՝ ծանրացաւ ասէ առ նա.
Ա՛յ Թշուառ, զո՞ր Պրիամոս եւ Պրիամու մանկունքն ընդ քեզ
Հասուցանեն ինչ վնաս, զի անդադար ջերջիս մոլիս
Սատակել զԻլիոնի գեղեցկակերտն շինուած.
Որ զի թէ ներքնոյդ ընդ դրունս եւ ընդ երկար մտեալ պարիսպս՝
ԸզՊրիամ եւ զՊրիամեան մանկունս ողջ ողջ լափանեցես,
Եւ զոր այլ եւս տրովեանս, յագեցուսցես թերեւս անդ զոխդ.
Արասջիր որպէս կամիս, մի՛ յայսմ հետէ դէթ այս պայքար՝
Մեծ ընդ իս եւ ընդ քեզ ընդ երկոսեանս անկցի կռուոյ։
Այլ եւս ինչ քեզ ասացից եւ յեռ դու զայն 'ի միտս քո.
Զի եւ իմ յորժամ քաղաք մի կործանել փափագեցից խանդ՝
Որ սիրելի քեզ որեւցէ իցէ ծնընդեան բնագաւառ,
Մի՛ զզայրուկս ինչ արգելեալ յամեցուսցես, այլ տացես թոյլ.
Զի եւ իմ արդ ասատիկ տուեալ քեզ զայդ կամա յակամայս։
Զի որ կան 'ի պարեգօտ կամք եւ ընդ երկնիւք աստեղազարդ
Գամ մի բնակեալ ուրեք քաղաքք յերկրածնելոց 'ի մարդկանէ,
Էր իմ սրտիս 'ի նոսա նախամեծար Իլիոս սուրբ,
Եւ Պրիամ եւ ժողովուրդ կորովաձեռն Պրիամու.
Զի ոչ երբեք օրինի խորանիցք սեղանն իմ կարօտեր,
Եւ նուէրոց եւ ճենճերով. զի այս հասեալ է մեզ պատիւ։
Անդէն Նըմա պատասխանի արար աչեղն արդոյն Հերա.
Ինձ երեք են արդարեւ քաղաքանի յոյժ սիրային,
Արգոս եւ Սպարտա եւ Միկենէ լայնափողոց.
Թէ աստեղ յատելութեան զարձցես սրտիդ, խորտեա զնոսա,
Ոչ ընդդէմ ինչ քեզ դառնամ առցա փոխան, եւ զընդդամ ոչ։
Զի թէպէտ եւ անխայեմ եւ տապալել չթողում թոյլ,
Ոչինչ օգտիմ 'ի խնայել, զի հաստատուն ես ուժգնագոյն։
Է սակայն եւ զիմս արժան ոչ 'ի գերբեւ առնել վաստակ,
Զի եւ ես աստուածուհի եմ եւ անտի ազգս ուստի քոյդ,
Եւ զիս երիցագոյն ծընաւ Զքրոսն կորովամիտ,
Երկուս դէմքս, զարմիւս եւ քո կողմամբս անկողնակից.
Իսկ յանմահից դու 'ի մէջ թագաւորես բոլորեցունց։
Այլ արդ եկ զայսոսիկ միմեանց տեղի տուեալ շնորհեմք,
Ես քեզ, եւ դու ինձ, եւ զհետ երթեն միւս դիք անմահք։
Եւ դու փոյթ ընդ փոյթ պատուէր տուր հրամանի Աթենասայ,
Ելանել գնալ 'ի տրովեանց աւքայեցւոց գժընդակ ռազմ,
Գտցէ զործել՝ զի տրոյացիք ըզխրոխտացեալ աքայեցիս

Ձեռներէց 'ի հարկանել լեզեն՝ աղաւնոյ ուխտին պաշտանց ։
Զայս ասաց, չքմեղաստացաւ հայրըն մարդկան եւ աստուածոց,
Նոյնժամայն Թըռչուն բանիւք բարբառեցաւ առ Աթենաս ·
Ի բանակին առ արովայլս եւ աքայեանս Երթ փութանմ,
Հնարեսջիր՝ զի տրովացւոց անցեալ ըստ ուխտ պաշտանց երդման՝
Նախամեծան 'ի մեղանչել աքայեցւոց լեզեն սիգայ ։
Ասաց, յորոց զանձկացեալն յառաջագոյն խաղ զԱթենաս,
Որ հապճեպ դըլացեալ յՈլիմպոսին էջ 'ի բարձանց ։
Որպէս աստղ ինչ բոցափայլ՝ կորովաձիր Զըրուանայն ձեռ
Նաւաղէցն 'ի նըշան եւ կամ զօրաց լայն բանակի
Առաքէ, եւ Թօթափին առ 'ի նմանէ յոյժ կայծակունք,
Խայտանայր նըմին հանդոյն յերկէր Պալլաան Աթենաս ։
Ոստուցեալ եկաց 'ի մէջ, եւ աղշուեթիւն կալաւ զանասուն,
Ըզգաշնակի տրովադեանս եւ զբարձրագէն աքայեցիս ։
Եւ այսպէս ինչ, այր ցընկեր ակնարկելով, բարբառէին ·
Պատերազմ չար միւսանգամ եւ վրիժագործ ձակատամարտ
Զարթիցէ, կամ յերկոսին կողմանս արկցէ սէր Արամազդ,
Այն որ էն խաղ մարդկան պատերազմաց մատակարար ։
Այսպէս ոք ասէր ինչ՝ յաքայեցւոց եւ 'ի տրովէից ։
Իսկ նա զառն ըզգեծմ առեալ՝ զԱնտենորեան Լաւոդոկեայ
Ըզկարչնեղ քաջամարտին, 'ի տրոյացւոյն եմուտ ամբոխ,
Ի խընդիր դիւցազնըմին Պանդարոսի՝ Թէ ուր գըտցէ ։
Եւ եգիտ զԼիկայոնին սատար անըստգիւտ եւ ուժեղակ
Զի առ հայր, եւ զունդ զօրաւոր վահանաւոր զօրեղ արանց
Եկելոց ըղհետ նորա 'ի յորձանացն Էսեպոսի ։
Եւ կացեալ առընթեր՝ զերագաթեւ խօսեցաւ բանս ·
Լըւիցես ինձ արդեօք, արի որդիդ Լիկայոնի,
Իջեցես Մենելաւեայ հարկանել նետ մի արաթըռիչ ։
Ի տրովէանց յամենեցունց ժառանգեսցես շնորհս եւ փառս,
Եւ 'ի վեր քան զամենայն յԱղեքսանդրէ Թագաւորէ ·
Ի նմանէն մանաւանդ մեծապայծառ տարցիս պարգեւս,
Եթէ տեսցէ զԱտրորդին զՄենելաւոս արիական
Քով նետիւ 'ի պարտութիւն մատնեալ՝ ելեալ յողորմ խարոյկ ։
Օն 'ի վերայ մեծափառ Մենելաւին մուտ ընդ աղեղն,
Եւ ուխտեա լուսածին Ապողոնի քաջաղեղան
Ըզգառանց անդրանկածնունդս հանել նըման զոհ գերապանծ
Ի դառնալդ անդրէն 'ի տուն յաստան Զելեայ նուիրական ։
Զայս ասաց Աթենաս եւ զխօլին միտս հաւանեցոյց ·
Հան խակոյն զաղեղն ողորկ ըղվայրենի վաւաշ քօշին,
Զոր երբեմն ուրեմն ինքնին 'ի Թաքստոցին դիպուցեալ՝
Ցերանելն 'ի վիմէն զարանակալ եղեալ նըմին,
Եհար ընդ սըրտադուրան, եւ նա 'նդ պարկեան անկաւ տապաստ ։

Որոյ եղջիւրք 'ի գլխոյն էին բուսեալ թիզ վեշտասան ·
Զոր քերեալ պատշաճեցոյց եղջերագործ ճարտարապետ ,
Եւ քաջ յղկեալ զամենայն՝ 'ի ծայրսն ագոյց ոսկեձոյլ լանջս ։
Արդ լարեալ զայն քաջապէս՝ յերեսս երկրին եդ 'ի խոնարհ ,
Իսկ ընկերքըն կորովիք զասպարսն հանդէպ իւր ունէին ,
Գուցէ 'ի նոա նախ յառնիցեն աքայեցւոց արի մանկունք
Մինչ չեւ խոցեալ Ատրիդին Մենելաւոսն արիական ։
Նա զխուփն եբաց կապարճեցն եւ ա՛ռ եհան նետ մի անտի
Նորաթիկք՝ մլացաթեւ, եւ սեաւ ցաւոց դարան երկանց ·
Եւ 'ի լարի անդ անդէն կազմեալ եդեալ զդառըն փըքքին ,
Ուխտեաց լուսածնին Ապոլոնի գիպաղեղան
Ըզգառանց անդրանկածնունդս հանել նըմին զոհ մեծաշուք
Ի դարձին անդրէն 'ի տուն 'ի նուիրական Զելեայ քաղաք ։
Եւ կալեալ համայն զգըզըզուկն եւ զլար քարշեաց արջառաջիլ ,
Ցեցուցեալ ըզջիլն 'ի ստինսըն եւ զերկաթն 'ի լայնալիճն ։
Եւ յորժամ կարակնաձեւ յաղթ աղեղամբն ընդ գիրկս եմուտ ,
Լիճըն ճայթեաց , եւ ահագին ըշկահեաց լարն , եւ նետն սաստեաւ
Սայրասուր , սուսանաթեւ 'ի սպայակոյտ անդըր մըլեալ ։
Այլ ըզքեզ , Մենելաւէ , չմոռացան դիքըն երջանկափառք ,
Անմահքըն , աւարառուն մանաւանդ դուստր Արամազդայ ,
Որ քո կացեալ առաջի՝ վարեաց զհերձակըն դառնաթոյն ։
Որ եւ այնչափ ինչ արգել զայն 'ի մարմնոյն վանեալ 'ի բաց ,
Որպէս քըշէ մայր ճանճ յորդւոյն'ի քաղցրանինջ քուն հանգուցեալն ։
Եւ նոյն ինքն անդր ուղղեաց՝ ուր կամարին ոսկի ճարմանդք
Ագուցեալ յեռեալ կային եւ ծալ 'ի ծալ պատէր զըրահ ։
Եւ անկեալ դառըն սըլաքն անդր 'ի գօտին գեղապատշաճ՝
Եւ եղեալ թափանցանց , եւ ընդ կամարն ամենարուեստ
Եւ խաղաց մըխեցաւ մինչեւ 'ի զրահն յոգնապաճոյճ
Ցըտախտակըն զոր կրէր մարմնոյն պատեան , նետից պատնէշ ,
Որ եւ պահեաց իսկ ըզնա , բայց եւ ընդ այն էր անցեալ թափ ։
Եւ ցըռեալ նետն ըզվերին երեսս մորթոյ քաջին մարմնոյ՝
Իսկ եւ իսկ 'ի խոցուածոյն հոսեաց արիւն թուխարասուխ ։
Որպէս յորժամ Մէոնիտ կամ Կարեացի ոք կին զփըղոսկր
Ի կարմիր ներկանիցէ՝ երիվարաց լինել շըղաշակ ,
Եւ դընի յառագաստին , եւ ցանկացան ասպետք բազումք
Տանել զայն , այլ կայ պահի թագաւորին փառաց 'ի շուք՝
Երկակի , ձիոյն 'ի զարդ եւ 'ի պարծանըս հեծելոյն ·
Այսպէս քո , Մենելաւէ , գեղապարոյր բարձք ազդերաց
Եւ սըրունք մինչ 'ի պըճղունըս վայելուչ՝ յարեան ներկան ։
Սոսկացաւ ընդ այն տեսիլ արանց արքայն Ագամեմնոն՝
Ցակն ըզթուխն արկեալ արեան զառ 'ի վիրէն հեղեղատեալ ·
Սոսկացաւ եւ նա ինքնին Արեայ սիրուն Մենելաւոս ։

Բայց տեսեալ՝ զի առատապէս կայծն ալեացն սայրքն եւ կար,
Դարձեալ 'ի լանջս իւր անդրէն ժողովեցան ոգիք նորա։
Անդանօր զառն հեծութեանց՝ Մենելաւոս կալեալ ըղձեան՝
Առաց արքայն Ագամեմնոն, հեծեծելն եւ համահարդք.
Սիրելիդ իմ հարազատ, արդ քեզ 'ի մահ կնքեցի դաշինն՝
Մէն միայն ընդ աքայեանցս արկեալ ըղջեղ տրովլեանց 'ի մարտ։
Այսպէս հարին զքեզ տրովլեանք՝ զերդմունս ունայն կոխեալ առ ոտն.
Այլ ապարդիւն ոչ եղիցին դաշինքն եւ ոչ գառանցն արիւն
Եւ նուէրք անապակեաց եւ աջք յոր մեք հաւատացաք։
Զի Թէպէտ եւ առժամայս չկատարեաց Ողիմպականն,
Անդստին եւս հատուցէ, եւ չարաչար պատուհասեսցէն
Ընդ իւրեանց իսկ կառափն՝ հանդերձ կանամբք եւ մանկտւովք։
Զի հաւատամ ճշմարտութեամբ եւ ես միտօքս եւ խորհրդովք,
Գալոց է օր՝ յոր նուիրական այդ Իլիոն սատակեսցի
Եւ Պրիամոս եւ զօրաւոր նիզակաւորըն Պրիամու,
Եւ Զրուանեանն Արամազդ արփիաբնակըն բարձրագահ
Նա ինքնին շարժեսցէ զմառախլապատ ասպարն 'ի ձեռս՝
Սրտմտեալ ընդ դաւաճանս. այս ամենայն չանցցեն ապախտ։
Բայց ըղձէն կըսկիծ սաստիկ հասցէ յոգիս, ով Մենելաւ,
Թէ մեռցիս եւ ըղկենացդ կընքեսցես ճակատագիր,
Եւ ծանր կորանօք 'ի ծարաւուտն Արգոս դարձայց։
Զի հայրենի գաւառին աքայեանքս յուշ գայցեն ընդ հուպ,
Եւ Թողցուք 'ի պարծանս Պրիամու եւ տրովլացւոց
Զարգասհին Հեղինէ, եւ զքո լուծցէ ոսկերս երկիր
Զանկելոցդ 'ի Տրոյա՝ մինչ չեւ զործոյս 'ի լրումն եկեալ։
Եւ զայս խնչ ոք ասիցէ յամբարտաւան տրովլացւոց՝
Տրոփեալ ոտն 'ի շիրիմ Մենելաւեայ մեծափառի.
Օ՜հ Թէ այսպէս 'ի հանուրս Ագամեմնոն լըցցէ զցասումն՝
Որպէս այժմս այսր ընդ վայր զաքայեցւոցն ածեալ բանակս,
Եւ զնաց կորեաւ 'ի տուն 'ի հայրենին ըղձալի գաւառ.
Նաւուք դատարկեալովք, Թողեալ զարին Մենելաւոս։
Զայս ոք ուրեք ասասցէ, բացցի յայնժամ ինձ երկիր վիհ։
Բայց ըղձա սրտապնդեալ Մենելաւոսն առէ խարատեաչ.
Քաջ լեր, մի երկեղուցուս արկցես 'ի զօրս աքայեցւոց.
Ոչ Թէ նետըն սայրասուր 'ի մահաբեր ուրեք հարաւ,
Պահեաց զօտին նըկարէն եւ 'ի ներքուստ պատեալ կամարն
Եւ տախտակն յօրինեալ 'ի պղնձագործ որդւոց զարբնաց։
Առ որ արձակեալ պատասխանի առէ արքայն Ագամեմնոն.
Իցէ Թէ այդ այդպէս էր, ով սիրելիդ Մենելաւոս։
Այլ ըղկէրըդ զըննեալ արկցէ բըժիշկն բաղեղանս,
Որ 'ի սեաւ քո ցաւոցըդ հանդուսցեն ըղքեզ Թերեւս։
Ասացեալ՝ առ զքանչելին ձայնեաց քարոզ Տաղթիբիոս.

Տա՛լԹիբիէ, երբ փութով կոչեսջիր այսր ըզՄաքաւոն՝
Զայրն որդի Ասկղեպիեայ զամենահնար բժշկապետն,
Գալ այցել ըզՄենելաւ զարխտական պետն աքայեանց,
Զոր նետաւաՀար արար ոք կորովաձիգ աղեղնաւոր
Ի տրովադեանց կամ լիկեցւոց, նմին 'ի փառս, իսկ մեզ 'ի սուգ։
Զայս ասաց, եւ քարոզն լուեալ՝ չեղեւ անհնազանդիր.
Եւ գնացեալ գնաց 'ի գունդս պատենազէն աքայեցւոց,
Աչս ածեալ 'ի գիւցազնըն Մաքաւոն զոր եւ ետես,
ԱՀա կայր եւ շուրջ զնովաւ Հզօր Ջոլերք վաՀանաւորք
Վաչտականաց 'ի ձիաբոյծ Տրիկկեայ նմին զինուորելոց։
Որում մերձ անցեալ ըզբանս երագաԹեւ բարբառեցաւ.
Արի եկ, Ասկղեպիեանդ, Ագամեմնոն կոչէ արքայ,
Գալ տեսանել զՄենելաւ զարխտականն աքայեանց պետ՝
Զոր նետաձիգ արար ոք աղեղնաւոր քաջաՀմուտ
Ի տրովադեանց կամ 'ի լիկեանց՝ իւր 'ի պարծանս եւ մեզ 'ի վիշտ։
Զայս ասաց եւ զսիրտ նորա 'ի լանջս իւր վրդովեցոյց.
Ելեալ գնացին ընդ ամբոխն 'ի լայն ճամբարն աքայեցւոց։
Եւ յորժամ ժամանեցին ուր Մենելաւ խարտեաշագեղ
Կայր խոցեալ եւ ըզնովաւ քաջաց գումար միաժողով
Պար առեալ՝ եւ 'ի միջի անդ կանգնէր այրն աստուածանման,
Իսկ եւ իսկ կորզեաց ըզնետն 'ի կամարէն գեղապատշաճ.
Այլ 'ի ձգել Հանել փշրեցին՝ յետոյս բեկան կարԹք նորա սուր։
Ըզգօտին խայտաճամուկ եղոյծ յանձնէն, եւ 'ի ներքուստ
Ըզկամարն եւ ըզտախտակ՝ գործ պղնձագործ մանկանց դարբնաց։
Եւ ըզխոցըն տեսեալ՝ ուր դառնաԹոյնն անկաւ սլաքն,
Քամեալ զարիւնն՝ Հմտաբար ցանեաց ամոքս ըսպեղանիս
Զորս երբեմն Հօր իւրում սիրելապէս մատոյց Քիրոնն։
Մինչ սոքա յաՀեղագոռըն Մենելեայ կային 'ի սպաս,
ՎաՀանաւոր տրովացւոց Հրոսեալ գային խումբք 'ի վերայ.
Նոքա զէն զգեցան դարձեալ եւ յուշ արկին ըզմարտակէս։
Ոչ քընած տեսանէիր անդ ըզդիւցազն Ագամեմնոն,
Ոչ երկչոտ ոք սըրտաԹափ, ոչ վեՀերոտ 'ի գուպարած,
Այլ յաւէտ ժրրագլուխ 'ի մարտ՝ յարանց փառապարգեւ։
Զի զերիվարսըն Թողեալ կառօքն 'ի պղնձի դըղրդալիցս,
Զորս առեալ ըզփըռնչեալըն մեկուսի պապասեակն ունէր
Եւրիմեդոն՝ որդին քաջ Պիրէոսեանըն Պտողեմեայ,
Որում եւ սաստիկ ետ պատուէր՝ ունել զնոսին իւր առ երի,
Թէ խոնջ ուրեք կայցի զանդամն 'ի տալ Հրաման բազմամբոխին.
Ինքն Հետի երԹեւեկեալ ընդ դասակարգ ռազմամբոխից,
Զորըս ժիրըն տեսանէր յերագաձի դանայեցւոց,
Մերձ կացեալ՝ եւս առաւել նոցա բանիւքըս տայր խրախոյս.
Արգիացիք, մի՛ ծուլայք յարխական քաջութենէդ,

Քանզի հայրն Արամազդ սրտայ նըզդաստ եղիցի ոչ.
Այլ որ նախ վաղեալ զերգամանքս ուխտի զաշանդըն գըրժեցին,
Ընդոցա փութանակ մարմնոյս անշուշտ անդէպք Ճարտակեցին,
Ընկենայալըն սիրելիս մեք եւ զմանկանց նոցին մանրիկ
Վարեցուցեք նաւուք գերի, զատեալ նոցուն վարեալ աղտոր։
Իսկ զորս հայեր վաստակաւորս 'ի սոսկալի պատերազմէն,
Ընդոսա զայրացմն բանիւք կրտփեալ յոյժ կըշտամբէր.
Արգասեանք, նախերկեալքդ 'ի նեա, անօթապարտք, ո՞չ պատկառեք.
Զի՞ ընաւ մըշտապես կայք ընդ վայր խեթեւ զեղնորթս հարեալ յառաջուց,
Որ խանձեալ պարտասեալ 'ի մեծապաշտ արշաւանաց՝
Զետղ առեալ կան, եւ մինայ ինչ ոչ 'ի սիրտսըն զօրութիւն.
Նոյնպէս կայք եւ դուք տաղեալ, ուշ ձեան 'ի գործ մըխեք մարտից։
Մի՞թէ արտմէա՞նց սպասիցէք հասանել զալ սոր նաւքըս մեր
Կան ձըգեալ գեղեցկախելք՝ ընդ ափնածիր ալեխառն ծովուն,
Զի անուշեք թէ Զրուանեանն արկցէ՞ զձեռք զեւր ձեան հովանի։
Այսպէս սա իշխանաբար զընայր Ճեմեալ ընդ գունդս տաղմ.
Եկն եհաս առ կրետացին՝ յորս արանց անցեալ 'ի սահ։
Եւ սոքա զզատշխառմըան Իդոմենէւ զինուորէին.
Իդոմէն՝ 'ի նախահառակսն ուժգնութեամբ վարազանման,
Եւ նորա Մերիոնէս ընկեալին զունդաըն խրախուսէր։
Զորս տեսեալ ցընծացաւ արանց արքայն Ագամեմնոն,
Եւ անդէն սոցա բանիւք բարբառեցաւ առ Իդոմէն.
Զքեզ, Իդոմէն, պատուեմ 'ի ընաւ երագաձի դանայեցիս
Թէպէտ 'ի պատերազմ, թէպէտ եւ յայլ ամենայն գործ,
Եւ թէպէտ 'ի կոչունս, ուր զսեաւ գինին մեծահարկի
Խառնեն 'ի խառնարանս արքայացուցն ազատատեարք։
Զի ուր այլք առ հասարակ 'ի հերապանծ աքայեցւոց
Ըմպեն բաժին մի չափով, քո լիալիր կայ միշտ բաժակ,
Որպէս ինձ իսկ զըմպելին, ըմպել յորժամ ցանկասցի սիրտ։
Խոյացիր արդ 'ի մարտ՝ որպէս ինչ զոլ պանծայիր նախ։
Առ որ զայս Իդոմէնեւս արար զարձուած կրետացւոց պետ.
Ատրիդէս, ես քեզ յոյժ հաճոյական եղէց ընկեր
Իբր երբեմն յառաջագոյն կալայ յանձին եւ խոստացայ.
Իսկ դու զայլս յորդորեա՛ զիսակակտր աքայեցիս,
Զի փոյթ ընդ փոյթ մարտիցուք. քանզի արտմէանք լուծին զերդմունս,
Եւ նոցա՝ մահ եւ աղէտք ժամանեսցեն այսուհետեւ,
Որ զի նախ ձեռներէցք զուխտին անցեալ հասուցին սոյժ։
Զայս ասաց, եւ Ատրիդէս եկեալ զընայր զուարթամիտ.
Եկն յԷասըն երկուսեան, յորս արանց անցեալ 'ի գունդ.
Եւ սոքա զէն առնուին, եւ զկնի խաղայր հետեւաց ամպրոպ։
Զոր օրինակ 'ի գիտէն եանս ընդմէջ այր խաշնարած,
Զի շընչով արեւմտից ասպատակեալ ընդ ծով դայցէ.

Եւ նըմա 'ի բազմակայսն կարիւ ըղձուալր ինչ արծնաթոյր
Թըլի'նդ անդունդս ընթացեալ, ածեալ բերեալ մըրըրիկ բազում,
Սոսկացաւ ընդ ոտսիլն եւ ընդ այրիւ վարեաց ըղձօտն.
Համադունակ ընդ Նասեանց դիւցազընունդ պատանեկաց՝
Ի դըժնեայ դըրդէին Ճակատամարտ խիտ գունմարտակք
Կառուցատակք, եւ յապալար եւ 'ի նիզակ քըրմնածածանք:
Եւ զասա յոկն արկեալ՝ խընդաց արքայն Ագամեմնոն,
Եւ առ նոսա ձայնարկեալ՝ երագաթեւ խօսեցաւ բան.
Զեզ, Նասք, պատենադէն արգիացւոց ըսպայապետք,
Զեզ ինչ ոչ տամ հրաման, չէ իսկ պիտոյ տալ ինչ ձեզ Ճեպ,
Դուք ձեզէն վառէք ըղզօրդ՝ արիապէս դընել մաքառ:
Օ՛չ թէ, հա՛յր Արամազդ, եւ Աթենաս եւ Ապոլոն,
Այգպիսի ամենեցուն 'ի լանջս իւրեանց լինէր ոգի,
Օ՛ն եւ ծն՝ արքայլին Պրիամու փոյթ քանդէր քաղաք
Ըզմերովս անկեալ բըռամբ եւ նըւաճեալ եւ տապալեալ:
Ասացեալ զայս եւ անդէն զնոսա թողեալ չոգաւ առ այլս.
Անդ եգիտ ըզՆեստոր՝ ըղքաղցրաձայն Պիւղեանց խօսնակ,
Որ զկարգն 'ի ռազմ յօրինէր եւ խրախուսէր 'ի պատերազմ
Ըզմեծաւ Պելագոնիւ, զԱլաստորաւ եւ ըզՔրոմեաւ
Եւ զՀեմոնաւ արքայիւ եւ զԲիասաւ հովուէին ազգաց:
Եւ յառաջ զհեծելախումբն հանդերձ կառօք ուերիվարօք,
Եւ զհետեւակսն ըզկնի կացոյց յաճախագունդ արի որեար՝
Ի ռազմին լինել պարիսպ, իսկ զվատիկարսն արկ 'ի մէջն,
Զի թէ ոք եւ յակամայս, այլ առ հարկին գուպարեսցի.
Եւ նախ՝ հեծելազէն տայր նոա պատուէր, եւ հրամայեաց
Զուսպ ունել զերիվարսն եւ մի ասպայլն հարկանել խառն:
Մի ումեք 'ի ձիավարժս եւ յարութիւն իւր խիզախեալ,
Նախահաստ եւյց միայն պատերազմել ընդ տրովացիս,
Եւ մի յետս ընկըրկեսցի, զի տկարագոյն գըտանիցիք:
Եւ որ յիւրում ոք 'ի զոյգս համդիպեսցի կառաց այլում,
Կարկառեսցէ տէգ յոտսին, որ օգտագոյն լիցի պայման:
Սոյնպէս եւ հինքն ըզքաղաքս եւ ըզպարիսպս աւերէին,
Զայս 'ի լանջս իւրեանց ըզմիտս եւ ըզհոգի կիրթ ունելով:
Այսպէս ծերըն տայր խըրատ՝ նախնի մարտից քաջահըմուտ,
Զոր տեսեալ՝ զուարթացեալ խընդաց արքայն Ագամեմնոն,
Եւ արձակեալ առ նա ձայն՝ թըռչուն բանիւք բարբառեցաւ.
Տա՛յր ոք ինձ, ո՛վ ծերունի, թէ զերդ ոգիդ է 'ի ծոցիդ՝
Նոյն եւ ծունկքդ ըղձեա զնայլին, ոյժ եւ կորովդ էր անդէգեւ,
Բայց մաշէ զքեզ ալեւոյթ հասարակաց նըմանավըշտ.
Ցանկայ՛րծ ո՛յլ ոք զայն առնոյր, եւ դասէիր դու'նդ մանկագոյնս:
Եւ նըմա պատասխանի Նեստոր ասպետըն Գերենեան.
Եւ իսկ ինքնին, Ատրիդէս, փափաքէի այնպէս լինել՝

Ըղձիւցաղն որպէս յորժամ սատակեցի զՆերեւթայեան ։
Բայց երբեք գեթ զամենայն միահաղոյն չետուն մարդկան.
Պատանի յայնժամ էի, այժմիկ ալեք յիս անկանին։
Այլ սակայն խառնեցայց ընդ հեծելազն եւ տաց խրախոյս
Խորհրդով եւ բանիւք, զի ծերունեաց է այս պատիւ։
Տէգընկէց լեցի մանկանին՝ տիգօք քան զիս կրտսերագոյն,
Յուսալից՝ որպատեայ խիզախ յոյժ ու՛ի կորով կարշնեղութեան։
Զայս ասաց, եւ Ատրիդէս խաղայր յառաջ ուրախամիտ.
Գիտ զորդին Պետէոսի զձիամարզիկըն Մենեսթեւս
Զի կայր, եւ շուրջ զնովաւ աթենացիք ճակատամուղք,
Եւ անդէն՝ հուպ առընթեր կայր Ոդիսեւս բազմահանճար։
Եւ անդ մօտ՝ Կեփաղէննեանց շուրջ գումարտակք ոչ անուաղք՝
Կային անդորր, քանզի զօրուն չեւ էր առեալ զխաղմին խօշեան,
Զի դեռ այն ինչ դղրդեալ խըլըրտէին գունդքըն ասպիկք
Տրոյացւոց ձիավարժից եւ աքայեանց աստի անտի.
Ուստի սոքա դէտակն եղեալ՝ մնային զի այլ գունդ աքայեան
Դարձեալ 'ի վերայ տացէ տրովեանց, եւ սկիզբն 'ի մարտ առնիցէն։
Զոր տեսեալ յանդիմանեաց Ագամեմնոն արանց արքայ,
Եւ առ նոսա ձայն եղեալ՝ խօսեցաւ բանս երագաթռիչ.
Ո՛վ զաւակ Պետէոսեան՝ դիւցասընուն թագաւորի,
Չարահնար եւ դու լցեալ խոր մանգութեամբ նենգդ Ոդիսեւս,
Զի՞ կայք պակուցեալ, եւ վեհերեալ՝ այլոց մնայք.
Ձեզ արժան էր առաջքին ընդ առոյեան կալ նահատակս
Եւ 'ի կռիւ հրաբորբոք՝ դիմագրաւեալ շահատակել։
Առաջինք եւ 'ի խրախուտս յինէն կոչիք դուք երկոքեան,
Յորժամ խրնջոյս կազմիցեմք աքայեցիքս ազատանւոյն։
Քաղցր էր անդ ըղխորովոյ խորտիկան ուտել համեղահամ
Եւ զանոյշ գինւոյն նըւագս՝ որչափ եւ կամք էին՝ ըմպել.
Բայց սակայն մըտադիւր կամիցեալ կայիք ցայժմ 'ի զընին,
Տան տասն առոյեան թէպէտ գունդ անդուլթ զինով կանխէր 'ի մարտ։
Հանճարեղն Ոդիսեւս խեթիւ դիտեալ արար գարձուած.
Զինչ ապիկար բան, Ատրիդէս, ընդ ատամանցըդ վաղեաց ցանկ.
Զի՞ո՞րդ յոյլս ասես 'ի կռիւ. ուր զարթուսցուք աքայեցիքս
Բարկ եւ սուր ճակատամարտ ընդ տրովացւոց ձիավարժից,
Անդ տեսցես, թէ կամք իցեն եւ քեզ իցէ ինչ սոցին փոյթ,
ԶՏելեմաքին սիրուն հայր ընդ առոյեանս խառն արշաւեալ
Տրովադեանց քաջամարտից. եւ օդաբանս խօսիս դու զայդ։
Իսկ ընդ նա՝ ժպտեալ ընդ քիմս՝ ասաց արքայն Ագամեմնոն,
Խելամուտ ցասմանն եղեալ, եւ 'ի խօսիցն եկեալ 'ի զիջ.
Մաղզեղընդ Լայերտեան՝ բազմահընար Ոդիսեւս,
Ոչ ստրուիւ ինչ կըշտամբեմ ըզքեզ եւ ոչ հրաման ինչ տամ.
Զի հասեալ եմ ճշմարտիւ՝ զխորդ ոգիդ 'ի լանջըս քում

Աղու մրմռաց է հրմուռ, զի զնոյն խորհիս որ զինչ եւ ես։
Այլ ասէ երթ, եւ թէ խնամ ինչ առ տեղեաւս իցէ խօսեալ,
Քաւեսցուք զայն ապա, եւ գիցեն դէք ըղձնաւն ապախտ։
Առաջեալ՝ եթող զնոսին անդ եւ առ այլս հետեւեցաւ,
Եւ եգիտ զորդին Տիգրանայ զմեծահոգին Դիոմեդէս՝
Զի կայր խառն ընդ երիվարսն 'ի մէջ կառաց զրուագելոց.
Եւ կայր մօտ առ նմին Սթենեղոս ուստրն Կապանեայ։
Դըրդմեաց եւ ըղձոյն տեսեալ արքայն Ագամեմնոն,
Եւ առ նա բարբառեալ ըղարաթեւ բանիւքս խօսեցաւ.
Ո՛հ զեմեւ, որդիդ Տիգրանայ քաջամարտի, ձիախրոխտին,
Զի՞ զանգիտես հայեցեալ ընդ ասպարէզ պատերազմիդ.
Զարհուրումն չէր երբեք այդպէս 'ի սէր եկեալ Տիգրանայ,
Այլ քան զընկերսն անձկալիս շահատակել յառաջագոյն մարտ,
Որպէս պատմեցին մերձմանց նորուն տեսանողք.
Ես ոչ գիտեմ, ոչ տեսի, բայց գերագոյն այլոց ասեն։
Զի առանց մարտամարտից եկեալ եմուտ հիւր 'ի Միկենս
Դիւցազնաւն Պոլինիկեաւ հանդերձ՝ լինել զօրաժողով,
Որ կազմէին յայնժամ կալու առ նուիրական պարիսպ Թեբեայ,
Եւ ուժգին պաղատէին տալ զանուանի նիզակակիցս։
Հաւանեալ ընդ աղաչանսն յօժարէին շնորհել սոքա,
Այլ շրջեաց Արամազդ՝ վատաբաստարար ցուցեալ նշանս։
Իսկ նոքա երթեալ գնացեալ յառաջագէմ եղեն յուղւոյ,
Եւ հասին յԱսոպոս 'ի կնիւնաւէտ եւ խոտաւէտ,
Անդ անդէն պատգամաւոր առաքեցին զՏիդէւս աքեանք։
Չոգաւ նա եւ եգիտ բազմախռնձոյ կադմեացիս
Ակռմբեալ 'ի խրախճանս յԵտէոկղեանն արքունեան յարկ։
Անդ թէպէտ եւ հիւր օտար ոք էր Տիդեւսըն ձիավարժ,
Ոչ երկեաւ ինչ միայնակ կացեալ 'ի խուռն կադմեացւոց,
Նա՝ դրդռէր եւս 'ի գուպար, յաղթէր 'ի բնաւս յաջողապէս.
Այնպիսի ձեռընկալու կայր 'ի թիկունս իւր Աթենաս։
Ցասուցեալ սրտմտութեամբ կադմեականքըն ձիամուղք՝
Ցայտրէն դարձն առին եղին նըմա դարան գունդ բազմաձեռն,
Յիսուն մի պատանեաց, ոյց զընդառաջ էին երկուք,
Մէոնն Էմոնեան՝ անմահից դիցն հանգունաւոր,
Եւ համբակն Աւտոփոնեայ Պոլիփոնտէս քաջամարտիկ։
Իսկ Տիդէւս եւ առ սոսա եւս առաքեաց օրհաս գաժան,
Սատակեաց զամենեսին, միում թողեալ դառնալ 'ի տուն.
ԶՄէոնն եւեթ արձակեաց՝ նշանաց դիցն հրապատակեալ։
Այսպիսի ոք էր Տիդէւսն ետոլացի, սակայն զորդին
Վատթար 'ի մարտս ծնաւ քան զինքն, 'ի բան ճարտարագոյն։
Զայս ասաց, այլ չետ նըմա պատասխանի Դիոմէդ քաջ,
Ակն ածեալ 'ի սաստէ պատկառելի թագաւորին։

Բայց որդին Կապանեայ մեծափառին՝ արար դարձուած .
Մի՛ ստեր, Ատրիդէս, որ զի խօսել գիտես ուղիղ .
Լաւագոյն յոյժ քան ըզհարս տաւեալ մեզ պանծամք լինել,
Զեօթնադռնեան Թեբայեցւոցն ինքնին տուեալ է մեր ըղձանս,
Ածեալ գունդ սակաւաւոր ըզպարըսպաւորն արիական,
Խրախուսեալք 'ի դէց նշանս եւ յօգնութիւն Արամազդայ .
Իսկ 'ի կորուստ մատնեցան նոքա իւրեանց մոլորութեամբն .
Արդ մի՛ դու ինձ բերես ըզհարս 'ի նոյն գործել պատիւ :
Տեղգք աչաց հայեցեալ Դիոմեդ քաջ ասէ ցնա .
Է՛ սիրուն, նստ դու լռելի եւ ունկն խոնարհեա իմոց բանից :
Քանզի ոչ ցասնում ես Ագամեմնոն հովուին ազգաց՝
Որ 'ի կռիւ խրախուսէ զաքայեցւոցն բարձաղէնս :
Զի առ նա փառքն երթիցեն՝ եթէ երբէք աքայեցիք
Վանեսցեն ըզտրովացիս եւ զԻլիոն առցեն ըզսուրբ .
Եւ նմա սուգ մեծ դարձցէ՝ աքայեցիք թէ վանեսցին :
Այլ ո՛ն 'ի քաջ արութիւն տուեալ եւ մեք տարցուք խորհուրդ:
Ասաց, եւ 'ի կառաց զինուքն հանդերձ վաղեաց յերկիր,
Եւ զպղնձին յանձին ոլորայլին սաստուցելոյ հնչեաց ահեղ,
Մինչ անդամ եւ զքաջապինդ առն իսկ զահի հարկանելոյ :
Զբազմագոչ ծովափանցն որպէս յորժամ անդընդոց ալեաց
Ըզմիմեամբք կուտակին յարեւմտակս յուղել հողմոյն .
Նախ 'ի խորս անդ գիզացեալ եւ խորտակեալ առ յերկիր՝
Մեծամեծըս մռընչեն, եւ ուռուցիկ լեռնակարկառ
Ցարուցեալ զատարանանդաք թըքնուն զաղի ծովուն փրփուր,
Այսպէս յայնժամ խուռնըրնթաց դանայեցւոց զըրդէին գունդք
Անդադար 'ի պատերազմ . եւ զօրավար իւրաքանչիւր
Տայր հրաման իւրոցն, իսկ այլք գնային լռելի, մինչ ոչ կարծել
Թէ զհետ գայցէ այնչափ ամբոխ՝ որոց 'ի կուրծսն գուցէ ձայն,
Լըռութեամբ երկուցեալ յառաջնորդացն, եւ զնորոգ զէնս
Գունակ գունակ փողփողեալք՝ որով վառեալ տողեալ գնային :
Տրովացիքն, որպէս խաշինք 'ի հանդըրրուան առն ընչեղի
Կան ժողովք բիւրաւորաց 'ի ձիւնաթոյր կաթին կըթել
Անդըրդաւ բառաչելով 'ի լսել ձայնի բրնչման գառանց,
Աղաղակ տրովադացւոցն այսպէս ընդ լայնն հընչէր բանակ .
Զի չէր նոյն խըղոխըրրանին ամենեցուն, ոչ մի բարբառ,
Այլ լեզու խառն 'ի խուռն, եւ արք յոլովք տարաշխարհիկք :
Ըզսոսա գըրգռէր Արէս, եւ Աթենաս ծաւի զնոսա,
Եւ Երկիւղ եւ Արհաւիրք, եւ Հեռ անյագն 'ի մոլութիւն՝
Մարդասպանաջանն Արէսի հարազատ քոյրն այն եւ ընկեր,
Որ նախ խուռն մի ամբառնայ, բայց ըզկընի այնուհետեւ
Ըզգլուխն յերկինս կանգնէ եւ ձեմս առեալ շըրջի՛ ընդ երկիր :
Որ եւ յայնժամ հասարակ ընկէց ըզկռիւ 'ի մէջ նոցա՝

Ընթացեալ ընդ ամբոխն, հեծումն արանց յորդորելով։
Եւ ոգքս 'ի մի վայր յորժամ եկեալ հասանէին,
Խռնէին ասպար՝ նիզակ եւ պղնձակուռ արանց կորովս,
Եւ վահանքըն կոմբեայք երթեալ յիրեարս յեռուլին հուպ,
Եւ այմուկ եւ դղըրդ անհընարին յառնէր անդէն։
Անդ եւ գոյժ եւ խրոխտումն 'ի միասին լինէր արանց
Խողողից՝ խողողելոց, երկիր արեամբ հոսէր գետայր։
Որպէս յորժամ ուղխացան հեղեղատեալ գետք 'ի սարոց
Խառնիցեն 'ի ձորամիջս ընդյորդադէմ ջուրցըն վըտակս
Յաղբերաց մեծամեծաց 'ի խորանդունդ գըլեալ խոխոմ,
Զորոց բոմբիւնն 'ի լերանց լսէ հովիւն 'ի հեռաստան.
Նոյն սոցին 'ի խառնուրդս յառնէր գոռումն եւ արհաւիրք։
Առաջին Անտիլոքոս՝ այր 'ի տրովեանց ըսպան մարտիկ
Քաջազէն 'ի նահատակս, ըզԹալիսեանն Եքեպոլոս,
Զոր եհար նախ 'ի խորան ձիագիսակ սաղաւարտին
Եւ 'ի ճակատն հարըստեաց, եւ մինչեւ յոսկրըն մըխեցաւ
Պըղընձին սայր, եւ ծածկեաց զակամբն նորա խաւար,
Եւ անկաւ, որպէս մինչ բուրգն, 'ի սաստկակոծ գուպարածին։
Զանկեալըն բուռն հարեալ զոտից արքայն Եղեփենովր՝
Աբանտաց իշխեցողըն մեծանձանց Քալկոդոնտեան,
Ի նետից ձըգէր 'ի դուրս, խըձ լինելով վաղվաղակի
Առնուլ զինուցն ըզկապուտ, սակայն հատաւ ջան նորա սուղ.
Զի մեծանձն Ագենովր ըզնա տեսեալ գերյն 'ի քարշ,
Ընդ կողմն՝ որ 'ի կըքել իւր յասպարէն կայր հոլանի՝
Պղընձադէն սըլաքեալ բըռնով խոցեալ ելոյծ զանդամսն։
Այսպէս զինքն եթող հոգին, բայց յիւր վերայ գործ դառնութեան
Անդ 'ի վեր երեւեցաւ ընդ տրովացիսն եւ աքայեանս,
Զի քան զգայլս անկեալ յիրեար, եւ այր զընկեր բըռնահարէր։
Անդ Այաս Տելամոնեան եհար զորդին Անթեմեոնի՝
Զծաղկազուարճ պատանին զՍիմոյիսեան, այն որ երբեմն
Իջեալ մայրըն յԻդայէ՝ զՍիմոյիսեայ ծընաւ զափամբք,
Մինչ երթայր ընդ ծընողսն ըզհօտ խաշանցըն տեսանել.
Եւ սըմին այսր ազգաւ Սիմոյիսեան զնա կարդային։
Սակայն ոչ սիրուն ծնողացն ըզփոխարէնսն հատոյց սնընդեան,
Սակաւակեաց եղեալ անկեալ 'ի մեծանձինն Այասայ տէգ.
Զի զնա նախ անդ 'ի դիմելն ընդ կուրծս եհար զըստեամբն աջոյ,
Եւ ընդ ուսն 'ի հանդիպոյն պղընձի գեղարդն ել Թափանցանց։
Նա 'նդ փոշի յերկիր գըլորեալ տապալեցաւ իբրեւ բարտի,
Որ 'ի յուղթի մարգագետին ճահճի մեծի ծընեալ ողորկ,
Ըստեղունքն 'ի բարձրածայր 'ի գագաթունսն արձակեցան.
Զոր ճարտարըն կառագործ այր կոտորեաց յերկաթ փայլուն,
Կարտկնել զայն 'ի հեց՝ գեղեցկաշէն կառաց անուոյ,

Իսկ ինքըն զօսացեալ անկեալ դընի յեզըր գետոյն ·
Այսպիսի զԱնթեմիդէսըն կոծոցեալ սփոփելեան
Դիւցազըն Էաս, յոր Անտիփոս Պըրիամեան երփնազըրահ
Արձակեաց ընդ գումարտակն ըղնձեղակէն տէգ սայրասուր ։
Վըրիպեալ լեալ 'ի նմանէ՝ զԼեւկոս զընկեր քաջ զՈդիսեայ,
Մինչ առեալ զեռ այլուր ձըգէր ըզդէն, ընդ համոն եհար ·
Կործանեցաւ ըղնովաւ, անկաւ դիակն 'ի ձեռանէն ։
Ոդիսեւս ընդ մահ նորա բորբոքեալ 'ի մեծ սրտմըտութիւն՝
Մտեալ 'ի մէջ նախամարտկաց՝ վառեալ 'ի զէն հրաշէկ պըղընձոյ,
Հուպ մատեաւ եկաց՝ ընկէց զաշտէն փայլուն շուրջ դիտեալ ։
Յարդինէկեց լինել քաջէն ընկըրկեցան տրովադացիք,
Բայց ոչ նա զըպատրաստակ ընդ վայր զդեղարդըն արձակեաց,
Այլ եհար զհարճորդին Պրիամոսի զԴեմոկոոնի
Որ առ նա յԱբիդոսէ եկն 'ի ձիոյկացն օդապարից ։
Ար ընկերին զայրացեալ եհար ընդ ծամելըն տէգ Ոդիսեւս,
Եւ սըլաքըն պըղընձաձոյլ շեշտեալ ընդ միւսն ել ծամելի ·
Եւ մութըն խաւարին մածեալ ծածկեաց զաչըս նորա,
Եւ տապալեալ թընդ եհան, եւ հընչեցին զէնքն ըղնովաւ ։
Տեղի ետուն նախահառաջք եւ նոյն իսկ վեհն ինքնին Հեկտոր ·
Արգոսեանք հարին խոշիւն եւ զդիականսըն ձըգէին,
Եւ յառաջ կոյս զըռոհ եռուն · բայց Ապոլոն սըրտմըտեցաւ
Ի Պերգամայ եդեալ զետակն, եւ առ տրովեանս եբարձ խըրախոյս ·
Արիք, տրովեանք ձիախրոխտք, եւ 'ի մարտին՝ յարգեացւոց
Մի յեանիք, զի եւ նոցա չէ քար մարմինն եւ ոչ երկաթ՝
Համբուրժել 'ի սայր պըղընձի մորթապատառ հարկանելեաց ։
Նա եւ ոչ ինքն Աքիլլեւս՝ որդին Թետեայ վարսագեղի
Կայ 'ի կռիւս, այլ առ նաւուքն ըղբըրտակեղն իւր հալէ մաղձ ։
Զայս դըժնէն գոչեաց ասացեալ 'ի քաղաքէն, իսկ զաքայեանս
Յարոյց զուսար Արամազդայ Կատարինածինն ամենափառ,
Ընթացեալ ընդ բանակն՝ ուր լըքուցեալըս նըշմարէր ։
Անդանօր զԱմարինկեանըն Դիովրէս կապեաց Օրհաս ·
Զի առ վէգ ոտինն հարաւ 'ի խորտաբորտ բըռնաքարէ
Յաջ ոլքըն, եւ որ եհարն էր Թրակացւոցն արանց իշխան
Իմբրասեանըն Պիրոոս, այն որ եկեալն էր յԵնոսայ ։
Եւ զաճառըն զերկուսին ոսկերքըն հանդերձ ջըլամըն ժըղակեր
Սպառըմպատուռ ջախջախեաց, անկաւ յորսայս ինքն 'ի փոշւոյ՝
Զերկոսեան առ սիրային ընկերսն ըզձեռսըն տարածեալ
Ի թալանեալ թափել զոգին · եւ որ եհարըն Պիրոոս՝
Յարձակեալ խոցեաց տիզաւ զպորտն եւ մերժեալ հեղան յերկիր
Փորոտին առ հասարակ, եւ զաչըս իւր ծածկեաց խաւար ։
Էտոլեանն ըզսա Թոաս 'ի հրոսելն անդ եհար տիզաւ
Ընդ լանջս 'ի վեր քան զըստինսն, եւ վարսեցաւ պըղընձն 'ի թոքսն ։

Եկեալ մերձ առ նա Թոմաս՝ հան 'ի կրծիցն ըզբռուան աշտէն,
Եւ ձգեալ մերկացոյց ըզսպայրաստուր վաղակաւորն,
Եւ ընդ մէջ որովայնին խոցեալ նովաւ՝ կորզեաց զոգին։
Իսկ ըզզէնսն ոչ կապտեաց, զի պատեցան զնովաւ ընկերք
Թրակացիք ցցագիսագէսք, 'ի ձեռս երկարս երկայն նիզակք,
Որք ըզնա զանձնամեծարն եւ զկայտառն եւ զպերճալին
Մերժեցին յանձանց 'ի բաց, եւ ընկրկեալ վանեցաւ նա։
Այսպէս առքա երկոքին զմիմեանց 'ի հող անկան տապաստ,
Սա Թրակացւոցն առաջնորդ, նա Եպէոսեանց զրահապատեանց։
Եւ այլ եւս յոգնաթիւք տարածեցին շուրջանակի։

Թէ ոք անդր այր հասանէր, ոչ եւս անարգս ինչ գտէր ըզգործն,
Որ անվէրն եւ անխոց 'ի պըլլեալ սուր պըղընձոյն
Շուրջ 'ի մէջն անցանէր, ածէր Պաղլաս զձեռն Աթենաս
Զձեռանէն առեալ՝ հեռքեալ եւ ըզնետից ճախրանս 'ի բաց։
Զի այն օր յաքայեանց եւ տրովացւոց մեծ բազմամբոխ
Բերանաւ 'ի տախտապատըղ անկան զմիմեանց անդ 'ի փոշւոջ։

Հ Ո Մ Ե Ր Ի

# Ի Լ Ի Ա Կ Ա Ն

---

## Ե Ր Գ  Հ Ի Ն Գ Ե Ր Ո Ր Դ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Օգնականութեամբ Պալլասայ Աթենասայ առաւել քաջութիւնս առնէ Դիոմեդէս քաջ 'ի Յունաց. խոցեալ նետիւ 'ի Պանդարոսէ, բայց զօրացեալ յԱթենասայ եւ դարձեալ անդրէն 'ի կռիւ, սպանանէ զբազումս, ընդ որս եւ 'զՊանդարոս. քարիւ հարկանէ զԷնէաս 'ի ծունկն, մայր նորա Աստղիկ դիմեալ ի թիկունս որդւոյն՝ խոցի 'ի ձեռնն, խոյս տուեալ ելեալ յՈլիմպոս՝ բժշկի 'ի Պէոնէ դիցն բժշկապետէ. իսկ զԷնէաս փրկէ Ապոլոն 'ի ձեռաց Դիոմեդեայ: Արէս խրախոյս տայ տրովացւոց. Դիոմեդէս նահանջէ յերեսաց Արէսի եւ Հեկտորի: Հերա եւ Աթենաս իջանեն յօգնութիւն Յունաց: Դիոմեդէս դրդ-դեալ յԱթենասայ՝ հարկանէ զԱրէս ընդ որովայնն, որ առ ցաւոցն մռնչեալ ամբառնայ յերկինս. կշտամբի յԱրամազդայ, բժշկի 'ի Պէոնէ:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՀԻՆԳԵՐՈՐԴ

### ԴԻՈՄԵԴԵԱՑ ՔԱՋՈՒԹԻՒՆ

Բայց Պաղլադն Աթենաս զՏիդեանն յայնժամ Դիոմեդէս
Կորովով եւ արութեամբ լցոյց լինել նշանաւոր
Յամենայն արգիւացիսն եւ պարծանաց ժառանգել փառս։
Հուր յիւրմէ գլխանոցէն եւ յասպարէն վառէր անշէջ
Աստեղն աշնայնոյ նմանատիպ օրինակաւ,
Որ պայծառ յոյժ փայլակէ յովկիանոսն լուացեալ 'ի ծով.
Այսպունակ բոց բորբոքէր յուսոց նորա եւ 'ի գլխոյն,
Եւ մղեաց զնքեն անդր 'ի մէջ՝ ուր գունդ 'ի գունդ փոթորկէին։
Էր Դարէս ոմն անուն 'ի տրոյացիսն ընչեղ, ամբիծ,
Հեփեստեայ քուրմ, եւ երկու էին նորա ձեռք պայազատք,
Փեգեւս եւ Իդէոս քաջահմուտք պատերազմաց։
Դէմ ընդ դէմ յարձակեցան 'ի նա սոքա մեկուսացեալք,
Երկոքին սոքա 'ի զոյգս, իսկ նա զինեալ հետեւակ։
Եւ յորժամ շահատակեալ հուպ առ իրեարս հասին նոքա,
Նախ Փեգեւս արձակեաց 'ի նա զնիզակն երկայնաստուեր.
Անց սլաքն գեղարդանն ընդ ուս ահեակ որդւոյն Տիդեայ,
Բայց 'ի նա ինչ ոչ դիպեալ։ Տիդեանն ընկենի փըրթոյց զաշտէն.
Ի նորա թափոյ ձեռին ոչ ընդունայն թըռեաւ մըկունդն,
Այլ ընդ մէջ լանջանցն 'ի կուրծս եհար ընկէց զնքեն 'ի կառաց։
Իդէոս լքեալ ըզզոյգսն գեղեցիկ՝ վազեաւ յերկիր,
Ոչ ժուժեաց շուրջ պաշտպանել 'ի պահ եղբօրն ըսպանելոյ.
Զի նըմին իսկ փըրկութիւն ոչ գոյր 'ի սեւ Օրահասէն,
Բայց թափեաց Հեփեստոս եւ գիշերաւ պատեալ փըրծոյց,
Զի մի՛ իւրըն ծերունի մնասցէ 'ի սպառ թախանձալից։

Իսկ որդի քաջին Տիգրանայ զերիվարսն յինքըն վըտարեալ՝
Աւանդեաց յընկերսն ածել 'ի գողաւոր նուացն հանդէս :
Մեծանձինքըն տրտմեցին երբեւ զԴարեհայ տեսին որդիս ,
Ըզմին փախըստական , սպանեալ ըզմիւսն անդ առ կառօքն ,
Ամենեցուն Թընդաց սիրտ . բայց Աթենաս կապուտակենեայ
Կալեալ ըզձեռանէն բարբառեցաւ առ բուռն Արէս .
Արէս՝ Արէս մարդասպան , արիւնըռուշտ , պարըսպամարտ ,
Ո՞չ Թողցուք ըզտրոհեցիսդ եւ զաքայեցիսս մարտընչել
Որպէս ում եւ ինչ շնորհէ դիպուած պարծանս հայր Արամազդ ,
Եւ մեզի տըւեալ զերծցուք յոտմընդզական մեք 'ի քինուց :
Ասացեալ զայս՝ 'ի մարտէն աւեալ եհան ըզբուռն Արէս ,
Եւ ապա տարեալ նըստոյց 'ի զարափին Սկամանդրոսի :
Զտրովեանս բեկին դանայեանք եւ այր սպանին մին մի առաջար .
Եւ յառաջ քան զամենայն արքայն արանց Ագամեմնոն
Զիշխանըն հալիզոնեաց արկ 'ի կառաց՝ զՈդիոս մեծ ,
Ցոյր 'ի փախուստն աճապարել վարսեաց ըզտէգն 'ի Թիկնամէջսն՝
Ի միջի անդ ուսոցն , եւ Թափ ընդ լանջսն անցոյց յայնկոյս .
Եւ տապալեալ եա Թընդումն , եւ շաչեցին զէնքըն ըզնովաւ :
ԶԲովրոսին Իդոմենեւս ըսպան զորդի զմէոնացւոյն ,
Ըզփեստոս՝ որ եկեալ 'ի սիզաւէտն էր 'ի Տառնեայ :
Հար ըզնա Իդոմենեւս կոռավաղէն՝ յերկայն նիզակ
Ընդ ուսն աջակողմեան , մինչ գեռ 'ի զոյգան աշտանակէր .
Կործանեցաւ 'ի կառացն , եւ զնա կալաւ ահեղ խաւար :
Արբանեակք Իդոմենի արարին զէնքըն աւառաղերծ :
Իսկ զորդի Սարոփիոսի զըՍկամանդրեան , զորսոյ հըմուտ ,
Ատրիդէս Մենելաւոս 'ի սըրաքասուր զըաւեաց նիզակ ,
Զորսորդըն քաջարի , ում Արտեմիս ինքնին ուսոյց
Հարկանել զանտառասուն լերանց ըզբնաւ երէվայրի :
Այլ չօգնեաց ինչ նետաձըգին Արտեմիս անդ նըման յայնժամ ,
Եւ ոչ իւր հեռաձգուԹիւնք յորըս կանխաւն էր պերճացեալ .
Այլ ըզնա Մենելայոսն Ատրիդէս քաջ նիզակաւոր՝
Ցաւաւոր իւր 'ի փախչելն ընդ Թիկնամէջսն եհար տիգաւ
Ի միջի անդ ուսոցն՝ եւ Թափ ընդ կուրծսն անցոյց յայնկոյս :
Ի բերանս հարեալ անկաւ եւ հընչեցին ըզնովաւ զէնք :
Սատակեաց Մերիոն զՀարմոնիդեայ հիւսանն որդի
Զփերեկլըս՝ որ էր ճարտար ձեռահըմուտ ամենարուեստ ,
Զի Պաղլաս Աթենաս սիրէր ըզնա գեր զօրինակ .
Որոյ եւ իւր էր կառուցեալ Աղեքսանդրի զմակաշար նաւսն
Ըզչարի սկըզբընապատճառս , ըզժանտաբերս համայն տրովեանց ,
Նա եւ իւրում իսկ անձին , ըզդից պատգամսն անգիտացեալ :
Ըզնա Մերիոնի հասեալ ըզհետ հալածելով
Հար ընդ աջոյ զաւակին եւ սպառըսպառ 'ի հանդիպոյն

Ո՛ն, ո՛վ քաջըդ Կապանեան, արի փութա էջ 'ի կառաց
Զի յուսոյ իմմէ սլաք խլեսցես 'ի բաց ըղձաւորըն նետ ։
Զայս ասաց, եւ Սթենելոս ոստեաւ յերկիր 'ի զուգիցն էջ·
Մատուցեալ կորզեաց յուսոյն ըզթափանցիկ սրաթեւ սլաքն,
Եւ արիւնըն ցայտեցաւ ընդ վերա զրահիցըն պահպանակ ։
Անդ յայնժամ մատոյց աղերս ահեղագոչըն Դիոմեդ ․
Անպարտելիդ, լո՛ւր ինձ, դուստր ասպարակիրըն Արամազդայ,
Թէ երբեք ինձ զօրավիգն եւ հօրս հասեր սիրողապէս
Ցոխերիմ ճակատամարտ, այժմ եւս օգնեա ինձ, Աթենաս,
Տուր ինձ զայրըն սատակել, եւ նըմա գալ մինչ յարգընկէց,
Որ կանխեաց եդ յիս վէրս, եւ վիպասցեալ մեծաբանէ
Ոչ տեսանել ինձ յերկար զարեգական փայլուն ճաճանչ ։
Զայս ասաց պաղատախառն, եւ Աթենաս լըւաւ Պա՛լլաս,
Թեթեւաշարժ եդ զանդամսն եւ զոտս եւ զձեռս իւր 'ի վերուստ,
Եւ կացեալ առ նըմին զերագաթռիչ խօսեցաւ բանս ․
Ո՛ն առեալ արդ, Դիոմեդ, մարտիր ընդդէմ տրովադացւոց,
Զի ահա 'ի լանջըս քո զհայրենականդ արկի կորով
Զանվեհեր, որպէս դոյր յասպարաձոձին ասպետ Տիդեւս,
Եւ ըզմէգն որ կայր յառաջ 'ի տեսարանացդ՝ ջընջեցի,
Զի քաջիկ ճանաչիցես՝ թէպէտ զաստուած, թէպէտ ըզմարդ ։
Արդ 'ի դէպ այսր եթէ ոք 'ի հանդիսի փորձ մատիցէ,
Ցաստուածոցն անմահից ընդ այլըն դու մի՛ ոգորիր,
Իսկ թէ դուստր Արամազդայ դայցէ Աստղիկն 'ի պատերազմ,
Հար ըզնա վիրաւորեա 'ի պղինձ 'ի սուր սըլաքաշէշտ ։
Զայս մեղուական Աթենասայ սոյնպէս խօսեալ գընաց 'ի բաց,
Իսկ Տիդեանն անդրէն դարձեալ ընդ նախահատակըսն խառնեցաւ ․
Եւ որ էրն 'ի մարտ տրովեանց կանխաւ 'ի բնէ յառաջամարտ,
Արդ երեքս այնչափ ըզնա կալաւ կորով, որպէս զառիւծ
Զոր հովիւն 'ի վայրի առ ասրաբոյս օդեաց հօտիւն
Ի վաղելն անդ 'ի փարախ՝ գոյզն ինչ խոցեալ եւ չըսպանցէ ․
Բորբոքեաց զոգիս նորա, եւ ոչ եւս այլ օգնեսցէ ինչ,
Այլ 'ի բակսըն մըտանէ, զարհուրի խաշն ամայացեալ,
Եւ զմիմեամբք խառն 'ի խուռըն կուտակեալ վայրավատնին,
Իսկ նորա մոլեգնոտեալ՝ ըստ խոր գաւիթն ոստնու 'ի դուրս ․
Այսպէս արին Դիոմեդ ընդ տրովացիս խառնեցաւ ժիր ։
Անդ ըսպան զԱստինոոս եւ զՀիպիրոն՝ հովիւս ազգաց,
Քան զըստինսն 'ի վեր ըզմին պղընձակուռ խոցեալ տէգաւ,
Եւ ըզմիւսն՝ հար մեծ սուսերբ 'ի յանրակին մօտ առ ուսովն,
Եւ զուսն յուղանէն եւ 'ի թիկանց կըտրեաց եհատ ։
Լըքեալ զնոսին՝ Աբասայ եւ Պոլիիդեայ պընդէր ըզհետ՝
Որդւոց երազագիւտ ալեւորին Եւրիդամայ ․
Որոց ոչ ծերունին եհան երազըս 'ի գալ նոցուն,

Այլ արքն Դիոմեդէս ըսպան զնոսա եւ կողոպտեաց ։
Եւ զհետեաց 'ի Քսանթոս եւ 'ի Թոոն, Փենոփեան ձեռք
Երկոքին երեկամծինք, եւ նա հաշէր թաղծեալ ալեօք,
Զաւակ այլ չէր ծընեալ ըստացուածոցըն ժառանգորդ ։
Անդ նա զնոսա խոշտեաց եւ զցանկալի արեւն եհան
Զերկոցուն միանգամայն, եւ հօրն եթող դառն հոգ եւ կոծ,
Զի չընկալաւ ողջանդամ զնոսա դարձեալս 'ի ճակատուէն,
Եւ խնամիք ընդ խնամունիս բաժանեցան զժառանգութիւնն ։
Անդ զերկուս կալաւ յորդւոցըն դարդանեան Պրիամոսի
Ի միում զըրաւեալ 'ի կառըս՝ զԷքեմմոնն եւ զՔրոմիոս ։
Եւ օրինակ իմն առիւծ յանկարծ անկեալ զուլըն բեկցէ
Զերինջու կամ ըզկովու՝ ճարակելոյն 'ի թաւութաւս,
Այսպէս նա 'ի կառացըն զերկոսեանն որդին Տիդեայ
Զարաչար ընկէց ուժգին, ապա եւ զզէնսըն կողոպտեաց,
Եւ զերիվարսն ետ ցընկերսն ածել վարել 'ի նաւակայսն ։
Եսես ըզնա Էնէաս՝ զի վարատէր զարանց ըզգունդ.
Խաղաց զընթաց 'ի ճակատն եւ զնիզակացն 'ի շառաչիւն,
Ի խընդիր աստուածատիպ Պանդարոսի՝ թէ ուր գտցէ.
Գտեալ զորդին Լիկայոնի զըզգանչելին եւ զհաստատուն,
Եւ կացեալ դէմ յանդիման՝ զայս առ նա բան բարբառեցաւ.
Պանդարէ, ուր են աղեղնդ եւ թըռչուն նետք եւ պարծանքդ,
Յորում յաղթանդամ որ աստ՝ ոչ ոք մըրցի ընդ քեզ 'ի գուպար,
Եւ ոչ այլ 'ի Լիկիա պարծի քան զքեզ լինել ոք քաջ ։
Ո՛ն ա՛ռ նետ մի ձիգ զեր յայրդ, ամբարձեալ ձեռս առ Արամազդ.
Ո՛ր եւ ոք է որ յաղթէն, շատ խոկ արտմեցոյց հասոյց չարիս,
Զի զբազում ամբոխի եւ զկորովեաց ըզծունկս լուծ.
Թէ յաստուածոց ոք միայն չիցէ արտմեանցըս սըրտմըտեալ՝
Կալեալ ոխս ընդ զոհից. զի աստուածոյն սաստիկ է քէն ։
Եւ նըմա պատասխանի Լիկայոնի շըքեղ որդին.
Էնէաս, պատանեաղէն տրովադացւոց խորհըրդական,
Ես ըզնա քաջի որդւոյն համանըման Տիդեայ դատեմ՝
Յասպարէն ծանուցեալ ու 'ի բարձրասըրբ սաղաւարտէն,
Դիտեալ եւ զձիսն. այլ աստուած եթէ իցէ՝ չգիտեմ ըստոյգ ։
Իսկ թէ այրդ այդ զոր ասեմ՝ արի որդին իցէ Տիդեայ,
Ոչ առանց իւրչ աստուածոյ մոլի դա յայդ, այլ մերձ կայ իւր
Յանմահից ոք զուսովքըն մառախլով պարածածկեալ,
Որ ըզնետն երագահաս այլուր դարձոյց առ 'ի դմանէ ։
Զի արդէն խոկ նետաձիգ եղեալ 'ի դա՝ հարի զաջն ուս
Թափ ընդ խորշն անցուցեալ կարաւանդեկ իւրում զրահին ։
Յըղէլ ըզնա կարծէի առ դըժոխոց Անդարապետ,
Զարարի սակայն նըկուն. արդ ոք 'ի դէմն է քինաւոր ։
Եւ ոչ մերձ կան ինձ կառք ուշ երիվարք՝ 'ի հեծանել.

Այլ 'ի տան Լիկոյոմէսի զոր մետասան կոյսք գեղեցիկք
Դեռակատոյք նորաթերթք՝ շուրջանակի քաղածածուկք,
Եւ առ մէն մ' 'ի նոցանէ կան երիվարք կըրկէն 'ի լուծ
Ըզգարին բոալխատակ եւ ըզհաճարըն ճարակին :
Արդարեւ ինձ ծերունին՝ քաջամարտիկըն Լիկոյոմէ՝
Ի չըւելս անդ՝ յապարանըն գեղաշուք պատուէր տայր յոյժ,
Ցերիվարս ամբառնալ առ իս հրամանս տայր եւ 'ի կառս,
Եւ այնպէս կալ առավերանց իշխան յամենամառան ճակատամարտս :
Սակայն ես ոչ անսացի, — որ լաւագոյն լինէր անշուշտ, —
Ի ձիանըն զընդացեալ՝ որ յառաս բոյծ էին տվոր,
Ի խըռնել ամբոխութեան կարօտասցէն զուցէ 'ի բուսո :
Ուստի Թողեալ՝ հետեւաս 'ի յԻլիոն հետեւեցայ
Խրախուսեալ 'ի լայնալիճս որում չըզդայր ինչ օգնել ինձ :
Զի ահա յերկոսին իշխանազունս մըտին 'նդ ազգըն՝
Ի Տիդեանն եւ յԱտրիդէս, եւ զերկոսեան վիրաւորեալ՝
Արիւն հանի ճըշմարիտ, բայց առաւել զայրացուցի :
Արդ բախտիւ առի չարաւ ես 'ի ցցէն զաղեղնըդ կոր
Յաւուրն անդ յայնմիկ, 'ի ցանկալըն մինչ յԻլիոն
Զօրավար կացի տրովեանց 'ի Հեկտորի զիւցազըն շնորհս :
Եւ թէ դարձցիմ եւ տեսից աչօք իմովք ըզհայրենագաւառս
Եւ ըզկինըն իմ եւ ըզմեծ բարձրաձեղուն պերճ ապարանս՝
Ըզկառամբն իմ անդէն հարցէ անդ այր օտարածին,
Եթէ ոչ ըզլայնալիճըդ զայդ ձեռօքըս խորտակեալ
Արկից 'ի հրատ բոցափայլ. զի զուր ընդ իս եկն այսր ընկեր :
Անդրէն առ նա Էնէաս կըրկնեաց տրոյեանցըն զօրապետ .
Մի դու զայդ ինչ ասեր . զի ոչ այլազդ ինչ եղիցի,
Մինչ չեւ մեր առնըն այնմիկ կառօքս ընդդէմ ուերիվարօքս
Պատահեալ ախոյեան՝ հանդէպ զինուցս արասցուք մեր :
Այլ աղէ՝ արի եկ ծն ել դու յիմ կառըս զի տեսցես,
Որպիսի երիվարքս իցեն տրովեանք հըմուտք ընդ դաշտ
Սըրարշաւ այսր եւ անդըր հալածել ու՛ 'ի բաց փախչել,
Որ ըզմեզ եւ 'ի քաղաքն ապրեցուսցեն ողջ անվըտանգ,
Թէ Տիդեան Դիոմեդեայ տայցէ անդրէն փառս Արամազդ :
Այլ արդ առ ընկալ զմըտրակս եւ զերասանս այս փայլփայլուն,
Ես 'ի զգայս ամբարձայց 'ի դըմել մարտ պատերազմի .
Կամ թէ դու զայրն յանձն առջիր, եւ ձիանոյն յիս լիցի հոգ :
Եւ նըմա պատասխանի Լիկոյոմէսի որդին ըշքեղ .
Կալջիր դու ինքն, Էնէաս, զերասանակդ եւ զերիվարս .
Մըտադիւր եւս ընդ ընդել ձեռին զգադեալ կառսըն տարցեն,
Թէ յանկարծ յորդւոյն Տիդեայ դարձցուք այսրէն յետս 'ի փախուստ :
Զի դուցէ թէ խըրտուցեալ ինչ եւ օդտեալ, ոչ կամիցին
Ի մարտէն հանել 'ի բաց՝ անձկաւ ձայնիդ ակն ունելով .

Քաղցրաբար, մշտադալար զուարթ Ցիգեայ հովանեաւք,
Արդարեւ՝ նոցա արդիւնթաց չքնաղձեւոց ըղձից, զաւակն փրկեցին,
Օ՛ն եկ 'ի փորձ մըկրտելի մեռելոց, եղէ թէ զինակցիմ։
Ասացեալ եւ ճօճեալ ընկէց զաշտէն երկայնատարածուեր,
Եւ եհար զՑիգեանն յապաղարն, եւ արդիւնձին առեգ արլորեալ
Սլլացեալ ելեալ ընդ այն Թափանց 'ի զըրահ անդրր մատեաւ.
Եւ ընդ այս կանչեաց ուժգին Լիկայոնէի պայծառ հաւքանին.
Ընդ ոսնակուշտ հարար կողին 'ի կողմանէ, եւ ոչ կարծեմ
Հանդուրժել քեզ յերկար, եւ ինձ պարծանըս մեծ ետուր։
Ոչինչ բընաւ զարհուրեալ՝ ասէ առ նա Դիոմեդ քաջ.
Վրիպեցար եւ ոչ հասեր, այլ ոչ կարծեմ ձեզ դադարել,
Մինչեւ մին յերկոցունցդ անկեալ տապաստ՝ յագեցուցէ
Իւրով արեամբըն զԱրէս՝ ըղվաշըմբրուրըն զաւպարօղ։
Ասացեալ զայս՝ արձակեաց, եւ Աթենաս ուղղեալ զաշտէն
Ի ռընգունսն առ ակամբն, ընդ ատամունսն անց ըսպիտակս,
Եւ զլեզուն հատ առ արմատ կտրեալ պղընձըն անփըշրելի՝
Ել սըլլաքըն Թափանցանց ընդ ներքնակողմըն կըզակին։
Կործան անկաւ 'ի կառաց, զօղանջեցին զէնքն ըղնովաւ
Խայտաբղէտք, փայլակնացայտք, պակեան շըրտեան շոյս երիվարքն,
Եւ լուծաւ անդ զըրտաւթափ ոգի նորա եւ զօրութիւն։
Էնիաս ատեալ զաւպարն եւ զնիզն երկայն՝ յարձակեցաւ,
Զանգիտեալ գուցէ զդիակն հանցեն յԱքայեցիք.
Եւ զնովաւ շուրջ ընթանայր իբրեւ առիւծ յոյժ իւր խելաւ,
Եւ կարկառ իւր առաջի՝ զաւքն եւ զվահան շըրջաբոլոր,
Կազմ 'ի մահ յուղարկել զոր 'ի վերայ գայցէ նորուն,
Եւ գոռայր յահեղ կանչիւն։ Բուռն հար Տիդեանն 'ի բըռնաքար,
Ի՛ր մեծ, զոր եւ ոչ երկուք յայժմու մահկանացուաց
Առեալ արք բառնայցեն, իսկ նա միակ ճօճէր հեշտեաւ։
Եւ նովաւ զէնէասայ զերանսն եհար՝ զխառն ուրանոր
Ցօդեալ յերանսըն շըրջի, զոր եւ գոգած եւս անուանեն,
Եւ ջախջախեալ ըզգոգածն եւ զերկուսին խըզեալ ըղնեարդս,
Ըզմորթոյն քերթեաց ըղմաշկ վէմըն գըժնեայ, եւ մընաց անդ
Անկեալ 'ի ծունկըս դիւցազն՝ յեցեալ յերկիր հաստոյր ձեռամբ,
Եւ զաչեր սեւաթաթաւ զաւշաղըն պատեաց շուրջանակի։
Անդանոր Էնիաս արանց արքայն էր կորուսեալ,
Թէ չէր փոյթ արարեալ 'ի միտ Արամազդայ դուստրըն Աստղիկ,
Մայրըն իւր՝ որ զնա ծընաւ 'ի յԱնքիսեայ արուարածէ։
Զորդեակըն սփռեալ ըզլուսածըն հեղեալ բազուկսն՝
Ըզփաղփուն խիլային պարզեաց ըղծալսն իւր առաջի
Պարըսպել 'ի նետից, յերագաձի դանայեցւոց
Գուցէ ոք պըղընձ 'ի սիրտ նորա հարեալ՝ զոգին խլեսցէ։
Այդ նա զեւր սիրուն որդին 'ի ճակատէն զերծուցանէր.

Իսկ զՆինոս 'ի խառնէն կորզեալ 'ի բաց՝ եդ Արամն
Ի նուիրեալըն Պերգամոս՝ ուր կառուցեալ կայր նոր տաճար.
Եւ ընդ Իլեոն անդէն եւ Արամեա նետաձգութեան
Ցայնմհետոյ 'ի մեծ նուիրանն ապաքինեալ տային 'ի փառս:
Այլ չինեաց ուրուապատկեր իմն Արամեան արծաթաղեղն
Ի նորին Էնէասայ եւ 'ի զինուցըն կերպարանս,
Եւ զնովին տեսլեամբ արամեանք եւ դիւցազարմ աքայեցիք
Կոփէին շուրջ ընդմիջօք միմեանց յաղագարան արշաւանօրն
Կարկինեալ բոլորաձեւս, ու՛ 'ի վահանակըն փշրոտէս:
Ցայնժամ Գուշակն Արամեան առ բուռն Արէս բարբառեցաւ.
Արէս՝ Արէս մարդախանձ, արիւնըռուշտ, պարըսպաքանդ,
Ո՞չ հասեալ եւ զայրըդ զայդ հանցես 'ի բաց 'ի ճակատէս,
ԸզՏիդեանդ՝ որ արդ ընդ հօր իսկ կռուեցի՛նդ Արամազդայ:
ԶԿիպրուհին նախ 'ի գաստակ ձեռին մօտուստ վիրաւորեաց,
Ապա յես իսկ զըլխովին յարձակեցաւ դիւանըման:
Զայս ասաց եւ ինք չոգաւ նըստաւ 'ի ծայրըս Պերգամայ:
Իսկ Արէս զըժնեայ հասեալ ընդտրովական խրախուսէր ռազմ՝
Հռուածիրն Ակամասայ զերեսս առեալ՝ զզետին Թրակեանց.
Եւ դիւցազանց որդեկացըն Պրիամու կարդայր խրախոյս.
Ո՛վ որդիք Պրիամու դիւցազընունդ թագաւորին,
Ցե՞րբ թողջիք ընժողովուրդ յաքայեցւոց վարել 'ի սպանդ,
Մի թէ յորժամ առ դըրա՞նս ամրակառոյցըս մարտիցեն.
Անկեալ կայ զոր հանգէտ մեծն Հեկտորի պատուէաքն այր,
Էնէաս՝ մեծանձնեան Անքիսեսի արի որդեակ:
Այլ 'ի զոռ խաղմէն եկայք ապրեցուսցուք զընկերն ազնիւ:
Ասացեալ՝ քաջալերեաց զոյժ եւ զեռանդն իւրաքանչիւր:
Սարպեդոնն յոյժ անդ յայնժամ յանդիմանեաց ըզմեծն Հեկտոր.
Ցո՞ գընաց քո զօրութիւնդ, Հեկտոր, որ էրն 'ի քեզ յառաջ.
Ասէիր երբեմն առանց զօրականի եւ սատարաց
Միայնակ փեսայիւք քով եւ եղբարբք պահել զքաղաքդ,
Յորոց ես ոչ զոք կարեմ տեսանել արդ, ոչ իմանալ,
Այլ հարեալ կան ընդդողի՝ զոր օրինակ զառիւծով շունք.
Իսկ մեք նիզակակիցքըս մարտուցեալ մըղեմք ընդմարտս:
Ես իսկ եկի օգնական՝ եկեալ եմ յոյժ հեռաստանէ.
Զի հեռի է Լիկիա պըղորձանահոսն Քսանթոսիւ,
Ուր զամձկալըն իմ ամուսին եւ ըզմանուկ թողի մատաղ,
Եւ ստացուածըս բազում՝ որոց կարօտ ոք ցանկանայ:
Եւ սակայն զԼիկիացիս վառեմ, եւ ես ինքն եմ յորդոր
Ընդ առնըդ մարտել, թէպէտ եւ չիք իմ ինչ աստէն
Զոր հանցեն աքայեցիքդ եւ կամ շարեալ տանիցեն 'ի բաց.
Իսկ դու կաս, եւ ոչ իսկ զայլըս հրամայեալ սըրտապընդես
Ըզռազմիկսըն զինմանալ եւ 'ի վերայ կանանց կռուել:

Տես զուցէ՝ ոտներփանց գնայցէք արանց յառ եւ յառաջ ,
Իբր 'ի ցանցս ամենապատ ուռկանի զօլ Թակարդապատ ,
Եւ ընդ փոյթ աւերեսցեն զոստանըդ ձեր ըղձականաւս :
Քեզ արժան է յամենայն յայս փոյթ ունել ցայգ եւ ցերեկ ,
Առ իշխանսըն պաղատել հեռահրաւէր նիզակակցաց ,
Ժուժկալել՝ այնպէս կալ անդուլ , յանձնէ քերել ըզխիստ բամբասս :
Խօսեցեալ զայս Սարպեդոն՝ ըզհեկտորի սիրտ խածեն բանքըն ,
Եւ անդէն 'ի կառացն յերկիր ոստեաւ զինու զարդու .
Սայրասուր ձօձեալ աշտէս՝ գնայր ընդ բանակն ընդ ամենայն
Խրախուսել 'ի պատերազմ , եւ յարոյց ծանր գուպարան :
Եւ նոքա դարձեալ ընդ կրունկ՝ աքայեցւոց կացին ընդդէմ .
Տակայն միախուռն արգիլացին եւ աննահանջ :
Որպէս հողմ զի զոշինդ յարգին , մինչդեռ որսարքն հօսեցէ ,
Վարէ'նդ կալ'նաւիրական՝ Դեմետր յորժամ խարտեշագեղ
Որոշէ , 'ի սաստկանալ հողմոց , ըզյարդ եւ ըզպտուղ ,
Եւ 'ի Թոյր սպիտակութեան երփն հարկանէ մըզեղն 'ի մԹեր ,
Նոյնպիսի սպիտակացան աքայեցիք վերուստ փոշւով
Զոր ընդէջ մինչ 'ի պղընձին երկին ձիոցն յուզէին ոտք ,
Ի դառնալ դալ խառնել , յանդըրէն ածել կառավարացն՝
Որ զձեռացըն կըշռանկէ'կեր ստնուէին կորովութիւն :
Իսկ բուռն Արէս ըզգաղմիւն յօձան արտմեանց պատեաց զիշեր
Ընթացեալ ընդ ամենայն , եւ ըզպատուէրսըն հանէր յանդ
Զոսկեսուսեր Գուշակին Ապողոնի , որ եռ հրաման
Արծարծել զոգի արտմեանց , քանզի եսես անցի առեալ
Ըզ Պալլասն Աթենաս՝ որ դանայեանցն էր զօրավիգն :
Ի պարարտ սրբարանէն ինքըն զէնեաս հան արձակեաց ,
Եւ յաւել վառեաց 'ի սիրտ հովուէն ազգաց ոյժ արիութեան :
Եկն եկաց Էնէաս յընկերակիցսն՝ որ խընդացին
Տեսեալ ըզնա կենդանի եւ ողջանդամ եկեալ հասեալ ,
Եւ կազդուրեալ 'ի կորով . սակայն ինչ ոչ հարցին բընաւ ,
Զի չներէր այլ ինչ վաստակ՝ զոր յարուցին Արծաթաղեղն
Եւ Արէս մարդասպանող եւ Հեռ մոլին այն անյագուրդ :
Իսկ Էայքն երկոքին եւ Ոդիսեւս եւ Դիոմէդ
Զդանայեանս 'ի պատերազմ քաջալերեալ խրախուսէին .
Եւ ոչ ինքեանք ինչ զանգիտէր յուժոյ արտմեանց , ոչ 'ի զոռամանց ,
Գինդ կացեալք անդէն՝ յամպոցն 'ի նմանութիւն զոր Զըրուանեանն
Ի ժամ անհողմութեանց 'ի բարձրածայր կացոյց լերինս
Անխըլէկս , մինչ հիւսիսի եւ բարկացայս այլոց այսոց
Նըննջէ բըռնութիւն , որ սաստկաշնչէ շընչեալ սուլմամբք
Ցըրուեալ փարատէն զըստուերամած ամպըսպաց դէզ .
Նոյն արտմացւոց զանգիտեանք կացին ընդդէմ անշարժ՝ անահ :
Իսկ Ատրիդէս պատուէր յոյժ առեալ՝ յամբոխն երԹեւեկէր .

Լերուք այրք, ով սիրելիք, և զգեցարուք սիրտ զօրութեան,
Եւ յոխորտ մարտիս կռուիւ այր յընկերէ պատկառեցայք ·
Պատկառոտ որերոյն բազումք ապրեն քան կորընչին,
Ոչ կանգնի փախըստէից՝ ոչ փառք և ոչ ինչ քաջութիւն :
Ասաց՝ ընկէց զարդն խոկոյն, և եհար զայր մի առաջեան,
Ըզհամհարզըն մեծանձին Էնէասայ զԴէիկոոն
ԶՊերգասեան՝ զոր Պրիամու տրոյեանք որդւոց պատուէին զոյգ,
Քանզի էր քաջայորդոր 'ի գուպարել ընդ նահատակս :
Ի սորին եհար տէգաւ յասպարն արքային Ագամեմնոն,
Որ ոչ արգել ըզգեղարդն, այլ Թափ ընդ այն էանց պըղինձն
Եւ 'ի փոր նորա ներքին խաղաց գօտւոյ ել ընդ կամարն ·
Եւ անկեալ՝ Թընդիւն եհան, և շաչեցին զէնքն ըզնովաւ :
Էնէաս 'ի դանայեանց ըսպան անդ արըս քաջազունս,
Զորդիս Դիոկղեայ՝ զՈրսիղոքոս և ըզԿրեթոնն,
Որոց հայրն 'ի Փերէ գեղեցկաշէն բնակեալ նըստէր,
Ճոխ ընչիւք, և ազգ նորին էր 'ի գետոյն Ալփէոսէ՝
Որ ծաւալ ուխիւք զերայ յերկաս երկրին Պիւլացւոց,
Եւ ծընաւ զՈրսիղոքոս՝ բազմաժողով արանց արքայ :
Իսկ Որսիղոքըն ծընաւ ըզմեծասիրտըն Դիոկղէս ·
Եւ մանկունք երկուորիք 'ի Դիոկղեայ եկին 'ի ծնունդ,
Որսիղոքոս և Կրեթոնն յամենայն մարտըս քաջափորձք :
Եւ սոքին յարբունս հասեալ՝ Թըխատեսիլ նաւափայտիւք
Ընթացան արգիւացւոց զհետ յԻլիոն քաջամըրրուկ՝
ՅԱտրիդայցն Ագամեմնոնի և Մենեղեայ քինուն խընդիր ·
Սակայն զնոսա զերկոսին պաշարեաց անդ մահուն զըրաւ :
Օրինակ իմն առիւծուց ամոլք լերինն ընդ արտեւան
Ընդ մարբըն սնուցեալք 'ի Թանձրախիտ մայրւոյն միջաւս,
Եւ զարջառս և զոչխարս յափըշտակեալ գիրապարար,
Ըզմարդկան մակաղատեղս ապաւեալ յաւեր դարձուցանեն,
Մինչեւ սուր պղընձով նիզականք իսկ սատակին 'ի ձեռս արանցն ·
Այսպունակ Էնէասայ սոքին 'ի ձեռս եղեալ նըկուն,
Բարձրաբերձ եղեւնեաց նըմանապէս անկան տապաստ :
Ի գլորեալըն գըԹացեալ Արեայ սիրուն Մենեղաւոս՝
Ընդ առոյեանսն ընԹացաւ զինազարդեալ 'ի պըղինձ հրաշէկ,
Ճօճելով ըզնիզակն, և զսիրտ նորա վառէր Արէս
Եդեալ 'ի միտ զի ընդ ձեռամբ Էնէասայ նըւաճեսցի :
Նըստորի ձեռ մեծանձին Անտիղոքոս ըզնա տեսեալ
Ոստեաւ ընդ նահատակսն՝ յոյժ կասկածոտ զաղանց հովուէն,
Գուցէ 'ի վտանգ ինչ անկեալ՝ զվաստակ իւրեանց կացուսցէ վրէպ :
Երկոքեան նոքա զբազուկս և զգեղարդաձայնըն սայրասուր
Ուղղէին միմեանց ընդդէմ քաջախիզախք 'ի մըրցամարտ ·
Եւ երԹեալ Անտիղոքոս կայր առ երի հովուին ազգաց :

Բնակէր փարթամ եւ ընչաւէտ, սակայն ըղնա վարեաց Օրհաս
Հասանել ընկերել Պրիամոսի եւ մանկըտւոյն:
Ընդ կամար գօտւոյն եհար ըղնա Էաս Տէլամոնեան,
Եւ 'ի համարըն ներքին մըխեցաւ տէգն երկայնաստուէր.
Ընդ գետնին անկեալ դոփեաց, եւ ընթացաւ Էաս քաջազն
Ցաւարի առնուլ ըզզէնսն, իսկ տրովացիք տէգս հոսեցին
Սայրասուր՝ փայլակնացայտս, եւ ընկալաւ պղնձեան ասպարըն:
Իսկ ինքըն ոտն 'ի նա արոփեալ՝ զաշտէն պըղընձի հան 'ի դիոյն,
Բայց զայլ զէնսըն գեղեցիկս յուսոց անտի չկարաց զերծուլ,
Քանզի նեղեալ տագնապէր 'ի Թանձրահոս տեղեալ նետից,
Եւ երկեաւ 'ի սաստիկ պաշարելոյ քաջաց տրովեանց՝
Որոց հոծեալ կորովեաց հասեալ կային նիզակաւորք,
Որ եւ զինքն իսկ վայելչանդամն եւ զզօրաւոր զարմանասքանչ
Հերքեցին յանձանց իւրեանց, եւ նա վանեալ ընկրկեցաւ:
Ճըգնէին այսպէս սոքա 'ի մըրցական ասպարիսին:
ԶՀերակլեան Տլեպոլեմոս զաւաքինին եւ զաստուածանդամ
Դըրդեաց բուռն Օրհաս ընդդէմ աստուածածնեան Սարպեդոնի:
Որ յորժամ ընթացեալ հասեալ կային առ միմեանս հուպ,
Որդին եւ Թոռնեակ ամպրոպայնոյն Արամազդայ,
Նախ առ նա Տլեպոլեմոս կանխեալ բանիւք բարբառեցաւ.
Սարպեդոնդ, լիկացւոց իշխանապետդ, եւ զի՞նչ քեզ հարկ
Անհըմուտ առըն մարտից՝ այսր 'ի տեղիս գալ զարհուրել:
Սուտ ասեն ըզքեզ զաւակ ասպարակրին Արամազդայ.
Քանզի քաջ 'ի բաց անկեալ յայնմ որերոյ գըտնիս վրրէպ,
Որ առ հընովքըն մարդկան յԱրամազդայ սերեցան զարմ:
Այլ որպիսի ոք պատմեն ըզՀերակլեանըն զօրութիւն
Զիմն եղեալ սերմանող՝ քաջայանդուգն առիւծասիրտ:
Որ երբեմն այսր եկեալ զերիվարաց Լաւմեդոնի
Վեցեքումբք եւեթ քաշտեօք, սակաւաւոր արանց Թըւով,
ԶԻլիոն քանդեաց քաղաք եւ ըզփողոցսն ամայացոյց:
Իսկ դու, վատասիրտ, եւ 'ի կորուստ մատնի ամբոխդ.
Եւ զքեզ ոչ ինչ համարիմ տըրովադացւոցըդ զօրավիգն
Այսր հասեալ 'ի Լիկիոյ, թէ եւ կարի հըզօր իցես,
Այլ պարտեալ ընդ ինեւ՝ անցցես ընդ դրունըս դըժոխոց:
Լիկացւոց պետ Սարպեդոնն արար անդրէն առ նա դարձուած.
Արդարեւ կորոյս նա, Տլեպոլեմէ, զԻլիոն սուրբ
Առ անըրն խօլութեան՝ ազնուատոհմին Լաւմեդոնեայ,
Որ իւրում բարերարին ժանտէն բանիւք ետ Թըշնամանս,
Եւ ոչ հատոյց զերիվարսն՝ որոց էր սակս եկեալ հեռուստ:
Իսկ քեզ ես ասեմ աստէն մահ եւ Օրհաս ժամանել սեաւ
Ցինէն, եւ ընդ իմովըս գեղարդեամբ անկանել քեզ,
Ըզփառսն ինձ տալ եւ զոգիդ 'ի քաջաձին Անդընդապետ:

Զայս ասաց Սարպեդոնի, եւ առ 'ի վեր Տլեպողեմոս
Ըզմըլկոնսոզն հասցի, եւ զոյգ ասեն Թըռուչս երկայն աշդունք
Ի ձեռաց նոցին, ոս՛նդ մէջ պարանոցին հար Սարպեդոնի,
Եւ ըղլաքըն ցաւագին Թափանց եղ կողմն 'ի կողմանէ,
Եւ զաչօք նորին գիշեր տարածեցաւ անդընդոցին։
Իսկ երկայն աշտէկս Տլեպողեմոս զազդրըն ահեակ
Էր խոցեալ, եւ սայրատուր անցըն չէշտեալ յոսկըրըն յեցաւ.
Սակայն հայրն անդուց առ ժամն առ 'ի նմանէ զմահուան եղեան։
Ընկերքըն քաջազունք զաստուածատիպըն Սարպեդոնի
Տանէին 'ի ճակատէն, ներքոյին երկայն քարշեալ ըղձիղ
Տանջէր ըզնա, զոր ընդ միտ ածեալ ուրուք չէր, ոչ խորհեալ
Խըլել զհասցի անդըն յազդերէն, զի մարթասցի հեծնուլ 'ի կառս,
Առ ճեպոյն, զի յայնպիսի ջան տաժանեալ զբաղեալ կային։
Քաջասրտութիւք աքայեցիքըն յայնժամ կուռէ զՏլեպողեմոս
Հանէին 'ի մարտէն, եւ Ոդիսեւս ծանեաւ քաջազն՝
Ուժգնասիրտն, որոյ հոգին խիր յորդորեալ եռայր 'ի նմա.
Եւ 'ի միտս խէր եւ յոգին այնուհետեւ կայր մըտախոհ,
Եթէ զհետ մըտցէ՞ որդւոյն որոտընդոստն Արամազդայ,
Թէ զոգիս պահանջեսցէ զատ 'ի յոլովից Լիկիացւոց։
Մեծանձինն Ոդիսեւսայ ճակատագրեալ ոչ էր 'ի բախտ
Սուր 'ի պղինձ ըսպանանել զԱրամազդայ զարի որդին.
Ի խուժան Լիկիացւոց դարձոյց զհոգին խեր Աթենաս։
Անդ ըսպան նա զԿիրանոս, ըզՔրոմիոս եւ զԱլաստոր,
ԶԱլկանդրոս եւ զՀալիոս, ըզՆոյեմոն եւ զՊրիտանիս.
Եւ զայլոց ևս այլ սատակէր զԼիկիացւոց քաջն Ոդիսեւս,
Եթէ չէր սուր անծանօթեալ ահեղն Հեկտոր կորդակախուրոսս։
Ընթացաւ ընդ առաջեանս 'ի պղինձ հրաշէկ զինավառեալ
Ահընկէց 'ի դանայիկս, եւ Սարպեդոնին ձեռան Որմըզդեան
Ի մատչել խըրուսմ բերկըրեալ՝ արձակեաց ձայն ողբաղագամ.
Պրիամեան, մի՛ զիս Թողուր դանայեցւոց անկանել որս,
Այլ օգնեա՛ ինձ եւ ապա Թող յարեւէ խոյ անկայց ես
Ի ձերում քաղաքիդ. քանզի չէի ես դառնալոց
Ի տուն եւ յանձկալին իմ հայրենի երկիրս դարձեալ՝
Ուրախ առնել զամուսինն իմ սիրելի եւ զայս մանկիկ։
Զայս ասաց, սակայն Հեկտոր սաղաւարտաձօձ կըրկնեաց ինչ ոչ,
Սըլացաւ յառաջագէմ փայլատակեցեալ յարդիւնացիս՝
Շուտափել վանել զնոսա եւ ըզբազմաց ոգիս շաւել։
Այդ ընկերքըն քաջազունք զաստուածանմանն ըզՍարպեդոնի
Ընդ չըքնաղին եդին կաղնեաւ վահանակրին Արամազդայ,
Եւ զմեղալին հասցի կորդեաց 'ի յազդերէն խըրձն արտաքս
Կորովին Պելագոն՝ սիրատըրփումն խիր անձնական։
Լքեալ եԹող ըզնա շունչն, եւ մառախուղ զաչօքն հեղաւ.

Այլ անդրէն էառ զոգին, եւ հիւսիսոյն ըղձակաւ սիրտ
Խաղացեալ արծարծանէր ըղձահարեալ անձըն նորա։

Արդէօքցիք ընդ Արեւու եւ պղընձադէն Հեկտորու
Ոչ 'ի փախուստ խուճապէին 'ի նաւատորմըն սեւաթոյր,
Ոչ մարտի զընէին զէմ, այլ միշտ ընդ կրունկ մերձուանէին,
Իբրեւ այգ եղեւ նոցա՝ եթէ Արէս է՛նդ արտակեցին։

Զո՞վ որ անդ առաջին եւ զո՞վ վերջին մատնեաց 'ի մահ
Հեկտոր ծնունդն Պրիամեան եւ ընդ նմա պղընձին Արէս։
ԸզՏեւթրասըն դիւցազնիկ եւ զՈրեստէսըն ձիամոլ,
ԸզՏրեքոս՝ զԷտոլացին քաջամարտիկ, եւ զՀնոմաւ,
ԶԻնոպեանն Հելենոս, զՈրեսբիոս գեղակամար՝
Որ բնակէրն 'ի Հիլէ՝ 'ի մեծութիւն յոյժ յողացեալ,
Ի ծովակն հուպ Կեփիսեա, եւ առ նովաւ այլք եւս յոլովք
Բնակէին Բէովտացիք 'ի ժողովուրդ մեծափարթամ։

Իսկ Հերա՝ սպիտակաձեռն աստուածուհին իբրեւ ետես
Սատակեալ զԱրգիւեցիսն 'ի զօրաւոր պատերազմին,
Իսկ եւ իսկ զերագաթեւս առ Աթենաս խօսեցաւ բանս.

Ո՛հ եղուկ, աշխարհակիրն Արամազդայ դուստր անվկանդ,
Բան ունայն խոստացաք այսպէսն մեք Մենելաւեայ,
ԶԻլիոն ամրապարիսպ աւարառ վարեալ այնպէս դառնալ,
Եթէ այսպէս թողուցումք մոլել մրցել ըղձմանան Արէս։
Այլ եւ մեք եկ խորհեսցուք 'ի զօրութիւն անսասանելի։

Զայս ասաց, ոչ Աթենաս հեստեաց խաժակն աստուածուհին։
Իսկ Հերա՝ զերիվարսն ոսկեսարեան պնդեցեալ կազմէր,
Զրուանայ մեծին դուստր՝ երիցագոյն աստուածուհի։
Եւ Հեբէ շուրջ ըզկառօքն երագապէս զանիւսըն կուռ
Ըզպղընձիան եւ զութճաղեան առկ յերկաթեն առոյց յառանցն,
Որոց հեցքն ոսկի անեղծ եւ պղընձանիւթ վերուստ կամարք
Զօդեալք քաջակերտ՝ զարմանալիք տեսանելով.
Անիւացըն արծաթիք շուրջանակի բոլորաշէն,
Ծոց նորին ոսկեղինօք եւ արծաթի լարովք կախեալ,
Եւ կըրկին ըմբռնեալ կիսաբոլոր պատեալ գօտիք։
Եւ քեղին կարկառեալ էր 'ի նմանէ արծաթեղէն,
Յորոյ 'ի գլուխըն կապեաց ըզգեղեցիկ լուծն ոսկեձոյլ
Արկեալ զոսկի սանձերէն, եւ 'ի սամիսն ածէր ած Հերա
Զերիվարսն երագոտունս՝ յորդորամիտ 'ի կռիւ ու՛ի խաղմ։

Իսկ Աթենաս՝ ճաւակեթ աշխարհակիրն Արամազդայ,
Ըզխըլայն շղաշատեա հոսեալ յանձնէն 'ի հօրն յատակ՝
Զնըկարէն զեւոյն յօրինած եւ զձեռագործ մատանց իւրոց,
Եւ զգեցեալ վարապանակ զամպայարոյցն Արամազդայ՝
Վառէր սպառազէն 'ի պատերազմ արտասուաբեր։
Արկ զաստապարըն զուսովքն 'ի վերջաւոր փողփողեալ ծոպս,

Զահաւոր՝ զորով շուրջ շուրջանակի պսակէր Սարսափ,
Ի նմա Հեռ, ՚ի նմա Կորով, ՚ի նմա սարսռասառ Ռահատակեան,
Եւ ՚ի նմա Գորգոնական. գըլուխ գըժնէ յաւշխարհարկին՝
Սաստկալլին՝ խոժոռադէմ, նշանագրոշ Դիոյ Ձեւայ:
Եւ ՚ի գլուխ եդ. զոսկեկուռ զբազմախորան զքառասներորդեան
Սաղաւարտն՝ հեռատեաց ՚ի դէմ զնդի հարիւր քաղաքանայ:
Եւ ՚ի կառսն բոցեղէնս ոտն ամբարձեալ՝ մեւ ընդնիզակն
Ըզծանր՝ ըսպառթ եւ զկուռեալ, որով զՃակատսն փըլուզանէ
Զչհեցաղանց արանց ույց զամ մի հայրաղօրըն քննացի:
Իսկ Հերոս մըտրակ ՚ի կուշտ աջոյ. աջոյ ձարեր ընձեռն.
Ինքնաշարժ Ճըռընչեցին երկնից զըլրունք՝ ժամուց պահեստք՝
Որոց յանձն եւ աւանդեալ Երկնիչն է մեծ եւ Ողիմպոս՝
Ի բառնալ եւ ՚ի փակել ըղԹըրմփայորդ ամպոց կուսակ:
Արդ ընդ այս եւ ընդ նոսա զխթառակամալ ձարեցին ձիս,
Եւ զգտին ըղԶըբրուանեանն յայլոցն ՚ի դից նըստեալ փառօրս
Ի բարձրածայրըն գլխատակ բազմատարեանն Ողիմպոսի:
Անդ կացուցեալ Հերայ զՃխանըն լուսածըղի աստուածուհեայն,
ԶԱրամազդ հարցեալ ըղկեհըն Զըբրուանեան՝ ասէ առ նա.
Արամազդ հայր, ո՞չ ցասնուս Արեայ՝ չարեացս տՃրագործի,
Քանեոն սըրաղեաւ կորոյս ամբոխ յաքայեցւոց՝
Ցախուան յամեոյր ատրապարս եւ ինձ ՚ի վերա ողջեալս:
Իսկ Կիպրուհին եւ Ապողոն արծաթաղեղըն կան խընդան,
Որ զմոլին զայն դըրդեցին՝ որ ի րուամս ինչ ոչ գիտէ:
Արամազդ հայր, բարկասցիս ինչ արդեօք ինձ՝ եթէ զԱրես
Չարաչար հարուածեալ հալածեցից ՚ի Ճակատուէն:
Արամազդ ամպրոպային պատասխանեալ ասէ ցնա.
Օն առեալ զԱթենեան աւարառու ՚ի նա զարթո,
Որ սովորն է մանաւանդ զանձնուԹեան ցաւս հեղուլ զնովաւ:
Զայս ասաց, չյանձնեաց Հերա սպիտակածըղին աստուածուհի.
Մըտրակեաց զերիվարսն որ մըտադիւր թըռանային
Ընդ երկրի եւ ընդ աստեղեայ երկնից զընդղեն միջամահմանս:
Եւ որչափ ինչ արկանէ յակն այր ընդ օդ լուսաԹաղանձ՝
Որ նըստեալ ՚ի դիտանոց շուրջ յածիցէ զաչս ընդ ծով լուրթ,
Նոյնչափ վազս առեալ ստանան որոտաձայնք դից երիվարք:
Այլ հասեալ ՚ի Տրովա եւ յերկուսին գետս յորդահոս,
Ուր զըտրձանըն Սիմոյիս եւ Սկամանդրոս խառնեն ՚ի մի,
Անդ կացոյց ըղձիան Հերա լուսածըղի աստուածուհին,
Եւ լուծեալ ՚ի կառացն՝ եհեղ զնոքօք մէգ Թանձրահոծ,
Եւ Սիմոյիս բըղխեաց նոցին աստուածեղէն Ճարակ յարօտ:
Նոքա Թըրթռուն աղաւնեաց գնայցին ՚ի ձեւմն հանդունաւորք,
Ճեպ առեալ ժամանել արգիւացւոց քաջացն ՚ի նպաստ:
Եւ եկեալք՝ ուր բազմակոյտ խըռնեալ կային արուորագոյնք
Գունդագունդ ըղկորովն ձիասանձեկ Դիոմեդեաւ,

Կրկնեաց անդրէն Աթենաս առ նա խածակն աստուածուհին.
Տիգեան դու Դիոմեդէս, անձին իմոյ յոյժ սիրելի,
ՑԱրեաւ դու մի՛ խիթար, մի՛ յանմահից այլ ումեքէ,
Այնպիսի քեզ զօրավիգն ահա հասեալ կամ ՚ի Թիկունս ։
Օ՛ն արդ զսալասմբակ նախ զերիվարսդ յԱրէս վարեա,
Եւ մատիր ՚ի նա եւ հար, ՚ի բուռն Արեայ մի՛ ակն ածեր՝
Ի մոլեգին, յանպտուղ չարէն, յայլընդայլոյն յեղափոխէ.
Որ յառաջքին բան տուեալ խոստացաւ ինձ եւ Հերայի
Մարտ ընդդէմ դնել տրովեանց, արգիւացւոց օժանդակել,
Արդ կաճառի՛նդ տրովացիս, եւ մոռացօնս արար սոցա ։
Ասացեալ, եւ ՚ի կառացն յերկիր վարեաց զՍթենելոս՝
Քարշեալ յետս ձեռամբն, եւ նա վաղեաց հապճեպ փութով.
Ինքն յերկձիւն ամբարձաւ առ դիւցազն Դիոմեդեայ
Յորդեռանդն աստուածուհին, եւ սեռն ուժգին հեծեաց կաղնի
Ընդ բեռամբն՝ որ զի զահեղն աստուած տանէր եւ զարի այրն ։
Առ Պալլաս Աթենաս զմտրակն ՚ի ձեռն եւ զերասանս,
Եւ անդէն զմիասմբակ նախ զերիվարսն ուղղէր յԱրէս,
Որ ՚ի ժամն ըզՊերիփաս բազմանանէր սասկավլխեար,
Ըզհզօրն Էտոլացւոց, զՈքեսիայ շքեղ որդին ։
Արէս ըզնա սատակէր արիւնաներկն, իսկ Աթենաս
Զպղնձանոցն ագաւ գծոխոց, զի մի՛ տեսցէ զինք բուռն Արէս ։
Մինչ Արէս մարդախոշոշ ըզԴիոմեդ ետես դիւցազն,
Անդանոր ըզՊերիփասն վիթխարի եթող անկեալ,
Ուր սատակեալ զինքըն նախ՝ եւ էր խըլեալ զոգի նորա,
Եւ դիմեաց դէպ ուղիղ ՚ի Դիոմեդ ձիամարտիկ ։
Առ միմեանս իբրեւ սոքա հասալ դէմ ընդդէմ եկեալ հասին,
Նախ Արէս ՚ի վերուստ լծոյ ձիոցն՝ ուերասանաց
Ըզպղընձին ընկէց նիզակ՝ տանուլ զոգին ցանկանալով,
Եւ զայն ձեռամբն Աթենաս կալեալ խածակն աստուածուհին
Ի կառացն ՚ի բաց հերքեաց՝ դընալ ընդ վայր անկանել թափ ։
Դիոմեդ ըստ նըմանէն յարձակեցաւ ահեղագոռն
Աշտէիւըն պղընձեաւ, եւ Աթենաս մխեաց Պալլաս
Ի փոր նորա ՚ի ներքին՝ ուր ըզկամարն ածէր ընդ մէջ ։
Անդր հարեալ վիրաւորեաց, եւ զմորթն հերձեալ ըզգեղեցիկ՝
Զըզեաց անդրէն ըզգեղարդն. եւ պղընձին գոչեաց Արէս,
Որչափ թէ ինըն հազարք կամ տասն հազարք հարցեն խօշիւն
Որեար գոռք ՚ի մարտի՝ յարխաական ոգորեալ խաղմ ։
Իսկ անդուստ զաքայեցիս եւ զտրովացիս կալաւ դողումն,
Որ պակեան՝ զի այնպիսի գոչեաց Արէս անյագն ՚ի կռիւ ։
Օրինակ իմըն յամպոց խաւարային երեւեալ մէգ՝
Ի յառնել խորշակին ՚ի դառնաշունչ փըչել հողմոյ,
Նոյն Տիգեան Դիոմեդեայ երեւեցաւ պղընձին Արէս՝
Զի ահա խառն ընդ ամպոց ելեալ դընայր յերկինս ՚ի լայն .

Եւ խաղոյն եհաս 'ի բարձրըն Ողիմպոս՝ յաստուածոց գահ,
Եւ չոգաւ սըրտառուչ առ Զըրուանեան Դիւոյ նըստատ,
Եւ եցոյց զանձամբ արիւնն որ 'ի վիրէ անոր բղխէր,
Եւ յոգւոց հանեալ հառաչս՝ ըզբանս ասաց զերատագալից·
Արամազդ հայր, ո՞չ ցասնուս զայդոր գործոց տեսեալ չարիս·
Յամենայն ժամ տոկալեաք չարչարեցաք կըրեաք աստուածքս
Ի սադրելոյ մեր միմեանց՝ առ 'ի պաշտօն առնել մարդկան:
Ամենքս ընդ քեզ գամք 'ի վէճ, զի դու ծընար զաղջիկն անմիտ՝
Զեղեռնաւորըն՝ որոյ միշտ 'ի խնամս են միտք զառն աղետից:
Քանզի այլք հասարակ որչափ ինչ դիք են յՈղիմպոս՝
Կան քեզ հնազանդեալ, եւ կամք նուաճեալ բոլորեքեան·
Իսկ առ նա չըմերձենաս ինչ ոչ բանիւ եւ ոչ արգեամբք,
Նա եւ գըրգռես, քանզի դու ծընար ըզդուստրըն ժանտաժուտ,
Որ այժմիկ զորդին Տիդեայ՝ զշարախառնավառըն Դիոմէդ՝
Յարուցեալ բորբոքեցոյց յանձամբ աստուածոցըն մոլեգնել:
ԶԿիպրուհին նախ 'ի մօտոյ խոցեաց ձեռքն իւր 'ի դաստակ,
Իսկ ապա եւ յիս ինքն յարձակեցաւ իբրեւ ըզդեւ,
Այլ փըրկեցին զիս ոտք թեթեւք· անշուշտ հարուստ ինձ ժամս անդէն
Վըշտակիր դոյր տառապել 'ի դըժընդակ դիականց շեղջ,
Կամ թալանեալ ուժաթափ 'ի թեւր պղընձոյն կենդանութեամբս:
Արամազդ ամպրոպադէզ խոժոռեալ ասէ առ նա·
Մի՛ դու, յեղափոխուկ, բազմեալ առ իս ինձ քըրթմընջեր·
Ատելի քան զամենայն ես ինձ աստուածս ողիմպաբնակս,
Որ զի միշտ քեզ սիրելի է կագ՝ կըռիւ եւ պատերազմ·
Մօրդ 'ի քեզ է հոգին անսաստելի եւ անողոք,
Հերայի՝ զոր հազիւ թէ ես ուրեք նուաճեմ բանիւք:
Եւ կարծեմ թէ 'ի նորա հրապուրելոյ կըրես դու զայդ:
Սակայն ոչ հանդուրժեցից տանջել ցաւօք քեզ ընդ երկար,
Քանզի յինէն ես սերունդ, եւ մայր քո ինձ ծընաւ ըզքեզ:
Թէ յայլմէ դից ումեքէ ծընեալ էր քո ժանտ այդպիսի,
Քան զՈւրանեանսն 'ի խորագոյն էիր վաղուց անդընդարանս:
Զայս ասացեալ՝ եւ հրաման Պէոնի զինքն ետ առողջել·
Եւ Պէոնն ըսպեղանիս օծեալ 'ի նա ցաւացածուցս՝
Ողջացոյց, քանզի եւ ոչ իսկ էր ծընունդ մահկանացու:
Որպէս խախաջն 'ի սպիտակ արկեալ 'ի կաթնըն մակարդէ
Զայն որ լոյծն էր եւ մածնու խաղոյն 'ի ձեռս հարկանելեացն,
Իսկ եւ իսկ նոյնօրինակ ապաքինեաց ըզբուռն Արէս:
Եւ Հեբէ լուաց ըզնա եւ զգեցոյց ձորձըս շնորհաշուք·
Նա պերճափառ բազմեցաւ առ Զըրուանեանն Արամազդայ:
Իսկ Հերայն արգոսուհի եւ Աթենաս պահպանաւէտ՝
Եւ նոքին դարձան անդրէն յԱրամազդայ մեծին 'ի յարկ,
ԶԱրէս յորժամ մարդախանձ յարեանց մահուց լըռեցուցին:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

---

## ԵՐԳ ՎԵՑԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ի մեկնել դիցն 'ի ճակատէ մարտին՝ բազում մահուամբ զարնեն Յոյնք 'ի Տրովացիսն: Հեկտոր ըստ խորհրդոյ եղբօրն Հելենոսի գնայ 'ի քաղաքն առ մայր իւր Հեկաբէ, զի ժողովեալ զամենուհիս 'ի տաճարն Աթենասայ՝ մատուսցէ նմա խլայ մի ազնիւ եւ խոստասցի զոհս՝ փրկել զնոսա 'ի Դիոմեդեայ: Պատահումն սորա ընդ Գլաւկոսի եւ բանք, որոց հետ իւրեանց ծանուցեալ եւ փոխանակեալ զզէնսն՝ անցին աստ 'ի միմեանց: Հեկաբէ եւ տիկնայք գնան 'ի մեհեանն Աթենասայ՝ կատարել զուխտ նուիրանացն: Հեկտոր երթեալ գնայ 'ի տուն Պարիսի. զորս Հեղինէ եւ նա յանդիմանեալ զհեղգութիւնն՝ յորդորէ դառնալ 'ի պատերազմ. եւ նորա ընդդատուցեալ՝ խոստանայ հասանել փութով զկնի եղբօրն, եւ կազմի անդէն: Հեկտորի ընթացեալ անդուստ յիւր ապարանսն, եւ չգտեալ անդ զկինն իւր զԱնդրոմաքէ, ելանէ զհետ նորա: Համդիպումն նոցին առ արեւմտեան դրամբն, գորովալից խօսակցութիւն նոցին, պատկեր ազդոյ մանկանն Հեկտորի, բաժանումն նոցին 'ի միմեանց: Ժամանէ անդր Պարիս անապաղէն, եւ ընդ եղբօրն ելանեն 'ի դաշտն:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՎԵՑԵՐՈՐԴ

### ՀԵԿՏՈՐԻ ԵՒ ԱՆԴՐՈՄԱՔԵԱՅ ՀԱՆԴԻՊՈՒՄՆ ԵՒ ԲԱՆՔ

Տրովացւոցն եւ աքայեցւոց ամայացաւ ամեհին մարտ ,
Եւ բազում յոյժ այսր եւ անդր էր ընթացեալ գուպարն ընդ դաշտ
Յարձակելն 'ի միմեանս բղձեղարդաւորն պղնձաձակուռս
Ընդ մէջ հոսանաց Սիմոյիսեայ եւ Քսանթոսի ։
Եւ Էաս Տելամոնեան' աքայեցւոց պահ եւ պատնէշ'
Նախ բրդաբեկեաց երեկ ամպ եւ ընկերացն ծագեաց լոյս ,
Հարեալ զայր մի քաջազէն 'ի Թրակացւոց զընդէ անուն'
Զեւսորեան ձեռ զԱկամաս բարձրաբերձ եւ գեղաղթանդամ ,
Զոր եհար նախ ընդ խորան ձիաձաւարեալ զրահանոցին ,
Եւ վարեաց 'ի ճակատն , եւ մինչեւ յոսկր անդր հասանել
Անց սայրն պղնձի , եւ զաչս նր ծածկեաց խաւար ։
ԶԱքսիլոս սատակեաց Դիոմեդէս ահեղագոռ
ԶՏեւթրանեանն' որ բնակէր 'ի բարեշէնն Արիսբէ ,
Մեծատուն եւ ընչեղ եւ սիրեցեալ 'ի մարդկանէն ,
Զի բնաւից ասպընջական էր ունելով տուն առ ուղւոյ ։
Այլ ոչ յայնժամ 'ի նոցունց ժամանեալ ոք յեւր օգնութիւն
Փրկեաց զնոյն 'ի խեղճ մահուն , այլ զերկոսին անշընչացոյց ,
Ընդ նմին եւ զպաշտօնեայն' որ անդ ձիոցն էր կառավար
Կալեսիոս , եւ 'ի հող երկրի մտանէն երկոքին եւս ։
Եւրիալոս զըրաւեաց զՕփելտիոս եւ զԴրեսոս ,
Եւ գնաց 'ի Պեդասոս եւ յԷսեպոս' զոր ծնաւ երբեմն
Աբարբարէ յաւերժահարսն աղբերց' ամբիծ Բուկողեանն ։
Բուկողիոն էր զաւակ քաջափառին Լաւմեդոնեայ ,
Ծննդեամբ երիցագոյն , բայց գաղտնի զնա ծնաւ մայր ․
Նա հովիւն 'ի տաւարածին 'ի սէր ու'ի քուն խառնակեցաւ ,

Եւ նորա յըղացեալ՝ երկուորակից ծընաւ մանկունս։
Ըզսոցա զօրութիւն եւ զքաջասրտութ. անզգամն եղջծ
Մեկիսատեւանեանն, եւ յուսոց անտի նոցա զզէնսըն կապտեաց։
Սատակեաց զԱստխալըս Գոյխալխանեան անվանեալք,
Եւ ըստան Ոզխաւեա ըզԳիզխանեայըն Գերկոսեան
Աշակիրըն պղընձեաւ, Տեւկրոս զքաջազըն Արետաուտն,
Անտիլոքոս Նեստորեան ըստան զԱսլեր փայլուն ոխգաւ,
Իսկ արի արանց արքայն Ագամեմնոն զԵլատոս՝
Ըզբնակեալն առ ափանք ուղխինահոս Սատնիոյսայ
Ի բարձրագէտըն Պեդասս, եւ Լէիտոս զփախչողըն ըստան
Զփիլակոս 'ի փախըստեան, զՄելանթիոս հար Եւրիպիլ։
Իսկ ապա զԱդրեստոս Մենելաւոսն ահեղագոչ
Կենդանի կալաւ, զի ձիքն իւր շըրթեալ ընդ դաշտավայրըն
Ի մոշենի շաղեալք ոստ, եւ խորտակեալ ըզկառաւըն կոր
Ի զօգուած անդ քեղւոյն, ինքեանք եղին դէմ 'ի քաղաքն՝
Ընդ որ եւ այլք զարհուրեալ խուճապէին ձիոց ըղձեալ,
Եւ նա ինքն 'ի գլուխ անտի զանուըքըն տապալեալ
Ի բերանս հարեալ անկաւ անդ 'ի փոշւոջ, եհաս առ նա
Ատրիդէս Մենելաւոս՝ երկայնաստուեր տէգն 'ի ձեռին,
Ադրեստոս անդէն զծընկօք նորա փարեալ աղաղակէր.
Ապրեցո, ձեռդ Ատրեւսեան, եւ արժանի 'նկալջիս փըրկանս.
Ցապարանս հօրն իմ ճոխի բազում ըստացք են պատուականք,
Եւ պղինձ եւ ոսկի եւ երկաթ յոյժ ճարտարագործ.
Հայր իմ քեզ 'ի նոցանէն պարգեւեսցէ փըրկանս անթիւ,
Թէ միայն զիս կենդանի լուիցէ 'ի նաւս աքայեցւոց։
Զայս ասաց, եւ զսիրտ նորա շարժեալ 'ի լանջըն յորդորէր,
Եւ կամէր ըզնա տալ անդէն իւրում արբանեկին
Ցաքայեանց տանել 'ի նաւս, անդուստ տակայն Ագամեմնոն
Ընթացեալ եկն ընդ առաջ, գոչեաց 'ի ձայն ըսպառնալեաց.
Ո՛վ դու վատ, ով Մենելաւ, զի՞ այդպէս դաս մարդկան 'ի գութ.
Քեզ 'ի տանդ ապաքէն վայելչական հարաւ ըստաս
Ի տրովեանցդ, յորոց եւ մի՛ ապրեսցի ոք 'ի ժանտ մահուն
Եւ 'ի մեր ձեռաց, եւ մի՛ զոր յարգանդին կրրէ իւր մայր,
Որ ուստր իցէ, եւ մի՛ սա ճողոպրեսցի, այլ կորիցեն
Համաջունջ յԻլիոնէ անթաղ անխնամ հետախաղաղ։
Ասացեալ՝ դարձոյց զխելացուն ըզմիտս եղբօրն 'ի դէպ խրատովն,
Եւ նա զքաջազըն Ադրեստոս մերժեաց ձեռամբն յանձնէ 'ի բաց,
Եւ խոցեաց ըզնա 'ի կուշտըն Թագաւորն Ագամեմնոն,
Նա թաւալ անկաւ յորսայս, եւ Ատրիդեայ արտաքեալ 'ի կուրծան
Աքացի հարեալ ոտամբ՝ ձըգեաց եհան ըզտէգն հացի։
Բարձրաձայն հարկանէր արդիւնացւոց Նեստոր խրախոյս.
Ո՛վ սիրելիք, զխելացողունքըդ դանայեան, Արեայ մանկունք,

Մի՛ ով որդ յաւուր խառնեալ 'ի կողոպուտ՝ յետքս մնասցէ,
Իբրեւ զի չառ ճինչ ապաւեալ կապուտ՝ դարձցի անդրէն 'ի նաւս.
Կոտորեսցուք եւեթ զարդ, առաջ զառապաստ անկեալն 'ի դաշտ
Արտասուօք զմեռեալ մարմինս հանդարտապայն զինակապուտ:
Զայս ասաց, եւ եռանդն յամենեսին ած եւ աժխոյժս:
Անդ տրոմեցիք յաղթեցելոց 'ի սիրելեացն Արեւի
Վատասրտութեանն եղեալ նըկուն՝ եւ յոյժն անկանէին,
Թէ Գրիտամեան Հելենոս՝ հաւահմայիցըն գերագոյն
Մատուցեալ առ Էնէաս եւ առ Հեկտոր չէր թարգմանեալ.
Էնէաս եւ Հեկտոր, 'ի ձեռ քանզի կըրթի վաստակ
Տրովացւոց եւ լիկացւոց, վասն զի էք գեր 'ի վերայ
Ցամենայն վարչութիւն պատերազմաց եւ խորհրդոց,
Կացէք աստ եւ արգելէք առաջի զրանցդ ըզժողովուրդն
Ընդ հանուր ընթանալով, մինչ չեւ 'ի գիրկըս կանանցն
Փախուցեալ անկեալ իցեն եւ Թըշնամեաց կացեալ քըրքիջ:
Իսկ յորժամ զունդ զամենայն խրախուսիցէք առ հասարակ,
Աստ 'ի բոյս հարկեալ մեր զօրաւ՝ ընդ դանայեանն ոգորեսցուք,
Թէպէտ եւ յոյժ սըրտաբեկք, քանզի ձնշէ հարկին տագնապ:
Բայց դու, Հեկտոր, ընթա երթ այսուհետեւ 'ի քաղաք անդր,
Ասասջիր մօր քում եւ իմ, զի ժողովեալ ըզտանտիկնայս
Ի մեհեան մեղուակամն Աթենասայ 'ի գըլուխ շինին,
Բանալեաւ զդըրանդըս բացեալ ըզնուիրական տապարանեացն,
Եւ ըզպեպլոս զոր իւր Թուեսցի գեղեցկագեղ եւ մեծագոյն
Ի դըրասրահն 'ի տան իւրում եւ անձինն յոյժ սիրատենչակ,
Արկեալ արկցէ զայն 'ի ծունկս Աթենասայ գեղածամին:
Եւ նըմին տարեւորս անմաւզ երինջս երկոտասան
Ուխտեսցէ 'ի մեհենին զոհել, Թերեւս ողորմեսցի
Քաղաքիս եւ ամուսնոց տրովադացւոց եւ տղայ մանկանց,
ԸզՏիդեայ Թերեւս որդին խոյեալ 'ի սուրբ Իլիոնէ՝
Հերքեսցէ զմիապաղ մարտիկն եւ զարհաւրաց մարտուչն հըզօր,
Զոր ըզամենագոյն կարծեմ ես յաքայեցիսն բռնաւորակ:
Զի ոչ այսպէս յԱքիլլեայ երկեաք երբեք յարանց պետէն՝
Զոր ասեն աստուածուհւոյ ծընունդ, իսկ սա սաստիկ մոլի,
Եւ չէք ումեք ընդ սմա կորովութեամբ զալ 'ի կըշիռ:
Ասաց զայս, եւ Հեկտոր հարազատին ոչ անսաստեաց:
Ի կառաց անտի անդէն զինու զարդուն ոստեաւ յերկիր,
Եւ ճօճեալ սուր գեղարդըունս ընդ համօրէն զընդայր բանակն
Ի դուռպար խրախուսել, եւ բորբոքեաց մարտ անհնարին.
Եւ նոցա դարձեալ անդրէն՝ աքայեցւոց կացին ընդդէմ:
Ընկըրկեցան աքայեանք եւ կասեցին 'ի սպանութեանց,
Ցանմահից զոք կարծելով յաստեղազարդն իջեալ յերկնից
Ցօգնութիւն տրովացւոց, այնպէս դարձան կացին ընդ կըռուի:

Եւ Հեկտոր քաջալերէր ըզտրովացիս բարձր 'ի կանչիւն.
Տրովացիք արիականք եւ ասպարամարտ Նիզակակիցք,
Արք լերուք, սիրելիք, արկէք 'ի միտ զոյժ արիութեան,
Մինչեւ երթ մի յԻլիոն ուրուրից ես եւ տաց պատուէր
Ատենակալ ծերունեացն եւ ամուսնոց կանանց մերոց
Անկանել յաղերս առ դիսն եւ ուխտադիր զոհից լինել:
Այսպէս զայս բարբառեալ՝ գնաց Հեկտոր կորդակաձօձ,
Եւ զսրճղունսն իւր բախէր եւ զպարանոց փակ Թըխամորթ՝
Շըրջապատ բոլորեալ 'ի կըճապատ վահանին վերջս: —
Իսկ Գլաւկոս Հիպպողոքեայ հատուածին եւ ուստրըն Տիդեան
Ի մէջ երկուց ճակատուց մատեան 'ի կռիւ մենամարտիկ.
Եւ մինչդեռ առ միմեանս ընթացեալ հուպ եկին կացին,
Նախ խօսել առ նա կալաւ Դիոմեդէս ահեղագոռ.
Ո՞վ ես դու, քաջդ, 'ի մարդկանէ մահկանացուաց,
Զի չտեսի յառաջ ուրեք 'ի ճակատս փառաստարգեւ.
Բայց այժմիկ յոյժ գիմագրաւ քան զամենս եկեր յանդգնութեամբ,
Զի կացեր առաջի երկայնաստուէր իմ նիզակիս.
Այլ մանկունք հեքացելոց դիմեն իմումս սաստկութեան:
Իսկ թէ ոք յանմահից յերկնից եկեալ այսըր հասեր,
Ես ընդ դիսն երկնաւորս ընդդիմամարտ ոչ եղանեմ:
Զի եւ ոչ Դրիասեան զաւակն՝ հըզօրըն Լիկուրգոս՝
Եկեաց յերկար, զի՛նդ աստուածսըն երկնաւորս 'ի կռիւ հեռայր.
Որ երբեմն ըզմոլեգնոյն Դիոնիսեայ վանէր դայեակսն
Ի նուիրական Նիսէյանն, եւ նոքա բնաւք միանգամայն
Ըզթաւ ուստն ընկեցին յերկիր՝ տանջեալք յաղին խըլթան
Ի մարդասպան Լիկուրգեայ. եւ զարհուրեալ Դիոնիսոս
Երթ եմուտ յալիս ծովուն, եւ նա Թետիս 'ի գիրկըս իւր
Զահաբեկն՝ որ ըզդողն կայր 'ի սաստից առնըն հարեալ:
Ցասմնեցան սըրտմըտեցան ընդ նըմին դիք դիւրակենցաղք,
Եւ զաւակըն Զըրուանայ զնա կուրացոյց, եւ նա չեկեաց
Ոչ եւս այլ, զի անմահից դիցն ատելի եղեւ հանուրց:
Չառնում եւ ես յանձըն քաւ ընդ երջանիկ մըրցել աստուածս:
Իսկ թէ ոք մահկանացուաց ես որ զպտուղ երկրի ուտեն,
Մօտ մատիր, զի նոյնհետայն փոյթ 'ի վախճան հասցես մահու:
Եւ անդրէն Հիպպողոքեայ շըքեղ որդին կըրկնեաց առ նա.
Մեծանձնըդ դու Տիդեանդ, զի՞ զազգատոհմ իմ հարցանես.
Որպիսիք են տերեւոց զարմք սերունդք, նոյն եւ մարդկան.
Են զորս յերկիր հոսէ տերեւս հողմ, եւ մայրին բողբոջազարդ
Զայլս 'ի բոյս ընձիւղէ, եւ գարնայնին հասանէ ժամ.
Նոյնօրինակ եւ ազգ մարդկան, է որ ծնանի, է որ ծախի:
Ուսանել թէ զայդ խընդրես՝ զի լինիցիս հըմուտ տեղեակ
Մերոյին ազգատոհմի, զոր եւ գիտեն բազում մարդիկ,

Եւ նմա Լիկիացիք զատուցին անդըր գեր քան զայլս
Քաջաբերս 'ի հարաւունս եւ յայգեստան՝ 'ի մշակել:
Եւ արքային Բէլլերոփոնի ծընաւ որդեակըս կինն երիս,
ԶԻսանդրոս, եւ հանդերձ՝ զՀիպպողոքոս եւ զԼաւդամի.
Արամազդ խորախորհուրդ ընդ Լաւդամին առ եւ քունեաց,
Եւ ծընաւ նա զՍարպեդոն աստուածատիպ պղընձազրահն:
Սակայն եւ նա զկնի համօրէն խորիւ յաչաց ելանէր,
Ընդ դաշտն Ալէյական Թափառ շըրջէր միայն մոլոր՝
Զոգին իւր ուտելով եւ 'ի հետոց մարդկան խուսափ:
ԶԻսանդրոս նորին որդի՝ անյագն 'ի մարտ կորոյս Արէս
Ի նորա պատերազմել ընդ Սոլիմացւոցն քաջանուն:
Իսկ զդուստրն՝ ոսկեսանձըն սըրտամըրեալ սպան Արտեմիս:
Զիս ծընաւ Հիպպողոքոս, եւ 'ի նմանէ լինել ասեմ.
Եւ յղեաց զիս 'ի Տրոյա՝ բազում ինչ եւ ինձ պատուիրանս,
Յամենայն ժամ քաջ լինել եւ ելեւել առնել զայլովք,
Եւ մի՛ զազգ Թըշնամանել հարանց որ քաջքըն վեհագոյնք
ՅԵփիւրէ են կացեալ ու'ի լայնանիստն Լիկիա.
Աւագիկ յազգէ այսմ եւ յարենէ պանծամ լինել:
Զայս ասաց, եւ զուարճացաւ Դիոմեդէս ահեղագոռ,
Ըզնիզակն իւր հարեալ 'ի խոտաւէտ վարսեաց գետինն,
Եւ անոյշ բանիւ առ հովիւըն խօսեցաւ ժողովըրդոց.
Արդարեւ իսկ վաղեմի հայրենական ես դու ինձ հիւր.
Զի երբեմն Իննէւս քաջազն ըզհըռաշալին Բէլլերոփոն
Հիւր 'ի տուն իւր ընկալաւ՝ աւուրս առ իւր պահեալ քըսան,
Որ եւ հիւրոյթս ընծեռեալ ետուն միմեանց գեղազանակս:
Ընծայեաց Իննէւս կամար մի ծիրանի լուսանըկար,
Եւ նմա Բէլլերոփոն ոսկի բաժակ մի կըրկնատաշտ,
Զոր 'ի խաղալն այսր իմում Թողի ես զայն յիմ ապարանս:
ԸզՏիդէւս ոչ յիշեմ, զի տղայ մանկիկ եթող նա զիս՝
Յորժամ կորեանն 'ի Թեբէ աքայեցւոց ամբոխութիւնք:
Արդ ես քեզ՝ հիւր սիրելի եմ 'ի մէջի արգոսացւոց,
Եւ դու ինձ՝ 'ի Լիկիա, Թէ յազգ նոցին ինձ գալ լիցի:
Յաշտեսցուք 'ի միմեանց եւ անդ 'ի խուռն ըզգուշասցուք,
Զի բազում են ինձ տրովեանք եւ քաջ սատարք 'ի սատակել,
Զոր եւ դը տայցէ աստուած եւ ես ոտիւքս ըմբըռնեցեմ.
Եւ քեզ շատ աքայեցիք 'ի սպանանել՝ զոր կարիցես:
Այլ փոխեսցուք զէնս ընդ իրեարս, զի եւ սոքա լիցին հասու՝
Թէ լինել պանծանամք միմեանց 'ի հիւր հայրենական:
Զայս միասին բարբառեալ եւ ոստուցեալ 'ի յերկձիոցն,
Այր զընկերի կալեալ ձեռս՝ ետուն միմեանց հաւատս յերաշխս:
Անդ Զըրուանեանն Արամազդ ըզԳըլաւկոսի Թափեաց ըզխելս,
Որ ըզզէնս իւր ընդ Տիդեան Դիոմեդեայ փոխանակեաց՝

Զանկեղենան ընդ աղջըկանս, զհարիւրեղէնեանն ընդ ճինեղնեանս : —
Իսկ Հեկտոր յԱրեւմըտեան մինչ եհաս դրունս եւ 'ի կաղնին,
Կանայք զնա սրբեւ եւ դըստերք ընթանային տրովադացւոց՝
Զորդւոցն հարցեալ որդւոց՝ եղբարց՝ արանց եւ զոհելեաց,
Եւ նա տայր ամենեցուն հրաման երթալ կարգ ըստ կարգէ
Առ աստուածս յաղօթըս կալ, զի բազմաց ցաւք կային առ դուրս։
Ի գեղապանծ ապարանս հասեալ եհաս 'ի Պրիամեան,
Որ կանգնեալ կախածոյիւք էին զարդեալ. — եւ 'ի նմին
Կային եւս տաղաւարք 'ի սրբատաշ վիմէ յիսունք՝
Կառուցեալք հուպ առ միմեանս, եւ անդ ուստերքն Պրիամու
Ի քուն մըտանէին առ ամուսնօքն հարազատօք.
Եւ դըստերացն 'ի միւս կողմ 'ի հանդիպոյն 'ի սրահի անդ
Ցարկաւորց կային սենեակք երկոտասան կռածոյ քարամբք
Շինեալք միմեանց մօտընթեր, յորս փեսայքն Պրիամու
Ի քուն մըտանէին ընդ ամուսնեան ամօթխածս. —
Անդանօր շնորհատուիչն մայր նորա ել նորին ընդ առաջ,
Որ առ դըստերց չքնաղագեղն անցեալ երթայր Լաւոդիկէ.
Եւ ձեռն 'ի ձեռն եդ խօսելով՝ կարդաց զանունն եւ խօսեցաւ.
Զի՞ է, որդեակ, զի թողեալ զամենահամբաւ պատերազմն եկիր.
Տագնապեն անշուշտ որդիք աքայեցւոցն զմեզ պնդեալ
Մարտնչեալք զամուրս, իսկ այժմ ըղձից դըրդեալ հոգւոյդ
Գալ յամրոցէ քաղաքիս ամբառնալ ձեռս առ Արամազդ։
Սակայն կաց՝ մինչեւ երթամ քեզ անուշակ բերեմ գինի,
Նուիրել Արամազդայ հօրն եւ այլոց նախ անմահից,
Եւ ապա դու իսկ ինքնին արբեալ ըմպել կազդուրեսցիս.
Քանզի առն աշխատելոյ յորդէ գինի զօրութիւն մեծ,
Որպէս եւդ վաստակեալ՝ քոյ ընկերաց կռուելով փոխան։
Եւ նմա պատասխանի մեծազէն Հեկտոր սաղաւարտաձօձ.
Մի ածուր ինձ դու գինի զմայլեցուցիչ, մեծարգոյ մայր,
Գուցէ զիս լքանեսցես, եւ մոռասցայց զոյժ եւ զկորով.
Իսկ անլըւայ ձեռօք ձեռաց Արամազդայ գինի հեղուլ՝
Խորշիմ, զի ոչ երբեք առ Արամազդ ամպրոպաթօթիւ
Ցարիւն եւ յապականութ թաթաւեալ է աղօթել։
Այլ արի դու 'ի տաճար աւարառուին Աթենասայ
Ե՛րթ բուրմամբք անուշիւք, համախըմբեալ ըղձածուհիս,
Եւ զպատմուճան որ քեզ թուիցի գեղեցկագոյն եւ մեծագոյն
Յորս 'ի տան զգեստենիցն եւ քեզ կարի ցանկալի,
Անկեալ արկցես ըղծընկօք Աթենասայ վարսագեղի։
Եւ նմա տարեւոր անմեղ երինջս երկոտասան
Ուխտեսցես 'ի մեհենին զոհել, թերեւս յողորմ գայցէ
Քաղաքիս եւ ամուսնաց տրովադացւոց եւ տղայ մանկանց,
Եթէ զՏիդէայ թէ զորդին հեռքեալ 'ի սուրբ Իլիոն

Վանեսցէ զմիջոց մարտոյն եւ զարհաւրաց հզօր մարթուչ։
Արդ դու չոգ 'ի տաճար աստուածուհւոյն Աթենասայ,
Իսկ ես՝ առ Պարիս անցեալ գնացից կոչ առնելոյ,
Թէ կամիցի խրատուս լսել. օհ՜ անդ նմա բանայր գետինն.
Մեծ ըղձա աղետից եղեան Ոլիմպականն տրովադացւոց
Եւ մեծանձին Պրիամու եւ համօրէն որդւոց նորա։
Թէ 'ի վիհ Սանդարամետս ըղձա անկեալ խորասուզեալ,
Մոռացեալ անկեալ 'ի մտացս ըղձգամն աղէտքս հաշուեցայց։
Զայս ասաց, նորա գնացեալ 'ի տուն հրաման ետ աղախնանց,
Որ եկեալ ընդ ոստանն ըղստանուհեաց ժողովեցին։
Իսկ նա իջեն երթեալ էջ 'ի շտեմարանն անուշաբոյր,
Ուր առաջն էին իւր նկարէնք՝ ասարազք կանանց սիդոնուհեաց,
Զորս ինքն 'ի Սիդոնէ ած Աղէքսանդր աստուածանկերպ
Նաւարկեալ հատեալ ըղծովն անդընդախառն ընդ հեռս ուղւոյն՝
Ընդ որ վարեալ եւ ածեալ ըզհօրամօրյն էր Հեղինէ։
Ցոյց Հեկաբէ զմին հանեալ՝ Աթենասայ բերէր նուէր,
Որ յերզին երկքըն նարօտուց ծաղկեալ նըկար, մեծ քան ըղբիւսուն՝
Իբրեւ զաստղ ճաճանչէր, եւ հուսկ յետին դնէր այլոց։
Ել գնաց, եւ խուռներամ խաղայր ըզինի իւր բամբշանցն։
Եւ 'ի գլուխ շինին յորժամ յԱթենասայ հասին տաճար,
Ցարեաւ եբաց նոցա զդուրսըն Թէանով գեղեցկադէմ
Կիսաէսեանն՝ ամուսինն Անտենովրայ ձիավարժի.
Զի զնա եդին քրրմուհի Աթենասայ տրովադացիք։
Նոքա ձեռս առ Աթենաս բարձին ողբովք մեծահամուռ,
Եւ առեալ գեղեցկայօնն Թէանով զըղղաշատեան
Եդ 'ի ծունկսըն զայն նուէր Աթենասայ վարսագեղոյ,
Եւ ուխտիւք աղաչէր ըզմեծին դուստր Արամազդայ.
Աթենաս, աստուածուհեաց վեհ, խընկելի, քաղաքապահ,
Դու զնիզակըն խորտակեա զԴիոմեդի, եւ տուր ըզնոյն
Բերանսել թաւալգլոր առաջի դրանցս Արեւմբուց.
Զի այժմ ահա տարեւոր սըրմուղ երինջս երկոտասան
Քեզ հանցուք 'ի մեհենի աստ զոհ, թէրեւս 'ի գութ դարձցիս
Ոստանիս եւ ամուսնաց տրովադացւոց եւ տղայ մանկանց։
Զայս ինչ նա եկաց յաղօթս, յանձն Աթենաս չէառ Պալլաս։
Այսպէս սոքա մաղթէին դըստեր մեծին Արամազդայ,
Իսկ Հեկտոր չոգաւ 'ի տունն Աղէքսանդրի չքնաղակերտ,
Զոր իւր էր կառուցեալ ընդ արերոյն քաջահրմուտ՝
Որ յարգաւանդն 'ի Տրոյա ճարտարապետքն էին հիւսունք,
Եւ նըմա զառագաստն յօրինեցին, զյարկն եւ զգաւիթ
Առ ընթեր Պրիամու եւ Հեկտորի յամրոց շինին։
Սիրելին Արամազդայ Հեկտոր եկեալ անդըր եմուտ,
Արդն 'ի ձեռին մետասան կանգուն, եւ սլաք տիգին պղնձի

Յառաջոյ փայլատակէր, եւ օղ ոսկի շուրջ ընթանայր ։
Գտեալ զնա 'ի սենեկին զբաղեալ գեղափայլ զինուքն եկեալ,
Զասպարն, ըզլանջապանն եւ զկորաձեւն զննել աղեղն ։
Իսկ Հելենէ արգոսուհին ընդ աղախնոց նստէր կանանց,
Եւ հրամանս զարմանազան ձեռնակերտից տայր նաժշտացն ։
Հեկտոր տեսեալ զեղբայրն՝ այպանելի զգաստոց բանիւք .
Ա՜յ թշուառ, ոչ ինչ 'ի դէպ եդեր 'ի սիրտ զայդ բարկութիւն .
Ծախին զօրք ըզքաղաքաւ եւ զպարըսպաւք բարձու մեռցեալք .
Վասն քո խաղմ եւ պատերազմ բորբոքեցաւ շուրջ զոստանեաւս .
Եւ դու ինքնին քեղէն այլում ունիք զայլեր 'ի վէճ,
Եթէ յանկն արկանէիր զոք յուլացեալ յահեղ կռուոյն ։
Այլ արի, մի՛նչ հուպ ոստանս ոխերիմ հրով փայլակնացի ։
Պատասխանի ետ անդրէն Աղէքսանդրոս աստուածակերպ .
Յարժանի են կշտամբանքդ, Հեկտոր, եւ ոչ առաւելապարտուց .
Ասացից քեզ յայն սակս, եւ դու լուեալ ինձ 'ի միտ առ ։
Ոչ թէ ցասմամբ ընդ տրովեանս եւ ոչ յորդոր բարկութենէ
Նստեալ աստ 'ի սենեկիս, այլ առ մղձուկ ցաւոց գերուել ։
Իսկ զարդես՝ ամուսնոյս աղաչ բանիւք յիս մատուցեալ՝
Խրախուսեաց 'ի պատերազմ, եւ ինձ իսկ լաւ այնպէս թուի .
Զի այսր եւ անդր 'ի մարդիկ փոխանի բախտ պատերազմաց ։
Այլ այժմ եկ մինչ դու ինձ, զարհուրական զգեցայց զէնս,
Եւ կամ երթ, եւ ես եկից, եւ ժամանել քեզ ակն ունիմ ։
Զայս ասաց, ոչ ինչ կրկնեաց անդրէն Հեկտոր կորդակաճօճ,
Այլ առ նա Հելենէ բարբառեցաւ աղու բանիւք .
Ո՛վ տայգր իմ, շանս ինձ չարահնարիս, սարսափելւոյս,
Ո՛ տայր՝ եթէ յաւուրն անդ առաջնում զի ծնաւ զիս մայր՝
Յափըշտակեալ զիս մրրրիկ այսոյ չարի սլանայր 'ի լեառն,
Եւ կամ 'ի խորս անդնդոց ահեղագոչ ալեաց ծովու,
Ուր կոհակ ընկլուզանէր զիս մինչ չեւ այսմ եղեալ վիճակաց ։
Այլ զի այսպէս զայսպիսիս սահմանեցին դիք զեղեռանս,
Պարտ էր դէթ քաջազգունի լինել ինձ առն անկողնակից,
Որ զգայցէ պարսաւս եւ մարդկան խուռն եղերանաց ։
Իսկ 'ի սմին՝ ոչ այժմ ինչ միտք են պինդ՝ եւ ոչ լիցին յապայս .
Վասն որոյ եւ համարիմ նորին զարդիւնս իւր ըմբոշխնել ։
Այլ այժմ եկ 'ի ներքս մուտ, տայգր իմ, եւ նիստ 'ի բազմոցիս,
Զի վաստակ անհնարին պատեալ ըզմիտսդ պաշարէ
Ի պատճառս իմ վասըն շանս, եւ վրիպանաց Աղէքսանդրի,
Յորոց վիճակ վատաբախտ ընկէց 'ի վերուստ մեր Արամազդ,
Զի եւ մարդկան հանդերձելոց լիցուք յապայս երգ եւ առակ ։
Ետ նորին պատասխանի մեծըն Հեկտոր սաղաւարտաճօճ .
Մի՛ ասեր ինձ նիստ, Հելենէ, թէ եւ առ սէր՝ ոչ համոզեսցես .
Քանզի սիրտ իմ արդ վառի՝ ճեպել 'ի տրովեանց առ օգնութիւն ,

Որ անհնչացեալ հեռացելումն հաչէն ըղհետ հառաչէն ։
Այլ դու զըզա ասխաղեաշիր, եւ նա խնդնեն խակ փութացի,
Զի մինչ զեռ 'ի քաղաքիս էցեմ՝ առ քո եկեալ հասցէ ։
Աստըսանին եղեալ 'ի սուր հեռաւեցայց ես ասեանել
Զջերդատուասն եւ զամուսին իմ սիրելի, զարդարս մանկկի ։
Զի չզիտեմ թէ միւսանգամ դարձեալ այսրէն զամ առ նոսա,
Թէ 'ի ձեռս աքայեցւոց մատնեն զիս գիք 'ի պարտութիւն ։
Զայս մյայէս խօսեցեալ՝ գընաց Հեկտոր կորդակախորոխ,
Եւ հասըձեալ փութով հասեալ 'ի բնակութեա իւր ապարանսն,
Ոչ եգիտ անդէն 'ի տան զԱնդրոմաքէ լուսածըղի,
Այլ մանկամբն ելեալ հանդերձ եւ նաժըշտաւ քաղաղարդիւ
Երթեալ կայր յաշտարակին կականելէր եւ ողբանուէր ։
Իբրեւ ոչ եգիտ 'ի ներքս Հեկտոր ըղկին իւր զանարատ,
Գնացեալ առ սեմսըն եկաց, բարբառեցաւ առ աղախնայս ։
Ո՛ն եկայք ինձ, աղախնայք, խօսեցարուք զստուգութիւն ։
Ցո՞ գնաց 'ի տանէս Անդրոմաքէ սպիտակածըղի ։
Թէ առ ո՞ք 'ի տալից կամ 'ի ներից եւաղարդից
Կամ 'ի տաճար Աթենասայ գընաց ուր այլքըն տրովուհիք
Հաշտ առնեն ըղդըրժնէ աստուածուհին ըղվարսադեղ ։
Տընօրէն կինըն ժրագլուխ արար առ նա պատասխանի ։
Զի մեծաւ ստոյգ պատուէր եսուր, Հեկտոր, արդար խօսել,
Ոչ առ ոք 'ի տալեցն, ոչ 'ի ներից գեղանեաց,
Ոչ 'ի մեհեան Աթենասայ գընաց ուր այլքըն տրովուհիք
Հաշտ առնեն ըղվարսադեղ զանհընարին աստուածուհին ։
Այլ 'ի մեծ շրջան մարտկոցն Իլիոնի, լըւեալ հաւհաւ
Ըզտառապանս տրովադեանց եւ զաքայեանց մեծ բռնութիւն ։
Նա ձեպեալ ըշտապաւ եւ մոլեգին խմըն հանդոյն
Ի պարիսպ անդր հասանէ, զմանկիկն ընդ իւր ունի ստընտուն ։
Զայս ասաց կինըն տնօրէն, եւ 'ի տանէն թըռեաւ Հեկտոր
Անդրէն ընդ նոյն պողոտայս ընդ հրապարակըն բարեշէնս ։
Մինչ անցեալ ընդ մեծ քաղաքն եհաս 'ի դրունս Արեւմըտեան, —
Քանզի ՚նդ այն էր նըմա 'ի դուրս 'ի դաշտ անդր ելանել, —
Ընթացեալ անդ ընդ առաջ եկն ամուսինըն յոգնօժիտ,
Դուստրըն մեծանձինն Էետիոնի Անդրոմաքէ,
Էետիոն՝ այն որ բնակէր յանտառախիտ Պըլակայ ստորոտ
Ի Թեբէ Ստորին Պլակի՝ կիլիկեցւոց արանց իշխան ։
Էր սորա դուստրըն լեալ ըղըղընձազէնն Հեկտորի կին,
Որ դիպաւ նըմա ՚նդ առաջ, 'ի միասին գայր եւ նաժիշտն
Ըզմանկիկըն մատաղ բարձեալ 'ի գիրկս՝ անխօս աղայ,
ԶՀեկտորեանըն սիրելի՝ զգեղեցկափայլ նըմանն աստեղ ։
Հեկտոր ըզնա Սկամանդրիոս ձայնէր, խակ այլք Աստանիկչեան,
Զի զոստանն Իլիոն Հեկտոր եւեթ էր որ պահէր ։

Ի պարծանս հայրենի մեծի փառաց եւ իմ անձին։
Քանզի քաջ իսկ խելամուտ եմ ես 'ի մէջս իմ եւ յոգիս,
Եկեսցէ երբեմն օր՝ յոր կորիցէ Իլիոն սուրբ
Եւ Պրիամոս եւ ժողովուրդ կորովանիզակն Պրիամու։
Այլ չառնեմ ես այնպէս փոյթ ըղձատանջութեան ցաւոց տրովադեանց,
Ոչ նորին իսկ Հեկաբեայ, ոչ արքային Պրիամոսի,
Ոչ եղբարցս հարազատից՝ որ բազմագունդք եւ քաջազօրք
Թաւալեալք 'ի փոշւոջ անկանիցին 'ի Թշնամեաց,
Որպէս ըզքոյդ, յորժամ ոք 'ի պղնձակուռ աքայեցւոց
Վարեսցէ արտասուալիցն՝ զազատութեանդ հատեալ զօրն.
Եւ գուցէ յԱրգոս երթեալ՝ անկցես ստորոյն այլում ոստայն,
Կամ ջուր կրեսցես յաղբերէն Մեսսեիդեայ կամ Հիպերեայ՝
Ըստիպեալ չարաչար եւ տաժանեալ 'ի խիստ հարկէն։
Եւ Թերեւս յարտասուահեղդ հայեցեալ ասիցէ ոք.
Սա՛ կինն է դա Հեկտորի՝ զօրագլուխն 'ի պատերազմ
Ի տրովադեանց քաջաձիոց՝ 'ի կռուոյ անդ զԻլիոնիւ։
Այսպէս ոք ասասցէ, եւ ցաւք 'ի քեզ նորոգեսցին
Առ անձուկ առն այսպիսում ըզծառայութեան Թափել ըզկեանդ։
Այլ ըզմեռեալս հողակոյտ ծածկեսցէ զիս 'ի կափարչում,
Ըզկառաչ քո եւ ըզճիչ եւ ըզքարշանսդ չեւ լուեալ։
Ասացեալ զայս՝ տարածեաց Հեկտոր ձեռս զիւրն առ որդեակն,
Եւ մանկիկն յետս 'ի ծոց գեղեցկագօտի իւրոյ սնուցողին
Ճիչ բարձեալ խոնարհեցաւ՝ 'ի տես սիրուն հօր զարհուրեալ,
Պակուցեալ 'ի պղնձայն ու 'ի ձիաձետ գագաթնականէն,
Զահաւոր տեսեալ Ճօճել 'ի գագաթանց գըլխանոցէն,
Ընդ որ հայրըն սիրելի եւ մեծարոյն ժըպտեցաւ մայր։
Եւ անդէն բարձ 'ի գըլխոյն ըզսաղաւարտն ահեղն Հեկտոր,
Եւ առեալ զայն 'ի վայր՝ Ճաճանչաւէտ եդ 'ի գետնի.
Եւ զմանկիկըն սիրուն ողջագուրեալ Ճօճեալ 'ի ձեռսն,
Յաղօթս եկաց եւ ասէ առ Արամազդ եւ առ այլ դիս.
Արամազդ եւ այլ աստուածք, տուք եւ ըզսա զիմս որդեակ
Լինել, որպէս եւ ես, արժանափառ 'ի տրովացիս,
Այսպէս հըզօր զօրութեամբ եւ քաջաբար տէր յԻլիոն։
Եւ իցէ ոք ասասցէ, բազմ սա քան զհայրըն արիագոյն,
Ի մարտէն յորժամ դարձցի եւ արիւնոտ բերցէ կապուտ՝
Սատակեալ զախոյեանն, եւ մայրըն 'ի սիրտ իւր խնդասցէ։
Զայս ասաց եւ ամուսնոյն զորդեակն 'ի ձեռս եդ սիրունոյ,
Որ առեալ ընկալաւ ըզնա 'ի գիրկս իւր բուրաստանաւէտ
Արտասուախառն խընդու[illegible]. առն յայն տեսեալ խանդաղատեալ՝
Փայփայեաց ձեռօքն ըզնա, [illegible]ոյ զանուն իւր եւ ասէ.
Նազելիդ իմ, մի՛ անչափ [illegible]ուր հարցի քո սիրտ,
Զի յառաջ քան ըզհր[illegible]աչ ոք 'ի դժոխս ընկեսցէ զիս.

Իսկ յորհասէն՝ եւ ոչ զոք 'ի մարդկանէ կարծեմ փախչել,
Ոչ ըզվատ եւ ոչ ըզքաջ, յետ միանգամ 'ի լոյս գալոյ:
Այլ երթեալ քո 'ի տուն՝ քոյոց հոգա տանիջիր պէտս,
Ոստայնից եւ իլոյդ, եւ աղախնայցդ տուր հրաման
Ըզգործովք գալ խուբեանց· հոգասցեն արք 'ի պատերազմ
Որ ծնեալքն են յԻլիոն աշխարհին, ես մանաւանդ:
Ասաց եւ ա՛ռ զսաղաւարտն ձիաւէտ՝ Հեկտորն ազնիւ·
Իսկ կինըն սիրային ելեալ տանն գընաց 'ի տուն,
Ըստէպ ըստէպ յետս հայելով եւ ջերմաթաւալն հոսեալ արտասուք:
Եւ փութով յապարանս մարդասպանողին Հեկտորի
Ժամանեալ 'ի ներքինսն՝ եգիտ ըզզաւս անդ աղախնեայց,
Եւ յարոյց 'ի նոսա յամենեսին կոծ լալական:
Եւ առեալ կենդանւոյն զՀեկտոր 'ի տանն ողբային,
Զի չունէին ակն անդրէն դառնալ նըմա 'ի ճակատուց,
Ճողոպրեալ 'ի կործանից եւ 'ի բազկացն աքայեցւոց:
Եւ ոչ Պարիս յամենայր 'ի բարձրայարկ իւր ապարանն,
Այլ՛ առեալ զանձամբ ըզզէնսն 'ի պղնձի պայծառ ճաճանչաւորս՝
Ընդ ոստանըն խոյացաւ խիզախեալ յոտսըն ճեպընթացս:
Որպէս ձի ասպաստանեալ եւ մսուրանեալ յագ 'ի գարի
Կապակտուր ընթանայ գաղթեալ ընդ դաշտ սանձատուր,
Սովորեալ 'ի լողանալ 'ի գեղասահ գետոյն վըտակս,
Խայտալով բարձրավիզ, եւ բաշք զուսովքըն տատանեալ,
Ինքն 'ի գեղ վայելչութեան իւրում անձին նազելով անգ,
Ճեպ 'ի ճարպուկ ծունկըն 'ի ծանօթ վարէ զնա վայրս յարօտ ձիոյց·
Այսպէս ճեմըն Պրիամեան Պարիս յամրոյն 'ի Պերգամայ
Ի զէն 'ի զարդ փայլակնազէս իբր արեգակն անցեալ գընայր
Կայտառելով եւ խաղալով, եւ ճեմքն 'ի ճեպոյն ճախրէին:
Եգիտ անդէն ըզՀեկտոր զդիւցազն եղբայրն 'ի դառնալն անդ
Ի տեղւոյն ուր ըզբանիւք էր ընդ կնոջ իւրում եկեալ:
Առ նա նախ բարբառեցաւ Աղէքսանդրոս աստուածանման.
Ո՛վ արդոյդ, յոյժ արդարեւ խափան ըլինիմ հապճեպ փութոյդ՝
Յապաղեալ եւ 'ի պատեհ ոչ ժամանեալ քում հրամանիդ:
Եւ նըմա պատասխանի սաղաւարտախրոխն Հեկտոր, ասէ.
Զքեզ ոք այր իրաւըննախ արդարադատ՝ որ զքոյդ, ո՛վ քաջ,
Ըզմարտից խաւսեալ հանդէս անարգանեսցէ, զի հզօր իսկ ես:
Բայց կամակար մեղկանաս եւ ոչ կամիս յորդորեալ.
Հարկանէ զիս սիրտս ընդ այս, յորժամ լըսեմ ըզքէն զըրպարտ
Ի տրովեանց՝ որ 'ի բազում վիշտ վըտանգի կան վասըն քո:
Այլ՛ երթիցուք, եւ զայսոցիկ ըզհետ ուրեմն յարդարեսցուք վէճ,
Թէ շնորհէ Արամազդ կանգնել երկնից դիցն յաւերժից
Ըզխրախուսըն բաժակաց ազատ թակոյկն 'ի յարկըս մեր,
Յորժամ վանեսցուք 'ի Տրովադայ զաքայեցւոցն բարձաղինս:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Հեկտոր եւ Պարիս հասեալ 'ի ճակատն՝ վանեն զՅոյնս: Հեկտոր խորհրդով եղբօր իւրոյ Հելենոսի ձայն տայ 'ի բանակն Յունաց՝ ելանել իւր ախոյեան քաջագունին 'ի նոսա. Նոքա վարանին, այլ կշտամբեալք 'ի Նեստորէ՝ ելանեն ինունք, բայց վիճակաւ ընտրի Այաս Տելամոնեան. Մենամարտեալքն 'ի գալ գիշերոյ անջատին: Յոյնք խորհրդովն Նեստորի դուլ տանեն զինուց առ 'ի թաղել զմեռեալսն եւ կառուցանել պարիսպ եւ պատնէշ զճամբարաւն: Ժողով Տրովացւոց 'ի քաղաքին, յորոց գայ քարոզ առ Յոյնս պայմանօք հաշտութեան եւ խնդրելով պարապ 'ի թաղումն մեռելոցն: Առաջինքն մերժին, երկրորդն շնորհի: Յոյնք յետ յուղարկելոյ զմեռեալսն ածեն զիւրեամբք պատնէշ եւ պարիսպ, ընդ որ սրտմտի Պոսիդոն ծովակալեան աստուած: Խրախուսին յերկուսեան կողմանսն. նշանք ահաւորք յԱրամազդայ զգայցն 'ի բուն: Նուէրք առ նա, եւ հանգիստ քնոյ:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԵՕԹՆԵՐՈՐԴ

### ՄԵՆԱՄԱՐՏ ՀԵԿՏՈՐԻ ԵՒ ԷԱՅԱՑ. ԹԱՂՈՒՄՆ ՄԵՌԵԼՈՑ

*Զայս ասացեալ՝ ընդ դրունսն ոստեաւ արտաքս Հեկտոր աճեպ,*
*Եւ ընդ իւր ընդ միահետ խաղաց եղբայրն Աղեքսանդրոս.*
*Երկոցունցն եռայր ոգին 'ի պատերազմ եւ 'ի գուպար:*
*Որպէս աստուած տայ նաւաստեաց ցանկացելոց հողմ աջողակ՝*
*Մինչ ողորկ թիովք ընդ ծովըն մրցելով պարտասեցին,*
*Եւ 'ի խիստ տաժանմանէն վաստակաբեկ լուծցին անդամքն,*
*Այնպիսի սոքա տրոմեանց երեւեցան անձկացելոց:*
*Ըսպանէին անդ՝ սա զորդին Արէիթու թագաւորին,*
*ԶՄենեսթիոս ըղբնակեալն յԱռնէ, զոր ծնաւ Արէիթոս*
*Որմբասարն՝ 'ի կնոջէն աչաղեղոյ Փիլմեդուսայ.*
*Եւ Հեկտոր զԷիոնեւս հարեալ տեգամբըն սայրասուր*
*Ի յուղանն ընդ պղնձակուռ սաղաւարտիւն՝ ելոյծ զանդամսն:*
*Իսկ Գլաւկոս՝ Հիպպոլոքեայ ծնո՝ Լիկացւոց արանց իշխանն՝*
*Եհար ընդ ուսն աչակէր զԴեքսիականն Իփինոոս*
*Ի սաստիկ գուպարածին յերրոդ երկձիան երբ ելանէր.*
*Ի զուգիցըն գլորեցաւ նա 'ի գետին, լուծան անդամքն:*
*Իբրեւ զայն Աթենաս խաժակն եսես աստուածուհին,*
*Զի յոխորտ ճակատամարտ սատակէին արգիացիք,*
*Ի բարձանց Ողիմպեայ խոյացեալ էջ յԻլիոս սուրբ:*
*Զայն տեսեալ Ապողոն 'ի Պերգամայ բարձր 'ի դիտէն,*
*Ընդ առաջ յարեաւ նորա, զի՛նդ յաղթութիւն կամէր տրոմեանց:*
*Առ կաղնեաւն երկոքին սոքա միմեանց հանդիպեցան:*
*Արամազդեան ձեռն Ապողոն արքայ 'ի նա խօսեցաւ նախ.*
*Զի՞ դու դարձեալ յարուցեալ, դուստրըդ մեծին Արամազդայ,*

Եկիր այսր յՈղիմպոսէ, եւ ոգի մեծ շարժեաց ըղձեղ.
Դանայեա՞նց միթէ 'ի տալ ըղյաղթութիւն մարտիս զյողդողդ.
Զի քեզ ո՛չ ինչ ըղնաւ ցաւէ՛նդ կորուստ տրովադացւոց:
Այլ թէ ինձ ինչ լուիցես, որ օգտագոյն իցէ անշուշտ,
Հանգուսցուք այսօր առ ժամս ըղպատերազմ եւ ըղկռիւ,
Մարտիցեն անդրէն ապա, մինչեւ հասանել դըտանիցեն
Ըղվախճանն Իլիոնի, զի այդ թուեցաւ սրտահաճոյ
Անմահիցդ աստուածուհեաց՝ աւերել զքաղաքս այս հիմն 'ի վեր:
Պատասխանի Աթենաս արար խաժակն աստուածուհին.
Դոյնպէս լիցի, Դիպաձիգդ, եւ ես ինքնին 'ի դոյն խորհուրդ
ՅՈղիմպեայ եկեալ եկի առ տրովացիսդ եւ աքայեցիս:
Այլ ասէ՝ իւ հնարիցես ածել մարտի քաջացըն դուլ:
Կըրկնեաց անդրէն Ապողոն արքայորդին Արամազդայ.
Զզօրութեան դըրդեսցէ զոգիս ըղՀեկտորի ձիախրոխտին՝
Ձայն ուժգ տալ 'ի քաջաց դանայեցւոց 'ի մենամարտ,
Մէն միում ախոյեան ելանել կալ բուռն 'ի գուպար.
Եւ առ զայրուկս յանձն առեալ պըղընձազրահքն աքայեցիք
Յարուսցեն զոք մենակռիւ ընդ գիւցազարմըն Հեկտորի:
Զայս ասաց, ոչ Աթենաս ժըխտեաց խաժակն աստուածուհին:
Հելենոս՝ սիրուն որդեակըն Պրիամու՝ ետես հոգւոյն
Ըղխորհուրդն որ 'ի նոցունց ընտրեցաւ դից 'ի մէջ իւրեանց.
Առ Հեկտոր մատեաւ եկաց, եւ զայս առ նա խօսեցաւ բան.
Հեկտոր՝ որդի Պրիամու՝ զուգահանճար Արամազդայ,
Լինիցի՞ս ինձ ունկընդիր, զի համամայր եղբայր եմ քո:
Բազմեցո զայլ տրոյացիս եւ զաքայեցիս առ հասարակ,
Եւ դու լեր ձայնատուր առ քաջագոյնն աքայեցւոց՝
Դէմ ընդդէմ ախոյեան ելանել գալ յամեհի մարտ:
Զի քեզ չեւ մահուն օրհաս է եւ վախճան ճակատագրիդ.
Զի այսպէս ինձ լու եղեւ յաւէժակաց դից ինչ շըշունջ:
Ասաց զայս, եւ Հեկտորի լուեալ ըղբանն յոյժ բերկրեցաւ,
Եւ 'ի մէջ անդր անցեալ, արգել ըղգունդըս տրովացւոց՝
Բուռն հարեալ զմիջոյ տիգին, եւ համօրէն նըստան նոքա:
Բազմեցոյց եւ զքարձաղէն աքայեցիս Ագամեմնոն.
Անդուստ եւ Աթենաս եւ Ապողոն արծաթաղեղն
Ելին նըստան, համանման հաւուց անգեղց 'ի նմանութիւն,
Ի կաղնոջն անդ բարձու սպարակիր հօրն Արամազդայ,
Զուարճացեալք 'ի մարդիկն, որ տող 'ի տող բազմէին կուռ,
Վահանօք, սաղաւարտիւք եւ նիզակօք քըմնածածան:
Որպէս սարսուռ Զեփիւռի սըփռեալ դընայ վէտ վէտ ընդ ծով
Յառաջնում սաստկակէն, եւ ընդ նովաւ մըթնին անդունդք,
Նոյն շարքն 'ի դաշտ բազմէին աքայեցւոցն եւ տրովացւոց,
Եւ Հեկտոր յերկոցունց կացեալ 'ի մէջ կողմանց ասէ.

Լուարուք ինձ, առաջնորդեանք եւ քաջազարմ աքայեցիք,
Զի խօսեցայց որ ինչ սիրտս 'ի լանջըս իմ հրամայէ ինձ:
Զըբօսանեանըն բարձրագահ ապախտ զերդմունըս մեր արար,
Եւ չարիս ընդ մեզ ածեալ նիւթէ կողմանցըս երկոցունց,
Մինչեւ կամ դուք ըզՏրոյա վանեալ կալջիք ըզբարձրամուր,
Կամ այդրէն առ ծովագնաց նաւուքդ ինքնին նըկուն լիջիք:
Սակայն ձեզ բոլոր աքեանցդ առաջնորդեար են քաջազունք.
Ի դոցունց որոյ հոգին իւր խրախուսէ կռուել ընդ իս,
Հասցէ եկեսցէ յամենեցունց այսր ախոյեան վեհ Հեկտորի:
Բայց ասեմ, եւ Արամազդ վըկայ լիցի 'նդ մեզ եւ ընդ ձեզ.
Եթէ նա սլաքաշեկ հարկանիցէ զիս պըղընձով,
Ըզզէնքըս կողոպտեալ 'ի գոգեալ նաւսն տարեալ տարցի,
Բայց տացէ զմարմինս 'ի տուն իմ զի զմեռեալս 'ի հրոյ բաժնին
Վիճակեսցեն տրոյացիք եւ ամուսինք տրովադացւոց:
Իսկ թէ ես զինքն ըսպանից եւ Ապոլոն տայցէ ինձ փառս,
Ցես ըզզէնսն տարեալ կապուտ եւ յԻլիոս տարեալ 'ի սուրբ՝
Կախեցից 'ի տաճար կորովաձիգն Ապոլոնի,
Իսկ ըզդին դարձուցից առ նաւատորմըդ գեղատախտ,
Զի զնա յուղարկեսցեն աքայեցիքըն հերապանծք,
Եւ հեղցեն իւր հողաբլուր առ լայնածիրն Հելլեսպոնտիւ,
Զի երբեմն յետածնելոցն 'ի մարդկանէն ասասցէ ոք
Ի նաւելն յոգնատախտ լաստիւ ընդ ծովըն կապուտակ.
Այն է դա գերեզման 'ի վաղընջուց վախճանելոյ,
Զոր երբեմն ուրեմն ըսպան պերճըն Հեկտոր զքաջամարտիկ:
Ասասցէ ոք զայս երբեք, եւ մի՛ անուանս իմ կորիցէ:
Զայս ասաց, եւ նոքա լուռ կարկեալ կացին բոլորեքեան.
Ամաչէին հրաժարել, եւ յանձն առնուլ երկընչէին.
Անտղան ուրեմն յարեաւ Մենելաւոս, ասէ ցնոսա
Նախատեալ թըշնամանօք, եւ դառնապէս յոգւոց հանէր.
Ո՛հ զինեւ, ո՛յ ըսպառնօղքդ, աքայուհիք՝ ոչ աքայեանք,
Բիծ 'ի մեզ առաւելն շըփեսցի այս՝ քան զծանըր ծանր,
Հեկտորի թէ 'նդդէմ ոք այժմ 'ի դանայեանց չելանիցէ:
Այլ դուք ջուր եւ հող լիջիք ամենեքին առ հասարակ
Նըստեալք աստ իւրաքանչիւր այդպէս անսիրտ չքելափառք.
Եւ զըմա ես վառեցայց 'ի զէն 'ի զարդ, իսկ յաղթութեան
Ի վերուստ առ աստուածոցն է անմահից սահմանեալ կէտ:
Բարբառեալ զայս՝ ազանէր զըսպառազէնսըն գեղեցիկ:
Քեզ յայնժամ, Մենելաւէ, դայր երեւէր վախճան կենաց
Ի ձեռսըն Հեկտորի, զի զօրագոյն էր կարի յոյժ,
Թէ վաղեալ չարգելուին ըզքեզ արքայք աքայեցւոց:
Եւ նոյն ինքն իսկ Ատրիդէս իշխանապետն Ագամեմնոն
Կալեալ զաջոյ ձեռանէն կարդայր զանուն եւ խօսեցաւ.

Խօլիս, Մենելաւէ դիւցազնասնունդ, եւ չէին ինչ պէտք
Այդըմ քեզ անմըտութեան, այլ համբերեաց՝ թէ եւ յանկամս,
Եւ մի՛ ՚նդ հենգս յառներ մըրցել ընդ քան ըզքեզ առն հըզօրի,
Ընդ Հեկտորի Պրիամեան՝ յորմէ եւ այլք իսկ զարհուրին,
Եւ Աքիլլեւս ընդ նըմա ՚ի գուպարած փառաւորագեւ
Սարսափէ պատահել, որ գեր քան զքեզ է ուժգնաւոր։
Այլ արդ երթ դու ՚ի ժամուս՝ նիստ ՚ի ջոկեր ընկերակցացդ,
Եւ դըմա յարուսցեն աքայեցիք այլ ախոյեան։
Զի թէպէտ եւ աներկիւղ է եւ անյագ ՚ի մըրցութիւն,
Մըտադիւր կարծեմ ըզծունկսըն կըրկնեսցէ, եթէ միայն
Ցամեհի մարտէն զերծցի եւ ՚ի դըժնեայ գուպարածէն։
Զայս ասաց, եւ ըզմիտս հարազատին շըրջեաց դիւցազն
Արժանի իւրով խրատուն, եւ նա լըւեալ եղեւ հնազանդ.
Ապա ծառայքն հըրճուալիցք առին ըզզէնսն յուսոց իւրոց։
Իսկ Նեստոր յարգիացիս անդըր յարեաւ եւ զայս ճառեաց.
Ո՛վ աղէտք, սուգ մեծ անշուշտ յաքայաստան հասանէ մարդ,
Գոյժ անշուշտ առցէ սաստիկ եւ ձիակիրթ ծերըն Պէլեւս,
Անուանին խորհըրդական Միրմիդոնաց ատենախօս,
Որ երբեմն ՚ի տան իւրում հարցեալ զիս յոյժ ուրախ լինէր,
Համօրէն արգիացւոց ազգի զարմից արարեալ հայց։
Զորս եթէ արդ սասանեալս ՚ի Հեկտորէ լուիցէ ՚ի սպառ,
Առ անմահսն ըզձեռըս իւր համբառնայցէ բաղում անգամ՝
Զի յանդամոցն ելեալ ոգիքն իջցեն ՚ի տուն Դըժոխոց։
Ցանկա՛րծ, հայր Արամազդ եւ Աթենաս եւ Ապոլոն,
Ցարբունս էի՝ որպէս յորժամ առ սըրավար Կելադոնիւ
Գումարտ խըմբեալ Պիլացիք ւԱրկադացիք նիզակաւորք՝
Զպարըսպօք Փիայ եւ յափն Ցարդանոսի մըղէին մարտ։
Ի նոսին Երեւթալիոն այր դիւցատիպ ել նահատակ՝
Արկեալ զէնըս զուսովքըն զարքայըն Արէիթայ,
Ըզմեծին Արէիթոու՝ զոր ՚ի կոչումն յորջորջանաց
Կափաւոր անուանէին արք եւ կանայք գեղեցկամիջք։
Քանզի ոչ աղեղամբ ուերկարաբուն կըռուէր տիգաւ,
Այլ ուռամբ երկաթակուռ՝ խորտակէր գունդըս թակակոփ։
Լիկուրգոս ըսպան ըզնա դաւով եւ ոչ թէ քաջութեամբ,
Ցանձկադոյն ուրեք ուղւոջ՝ ուր երկաթին չօգնեաց ինչ լախտ
Հերքել զկորուստն ՚ի նմանէ. զի Լիկուրգոս առձապարեալ,
Նիզակին շամփրեալ ՚ի մէջ՝ ընկէց ըզնա յերկիր յորսայս,
Եւ ըզզէնսն առ կողոպուտ, զորս ետ նըմա պղընձին Արէս,
Եւ ապա ինքն ագանէր զնոսա ՚ի կռիւս Արեայ մարտից։
Իսկ յորժամ Լիկուրգոս ՚ի տան իւրում եկն յալեւոյթ,
Սիրելւոյ պաշտօնէին ետ ըզզէնուլ Երեւթալիոյ,
Որ նորա վառեալ զինուք՝ ձայն տայր քաջաց բոլորեցուն։

Եւ նոյնս զահի հարեալ եւ ըղձալի՝ ոչ ոք իշխէր.
Սակայն զէս ոգի յանդուգն յանձնապաստան յանձին ամփոփեալս
Արդ դըրդեաց յայն գուպարած՝ զամենեցունց անուղք կըրսերս,
Եւ մարտեալ եւ ընդ նոցին, եւ եւս պարծանս քեզ Աթենաս,
Եւ տուանի զայնքան այր՝ զհաստատահարուստն եւ զանարգել,
Զի անուրի ոք զխաստապատ գընէր երկայն յայս կոյս եւ յայն:
Տայր ոք քեզ յայն լինել անս, եւ յանդգնեալ ոյժ պընդակալով,
Փոյթ ընդ փոյթ կորդակաձօձն յայնժամ Հեկտոր զխաղէր մարտի:
Իսկ 'ի ձեռն' արիագոյնքն անգամ 'ի բնաւ աքայեցիս՝
Եւ ոչ այնք յորդորամիտ դէմ Հեկտորի գնալ խիզախեն:
Զայս բամբասեալ ծերունին, եւ քններեալ յարեան անդէն.
Ցասն եկաց յոյժ կանխագոյն արանց արքայն Ագամեմնոն,
Ըղձնի յառն եկաց Տիդեանն հարըստաբուռն Դիոմեդ,
Ի վերայ սոցին Էասք 'ի սասանկանդամ վառեալք կորով,
Ընդ սոսին Իդոմենեւս եւ զինակիրն Իդոմենի
Մերիոնէս՝ զուգակառն մարդախողխողն Ենիալեայ.
Ի նոսին Եւրիպիլոս՝ Եւեմոնի պայծառ որդին,
Ել եւ Թոաս Անդրեմոնեան եւ Ոդիսեւսն աստուածազարմ.
Տենչայքն ամենեքին սոքա 'ի կռիւ վեհն Հեկտորի:
Առ սոսա դարձեալ ասպետալըն Գերենեան ասէ Նեստոր.
Արդ արկցէ վիճակ ընդ ձեզ ամենեսին՝ ում եւ ելցէ,
Զի եղիցի նա յօճան քաջասպարձիցն աքայեցւոց,
Եւ յոգի իւր ցընծասցէ՝ թէ ճողոպրեալ զերծանիցի
Ցամեհի կըռուոյն ապրեալ եւ 'ի դըժնեայ մըրցամարտէն:
Ասաց զայս, մէն մի նոքա նըշանագրեալ իւրեանց վիճակս՝
Եւ արկին 'ի զըլխանոց Ագամեմնոն Ատրիդեան:
Իսկ ամբոխըն աղաղակէր եւ համբառնայր ձեռս առ աստուածս,
Եւ այսպէս ոք ասէր, ակն 'ի յանդորր երկինըս պիշ.
Արամաղդ հայր, Էասայ կամ տուր որդւոյն Տիդեայ զվիճակն,
Եւ կամ քնքեան բազմագանձ Միկենացւոց Թագաւորին:
Զայս ասէին, եւ շարժէր Նեստոր ասպետըն Գերենեան.
Ել վիճակ 'ի կորդակէն, զոր եւ քնքեանք կամէին իսկ,
Էասայն, եւ քարոզն ածեալ յամբոխն ընդ ամենայն՝
Եցոյց զայն՝ յաջմէ սկըսեալ՝ բոլոր քաջացն աքայեցւոց.
Որոց ոչ եղեալ ծանօթ՝ իւրաքանչիւր տային հրաժեշտ:
Իսկ իբրեւ յայն ոք եհաս ընդ ամենայն շըրջեալ յամբոխն,
Որ գըծեալ զայն ընկէց 'ի սաղաւարտն՝ Էասըն պերճ,
Ձըգեաց ըղձեան, եւ նա մերձ եղեալ մատոյց եդ 'ի նըմա.
Եւ տեսեալ ըզվիճակին նա նիշ ծանեաւ, խնդաց հոգւով,
Եւ առ ոտս իւր ընկեցեալ զայն 'ի գետնին՝ ամբարձ ըղձայն.
Ի՛մ է իմ վիճակն եւ ես ցընծամ յոգիս, ով սիրելիք,
Զի ակն ունիմ ըզհեկտոր յաղթահարել ըզդիւցազարմ:

Այլ եկա՛յք, մինչեւ զանօթս ըզգեցայց ես պատերազմի,
Դուք յաղօթս առ Զըրուանեանն արքայ կացէք առ Արամազդ
Լըռելեայն յանձինըս ձեր, զի մի՛ լուիցեն տրովադացիք.
Կամ թէ նա՛ եւ յայտնապէս, զի չերկընչիմք ինչ յումեքէ։
Զի ո՛չ բըռնի ակամայ վանեսցէ զիս ոք կամակար,
Այլ եւ ոչ իսկ հըմարիւք. քանզի յուսամ թէ ոչ այնպէս
Անհըմուտ իցեմ ծընեալ ոք եւ սընեալ 'ի Սալամին։
Ասաց, կային նոքա յաղօթս առ Զըրուանեան պետն Արամազդ,
Եւ այսպէս ոք ասէր՝ ակն 'ի յանդորր երկինըս ակն.
Արամա՛զդ հայր, իշխեցող յԻդայ, սեպուհ եւ վեհապետ,
Տուր Էասայ յաղթութիւն եւ ըղչըքեղ անուն պարծանս.
Իսկ թէ սիրես եւ զՀեկտոր եւ զնորանէն ունիս խընամ,
Զօրութիւն երկոցուն նոցա եւ փառք տուր հաւասար։
Ասացին զայդ, եւ Էաս սպառազինէր 'ի պղինձ փայլուն։
Իսկ յորժամ համօրէն զամենայն զէնս արկաւ զանձամբ,
Դիմէր այնուհետեւ, որպէս Արէս սոսկալի գնայ՝
Դըրդեալ 'ի պատերազմ առ գումարտակ արանց ճակատ,
Զորս ոգեսանիչ հեռոյն թափով արկ Զըրուանեանն 'ի գուպար.
Այսպիսի ահեղն Էաս խաղաց պատուարն աքայեցւոց՝
Ժըպտելով ահագնակերպ գիմօքն, եւ ոտք իւր 'ի ներքոյ
Մեծաքայլ ընթանային, ճօճէր նիզակ երկայնաստուեր։
Ցոր հայեցեալ՝ եւ ինքեանք արգիւացիք խընդային յոյժ.
Իսկ տրովեանց ամենեցուն սաստիկ դողումն էառ զանդամս,
Եւ նորո՛ւն իսկ Հեկտորի սիրտըն թընդէր 'ի լանջըս իւր.
Այլ չըգոյր այնուհետեւ լինել զանգէտ եւ կամ դառնալ
Մըտանել յամբոխ զօրուն, զի ձայնատուր էր լեալ 'ի գոռ։
Իսկ Էաս հուպ մատեալ՝ բարձեալ զասպարըն բըրգաձեւ,
Ըղպըղընձին՝ զեօթընկաշեան, զոր Տիքիոս չինեաց նըմա
Գերագոյնն 'ի փոկահանս, որ բնակութեան տունն 'ի Հիլէ,
Նա գործեաց նըմա զասպարն ըզնըրկարէն՝ զեօթընկաշեան
Ցարջառոց 'ի պարարտից, իսկ ութերորդ պատեաց պըղինձ։
Զայն Էաս Տելամոնեան կալեալ կըրծիցն իւր առաջի՝
Մօտագոյն կաց 'ի Հեկտոր եւ սպառնալեօք բարբառեցաւ.
Արդ միայն ընդ միայն հաստատութեամբ ուսցիս, Հեկտոր,
Որպիսի առաջախումբ գըտանիցին 'ի դանայեանս
Եւս եւ յետ ռազմաբեկ առիւծասիրտն Աքիլլէսի։
Իսկ արդ նա 'ի նաւակայսըն կորընակորս եւ ծովաչուս
Նըստեալ կայ քինացեալ ընդ Ագամեմնոն ազգաց հովիւն.
Եմք եւ մեք այնպիսիք՝ որ ատոխել ընդ քեզ մարթեմք,
Եւ բազումք. այլ ըսկիզբըն արա՛ մարտի պատերազմիդ։
Եւ նըմա պատասխանի մեծըն Հեկտոր սաղաւարտաճօճ.
Մաղթեզն Էաս Տելամոնեան՝ ժողովրդոց իշխեցող,

Մի մնասցէր ընդ իս 'ի փորձ խոր ընդ մանկան ինչ տղայոցն,
Կամ կընոջ՝ որ ըղձանդէս ինչ ոչ գիտէ զպատերազմաց :
Գիտեմ ես հըմտագոյն ըզմարտակերպս եւ ըզնախճիրս,
Գիտեմ յաջ, գիտեմ յահեակ տանել բերել զվահանն սեկ,
Որ եւ ինձ իսկ ուժընդակ է զօրութիւն 'ի բըռնամարտ :
Գիտեմ եւս յարձակել յարշաւասոյր ձիոցն 'ի խաղմ,
Գիտեմ եւ կաքաւել Արեայ՝ 'ի կռիւ ռազմական :
Բայց ըզքեզ զայդպիսիդ՝ չածնեմ ինչ յանձըն հարկանել
Գաղտագողի նըկատելով, այլ ակն յայտնի լեալ դամագիտ :
Ասաց, եւ ճօճեալ ընկէց զաշտէն երկայնաստուեր,
Եւ եհար զԷասայ վահանն ահեղ զեօթնըկաշեան
Ի ծայրն վերինն երեսաց, որ ութերորդն էր ըղնդեմ.
Եւ սայրըն կարծր ընդ վեցեակս հատեալ էանց թափ ընդ պատուածս,
Այլ ընկըրկեալ կասեցաւ յարջառամորթըն յեօթներորդ :
Ապա զարդն երկայնաստուեր ձըգեաց Էաս դիւցազըննածին,
Եւ եհար ըզՊրիամեանն յասպար նորուն բոլորածիր :
Փայլակիր մըկունդըն հատ եւ ընդ վահանըն թափանցանց,
Եւ տէգն երթեալ մըխեցաւ 'ի լանջապանն ամենարուեստ,
Եւ եհերձ ընդ սրնակուշան 'ի հանդերձ զվարապանակն.
Իսկ նորա կըքեալ 'ի կոր՝ ճողոպրեցաւ սեաւ օրհասէն :
Երկոցուն միանգամայն կորզեալ ձեռօք զերկայն նիզակս,
Անկան յերկարս՝ առիւծուց շաղղակերաց հանգունատիպք,
Կամ կընճիթըն վարազուց՝ ամեհագոյն սաստկանդամից :
Պրիամեանըն գեղարդեամբն յայնժամ եհար զմէջ վահանին,
Ոչ դըծեաց գամս 'ի պըղնձին, այլ սայր նորա զալարեցաւ :
Իսկ Էաս ոստուցեալ խոցեաց զասպարն, եւ մինչ 'ի սպառ
Մըտեալ տէգն եհար ըզնա 'ի յարձակել եւ գալ խուռամ,
Եւ զուլամբն անցեալ ցըռեաց եւ ցայտեցաւ արիւնըն թուխ :
Սակայն ոչ 'ի մըրցելոյն եկաց Հեկտոր կորդակախորոխ,
Այլ յետս յետըս վերջանեալ՝ քար մի եբարձ ըստուար ձեռամբն,
Որ անկեալ կայր 'ի դաշտին, սեաւ՝ խորտաբորտ եւ մեծայաղթ,
Եւ ընկէց զայն յԷասայ վահանն ահեղ յեօթնըկաշեան
Ի պորտ անդր 'ի կըմբեայն. եւ զօղանջեաց պըղնձն ուժգին :
Յետ նորա մեծագոյն եւս այլ խըլեալ Էասայ վէմ,
Պըտուտկեալ արձակեաց՝ անհուն ուժով մըղեալ ըզնա,
Մինչ զի ջաղխեաց եւ զասպարն՝ երկանաքար բախեալ վիմովն,
Եւ զխըրուն ծունկըն լըքոյց, եւ նա յորսայս անկաւ տապաստ
Ի վահանէն հարուածեալ. բայց Ապոլոն կանգնեաց անդրէն.
Եւ ահա սուր անդէն հանեալ՝ մօտաւոր զերեար խոցոտէին,
Արամազդայ եւ մարդկան եթէ հրեշտակք չէին հասեալ,
Նուիրակապետք, մին տրովադեանց, միւսն աքայեցւոց զինազգեստից,
Երկոքեան խոհեմամիտք, Տաղթիբիոս եւ Իդէոս.

Ոյց 'ի մէջն երկոցուն կալեալ ըղցուպըն՝ խօսեցաւ
Նըւիրակն Իդէոս, խորհըրդապէտն իմաստակիր.
Մի՛ եւս այլ, սիրուն որդեակք, պատերազմեալ ոգորեցէք,
Զի սիրէ զձեզ Արամազդ ամպրոպադէզըն զերկոսեանդ,
Երկոքեին պատերազմօղք էք եւ գիտեմք ամենեքին.
Արդ հասեալ կայ եւ գիշեր, լաւ է անսալ եւ գիշերոյ:
Պատասխանի տուեալ նըմա Տելամոնեանն Էաս ասէ.
Իդէոս, Հեկտորի հրամայեցէք ըզդոյն խօսել,
Զի նա ինքն ետ ձայն քաջաց բոլորեցուն 'ի մենամարտ.
Թող յառաջէ, եւ ես քաջ հըպատակեմ որպէս եւ նայն:
Եւ նըմա պատասխանի սաղաւարտաձօձըն մեծն Հեկտոր.
Քանզի քեզ, Էաս, աստուած ետ յաղթ հասակ եւ զօրութիւն
Եւ հանճար, եւ ըռնագոյն քան զաքայեանս ես նիզակաւ,
Այժմ այսօր 'ի կըռուոյս եւ մըրցմանց դադարեսցուք,
Եւ ապա դարձեալ անդըրէն մաքառեսցուք 'ի գուպարած,
Մինչեւ աստուած ընտրեսցէ'նդ մեզ, շնորհեալ միում ըզյաղթութիւն:
Արդ հասեալ կայ եւ գիշեր, եւ գիշերոյ լաւ է անսալ,
Զի եւ դու զուարթացուսցես ըզբնաւսն 'ի նաւս աքայեցիս,
Մանաւանդ զընկերըս քո եւ զսիրելիսն որ ենն ընդ քեզ.
Ընդ սմանն եւ ես ընդ մեծ՝ Թագաւորին Պրիամոսի
Զտրովեանս ուրախ արարից եւ զտրովուհիսն երկայնաստեաս,
Որ յաղերս վասն իմ մըտցեն յաստուածեղէնն հանդիսարան:
Ե՛կ արդ ընծայս երկոքեին միմեանց շըքեղըս մատուսցուք,
Զի այսպէս ոք ասասցէ յաքայեցւոց եւ 'ի տրովեանց.
Ի հենդնոջ կացեալ սոցա փուպարեցան յոխեհաշ հեռ,
Եւ ապա 'ի սէր 'ի հաշտ միաբանեալ 'ի բաց կացին:
Զայս այսպէս բարբառեալ՝ ետ ըզսուսերն արծաթազարդ,
Մատուցեալ պատենիւքն եւ փոկակապ ընտիր գօտւովն.
Իսկ Էաս ետ ըզկամարն երեւելի յորդան կարմիր:
Եւ մեկնեալ երկոցուն, աքայեցւոց սա գնայր 'ի գունդ,
Նա յամբոխն երթայր տրովեանց, որ խընդալից ուրախ եղեն
Իբրեւ տեսին կենդանի եւ ողջանդամ եկեալ 'ի դուրս
Ի ցասմանէն Էասայ եւ յանմատոյցն ապրեալ ձեռաց.
Եւ յուսան անդր ածին՝ որք 'ի կենացն էին անյոյսք:
Իսկ 'ի միւս կուսէ զԷաս զյաղթանակաւըն զուարճացեալ՝
Բարձաղէն աքայեցիք տարան առ վեհն Ագամեմնոն:
Որ յորժամ անդր 'ի խորանսն Ատրիդեսի եղեն ժաման,
Եղեն արջառ մի նոցունց Ագամեմնոն արանց արքայն,
Արու՝ հնգեմեան, զոհ Զըրուանեան գերազօրին:
Զոր մորթեալ եւ հանդերձեալ՝ պատառեցին ողջոյն յօշ յօշ,
Եւ մանրեալ հըմտաբար եւ 'ի շամփուրսն հարըստեալ՝
Ի խորովս արկին ուշիւ, եւ զամենայն առին 'ի բաց:

Ի գործոյն երբեւ հանդէսն եւ ըղձոյշածոյն կազմեցին ,
Ճաշեցան մինչ ոչ եւս այլ նոյնչափ խորտկաց կարօտէր սիրտ :
Եւ զինաս մեծամեծար պատուելաց Թելկամքըն յաւերժիւք
Դիւցազն Ատրիդէս՝ Ագամեմնոն ամենիշխան :
Իսկ յորժամ զկերակրոց եւ զըմպելեաց հանին փափաք ,
Ալեւորն յառաջ քան զայլս ըսկիզբն արար հիւսել խորհուրդ ,
Նեստոր՝ որ եւ կանխաւ իմաստ նորա Թըւեցաւ քաջ :
Ընդ բարին կամեցեալ նոցա՝ ճառեաց յատենի անդ ·
Ատրիդէս , եւ համօրէն աքայեանց դուք իշխանազունք ,
Յոլովք մեռան ատաղքէն աքայեցիք գիսակաւորք ,
Զորոց այժմ ըզԹուխ արեանցն եհեղ Արէս սուր զձաղապախս
Զգեղահոս Սկամանդրիւ , եւ 'ի դըժոխս ոգիքն իջին :
Արդ քեզ պարտ է դուլ ընդ այգն առնել մարտին աքայեցւոց ,
Եւ մեր ժողովեալ կըրեսցուք սայլիւք այսր ըզմեռեալս
Եզամբք եւ ջորւովք , եւ հրոյ զնոսա տացուք ճարակ
Խուն մ''ի նաւացն 'ի բացէ · զի զոսկերսն այր իւրաքանչիւր
Առ որդիսն 'ի տուն տարցի , յորժամ դարձցուք հայրցն 'ի գաւառ ·
Եւ զամբան մի ամբարձցուք հասարակաց ըզխարուկաւն
Հեղեալ ակեղեալ 'ի դաշտէն · եւ առ նովաւ շինեսցուք շոյտ
Աշտարակըս բարձրամուրս , 'ի մարտից մեզ եւ նաւիներոյս ·
Եւ դըրունս 'ի նոսին հաստատակառոյցըս կանգնեսցուք ,
Զի 'նդ նոսին լինիցի ձիավարուն մեզ ճանապարհ ·
Եւ խոր եւս արտաքոյ հատցուք պարկէն փոսի մօտաւոր ,
Զի պատեալ շուրջանակի՝ խափանեսցէ զձիս եւ զամբոխն ,
Եւ մի՛ դրոհեալ խուժեսցէ յոխորտաբընԹեաց տրովացւոց խաղմ :
Այսոց , հաճոյ Թըւեցաւ Թագաւորացն ամենեցուն :
Եւ տրովեանց ժողով լինէր բարձր 'ի դըղեակն Իլիոնի ,
Ահագին՝ յոգնաշփոթ , մերձ առ դըրունսըն Պրիամու :
Անտէնովք իմաստուն խօսել կալաւ անդ ընդ նոսին ·
Լըւարուք ինձ տրովացիք , դարդանացիք եւ օգնականք ,
Զի խօսեցայց զոր հոգիս 'ի լանջըս իմ ինձ Թելադրէ :
Օ՛ն եկայք , զհեղինէ զարգիացին եւ զգոյսն ընդ իւր
Տացուք տանել Ատրիդեանց · զի այժմ անցեալ զանխաբ երդմամբք՝
Ուխտազըրուժք պատերազմիմք , յորմէ եւ ակն ինչ ոչ ունիմ
Թէ լիցի մեզ ինչ շահ՝ մինչ չեւ է մեր կատարեալ զայդ :
Նորա զայս ասացեալ եւ բազմեցաւ · յարեաւ անդէն
Դիւցազն Աղէքսանդրոս՝ այրն Հեղինեայ վարսագեղին ,
Որ նըմին պատասխանի զերազանԹալիչ խօսեցաւ բանս ·
Անտէնովք , ոչ սիրելիս ինչ զայդոսիկ ասես դու ինձ ·
Գիտես այլ եւըս քան զայդ իմանալ բան ինչ օգտաւորն :
Իսկ Թէ զայդ հաւաստեաւ եւ մըտադիւր բարբառեցար ,
Ապա դիքըն ուրեմն ինքնին 'ի քէն ըզխելըն կորուսին :

Այլ արդ ես խօսեցայց առ քաջաձի տրովադացիսդ.
Ցայս յանդիման մեծիս առեալ, զախկինն ես ոչ դարձուցից.
Իսկ ըզգոյսն, որ ինչ 'ի յարկըս մեր ածեալ իմ յԱրգոսէ,
Կամիմ տալ զամենայն, եւ յաւելուլ այլ եւս ընդասուս:
Եւ սորա զայս ասացեալ՝ դարձաւ նստաւ, յարեաւ անդէն
Դարդանեանըն Պրիամոս՝ խորհրդակցածն աստուածնման,
Որ նոցա սիրաջաբար ատենախօս եղեալ ասէ.
Ունկըն դիք ինձ տրոյացիք, դարդանեացիք դուք եւ սատարք,
Զի զոր հոգիս հրամայէ 'ի լանջս իմ ինձ՝ բարբառեցայց:
Երթայք այժմ ընդ քաղաքս՝ որպէս յառաջին՝ ընթրիս առէք,
Դիք 'ի մտի զպահպանութիւն եւ հըսկեցէք ամենեքեան:
Իդէոս ընդ առաւօտն 'ի գոգաւորսն երթիցէ նաւս,
Պատմել Ատրիդեանց՝ Ագամեմնոնի եւ Մենելայ՝
Ըզբանն Աղեքսանդրի՝ յորոյ ամենայն շարժեցաւ մարտս:
Ցուցանել առել եւ զայս բան հանճարեղ՝ թէ կամիցին,
Դադարել 'ի գոռ աղմկէս, մինչեւ այրեսցեմք ըզդիակունս.
Եւ ապա մերըստին տացուք ճակատ պատերազմաւ,
Մինչ մեկնեսցէ զմեզ աստուած եւ զյաղթանակն ումեք տացէ:
Զայս ասաց, եւ նոքա յոյժ լըսեալ հնազանդ եղեն նըմա.
Եւ ապա 'ստ զընդի զընդի առին ընթրիս 'ի ճամբարսն:
Իսկ ընդ այգն Իդէոս յարեաւ գնաց 'ի գոգեալ նաւսն,
Եւ եգիտ 'ի խորհրդեան զդանայեցիս՝ զԱրեայ մանկունս՝
Ի խելս անդ հոլովեալ լաստափայտին Ագամեմնոնի.
Եւ կացեալ յատենին բարբառեցաւ խօսուն քարոզն.
Ատրիդայք, եւ դուք համօրէն աքայեցւոց ազատաւորք,
Հրաման ետ Պրիամոս եւ այլ աւագ տրովադացիք
Պատմել, եթէ հեշտ եւ բաղձալի թըւեսցի ձեզ,
Ըզբանն Աղեքսանդրի՝ յորոյ պատճառս գըրգռեցաւ խազմ.
Ըստացուածս՝ որ միանգամ գոգեալ նաւուքն Աղեքսանդրոս
Ի Տրոյա բարձեալ եբեր, — ո՛ աւայր թէ զնայր նախ 'ի կորուստ, —
Զամենայն տալ կամի, եւ այլ ընդասուս եւս յաւելուլ.
Իսկ ըզբամբիշն հարսնացեալ մեծափառին Մենելաւի՝
Չառնու յանձըն տալ 'ի դուրս, թէպէտ եւ սաստ խրատեն տրովեանք:
Այլ եւ զայս պատուէր ետուն տալ ձեզ բան, թէ հաճեսջիք,
Դադարել 'ի գոռ կըռուոյդ մինչեւ զմեռեալըն հրոյ տացուք,
Եւ ապա դարձեալ անդրէն եկցուք 'ի մարտ պատերազմի,
Մինչ մեկնեսցէ զմեզ աստուած եւ զյաղթութիւնն ումեք տացէ:
Զայս ասաց, եւ լուռ անմռունչ կարկեալ կացին ամենեքեան.
Ապա հուսկ ուրեմն ասէ Դիոմեդէս ահեղագոռ.
Մի ոք արդ զըստացուածս ընդունիցի յԱղեքսանդրէ,
Եւ մի զՀեղինէն. մանկանց անգամ յայտ է այդոյս,
Զի վախճան մահու հասեալ կայ եւ առ կեան տրովադացւոց:

Զայս ասաց, եւ ձայն առին Աքայեցւոց որդիքն համբուռ,
Ընդ խոհական բարբանչացեալս Դիոմեդեայ ձիահրամանի:
Եւ ասէ յայնժամ արքայն Ագամեմնոն առ Իդէոս.
Իդէոս, դու քեզէն Աքայեցւոց լսես պատգամ
Զոր տան քեզ պատասխանի, հաճոյ եւ ինձ իսկ թուի այն:
Իսկ դիականցն այրելոյ չդառնամ ընդդէմ, չեմ ինչ յուրանամ.
Զի մարմնոց մեռելոցն չէ եւ չէ ժլատութիւն՝
Յետ մեռանելոյ վախճանելոցն վաղվաղ հրով հանգուցանել:
Եւ գիտասցէ զուխտս Արամազդ՝ Հերայի այրն ահագնագոռ:
Ասացեալ՝ ամբարձ ՚ի վեր ըզգաւազանն առ դիսն համայն,
Եւ Իդէոս յԻլիոս դարձաւ անդրէն ՚ի Նաւափրական:
Բազմեալ կային յատեանին Տրովադացիք եւ Դարդանեանք
Ի ժողով միահամուռ՝ ակն ՚ի դարձուածն Իդէոսի,
Որ եկն՝ եմուտ եւ զպատգամն յայտնի կացեալ ետ յատենին:
Եւ նոքա կազմեալ անդէն պատրաստէին առ երկոսեան,
Կէսք ՚ի կրել ըզդիականսն, եւ այլք ՚ի գործ մայրեւորի:
Անդուստ եւ Աքայեանք ՚ի գեղատախտ ձեռնեալ նաւուց,
Որ ՚ի կրել ըզմարմինսն, եւ որ ՚ի գործ մայրեւորին:
Արեգակն այն ինչ ծագեալ՝ լինէր ՚ի դաշտս միջամուխ,
Ելեալ ՚ի հեզասահ յանդընդախոր Ովկիանէն
Ի վեր յերկինս ձգեալ. եւ գիպէին նոքա միմեանց:
Դժուարաւ էր անդանօր ճանաչել զայր իւրաքանչիւր.
Այլ ՚ի ջուր լուացեալ յարիւնոտ աղտեղուածէն,
Եւ հեղմամբ աղբերահոս ջերմ արտասուաց բարձին ՚ի սայլս:
Սակայն մեծըն Պրիամ չթողոյր նոցա թոյլ աշխարել.
Դիզէին զդիսն ՚ի խարոյկ նոքա լռիկ սրտահառաչք,
Եւ այրեալ ՚ի հրատին՝ դարձան գնացին յԻլիոս սուրբ:
Օրինակ ըզնոյն անդուստ եւ բարձաղէն Աքայեցիք
Ըզմեռեալսն ՚ի խարոյկ սրտաբեկեալք դիզանէին,
Եւ հրալուցիկ արարեալ՝ դարձան ՚ի նաւսն գոգաձեւս:
Իսկ մինչ չեւ էր վաղորդայն, այլ գիշերի աղօտածագ,
Յայնժամ յարեաւ զխարուկաւն՝ Աքայեցւոց ընտրեալ ջոկատ,
Եւ զնովաւ գամբարան մի ամբարձին հասարակաց
Հեղեալ ըղեղեալ ՚ի դաշտէն, եւ կառուցին առ իւր պարիսպ
Եւ բըրգունս բարձրաբերձ՝ յանձանց մարտկաց եւ նաւակներոյն:
Եւ դրունս ՚ի նոսա հաստահեղոյս շինեցին՝
Զի լինիցի նոցա ՚նդ այնու ճանապարհ ձիավարուն.
Եւ խոր իմն արտաքուստ կուռ է հատին առ նովաւ փոս
Լայնալիր եւ մեծարագ, եւ կանգնեցին ցիցս ՚ի նմա:
Այսպէս յայդ վաստակէին Աքայեցիքըն հերապանծք: —
Իսկ աստուածք նստեալ առ փայլակողն Արամազդայ
Սքանչանային ընդ մեծ գործ պատենազէն Աքայեցւոց,

Եւ առա զՈ՛լիմպեայ գագաթանէն պըրկեալ զըղըլթայն ,
Եւ կախեցի բոլանդակ անեւլ ընդ օդս ըղբօսուցիկ ։
Այսչափ ես քան զդիս եւ քան զմարդիկ եմ վեհագոյն ։
Զայս ասաց , եւ նոքա պապանձեցան առ հասարակ
Ընդ ճառեալսըն պակուցեալք , զի սաստկագոյն բարբառեցաւ ։
Հուսկ ուրեմն Աթենաս ասէ մեղուակն աստուածուհին .
Ո՛վ հայր մեր , Զրոնեանեան , վեհիցըն վեհ Թագաւորաց ,
Քաջ գիտեմք եւ մեք զի քո անընկճելի է զօրութիւն ,
Այլ յոգոց ելանեմք ընդ քաջայաղթ դանայեցիս ,
Որ լըցեալ ըղճակատն չար՝ սատակեսցին վատախտաբար ։
Իսկ արդ մեք 'ի մարտէն , թէ պատուիրես , կասցուք 'ի բաց ,
Եւ խորհուրդ օգտակար տացուք եւեթ արգիւացւոց ,
Զի մի՛ սպառըսպառ կորընչիցեն 'ի քում ցասմանդ ։
Ծիծաղելով պատասխանի ետ Արամազդ ամպակուտակ .
Քաջ լեր , Պառաւափնածին , որդեակ սիրուն , զի չասեմ ինչ
Մըտադիւր 'ի սերտ սըրտէ , եւ հաշտ ընդ քեզ կամիմ լինել ։
Ասացեալ , լըծեաց 'ի կառս իւր զերիվարսն պղնձաթաթս՝
Օդապատ սըրաթռիչս եւ ոսկեբաշ վարսադիսակս .
Եւ նա ինքն ըզմարմինսն ոսկի զգեցեալ , առ ըզմըտրակն
Ոսկեհիւս՝ վայելչակազմ , եւ ամբարձաւ 'ի զոյգըս իւր ։
Մըտրակեաց խաղալ գընալ , եւ կամակար սըլանային
Ընդ միջոց ծագաց երկրի եւ աստղազարդ գընդին երկնից ։
Եւ եհաս յաղբերաբուխն Իդա՝ 'ի մայրըն գազանաց ,
Ի Գարգարն՝ ուր սըրբութեան անդք եւ բագին իւր խնկաւէտ .
Անդ կացոյց զերիվարսն մարդկան հայրն եւ աստուածոց ,
Արձակեալ 'ի կառացն եւ մէգ թաղուն եհեղ զնոքօք .
Եւ ինքն անդ լերինն 'ի գլուխ նըստաւ 'ի փառըս խայտալով ,
Ի տրովեանց քաղաք դիտակն եղեալ եւ 'ի նաւս աքայեցւոց ։
Իսկ ընթրիս առնուին աքայեցիքըն վարսագեղք
Ընդ վըրանսն ըշտապաւ , եւ վառէին այնուհետեւ ։
Եւ տրովեանքն եւս ընդ քաղաքըն յայնըմ կուռէ զինուէին 'ի գէն ։
Նըւազունք՝ այլ ոչ ընդհատ խիզախք 'ի մարտ պատերազմի ,
Առ հարկի ստիպեալքն , յորդւոց վերայ եւ 'ի կանանց ։
Բանային դրունք ամենայն եւ զօրականն ստաչէր 'ի դուրս
Հետեւակք եւ ձիավորք , եւ ահագին խուժեաց աղմուկ ։
Եւ սոքա մինչ 'ի մի վայր խուռն արարեալ հասանէին ,
Խըռնէին ասպար նիզակ եւ պղնձազրեհ քաջաց կորովս .
Խառնէին ընդ միմեանս կուռ վահանքըն կոճակեթեայք ,
Եւ շըռինդ ահաւոր ամբոխաստաստ ըլըրդէր թընդէր ,
Խառնաձայն անդէն գուժէր թառաչ եւ խրոխտ զոռումն արանց
Սատակչաց սատակելոց , հեղեղատէր երկիր արեամբ ։
Ցառաւօտին անդ պահու , մինչ գիւցականն անձր գեռ էր ,

Զերկոտասան հարկանեկէն նետք ըղկողմանս, անկանէր զօրն ։
Իսկ յորժամ յերկնից մշտակն արփաթեւեայ ակն արեւուն,
Հայրն յայնժամ զոսկեղէնան առեալ կշիռս եհան պարզեաց.
Ի նժարան՝ երկուս վիճակս արկ ըզմահուն անարթնական՝
Ըզտրովադեանց ձիավարժից եւ զպղնձազգեստ աքայեցւոց,
Եւ զմիջոյն կալեալ առնուրչ, մէտ աքայեանց եղեւ օրհասն.
Եւ վիճակն աքայեցւոց իջեալ յերկիր բազմաբերուն՝
Անդ նըստաւ, իսկ տրովադեայցն ’ի լայն երկինս վերացաւ ։
Ցնդայէ նա մեծ գոռալ եւ զշանթեալանդն ընկեց փայլակն
Ընդ ամբոխն աքայեցւոց՝ որ ’ի տեսիլն հարան յապուշ,
Եւ ահ կալաւ զաւլկագոյն զամենեսեան առ հասարակ ։
Անդ ոչ մնայր Իդոմենեւս ժուժեալ եւ ոչ Ագամեմնոն,
Ոչ երկոքին միացեալն Էասք պաշտօնատարքն Արէսի.
Նեստոր միայն Գերենեան եկաց՝ պաշտպանն աքայեցւոց,
Ոչ կամաւ, այլ զի նետաձգէր խոց եդեալ, զոր հար նետիւ
Դիւցազն Աղեքսանդրոս, այրն Հեղինեայ վարսագեղին,
Ընդ գագաթն գլխոյն՝ ուր առաջին ձիոց գիսակք
Բուսանեն ’ի կատարին, եւ անհրաժեշտ է կարեւէր ։
Առ ցաւոյն ’ի վեր վազեաց, զի էր մխեալ այրն յուղղարաջն,
Եւ թաւալ ըզպղնձածիւ անկեալ խառնեաց ըզձիս ձիանն ։
Մինչդեռ ծերն անձեալ սուսերբ խզէր ըզփոկս երիվարին,
Հեկտորեանքն անդադար հասին արագըշաւ երիվարեանք,
Ընդ խուճապն տապալեալ վարեալ զյանդուգն կառավարն՝
Ըզհեկտոր, եւ փոքր մի եւս ծերունին ’ի մահ մատնէր,
Եթէ չէր առհեղագոր Դիոմեդէս սուր նըկատեալ,
Որ ահագին ձայնարկեաց առ Ոդիսեւս բարձրեալ բարբառ.
Դիւցազնազարմդ Լայերտեան՝ բազմահնարդ Ոդիսեւս,
Յո՞ փախչիս թիկնադարձեալ իբրեւ ըզվատ ոմն յամբոխէն.
Գուցէ ոք փախըստեանդ վարսեսցէ աշտ ընդ թիկնամէջդ.
Այլ մնա, զի վանեսցուք ’ի ծերունւոյն զայրըն վայրագ ։
Ասաց՝ այլ չէգ ունկն Ոդիսեւս արի դիւցազըն վըշտաբեկեր,
Հապըշտապ անցանեալ ’ի խարազդ նաւս աքայեանց ։
Իսկ Տիդեանն միայնակն միայն ընդ նախահարկացն խառնեցաւ,
Չոգաւ եկաց առաջի երիվարաց Նելեան ծերոյն,
Եւ առ նա բարբառեալ ասաց ըզբանիցս թեւաւոր.
Աւաղիկ, ով ծերունիդ, նեղեն ըզքեզ արագ մարտիկք,
Քո լուծեալ է զօրութիւն, տաղտկալի զքեզ ծանր ալեւոյթ,
Պաշտօնեայդ՝ տկարակ, եւ երիվարքդ՝ յամրագին ։
Այլ արի զաւ մտանգամ եկ ել ’ի կառս իմ եւ տեսցես
Որպիսի տրովադեան ձիանս ընդ դաշտավայրս գիտեն հըլմաւ
Աստի եւ անդը ձեռընթեաց շահատակել եւ հալածել,
Զորս առի երբեմն ասոր յԷնէասայ՝ զմարթուչս ահից ։

Այգացիկ ըմպատաւորքըս տարցին հող, մէք զայսոսիկ
Ի արոտկեանսըն ձիամուղս արձակեսցուք, տեսցէ Հեկտոր
Թէ եւ խոյս արդեօք նիզակ մոլեգնոտ՞ յիմում ձեռին:
Զայս ասաց, չըմբոստացաւ Նեստոր տակեալըն Գերենեան:
Նեստորեանն ապա ձայնից ըմպատաւորքըն կորովիք
Գէտ առնէին՝ Սթենելոս եւ ժըրաւէրն Եւրիմեդոն·
Իսկ նոքա երկոքեան 'ի կառսն ելին Դիոմեդեայ:
Եւ Նեստոր առ 'ի ձեռին զերեսանակըն պաղպաջունս,
Եւ մըտրակեալ զերիվարսն՝ հասին անդէն մօտ 'ի Հեկտոր:
Եւ ընդդէմ զնիզակըն արար որդին Տիդեայ մեկընդդահար·
Վըրիպեալ 'ի նմանէ, եւ զկառավարն իւր արդանեակ,
Ըզզաւակըն մեծամեծին Թեբէոսի զԷնիոպեւս,
Որ զերասանս ունէր ձիոցն, եհար ընդ լանջս հուպ առ ըստեանս·
Գլորեցաւ 'ի կառացն, ընկըրկեցաւ արընթաց ձիանն,
Եւ նորա լուծաւ անդէն հոգին եւ ոյժ քաջակորով:
Ցաւ սաստիկ կառավարին ըղՀեկտորի պաշարեաց զսիրտ·
Թէպէտ թաղծեալ ընդ ընկերն՝ եթող անկեալ զայն անդանօր:
Կառավար խընդրէր հուժկու, եւ ոչ հարուստ ինչ ժամանակ
Ձեռք վարչի կարօտացան, քանզի եգիտ արագապէս
ԶԻփիտեանն Արքեպտոլեմ ըզքաջարին, զոր հան անդէն
Յերիվարան երագընթաց, եւ ետ 'ի ձեռսըն զերասանն:
Հասանէր անդ տառապումն եւ անհնարին լինէր նախճիրք,
Եւ տրովեանք յԻլիոն տաւարէին իբրեւ զգառինս,
Եթէ չէր սուր նըկատեալ հայրըն մարդկան եւ աստուածոց:
Ահագնագոռ որոտմամբ արձակեալ շանթ հրափայլական՝
Առաջի երիվարաց Դիոմեդեայ յերկիր ընկէց:
Բոց վառեցաւ ահաւոր 'ի ծըծըմբոյն բորբոքելոյ,
Եւ ձիանըն շըրտուցեալ սասանեցան ներքոյ կառացն:
Ի ձեռացըն Նեստորի փախեան փայլուն երասանակք,
Երկուցեալ եւ ինքն յոգին՝ բարբառեցաւ առ Դիոմէդ·
Ո՛ն 'ի փախուստ դարձո, Տիդեան, զսալասմբակ երիվարսդ·
Չաճանաչե՞ս 'ի միտ զի քեզ յԱրամազդայ չէք օգնութիւն·
Զըրուանեանն Արամազդ այսօր սմա փառս ընձեռէ,
Իսկ ապա միւսանգամ տացէ եւ մեզ թէ կամեսցի·
Չիք մարդոյ խափան մըտաց կալ խորհըրդոյն Արամազդայ,
Եւ ոչ յոյժ քաջազօրին, զի բըռնագոյն է մեծապէս:
Պատասխանի ետ անդէն Դիոմեդէս ահեղագոռ·
Այո քաջ իսկ յիրաւի ասացեր զայդ ամենայն, ծեր·
Սակայն այս խոցեալ սըրտիս հարկանի ցաւ դառնակըսկիծ,
Զի ճառեալ երբեմն Հեկտոր 'ի տըրովացիսըն խըրախտասցի,
Թէ Տիդեանըն փախըստեայ 'ի լաստափայտան անկաւ յինէն·
Պարծեսցի նա զայս երբեմն, յայնժամ գետնին ինձ բացցի լայն:

Թէ լցէ ոսկի հասնիկ գըլխոյքն իւրեն եւ բառնալիքն.
Եւ յուսոյ Դիոմեդեայ ձիախրոխտին սարցուք կապոյտ
Ըզզըրահն անձնարուեստ ըզլօրինեալն 'ի Հեփեստեայ։
Թէ զերկոսին զայդ կալցուք, ունկնդիր անի այնուհետեւ
Եթէ զգայգս եղանիցեն աքայեցիք 'ի որոնմոյ նաւաւն։
Զայս խորհուրդ բարբառեցաւ. արբանեկեցաւ արքայն Հերա,
Եւ շարժեալ 'ի գահուն՝ սասանեցոյց զերկայնն Ողիմպ.
Եւ անդէն առ Պոսիդոն ձայնեալ առ մեծն աստուած՝ ասէ.
Այլ, գետնադըղըրդ դու մեծազօր, ո՞չ հարկանէ
Սիրտ քո զգեղ գէթ 'ի վերայ դանայեցւոցն կորուսեալ,
Որ նուէրս 'ի Հելիկէ քեզ եւ յԷգաս մատուցանեն
Յաճախս եւ ցանկալիս. եւ դու նոցա տուր յաղթութիւն։
Զի թէ բնաւ դանայեցւոցն ձեռնտուքս յօժարեսցեմք
Վանել զտրովադեանս եւ արգելուլ զորոտաձայնն Արամազդ,
Անշուշտ նա յայնժամ նըստեալ միայն յԻդա՝ տըրտմեսցի անդ։
Հառաչեալ ուժգին արքայն Երկրասասան՝ ասէ առ նա.
Հերայդ ընդոստախօս, բան որպիսի՞ բարբառեցար.
Քա՛ւ լիցի այլոցս մեզ գխամարտել եւ մարտել
Զըրուանեանն Արամազդայ, զի բազմապատիկ է զօրութեամբ։
Զայս ընդ միմեանս օրինակ անկանէին ասէս զբանիւք։
Իսկ անդուստ 'ի նաւացն՝ 'ի պատուարէն մինչեւ 'ի փոս
Լցաւ առ հասարակ ձիովք՝ արամբք ասպարակրօք
Խռնեալք՝ զորս խուռնաւորէր համանմանն աշխոյժն Արեայ
Պրիամեանն Հեկտոր՝ որում ըզփառս ետ Արամազդ։
Եւ 'ի հուր բոցատոչոր ըզհարթադաշտեան այրեալ էր նաւս,
Եթէ չէր արքայն Հերայ 'ի միտս արկեալ Ագամեմնոնի,
Ի փութալ իւրում ինքնին, ճեպել խրախոյս տալ աքայեցւոց։
Խաղաց գընաց 'ի վրանս եւ 'ի նաւակս աքայեցւոց,
Ըզլօդիկըն ծիրանի կալեալ ըզմեծ 'ի ստուար ձեռին,
Եւ կանգնեալ 'ի մեծայաղթ նաւն Ոդիսեայ 'ի սեւաթոյր
Որ էր անդ 'ի միջոցին, ձայն ընկենուլ յայսկոյս եւ յայն,
Թէպէտ մինչ 'ի խորանսըն Էասայ Տելամոնեան,
Թէ յԱքիլլին, որոց ըզնաւսն էին ձգեալ զհարթայարմարս
Ի վերջին ծագս յարութիւն եւ 'ի բազկացն յուսացեալ կորովն,
Եւ գոչեաց 'ի ձայն սաստիկ առ դանայեանս աղաղակեալ.
Ամօ՜թ, ամօթ, արգոսացիք, կեղտ նըշաւակք, երեսք չըքնաղք.
Յո՞ խրոխտամտութիւնքս չոգան՝ յասել մերում քաջքս լինել,
Զորս երբեմն 'ի Լեմնոս ունայնապարծ յախորտայիք
Ուտելով ըզմիս տաւարաց զերկայնեղջիւր զուարակաց,
Եւ ըմպելով ըզթակոյկացն թաթաղուն լըցեալ գինեաւ,
Հարիւրոց, երկերիւրոց անձինք ընդդէմ տրովադացւոց
Ախոյեան կալ 'ի մարտի, եւ արդ միում չեմք բաւական՝

Ըզբնաւորն կուռ ըզմիմեամբք ընկէց յերկիր բազմաբեղուն :
Զոր անսեալ ցընծացաւ արանց արքայն Ագամեմնոն ,
Զի կորովի աղեղամբն ըզտրովացւոց սատակէր գունդս ,
Եւ չոգաւ եկաց առ իւր եւ զայս առ նա բարբառեցաւ .
Տեւկրոս , զլուխ սիրային , Տելամոնեանդ , իշխան ազգաց ,
Դո՛ր գոյնակէս զի՛ր ձիգ , Թերեւս եղիցես լոյս դանայեցւոց ,
Եւ քում հօր Տելամոնի՝ որ զքեզ սընոյց մանուկ մատաղ ,
Եւ Թէպէտ հարճորդի էիր՝ 'ի տուն իւր ընկալաւ .
Եւ զնիգն անդ 'ի հեռաստանին՝ աստուստ 'ի փառս բարձրացո :
Եւ ես ահա քեզ ասեմ , որ եւ 'ի լրումն հասանիցէ .
Թէ տացէ ինձ Արամազդ ասպարակիր՝ եւ Աթենաս
Ըզքաղաքըն քանդել զԻլիոնի զգեղեցկաշէն ,
Քեզ նախ յետ իմ 'ի ձեռս եղից պարգեւ մեծարանաց ,
Թէ եղէ եռոտանի , Թէ զոյգք ձիոց՝ կառօքն համերձ ,
Եւ Թէ կին՝ որ ընդ քեզ 'ի նոյն մահճին ելանիցէ :
Տուեալ պատասխանի ասէ Տեւկրոս ըզքանչելին .
Մեծափառդ Ատրիդէս , զի՞ յորդորես զինձէն փութկոտս .
Ոչ դըլեալ , ոչ դադարեալ որչափ եւ է յիս զօրութիւն .
Զի յօրէ յորմէ զնոսա մինչ յԻլիոն հալածեցաք ,
Լայնալիճ 'ի գործ արկեալ եւ նետահար սատակեմ զարս :
Նետըս ութ մինչեւ ցայժմ արձակեցի երկայնասայրս ,
Եւ բնաւք հարան 'ի մարմին ճակատամուղ պատանեկաց ,
Իսկ ըզդա հարկանել չկարեմ ըզշունըդ կատաղի :
Ասաց , եւ 'ի լարէ անտի հերձակ մի այլ առաքեաց
Ի Հեկտոր , եւ 'ի սրտին առաստանէր խոցել ըզնա :
Ի նմանէ վրիպեալ՝ ըզհրաշալին Գորգիթիոնի
ԸզՊրիամու քաջորդին արար ընդ լանջօքն նետահար ,
Զոր մայր իւր յԷսիմեայ 'ի կընութիւն ածեալ ծընաւ
Կաստիանիր գեղեցիկ՝ աստուածուհեաց մարմնովն 'ի տեղ :
Որպէս խաշխաշ 'ի պարտէզս յայնկոյս ըզգլուխ իւր արկանէ
Գլուղակըն ծանրաբեռն եւ գարնայնոյն ցօղոյն հիւթիւ ,
Նոյն կերպեաց յայնկոյս ըզգլուխըն ծանրացեալ սաղաւարտաւ :
Ի լարէ անտի միւս այլ նետըն փըլքէն փըլըթոյց Տեւկրոս
Ի Հեկտոր անդր եւ յիւրում անձկայր սրտին զնա հարկանել .
Բայց եւ յայն ժամ վրիպեաց , զի Ապողոն հան 'ի գերեւս :
Եւ սակայն զԱրքեպտողէմ , ըզՀեկտորին կառավարս քաջ
Ըզգիմեալն 'ի պատերազմ , եհար ընդ լանջօքն առ ըստինեաւ .
Գլորեցաւ 'ի կառացն , ընկըրկեցան սուր երիվարքըն ,
Եւ նորա լուծան ոգիք եւ զօրութիւն իւր անդանօր :
Ցաւ սաստիկ կառավարին ըզՀեկտորի պատեաց ըզմիտս ,
Այլ եթող ըզնա եւլքը անդ Թաղծալին յոյժ զընկերէն ,
Եւ հրաման Կեբրիոնի արար եղբօրն՝ որ մերձ կայր անդ ,

Ջերմասանեան առնուլ ձիոց, եւ նա՛ նոյն ըղձալին ոչ անկասկածեալ։
Ինք թափեալ զինքն 'ի փառաբան կառացն յերկիր ահեղ կանչեաց,
Բռնադատեալ մի ձեռամբն յափշտակեալ յարձակեցաւ
Դէպ ուղիղ 'ի Տեւկրոս՝ զոր հարկանել փափաքէր հողին։
Նա հանեալ 'ի կապարճիցն յայնժամ ըղնետն դառնաթոյն
Եւ արկեալ էր 'ի լարին, առկայն Հեկտոր կորդակափորատս
Ի լինել նորա զաղեղն, հասալ առ ուսովն ուր անջատէ
Անրակ զոսլն եւ ըղկոկրծս, եւ անհնարին է մահաբեր,
Անդ եհար խեռուտ վիմովն ըմբռնեալ յաղեղն իւր,
Եւ չլալեսնց ըղձին նորա, եւ թմբրեցաւ ձեռն 'ի դաստակին,
Եւ զլորեալ մինչեւ 'ի ծունր, եւ 'ի ձեռացն անկաւ աղեղն։
Իսկ Էաս ոչ եհար ընդ վայր ըղտապալեալն իւր հարազատ,
Այլ 'ի թիկունս ընթացեալ պարածածկեաց զինքն ասպարաւն։
Հալածեալ այնուհետեւ ըղնա երկու սիրուն ընկերք,
Մեկիստեւս որդին Եքեայ եւ Ալաստոր աստուածային,
Բարձին 'ի նաւսն զգաձեռն՝ մինչ զնա հեծէր ծանրաճաճանչ։
Մխամանդամ Ոլիմպականն 'ի տրովացիս շնչեաց կորով,
Որ ուղղորդ մինչեւ 'ի խոր փոսն հերքեցին զաքայեցիսն,
Ընդ առաջինս եւ Հեկտոր հպատէր 'ի յոյժ իւր փըքացեալ։
Որպէս բարակ զի զվարազն վայրենի եւ կամ զառիւծ
Ի թիկանց հալածելով երագ ոտիւք արշաւեալ ըզհետ՝
Խածանի յազդերսն՝ 'ի զաւակն, եւ ուշ ունի յանկարծ դարձին,
Այնպէս Հեկտոր հետամուտ էր հերապանծ աքայեցւոց
Անդադար կոտորածելով ըզվերջ նոցին փախըստականս։
Իսկ յորժամ անցին ընդ ցիցսն եւ ընդ փոս փախըստականքն,
Եւ բազումք ընդ ձեռամբ տրովադացւոց սատակեցան,
Ըզնաւեաւք յայնժամ առեալ կացին մնացին առ նաւակերտին.
Կարդային միմեանց խրախոյս, եւ առ աստուածսն ամենեսին
Մատուցեալ առաջնեալ՝ մեծաբարբառ կային յաղօթս։
Հեկտոր շուրջ շուրջանակի շրջէր ըզձիսն գեղաբաշ՝
Աչս յածելով Գորգոնեայս եւ զմարդասպանին Արեայ ժանտի։
Ցայն անսիլ՝ լուսաթեւն Հերա զթացաւ աստուածուհին,
Եւ ըզթռչունսն բանս անդէն առ Աթենաս բարբառեցաւ.
Ո՛վ աղէտ. է զու դուստր ամպարոպաբերձն Արամազդայ,
Չիցէ մեզ փոյթ ընդ կորուստ դանայեցւոց՝ գէթ 'ի վերջէ,
Որ 'ի չար հասեալ 'ի ժամ ճակատագրին՝ կորընչեցին
Միով առնըդ բըռնութեամբ, որ անհնարին մոլեգնեալ,
Հեկտորըն Պրիամեան՝ անհուն չարեաց եղեռնագործ։
Պատասխանի ետ Աթենաս նըման խաժակն աստուածուհին.
Այլ սորա քաջ իսկ զոգիսն եւ զզօրութիւնն էր կորուսեալ
Ընդ ձեռամբ արգիւացւոց սատակմամբ 'ի հայրցն երկիր,
Սակայն հայրն իմ մոլորեալ յանբարի միտս զանդգաղէ,

Ոչինչ առ նա խօսէին, չհարցանէին բնաւ եւ ոչ ինչ.
Սակայն նա խելամուտ եղեւ 'ի միտս իւր եւ ասէ.
Առ ինէ՞ այդպէս տրտուամ կայցէք, Հերա եւ Աթենաս.
Ոչ թէ յերկար ինչ աշխատ եղէք 'ի կռիւ փառաւորապարգեւ
Ի կորուստ տրովադացւոց՝ ընդ որս մըրտէք յոխս ահագինս:
Ապաքէն, որպէս եւ է ինձ զօր եւ ձեռք անպարտելիք,
Զիս որչափ եւ կայցեն յՈղիմպոս դիք՝ ոչ ընկճեսցեն.
Բայց ըզձեր յառաջագոյն կալաւ դողումն ըզզուարթ անդամս,
Ըզպատերազմ չեւ տեսեալ, չեւ զահագնայող հանդէս մարտին:
Զայս ասեմ աւասիկ, եւ այս 'ի գլուխ ելանիցէ.
Փայլատակամբք շանթահարեալք՝ ոչ եւս 'ի կառս ձեր բնաւ
Դարձջիք այսրէն յՈղիմպոս, ուր անմահիցն է երախան:
Զայս ասաց, եւ Հերա եւ Աթենաս մընչեցին լուռ.
Նըստէին առ միմեանս, մըրմնջէին տրովեանց ածիրս:
Անմռունչ կայր Աթենաս՝ բարկացեալ հօրն Արամազդայ,
Չեհան ձիկ, բայց անհնարին ունէր ընդ նա զայրացութիւն.
Իսկ Հերայի սիրտ ոչ համբէր սրտմտութեանն, այլ խօսեցաւ.
Անագորոյն Զրուանեան, բան զինչպիսի՞ դու բերան հաներ.
Քաջ գիտեմք եւ մեք զի է հարըստութիւնդ անխանելի.
Այլ 'ի գութ խանդաղատիմք քաջամարտիկ դանայեցւոց,
Որ 'ի վճարումըն վախճանի չար օրհասին կորիցեն:
Եւ արդ մեք 'ի կռուոյն, եթէ ասես, անդի արգելեալ,
Բայց խորհուրդ եւեթ արկցուք արգիացւոց 'ի պէտս իւրեանց,
Զի մի՛ մինչեւ 'ի սպառ սատակեսցին 'ի բարկութեանդ:
Արամազդ ամպրոպաբեր արար նըմա պատասխանի.
Այգուց եւս առաւել ըզԶրուանեանն ահեղազօր
Տեսջիր՝ թէ կամիցիս՝ աչերդ Հերա մեծապատիւ,
Զի կորուսցէ զբազմամարտ պատերազմօղ արգիացւոց:
Զի ոչ նախ 'ի մարտէն դադարեսցէ արին Հեկտոր,
Մինչեւ անդ առ նաւամերոյն Պելեան քաջոտնըն զարթիցէ,
Յաւուրն՝ յորում աղբեն առ նաւախելսըն մարտիցեն
Յանձուկ տագնապ տարակուսի զգլխակնացեալըն Պատրոկլիւ:
Զի հրամանք այս են կայեալք. իսկ ես ըզքէն չառնեմ ինչ փոյթ
Թէ ցասնուս ինչ, նա եւ ոչ՝ թէ 'ի սպառուած եզերս ծագաց
Ցամաքի եւ ծովու, յորում Զրուանն եւ Յապետոս
Կան նըստեալք, ոչ 'ի նըշոյլս արփիաձեան արեգական,
Ոչ 'ի սըզոխս ինչ հեշտացեալ, եւ Տարտարոս խոր ըզնոքօք.
Արդ ես, թէպէտ տարադէմ յանդըր յածեալ մաշնչեալ գնայցես,
Չառնեմ ինչ փոյթ, զի այլ չիք ուրեք քան զքեզ ինչ լըրբագոյն:
Զայս ասաց, բայց լուսածիրն չետ ինչ Հերա պատասխանի:
Իսկ յանդունդս անկաւ ծովուն արեգական փայլուն ճաճանչ,
Ըզգիշերն 'ի վերայ կենդանատուր երկրին ձըգեալ:

Այլ արկցուք արդ ըզնոյնս ըզզգուշութեան շաւիղ ըզներքս պահ,
Իսկ ընդ այդն առասպելով՝ ըստպատուղէն վառեալ կամուսիս,
Առ գովեալ նուաճմայսուցն ըզքարկածայթ զարթուցանք զառ։
Տեսէք, եթէ Տիգրանն ըսկայազօր Դիոմեդէս
Ի նաւաց դիս 'ի պարիսպն վանեցէ, թէ եւ ըզնա
Պղնձահար սասանեալ՝ ասէց կապուա արքունանեաց։
Վասնզի գեղոյ զօրութեան ցուցցէ համբերս՝ թէ ժամեցէ
Հրասերցն նիզակիս. այլ հեռ թըւի թէ՝նդ ասաչին
Անկցի վիրաւոր, եւ բարձրագունդ գեղերւ համհարդք,
Առ վասնզի յերս արեւուն. զի ո՞ առայր հեռ այնակս ըհեռեկ
Զամեծայն աւարս անհնարին, անձերպակետն եւ մեծարոյ,
Զոր օրինակ Աթենաս եւ Ապոլոն են 'ի պատուաւ,
Որպէս եւ օրս այս այժմիկ տրդեանցաց անցէ զըմբալ։
Զայս Հեկտոր խօսեցաւ, 'ի տրովացւոց պայթեաց ճայթիւն,
Որ եւ զձիսն 'ի սանձիցն արձակեցին ըզքրտնաթորս,
Եւ կապեցին սանձափոկօքն իւրաքանչիւր առ կառս իւր։
Բերէին 'ի քաղաքէն անդէուս եւ հօտըս պարարակս
Ըստախպաւ, եւ գինի պատարաստէին անուշահամ,
Եւ 'ի տանց անտի հաց, եւ քաղէին կըրկաւս ատաս։
Զոհէին եւ անմահից ըստպինաս ընտիրս եւ անարատս,
Եւ 'ի դաշտէն մինչ յերկինս զանոյշ ճենճերն հանէին հողմք.
Այլ սակայն առատաձեռն զայն երջանկափառք ոչ ընկալան,
Չհաճեցան, զի զըժտեալ չէ յոյժ էր նոցա Իլիոն սուրբ,
Եւ Պրիամոս եւ ժողովուրդ նշանաւոր Պրիամեան։
Իսկ նոքա մեծամեծս արկեալ ընդ միտ, նըստան կայեն
Ի մարտէն շաւիղս ըզգուշին 'ի բաժն հըրատս արկեալ 'ի խէս։
Օրինակ իբրև ընդ երկինս ըզլուսապերճ լուսնին ըստիւ
Երեւեալ աստեղք պայծառք, յորժամ անհողմ լինի օդն,
Եւ բնաւ ծայրքն գիտանոցք եւ բարձրաբերձ սարք եւ անտառք,
Եւ ցնցեալ պատառի յերկնաւոր արփին անվայրապէս,
Եւ աստեղք բոլոր 'ի յայս զան եւ խնդայ հովիւն 'ի միտս,
Այնչափ ընդ մէջ նաւերոյն եւ հոսանացն Քսանթոսի
Տրովացւոց լուցեալ խարոյկք երեւէին Տրոյայ հանդէպ։
Հազարք 'ի դաշտն այրէին հրատք, եւ առ միով միով ընթեր
Նըստէին յիսուն յիսուն այր առ ճաճանչ վառեալ բոցոյն։
Իսկ երիվարքն 'ի ճարակ սպիտակ գարւոյն եւ հաճարոյ
Առ կառօքըն կայեալ՝ զերեկեկաթու Այգուն մնային։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Արշաւիրք 'ի բանակին Յունաց. Ագամեմնոն ակմբեալ զպետսն՝ թելադրէ փախուստ. ընդդէմ կան Դիոմեդէս եւ Նեստոր. կարգին պաշտպանք տալոյ պատուարին։ Ի լուծանել ատենին՝ Ագամեմնոն հրաւիրէ զերիցագոյնս զօրավարացն 'ի սեղան իւր. անդ Նեստոր խրատ տայ ողոքել զԱքիլլեւս աղերսիւք եւ պարգեւօք. յանձն առնու Ագամեմնոն. առաքին 'ի հրեշտակութիւն անդր Փիւնիքս, Ոդիսեւս եւ Տելամոնեանն Էաս. զամենայն բանս նոցա մերժէ զկեցաղին անամոքելի, եւ պահէ առ իւր զՓիւնիքս՝ գնալ նովաւ հանդերձ յերկիր իւր։ Ոդիսեւս եւ Էաս դարձեալ անդրէն յետս՝ ցուցանեն զելս հրեշտակութեանն։ Խիզախ բարբառ Դիոմեդեայ։ Մեկնին 'ի վրանս իւրեանց 'ի քուն։

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԻՆՆԵՐՈՐԴ

### ՀՐԵՇՏԱԿՈՒԹԻՒՆ ԱՌ ԱՔԻԼԼԷՍ․ ԱՂԵՐՍՔ

Այսպէս տրտմեալք պահ ունէին, սակայն խուճապ աստուածա-
Էր հասեալ յաքայեցիս՝ ցրտասարսուռ. Ահին ընկեր, [ռաք
Եւ 'ի սուգ անտանելի հարեալ կային քաջք համօրէն:
Որպէս հողմք կրկին զանդունդս ձկնաւէտ յուզանեն
Հիւսիսոյ եւ Զեփիւռին, որ 'ի կողմանցն Թրակացւոց
Գան շնչէն յանկարծաթափ՝ ըղձեալ ալիքն կուտակեալ,
Միանգամայն եւ ցրնդեալ մամուռ բազում ըստ ծովն արտաքս,
Հանգոյն ցնորեալ ցրուէին աքայեցւոցն ոգիք 'ի լանջս:
Ատրեւդէս սակայն ցաւով զանձնակսկեծ սիրտ մեծաւոր՝
Երթայր գայր եւ հրաման քաղցրաձայնից տայր քարոզաց
Ցածկանէ յանուանէ յատեան կոչել զամենայն այր,
Եւ մի գոչել. եւ ինքնին ընդ առաջինսն գործէր գուն:
Բազմեցին տխուրք յատեան. անդ յոտն եկաց Ագամեմնոն
Արտասուաց հեղեալ հոսանս, իբրեւ աղբիւր Թըխահոսակ
Որ 'ի բարձր ապառաժէ զնսեմաստուեր ուղխն զեղու.
Նոյն եւ նա հեծեծագին բարբառեցաւ առ աքայեցիսն.
Ո՛վ սիրելիք, առաջնորդք աքայեցւոց, իշխանք եւ պետք,
Զրուանեանն զիս Արամազդ պաշարեաց յոյժ ծանր 'ի զղջման.
Ոխերիմն, յառաջագոյն ինձ խոստացեալ լեալ՝ ակնարկեալ
Զիլիոն ամրապարիսպ քակել բնաջինջ եւ գնալ 'ի բաց:
Իսկ այժմիկ՝ նենգող պատիրս եդեալ 'ի մտին՝ հրաման տայ ինձ
Չու ձեռս 'ի գլուխ առնել յԱրգոս յետ կորուստեան զօրու բազմի.
Այս Թերեւս հաճոյ լեալ մեծազօրին Արամազդայ,
Որ զբազում յողուանց կատարս հիմնայատակ կործան ընկէց,

Եւ արկցէ տակաւին, զի ուժգնագոյն է զօրութեամբ։
Այլ եկայք՝ զոր ասիցեմ յանձին կալջիք ամենեքեան.
Ի նաւս եղջուք փախիցուք 'ի հայրենուսն սիրուն դաշտս,
Զի այլ ոչ այսուհետեւ զլայնափողոցն առնումք Տրոյա։
Զայս ասաց, նոքա կարկեալ պապանձեցան առ հասարակ.
Եւ հարուստ մի լուռ կացեալ Թաղծեալ որդւոցն աքայեցւոց,
Հուսկ ուրեմըն Դիոմէդ ահեղագոռ զբերանն եբաց.
Ընդ քեզ նախ, Ատրիդէս, պայքարեցայց ընդ խօլացելոյդ,
Ուր օրէնն է յատենի, արքայ, եւ դու մի ցասնուր ինչ։
Զարութիւնս յառաջագոյն նախատեցեր 'ի դանայեանս՝
Վատ 'ի մարտըս զիս լինել եւ կնատագոյն բամբասելով.
Զամենայն զայդ գիտեն արգիւացւոց մանկունք եւ ծերք։
Բայց քեզ յերկուց ետ զմին կորովամիտ Զքրոնեանն Ձեռ.
Տուեալ քեզ գաւազանաւ նախապատուի կալ բոլորից,
Սակայն չետ ըզքաջութիւն՝ որ ճոխութիւն իսկ այն է մեծ։
Ա՜յսպէս ուրեմն, ով քաջ, զորդիս աքայեցւոց համարեցեր
Անարիս եւ ապիկարս 'ի կռիւ լինել՝ որպէս ասեն։
Իսկ թէ քո սիրտ է 'ի դարձ յօժարամիտ, արի գնա.
Առաջի քո ճանապարհդ, եւ առ ծովուն քեզ մերձ կան նաւք՝
Ըզկնի քո եկեալք 'ի Միկենայ յոլովախումբք։
Սակայն այլք կացցեն մնասցեն աքայեցիքըն վարսագեղունք
Մինչեւ քանդեմք ըզՏրոյա. իսկ թէ նոքին իսկ փախիցեն եւս
Ի նաւ մտեալ փախիցեն 'ի ցանկալին ըզնիկ երկիր,
Այլ ես եւ Սթենելոս՝ մարտիցուք մեք մինչեւ հասցուք
Ի վախճանն Իլիոնի. զի աստուածով այսր եկեալ կամք։
Զայս ասաց, եւ ձայն բարձին աքայեցւոց որդիք համայն՝
Ընդ խօսսըն զարմացեալք Դիոմեդեայ ձիավարժի։
Յոտըն կացեալ 'ի նոսա Նեստորն ասաց բարբառեցաւ.
Կորովի ես, Տիդեանդ, գերօրինակ 'ի պատերազմ,
Վեհագոյն եւ 'ի խորհուրդ քան զհամօրէն հասակակիցս.
Յամենայն աքայեցիս չիք ոք որ զբանդ անարգանեսցէ
Կամ ընդդէմ ինչ խօսեսցի. այլ ոչ բանիցն հասեր յաւարտ.
Որ զի եւըր պատանեակ, եւ լինէիր իսկ իմ մանուկ
Ի տիոց կըրսերագոյն. բայց հանճարեղս բարբառիս
Առ թագաւորս արգիւացւոց, քանզի զարժանն իսկ ասացեր։
Սակայն եկ, ես որ պարծիմս երիցագոյն քան զքեզ լինել,
Խօսեսցայց՝ ընդ բնաւն անցեալ, եւ մի ոք զիմ բան խոտեսցէ,
Ոչ եւ ոչ սոյն սա ինքնին Թագաւորեալն Ագամեմնոն։
Անազգի, անօրէն եւ բնաւ անտուն անյարկ է նա
Որ ընտանի ահաւոր պատերազմին ցանկանայցէ։
Այլ եկայք 'ի ժամուս հնազանդ լիցուք սեաւ գիշերոյ
Եւ ընթրիս կազմեսցուք, եւ պահանորդք իւրաքանչիւր

Զհակառակն եւտու խրատ, այլ մեծապէս քում բարկութեանդ
Անսասցեալ քո զայրըն քաղ, զոր եւ անձամբք խակ պատուեցին,
Անարգեցեր, զի շորթեալ 'ի քեզ տարար զպարգեւ նորա ։
Այլ եւ արդ առցուք խորհուրդ, մինչեւ 'ի հաշտ հաւանութեան
Ածցուք ախորժ ընծայիւք ըղձա եւ քաղցր պղքանօք ։
Եւ նորին պատասխանի արքայն արանց Ագամեմնոն ․
Զիմ վրիպանս, ով ծերունի, ոչ ստութեամբ 'ի դէմս ածեր ։
Վրիժապարտ եմ, ոչ ժխտեմ ․ արդ բազմագունդ զօրականք
Է փոխանակ այր զոր 'ի սիրտ սրտէ սիրէ Արամազդ,
Որպէս այժմ ըզսա պատուեալ՝ զաքայեցւոց կորոյս ամբոխ ։
Այլ զի յանցեայ 'ի խորհուրդս եղեռնաւորըս հրապուրեալ,
Հաշտ առնել կամիմ անդրէն, եւ փոխարէնս կըշռել անգաւ ։
Յուցից ձեզ բոլորեցունց զերեւելի զպատարագս ․
Եռոտանիս եօթն անփորձ 'ի հուր եւ տասն ոսկւոյ տաղանդ,
Եւ հրափայլ սանըս քսան, երկոտասան եւ երիվար
Գաւեղ՝ գուպարայաղթ՝ առեալ ոտիւքըն մրցանակս ։
Ոչ աղքատ ոք ապաքէն լինիցի այր այսոցիկ տէր,
Ոչ կարօտ մեծագին եւ պատուական ոսկւոյն գանձու,
Որչափ ինչ ինձ յաղթանակ սալարձեակս, եբեր ձիոյն ։
Տաց եւ եօթըն կանայս՝ հմուտս ընտիր ձեռագործաց,
Լեսբուհիս՝ զորս յորժամ ըզբարեշէնն առ. նա զԼեսբոս՝
Ընտրեալ կալայ, եւ գեղով անցանէին զկանանց զարմս ․
Ըզսոսա տաց, ընդ սոսին եւ զոր յայնժամն հանի՝ եղէ
Բրիսեայ զուստրըն, եւ երդումն երդուայց նըմա մեծ եւ ահեղ,
Զի չելի ես յանկողինսն երբեք եւ ոչ զուգեցայ ինչ
Զոր օրինակ առ մարդիկ արանց օրէնք են եւ կանանց ։
Ամենայն այդ նոյնհետայն տացի նըմա վաղվաղակի ․
Իսկ թէ զմեծն ոստան քանդել տացեն աստուածք ըզՊրիամու,
Մըտեալ լըցցէ ակաղձաւն ըզնաւն ոսկւով եւ պղընձով
Մինչդեռ զաւն եւ զաւարս բաժանիցիմք աքայեցիքս ։
Քըսան կին ընտրանաւ առցէ ինքնին 'ի տրովուհեացն,
Որ յետ Արգեանն Հեղինեայ գեղեցկագոյնքըն գտանիցին ։
Իսկ յԱրգոս աքայական եթէ հասցուք՝ 'ի սանն երկրի,
Փեսայացի ամօք ինձ եւ զոյգ ինև Որեստեայ զնա պատուեցից,
Որ 'ի ծոխ վայելչութեան անդ սընանի սիրաբորբոք ։
Են իմ անդ դըստերք երեք 'ի հոյակերտ իմ ապարանս,
Անուն՝ Քրիսոթեմիս, Լաոդիկէ, Իփիանասա,
Յոյց զոր ընտրէն սիրելի՝ տարցի առանց ինչ վարձանաց
Ի յարկսըն Պեղէւսի ․ պաշտպանականս եւ օժտեցից
Բազում յոյժ՝ որպէս չէք տուեալ ուրուք դըստեր իւրում ։
Տաց նըմա եւ եօթն աւան գեղեցկակերտ եւ բնակաւէտ,
ԶԿարդամիլէ, զԷնոպէ եւ զխոտաւէտն Իրէ 'նդ նոսա,

Եւ կայծն առաջի. յորում Աքիլլէս եկաց ափշեալ
Քնարական 'ի ձեռին, թողեալ զաթոռն յորում նստէր.
Նոյն եւ ինքն Պատրոկլոս զարգն սկսեալ յարեաւ կանգուն:
Աքիլլէս քաղցրան ընձեռան յաջոյն նոցին ձգեալ տայ.
Ողջոյն ձեզ, արք բարեկամք եկիք, — անշուշտ հարկ ինչ է մեծ, —
Որ անգամ սրտմտելոյս սիրելագոյն էք յաքայեանս:
Զայս բարբառեալ Աքիլլէսն աստուածայինն՝ մատոյց յառաջ,
Բազմեցոյց 'ի գահոյս ու'ի շատրուանօքն ծիրանիս.
Եւ անդէն՝ առ որ մերձն կայր տայ առ Պատրոկլոս.
Զմեծագոյն թակոյկն արի կառո, զաւակդ Մենիտեայ,
Զանապակըն խառնեալին եւ պատրաստեա բաժակ առ այր.
Քանզի արք սիրայօրդութք են ընդ խմելս մարդանկէ:
Զայս ասաց, եւ Պատրոկլոս լուաւ իւր քաղցր ընկերակցին.
Իսկ նա ինքն առեալ պատառաբդ մի մեծ՝ 'ի լոյս հրատին կանգնեալ՝
Զոչխարի արկ 'ի նմա զոգն, եւ զուգովալից պարարտ այծի
Եւ զընտական խոզի քամակ ըղձարպալիր գիրապարար:
Կայր ունէր Աւտոմեդոն, յօշէր դիւցազնըն Աքիլլէս,
Զորս եւ մանըր կոտորեալ՝ քաշ 'ի շամփուրսն հարկանէր:
Մենիտեանն աստուածատիպ այր լուցանէր հուր մեծագոյն.
Եւ յորժամ բորբոքեցաւ հըրատն եւ բոցըն թառամեցաւ,
Տարածեալ ըղկայծակունսն՝ արկ ըղնոցաց ըղշամփուրսն,
Եւ ցանեալ նուիրական աղ 'ի վերայ՝ բարձ 'ի նեցուկս:
Իսկ յորժամ խորովեալ թափեաց եհեղ 'ի սկաւառակս,
Առեալ բաշխէր Պատրոկլոս բազմականսն հաց 'ի սեղան
Գեղեցիկ սակառակօք, իսկ Աքիլլէս պաշտեաց ըղմիսն:
Եւ նստէր ինքն յանդիման աստուածայնոյն Ոդիսեւսի
Առ միւսով որմովն, եւ ետ հրաման իւրում ընկերակցին
Պատրոկլի զոհել դից, եւ նա զնուէրսն 'ի հուրն ընկեց.
Նոքա ձեռն արկին յընթրիսն անդ առաջի իւրեանց կազմեալ.
Իսկ զըմպելեաց եւ զկերակրոց իբրեւ հարին զփափաքս քաղցի,
Ակն 'ի Փիւնիքս արկ Այաս. դիւցազն 'ի միտ առ Ոդիսեւս,
Եւ լըցեալ զգինաւ զբաժակն՝ էարբ յարեւն Աքիլլեայ.
Ողջոյն ընդ քեզ, Աքիլլէս. 'ի չափ խահից չեմք ինչ կարօտ
Թէ 'ի վրանն Ատրեւսեան Ագամեմնոնի, թէ աստ այժմիկ:
Մերձ կան մեզ համադամք առատապէս 'ի խրախ լինել.
Բայց կերակրոց ցանկալեաց ոչ ինչ է մեզ փոյթ 'ի միտս,
Այլ եղեան ահեղ տեսեալ՝ զահի հարեալ կամք, դիւցազնատոհմ.
Զի յերկբայս կայ՝ փրկեսցի՞ն թէ 'ի կորուստ լիցին արդեօք
Գեղապատուաստ նաւացս համարեալք, թէ չըզգենուս դու զզօրութիւն:
Զի լաստեցա առընթեր եւ պարըսպին հարին բանակ
Տրոյացիքն ամբարտաւանք եւ առաւելնակ նիզակակիցք,
Խիտ առ խիտ արկեալ խարոյկս 'ի ճամբարին, եւ խորհրդանն

Ոչ ինչ այլ խափան լինել նոցա 'ի նաւսն անկանելոյ :
Եւ Զբրուանեանն Արամազդ հրամայս անդ ցուցեալ նոցա՝
Կայծակէ, եւ փըքացեալ Հեկտոր 'ի մեծ իւր զօրութիւն
Մոլեգնի ամեհաբար՝ յԱրամազդ անդրր խեղախեալ,
Անկասկեալ զարս եւ զդիս, սաստիկ հարեալ զխատապաշութեան :
Եւ մաղթէ փութով ծագել առաւօտեայն Արուսեակն,
Զի ապաժամայ ծայրակոտոր առնել ըզխելըս նաւակացն,
Եւ զնոսին աստակատուշար հրով հրրդեհել, եւ առ նոքօք
Սատակել զաքայեցս՝ ըզտապհոալեալս 'ի ծուխ մըրըկին :
Այս խոկ է խէթ անհնարին սրտաւ, զուցէ զըսպառնալիսն
Համեցեն դիք 'ի գլուխ, եւ մեզ լիցէ ճակատագիր
Կորընչել աստ 'ի Տրոյա՝ 'ի հեռաւորն Արգեայ 'ի տար :
Այլ արի, թէ յուշ որդիքն են քեզ ողբանց, թ'եւ անագան,
Պաշտպանել ըզխոցոտեալսն 'ի տրովադացւոց զօրութենէն :
Քեզ խոկ առաջ ցաւեսցէ, եւ ոչ եւս այլ ինչ զարմանոյ
Գտցի հնար՝ 'ի ժամանել չարեացն, այլ փոյթ խորհել կանխեա
Թէ զինչ 'ի դանայեանց պահեսցես զօրն եղեռնաւոր :
Ո'վ քաջ, պատուիրէր առաջէն քեզ հայրըդ Պեղեւս
Յորում աւուր 'ի Փթիոյ յըղեաց ըզքեզ առ Ագամեմնոն.
Որդեակ իմ, Աթենաս քեզ եւ Հերա, թէ կամեսցին,
Ընորհեսցեն զօրութիւն, բայց դու զոգիդ քո մեծամիտ
Սանձեսջիր 'ի լանջըս քո, զի լաւագոյն է հեզութիւն.
Ընկեա զհեռ չարանիւթ, զի առաւել զքեզ պատուեսցեն
Թէ մանկունքն նորատի, թէ ալեւորքն աքայեցւոց :
Այսպէս տայր ծերըն պատուէր, այլ մոռացեալ արարեր դու :
Բայց եւ արդ եկ դադարեա, զթախանձալից թող բարկութիւն.
Թէ ցածնուս, ընծայս տացէ Ագամեմնոն քեզ արժանիս :
Լուիցես արդ դու ինձ, եւ մի առ մի ցուցից եւ քեզ
Որ ինչ տուրս 'ի խորանին Ագամեմնոն քեզ խոստացաւ :
Եօթն անխորձ եռոտանիս 'ի հուր, եւ տասն ոսկւոյ տաղանդ,
Եւ քըսան ամանս փայլուն, եւ երիվարս երկոտասան
Հըզօրեղ՝ պարգեւատու՝ տարեալ ոտիւքըն յաղթանակս :
Որ զամ մի առեր այսոցիկ լիցէ, անչուառ չէ անքատ ոք,
Ոչ չըքաւոր 'ի մեծէ եւ պատուական զանձէ ոսկւոյն,
Որչափ ոտիւք մըրցանակս առին ձիանն Ագամեմնոնի :
Տացէ եւ եօթըն կանայս ձեռահըմուտս ընտիր գործոց,
Լեսբացիս՝ զորս յորժամ կալար զԼեսբոս գեղեցկաշէն՝
Ընտրանօք առ՝ որ գեղով զլէին ըզգարմ ազգի կանանց :
Զայսոսիկ տըւեալ՝ հանդերձ եւ զոր տարաւն յայնժամ՝ զայնէ
Բրիսանդոյշ, եւ երդմնիւ լիցի քեզ ծանր երդուեալ եւ մեծ,
Թէ իւր չէր յանկողինսն ելեալ երբեք, ոչ գիտացեալ
Որպէս ինչ առն եւ կնոջ օրէնք են կարգք եւ կրօնք, արքայ :

Այդ ամենայն նոյնժամայն մատուցի քեզ փութանակի.
Իսկ թէ զմեծն տասն քանդել ըզՊրիամեան գիւղըն տայցեն,
Մըտեալ ոսկի եւ պղընձ բարձեալ 'ի նաւդ աղխաղխեսցես
Մինչդեռ զաւարն եւ զկապուտ աքայեցիքըս բաժանիմք ։
Քըսան կին 'ի տրովադուհեաց անտի քեզէն ընտրեալ կալցես
Զառաւել գեղեցկագոյնսն յետ արգոսեանըն Հեղինեայ ։
Իսկ յԱրգոս աքայական 'ի սոյն երկրի՝ եթէ հասցուք,
Փեսայասցիս նըմա եւ զոյգ իւրն Որեստեայ պատուեսցէ զքեզ,
Որ յառատ ծաղկեալ խրախուանս սիրասընունդ զըրգի նըմին ։
Են նորա դըստերք երեք անդ յարքունիս հրաշակերտոյց,
Անուն՝ Քրիսոթեմիս, Լաւոդիկէ, Իփեանասսա.
Յոյց զոր ընտրես սիրական՝ տարցես առանց ինչ վարձանաց
Յապարանսըն Պեղեւսի. պաշտատակաւս ինքըն յաւելցէ
Ճոխագոյնըս՝ որպէս չեք դըստեր իւրում տըւեալ ուրուք ։
Տացէ քեզ եօթըն քաղաք վայելչակերտ եւ բազմամարդ,
Զենոպէ, զԿարդամիլէ, եւս եւ զԻրէ զալարաբեր,
Ըզփերէ գիւղայինն եւ զմարգագոյնըն զԱնթիա,
Զէպիա զգեղեցիկն եւ զՊեդասոսըն զայգեւէտ ։
Ծովափնեայք առ հասարակ՝ առ աւազին Պիլեայ մերձինք.
Եւ որեար խաշնաւէտ եւ նախրաւէտ նոցին բընակք,
Որ ըզքեզ մեծարեսցեն պատարագօք որպէս զաստուած,
Եւ ընդ քով գաւազանաւ հարցեն քեզ հարկս առատապէս ։
Թէ ցածնուս 'ի ցասմանէդ՝ հատուսցէ քեզ զայդ ամենայն ։
Իսկ սըրտի քում Աքիլլէս թէ անհնարին է ատելի
Ինքըն եւ ընծայք իւր, դու սակայն յայլ համօրէն աքայեցիս
Ի բեկեալըն արդահատեա 'ի բանակիս, որ իբր աստուած
Պատուեսցեն զքեզ, եւ անշուշտ առցես քեզ փառս յոյժ մեծապանծ.
Զի սպանցես արդ ըզՀեկտոր՝ որ կորուսիչ մոլեգնութեամբն
Ի վերայ վարեալ գայցէ, ոչ համեմատակ իւր խոստացեալ
Լինել զոք 'ի դանայեանց՝ զոր միանգամ այսր ածին նաւք ։
Տըւեալ նըմա պատասխանի ասէ քաջոտն Աքիլլէս.
Լայերտեան գիւցազնորմըդ Ոդիսեւս բազմահընար,
Զայդ արժան է համարձակ յայտնաբարբառ ճառել ըզբանդ՝
Որպէս եսս ինչ խմանամ եւ որպէս յանկ ելանիցէ,
Զի մի այլ ոք այլուստ նըստեալ զինեւ ճըռուողիցէք ։
Քանզի զորանց դըժոխոց հաւասար ինձ է ատելի
Այր որ այլ ինչ 'ի սըրտին թաքուցանէ եւ զայլ ասէ ։
Իսկ ես զայն խօսեցայց՝ որ ինչ թըւին ինձ բարեդէպ.
Եւ չկարծեմ զիս 'ի հաւան ածել Ատրիդն Ագամեմնոն,
Եւ ոչ այլոց դանայեանց. զի ոչ բընաւ շնորհս ինչ եղեւ
Ժուժկալելըն ընդ թըշնամիսն 'ի մարտ անդուլ հանապազօր.
Նոյն բաժին է յետնելոյն եւ որ կըռուին արիապար,

Եւ զորեարն ընդ Թեւճակաց կերթ 'ի նոցին նախանձաւորս.
Եւ Թէ մեծն Եղիսաբեթեան տացէ յաղթող նաւարկութիւն,
Ի Փթիաստան արգասաւոր 'ի յերրորդում հասից աւուր:
Ըստ ինչ է իմ զոր Թողի՝ մինչ այսր եկի վտանգաւորեալ,
Բայց եւ այլ եւս ստացուած ոսկի եւ ազնիւ շիկակարմիր
Եւ կանայս գեղեցկագօտիս եւ ալեւորական փայլուն երկաթ
Տարայց որ ինձն անկան վիճակ. իսկ ըզպարգեւս՝ այն որ ետն ինձ
Ա՛ռ անզգէն Թըշնամանօք տարաւ արքայն Ագամեմնոն
Ատրիդէսն, ում պատմեսջիր յայտ յանդիմանն զոր պատուիրեմս,
Զի եւ այլքն զայրացեն աքայեցիք 'ի բարկութիւն,
Թէ եւ զայլ 'ի դանայեանց խորամանկել ակն ունի զոք,
Մինչ լըրբութեամբ ըզգածեալ. եւ ժըպրհութեամբն ամենայնիւ
Մի եւս այլ ժըպրհեսցի արկանել յաչսն զերեսս իմ:
Բընաւ ոչ եւս 'ի խորհուրդ ընդ նմա մըտից, ոչ 'ի գործ ինչ.
Զի խաբեաց զիս եւ յանցեաւ, եւ ոչ դարձեալ ինչ միւսանգամ
Պատրեսցէ բանիւք, շատ է. եւ կորիցէ խաղաղութեամբ.
Քանզի զգօնն Արամազդ երարձ ըզխելսն սա 'ի նմանէ:
Ատեմ ես ինձ ընծայսն նոր եւ զնա ինքն յոչնչաց քերեմ.
Եւ Թէ ինձ տասնապատիկ, քսանապատիկ տացէ նոյնչափ,
Որչափ է ինչ արդ նորա, եւ Թէ ինչ այլ լիցի աւելիք.
Որչափ զնանն յՕրքոմէն, եւ 'ի Թեբէ եգիպտական,
Ուր 'ի տունսն գանձուց պահին ստացուածք բազմամըթերք,
Որում եւ դրունք են հարիւր, եւ երկերիւր ընդ մին մի արք
Անցանեն ելանեն կառօք հանդերձ ուերիվարօք.
Ոչ, Թէ եւ այնչափ ինչ տայցէ՝ որչափ աւազ է եւ փոշի,
Եւ ոչ այնպէս ինչ ըզմիտս հաճեսցէ զիմ Ագամեմնոն,
Մինչ չեւ զզառանն զըրկանացն ինձ բովանդակ տուժել վճարէ:
Եւ ըզդուստր Ատրիդէսն Ագամեմնոնի չածեմ կնութեան,
Եւ ոչ, Թէ եւ գեղով զուգապատկեսցի ընդ ոսկեակին Աստղիկ,
Եւ մեղուակն Աթենասայ գործովք մատանցըն զուգեսցի,
Ոչ առից եւ ոչ այնպէս. ընտրեսցէ զայլ ոք յաքայեցւոց
Որ նմին 'ի դէպ իցէ եւ Թագաւոր վսեմագոյն:
Զի եԹէ զիս ողջ պահեսցեն դիք եւ 'ի տուն հասանիցեմ,
Պեղեւս ինքնին 'ի կնութիւն ածցէ ինձ հարսն այնուհետեւ.
Գոն բազում աքայուհիք 'ի Հելլադա եւ 'ի Փթիա,
Դըստերք աւագաց՝ որ քաղաքաց են պահպանք.
Ի նոցունց զոր կամեցայն՝ ինձ սիրելի արարից կին:
Անդանօր իմ յոյժ վազեալ արիական անձնական սիրտ,
Ըզխօսեալ կին առնուլ եւ զամուսնին ինձ վայելուչ,
Ի վայելս ուրախ լինել ըստացուածոց ծերոյն Պեղեայ:
Զի ընդ ոգւոյս իմ փոխանակ ոչ են եւ ոչ այն ամենայն,
Զոր յԻլիոն ասեն գանձեալ 'ի մարդաշատ մայրաքաղաքն

Ատրիդեան դիւցազինն պաշտօն 'ի շնորհս իմն աւանդեալ,
Չէ պարտ սիրել քեզ ըղձս, զի մի յիմնէ սիրոյս անկցիս,
Ընդ իս լաւ էջէ քեզ ըղձըշտագնելն իմ վըշտագնել.
Հաւր ընդ իս թագաւորեա եւ զկէս պատուոյն վըճռեսցես:
Դողքս գնացեալ պատմեսցեն. կաց դու մնասցիր եւ առա նընջեա
Ի կակուղ անկողինս, եւ 'ի ծագել առաւօտուն
Խորհեսցուք թէ դառնայցեմք 'ի մերում աշխարհս, եթէ մնասցուք:
Ասաց, եւ ակնարկեաց լըռելի յօնիւքն առ Պատրոկլոս՝
Արկանել թանձր անկողինս Փիւնիքսի, զի խոկասցէն
Փութով 'ի դարձ 'ի վըրանէ անտի, սակայն Տելամոնեանն
Էաս աստուածակերպ զայս առ նոսա բարբառեցաւ.
Լայերտեան դիւցազնազարմդ Ոդիսեւս բազմահնարօղ,
Արի գնասցուք, զի մեզ աստէն ճանապարհաւ իմն ոչ թուի
Ժամանել յամէնն գործոյս, եւ պարտ է մեզ տանել ձայնով
Ըզպատգամս, թէ եւ չէ ինչ քաղցրալուր, առ դանայեանս՝
Որ զարդիս ակընկալեալ նըստին թերեւս. այլ Աքիլլէս
Վայրենի սիրտ մեծամիտ 'ի ծոց իւրում պահէ ծրարեալ.
Ամբարտաւան, եւ ոչ երեւս ինչ մըտերմաց անսէ սիրոյ՝
Զոր 'ի վեր քան զայլս զինքն առ նաւակներոյս մեծարեմք:
Անողորմ. աշաքէն 'ի սպանողէ իսկ ոք եղբօր
Կամ որդւոյ խողխողելոյ ընդունի տուգանս 'ի փըրկանս.
Եւ բազում ինչ հատուցեալ՝ 'ի քաղաքի անդ մընայ նա,
Եւ սորա՝ զփըրկանսն առեալ՝ զխըժանի սիրտն եւ միտս յախտոյս.
Սակայն քեզ՝ անողոք եւ զըժընդակ 'ի լանջս ոգի
Տընկեալ հաստատեցին դիք 'ի պատճառս աղջկան միոյ:
Իսկ այժմիկ՝ եօթն եւս այլ քեզ մատուցանեմք չըքնաղազարդս,
Եւ թող զայն՝ այլ ինչ բազում. զգեցիր եւ դու միտս ցածուն,
Ի մարդականցըդ պատկառեա, զի 'նդ գերանացըդ կամք յարկաւ
Ի սպայէն դանայեցւոց, եւ քան այլոց՝ խընդամ ունիմք
Քեզ լինել սերտ սիրելի քան զամենայն աքայեցիս:
Երագոտն Աքիլլէս պատասխանի տըւեալ ասէ.
Էաս դիւցասերունդ, Տելամոնեան, իշխանդ ազգաց,
Թըւիս ինձ զամենայն ինչ 'ի սըրտէ քումմէ խօսեալ.
Սակայն իմ ուռնու սիրտ զայրացուցմամբ քանիցս յիշեմ
Զի առ խոտանս ինչ եհաս յարգիացիս զիս Ատրիդէս
Իբր անըստ այր մի անշուք վատաբըշան անաշխարհիկ:
Այլ արիք դուք երթայք եւ դարձուցէք զհրեշտակութիւնդ.
Քանզի ոչ խորհեցայց 'ի պատերազմ արիւնայեղց,
Մինչեւ որդին Պրիամու քաջասըրտի՝ դիւցազն Հեկտոր՝
Ի խորանս եկեալ հասցէ եւ 'ի քաշտս Միրմիդոնաց
Կոտորեալ զարգիացիս, եւ արասցէ հըրկեզ ըղնաւս:
Իսկ զխմոժս վըրանաւ եւ զթըխաթոյր նաւակայս

Վեհափառդ Ատրիդէս՝ արքայդ արանց Ագամեմնոն,
Չէր արժան քեզ աղաչել ըզՊէլեւսեանն ըսքանչելի՝
Բիւր իմն ընծայս ընձեռեալ, որ եւ ինքնին իսկ շքեղանայր,
Իսկ արդ եւս առաւել տարար զնա 'ի վեհութիւն ։
Այլ անփոյթ զինքն արասցուք, եթէ գնայցէ եւ թէ կացցէ.
Եւ յայնժամ վերստին մարտնչիցէ դարձեալ 'ի ռազմ,
Մինչ դըրդեսցէ սիրտ իւր 'ի լանջս եւ յարուսցէ զինքն աստուած ։
Այլ առէք, զոր ես ասեմ ունկն դիցուք ամենեքեան.
Երթայք այժմ հանգերուք կազդուրելով ըզսիրտս ձեր
Հացիւ եւ գինւով, զի այն է ոյժ եւ զօրութիւն ։
Իսկ 'ի ծագել գեղեցիկ եւ վարդամատն Առաւօտուն՝
Առաջի նաւացն հանդիր զամբոխն եւ զկառսն հետ ընդ հետ՝
Խրախուսելով զնոսա, եւ դու ինքնին մարտիր ընդ նահատակս ։
Ասաց զայս, եւ թագաւորքն ամենեքին հաւան եղեն
Ընդ բանսն հիացեալք ձիախրոխտին Դիոմեդեայ ։
Եւ հեղեալ անդէն նուէրս՝ այր այր 'ի վրանս իւրեանց չոգան,
Եւ մտեալ ննջեցին եւ ընկալան զքնոյն պարգեւս ։

Ի նոյն դողի կայր Մենելաւ, քանզի եւ յիւր արտեւանունս
Ոչ էջ նինջ, թէ ինչ գուցէ արգիւացւոց հասցէ վտանգ,
Որ լայնալիր ասպարէս խոնաւական հատեալ վասն իւր,
Ի Տրոյա եկին հասին՝ 'ի կռիւ յանդուգն ասպատակեալ:
Խայտաբղէտ ընձենեաւ ըղթիկնաւէտ իրան իւր յաղթ
Ծածկեաւ նախ, ապա եդ 'ի գլուխն ըղսաղաւարտըն պղնձաձոյլ,
Եւ առեալ գեր ձեռամբըն բուռն հարեալ 'ի տիգաբուռնն,
Եւ գնաց զարթուցանել զեղբայր իւր զմեծ իշխանապետն
Ամենայն արգիւացւոց՝ զաստուածաբար պատուեալն յազգէն:
Եգիտ ըզնա զի զուսովքն ըզգեղեցիկ զէնսն արկանէր
Առ խելցք նաւին, եւ յոյժ հաճոյ եղեւ գալուստ նորա:
Նախ առ նա բարբառեցաւ Մենելաւոսն ահեղագոռ.
Զի՞ այդպէս, սիրելիդ, 'ի զէն վառիս. թէ կամք իցեն
Ցընկերաց յարուցանել զոք 'ի լրտեսս. այլ յոյժ խիթամ,
Գուցէ ոչ ոք քեզ յանձն առնուցու զգործըդ զայդ ըզմեծ,
Միայնիկ գէտ եւանել, ըղթըշնամեաց լրտեսել զունդ
Ընդ գիշեր անմահական, զի այր սրտեայ յոյժ պիտի ոք:
Ագամեմնոն արքայ նըմին պատասխանի տուեալ ասէ.
Պիտոյ ինձ է եւ քեզ, ով դիւցազնունդ Մենելաւոս,
Փըրկարար եւ կեցուցիչ ինչ խորհըրդոյ հանճարեղի
Զարգիւացւոց եւ զնաւաց, զի դարձան միտք Արամազդայ,
Առաւել իմն ոչ եդեալ 'ի Հեկտորեանըն հայր զոհս:
Զի չտեսի երբեք ուրեք եւ ոչ լըւայ 'ի համբաւոյ՝
Այսքանիս առըն միում գործեալ յաւուրըն աշխատանս,
Որչափ Հեկտոր սիրելին Դիոս եղեց յաքայեանցս որդս,
Ինքնորէն, ոչ զարմ սիրուն աստուածուհւոյ, ոչ աստուածոյ.
Եւ գործեաց՝ ընդ որս յերկար կարծեմ հոգալ արգիւացւոց
Եւ յաճախ, զի այնքանիս աքայեցւոց հասոյց աղուհս:
Այլ դու երթ արդ այժմիկ կոչեա զԱյաս եւ զԻդոմեն
Ընթացեալ վաղվաղ 'ի նաւսն, եւ առ Նեստոր գնացից զդիւցազն
Եւ ձեռկեցից յառնել կալ, եթէ երթալ յօժարիցէ
Ի սուրբ ջոկ պահապանացն, եւ տալ խորհուրդ ինչ եւ պատուէր:
Զի նմա յաւէտ անսայցեն, քանզի նորուն իսկ եւ որդին
Հրամատար է պարեկացն, եւ զինակիցն Իդոմենեայ
Մերիոնէս, զի եւ տոցին իսկ մանաւանդ յանձն արարաք:
Եւ նըմա պատասխանի Մենելաւոս ահեղագոռն.
Իսկ արդ զի՞նչ ինձ 'ի բանից այդպէս հրաման պատուիրանի.
Մնացից անդ ընդ նոսին, ակըն կալեալ քում գալըստեանդ,
Թէ տուեալ քաջիկ պատուէր՝ դարձեալ առ քեզ ընթանայցեմ:
Կըրկնեաց առ նա միւսանգամ արանց արքայն Ագամեմնոն.
Անդ կացջիր, գուցէ յերթին մոլորեսցուք այր յընկերէ.
Զի բազում 'ի ճամբարս տարածեալ են ճանապարհք:

Ըզտիդեանն առեալ արի նիզակակալաւ, եւ զՈդիսեւս,
Եւ զԱյաս երագափոյթ եւ զկորովին որդի Փիլեայ:
Իսկ ո՛ այր եթէ ոք եւ ըզսոսա գնացեալ կոչէր,
Եւ զԱյասն աստուածանման եւ զԹագաւորն Իդոմենեւս:
Զի սոցին ոչ մօտ կան նաւքն, այլ 'ի բացեայ յոյժ տարակաց:
Բայց թէպէտ եւ սիրելի է եւ արգոյ Մենելաւոս,
Դըսրովեցից, թէ եւ ինձ սրդողեսցիս, ոչ թաքուցից.
Զի արդ 'ի քուն կայ թողեալ զաշխատութիւն քեզ միայնում.
Այժըմ պարտ էր աշխատել առ համօրէն աւագանւոյն
Եւ աղաչել, զի հասեալ տագնապէ հարկ անհերքելի:
Եւ առ նա յաւել անդրէն արանց արքայն Ագամեմնոն.
Ա՛յլ ուրեք, ո՛վ ծերունիդ, յորդորէի զքեզ եւ բասրել,
Զի բազում ա՛յն է որ հեղգայ, ձեռն ոչ կամի մխել 'ի գործ,
Ոչ առ տաղտուկ վատութեան եւ կամ մտաց ինչ խոլութեամբ,
Այլ յիս աչս ունի զակն, եւ մնայ խթանս ակնարկելոյ:
Իսկ այժմիկ՝ կանխեալ քան զիս յարուցեալ եկն առ իս եհաս,
Եւ ես զնոքեն առաքեցի փութալ ձայնել զորս դու խնդրեսդ:
Այլ երթիցուք, եւ զնոսին ընդ ցայգապահսն գտանիցեմք
Առաջի դրանցն ուր ետու նոցա պատուէր գնալ ժողովել:
Եւ նըմա պատասխանի Նեստոր ասպետըն Գերենեան.
Արդ ուրեմն ոչ ոք նըմա յորդորեցուցս ցասնուցու,
Եւ թէ տայ խրատս ումեք եւ հրաման՝ ո՛չ ոք հեստեսցէ:
Զայս ասացեալ առ ըզգեցաւ շուրջ ըզլանջքն ըզպատմուճանն,
Եւ կապեաց ընդ մաքուր թաթիւքն ըզսօրեխսըն վայելուչ,
Եւ զանձամբքն ձգամանդեաց ըզպատատոնըն կարմրերփեան
Ըզկրրկնակն եւ լայնատարր՝ յոր աղուամաղ ծաղկէր զանգուր.
Ա՛ռ եւ զկարծըր նիզակն 'ի սայրասուր սրբեալ պղնձով,
Եւ խաղաց գընաց 'ի նաւս աքայեցւոց զինազգեստից:
Առաջ նախ զՈդիսեւս՝ զԱրամազդայն զուգահանճար
Ձայնեալ զարթոյց 'ի քընոյն Նեստոր ասպետըն Գերենեան.
Եւ հասեալ վանդըն բախեաց վաղվաղակի զնորա զպայուսան,
Եւ նա ել 'ի խորանէն եւ առ նոսա բարբառեցաւ.
« Զի՞ այդպէս ընդ նաւակայս շըրջիք միայն 'ի ճամբարս
Ըզգիշերս անմահական. զի՞նչ այդ եղեն պէտք կարեւոր:
Պատասխանի ետ նըմա Նեստոր ասպետըն Գերենեան.
Դիւցազարմ Լայերտածին ամենահնարդ Ոդիսեւս,
Մի՛ ցասնուր, զի այսպիսի հաս կըլաւ ցաւ զաքայեցիս:
Այլ արի՛ զհետ զի եւ զա՛յլ ոք զարթուսցուք ում անկն իցէ
Մըտանել 'ի խորհուրդ, փախչե՞լ արժան է թէ կըռուել:
Զայս ասաց, եւ Ոդիսեւս լիահանճար դարձեալ 'ի վրանն՝
Արկ զուսովքն ըզնըրկարէն վահանն եւ ել գնաց ընդ նոսա:
Առ Տիդեանըն չոգան Դիոմեդէս զոր եւ գըտին

Թէ գուցէ Թըշնամեացըն մտանիցեմք յայգն եւ 'ի խաղ։
Զայս ասացեալ անց ընդ փոսն, եւ 'ի խանդաթ անկեալ գնացին
Թագաւորքն արգիւացւոց որք 'ի խորհուրդ հրաւիրեցան։
Ընդ նոսին գնաց Մերիոն եւ Նեստորի որդին շքեղ,
Զի նոքին իսկ կոչէին զաւ ընդ իւրեանս առնուլ խորհուրդ։
Ըստ պարկէն փոսին անցեալ՝ հոգան նըստան 'ի սուրբ վայրի,
Ուր յանկելոց դիականց զաղտապէտնին երեւէր ցինչ.
Ուստի էր անդրէն դարձեալ ըսկայաղօր արին Հեկտոր,
Սատակեալ զարգիւացիս՝ մինչեւ գիշեր եկեալ պատեաց։
Անդանօր 'ի նիստ եղեալ՝ բան առ միմեանս խօսէին,
Եւ ձայնիցն ըսկիզբն արար Նեստոր ասպետըն Գերենեան.
Ո՞չ ոք այր, ով սիրելիք, յանձնապաստան խրախուսեսցէ
Ելանել գնալ 'ի ձամբար տրովադացւոցըն մեծանձանց,
Թէ ուրեք եւ յաստեացն ըմբռնիցէ վերջակաց զոք,
Կամ թէ զրոյց ինչ ուրեք 'ի տրովացւոց ուսանիցի,
Զորոց զամ մի խորհեսցին յերաստ իւրեանց. յինչ միտս իցեն.
Ա՞նդ մնալ հուպ առ նաւուքս 'ի հեռաստանն, եթէ դարձեալ
Ի քաղաք անդրէն դարձցին յետ հարուածոց աքայեցւոցս։
Զայս ամենայն լուիցէ թերեւս եւ ողջանդամ առ մեզ դարձցի,
Եւ եղիցին ընդ երկնաւորս նորա փառք պարծանաց մեծ
Ցընդհանուրս 'ի մարդիկ, եւ պերճ պարգեւք եղիցին նորա։
Զի որ նաւաց միանգամ իշխանքըն իցեն աւագորեար,
Մէն մի այր իւրաքանչիւր տացէն նըմա մաքի մի սեաւ՝
Բուծ մ' 'ի ստինսն, առ որում ոչ է համեմատ ինչ 'ի ստացուածս,
Եւ ցանկորդ 'ի խրախճանս եւ 'ի խրախունս կացցէ մերձ։
Զայս ասաց, եւ լուռ կարկեալ կացին նոքա բոլորեքեան,
Բայց խօսեցաւ առ նոսա Դիոմեդէս ահեղագոռ.
Նեստոր, զիս յորդորէն սիրտ եւ աշխոյժք արիական
Մըտանել 'ի բանակետղ հուպ եղելոցըս Թըշնամեաց՝
Տրովացւոց. իսկ թէ եւ այլ ոք այր ընդ իս ելանիցէ,
Առաւել հեշտալի եղիցի այն եւ 'ի խրախոյս։
Զի յերկուց զօրութիւն՝ այր քան զընկեր ձեռնատուութեան
Որ ինչ շահն իցէ, իսկ մին, թէպէտ եւ այր խորհրդական,
Հեզգասիրտ է սակայն, եւ իմացուածք սըրտին նիհար։
Զայս ասաց. Դիոմեդեայ զհետ կամէին գնալ ոչ սակաւք.
Կամէին Արիսի պաշտօնեայքըն Էաք կըրկին,
Կամէր Մերիոնէս, ուժգին կամէր Նեստորեան ձեռ,
Կամէր եւ Ատրորդին Մենէլաւոս նիզակաւոր,
Կամէր ժուժկալըն Ոդիսեւս 'ի տրովացւոց մըխել ամբոխ,
Քանզի միշտ սիրտն 'ի փորի իւրում յանդուգըն խիզախէր։
Ընդ սոսա խօսեցաւ արանց արքայն Ագամեմնոն.
Ցիդեան դու Դիոմեդէս, անձին իմոյ սիրտ սիրեցեալ,

Խընդայր ընդ հաւն Ոդիսևս եւ աղերսէր առ Աթենաս.
Լուր ինձ, դուստր Արամազդայ վահանակրին, որ կաս առ իս
Յամէնայն մըշտա յարաժամ, եւ չէ խըլըլեալ 'ի քէն զանխուլ.
Զարդիս իսկ մանաւանդ սիրեա դարձեալ զիս, Աթենաս,
Եւ շնորհեա մեզ բարեփառս անդրէն 'ի նաւսն դարձ առնել
Գործ ուժգին վըճարեալ, որ տրովացւոց լինիցի վիշտ:
Յետ նորա աղաղակեաց Դիոմեդէս ահեղագոռ.
Լուր եւ ինձ այժմիկ, դուստր անվանելի Արամազդեան,
Եկ ընդ իս՝ որպէս ընդ հօրս աստուածազարմին Տիդէոսի
Ի Թեբէ յորժամ հրեշտակ յաքայեցւոց գնաց չոգաւ,
Թողեալ առ Ասոպայ զպղնձազէն աքայեցիս:
Եւ նա բան խաղաղութեան անդըր տանէր Կադմեանցւոց,
Այլ յանդրէն դարձին ահեղ անհրի գործեան հնարաւորեաց
Ընդ քեզ մեհեգ աստուածուհի, մինչ մըտադիւր առ նոյ կայիր:
Նոյն եւ արդ յորդորեալ առ իս մնասջիր եւ պահեա զիս,
Եւ ես քեզ զոհեմ երինջ մի տարեւոր լայնաճակատ,
Եւ անմուզ՝ զոր ընդ լըծով չէած երբեք մածեալ ուրուք.
Զայն ես քեզ զոհեցից՝ զեղջերսն ոսկւով օծեալ համակ:
Զայս աղօթելս մատուցեալ Պալլաս նոցա լուաւ Աթենաս,
Եւ ապա յետ աղերսեացն առ մեծին դուստր Արամազդայ՝
Խաղացին գնացին դոքա առիւծք կըրկին ընդ սեաւ գիշերն,
Ընդ նախճիրս, ընդ դիակունս, 'ի զէնս, յարիւն թաթաւեալս:
Բայց եւ ոչ զարի տրովեանս եթող Հեկտոր 'ի քուն լինել,
Այլ 'ի մի կոչեաց գումար զազատանին համօրէն
Որ դք էինն առաջնորդք եւ զօրագլուխք տրովադացւոց.
Յորոց զաւլ հոլանել՝ խորհուրդ ուշիմ զայս հանդերձէր.
Ո՞վ դք գործ զայս խոստացեալ եւ 'ի կատար ինձ հասուսցէ
Ընդ մեծի պարգեւաց՝ որ շատ լիցի նըմին 'ի վարձ:
Զի տաց կառս եւ զոյգս երկձի պերճապարանոց երիվարաց
Որ ինչ զամ մի յաքայեանց գըտցին յերագ նաւս ընտրականք,
Որ իշխէ դք մերձանալ, — եւ փառս անձին վայելեսցէ, —
Հաւաս երթալ մինչ 'ի սըրընթաց մատչել քաջախեան եւ լըրտեսել,
Թէ 'ի պահ ըզգուշութեան կայցեն երագ նաւքն իբր յառաջ,
Թէ արդեօք, ընդ մեր ձեռս եղեալ նըկուն աքայեցիք,
Փախըստեան առնուն 'ի մէջ իւրեանց խորհուրդ, եւ ոչ կամին
Կալ ըզգոյշս լինել 'ի պահ՝ խոնջ ճըգնութեամբքն պարտասեալք:
Զայս ասաց, եւ նոքա լռին մնան համրացեալ բոլորեքեան:
Դոլոն անձն 'ի տրովեանս անուն որդի էր Եւմեդեայ
Դիւցախօսըն նուիրակի. այր ճոխ ոսկւոյ եւ պղընձոյ տէր,
Տըգեղ տեսակաւ, սակայն ոտիւք թեթեւընթաց,
Եւ ինքն եւեթ ուստր 'ի մէջ հընգեցունց քերց հարազատաց:
Սա յայնժամ առ տրովացիսն եւ առ Հեկտոր խօսեցաւ անդ.

Կամ զեղնորթ կամ զնապաստակ վանկեն անդուլ աղմկեալ ըղձէա
Ընդ վայր մի մայրաստա, եւ նա՛ աղօչէին բարձեալ վարդի,
Սոյնգունակ ըղձա Տիդեանն եւ Ոդիսեւս քաղաքաւէր
Ի զօրուէն 'ի բաց կլորեալ՝ 'ի կիրթ անձկեալ հալածեցն ։
Իսկ իբրեւ մերձ էր խառնիլ 'ի պահնակաց անդրր ջոկաա
Դէմ 'ի նաւաւըն կոյս եղեալ, յայնժամ խրախոյս արկ Աթենաս
Ի Տիդեանն, որպէս զի մի յաքայեանց ոք զինազգեստից
Պարծեսցի կանխեալ հարեալ ըղձա եւ ինքն երկրորդ գայցէ ։
Եւ նիզակաւն յարձակեալ կարգաց արքին Դիոմեդէս ․
Կաց մինս, թէ ոչ՝ հասից քեզ գեղարդեաւս, եւ ոչ կարծեմ
Քեզ յերկար ապրել յիմոյ ձեռաքն 'ի չար աստուածմանէ ։
Ասաց, եւ զմըկանունս ընկէց կամաւ յաշմէն վըրէպ,
Եւ 'ի վերուստ աջ ուսոյն ողորկ բըխին սայրասուր աղաք
Անց 'ի գետին ցցեցաւ ․ իսկ նա եկաց զահի հարեալ,
Թոթովեալ, — եւ կափկափիւն զայր զատամամբքն 'ի բերանէն, —
Մահագէմ 'ի զարհուրմանցն ․ հասեալ սոցա հեւհեւալով
Բուռն հարին ըղջաստակացն ․ եւ նա լալեօք բարբառեցաւ ․
Ո՛չ կալայք, եւ ես ինձէն արարից զանձն իմ գրաւական ․
Է 'ի տան պղնձին, ոսկի, նա եւ երկաթ արուեստագործ ․
Ձեզ հայր իմ 'ի նոցանէ պարգեւեսցէ փրկանս անհուն,
Ողջանդամ զիս թէ լուիցէ յաքայախումբ նաւատորմիղ ։
Հանճարեղն Ոդիսեւս պատասխանի տուեալ ասաց ․
Քա՛ջ լեր, եւ մի՛ մահուն ինչ քեզ 'ի միտ անկցին ցընորք ․
Այլ եկ ծն ասա ցիս զայս, եւ պատմեսջիր ճշմարտութեամբ ․
Ընդ՞ այդպէս 'ի բանակէդ 'ի նաւատորմն երթաս միակ
Ընդ աղջամուղջ գիշերիս, մինչ այլք նընջեն մահկանացուք ։
Մի՞ յաւա՞ր ինչ 'ի կապուտ մեռելակոյտ վիրաւորաց,
Թէ Հեկտոր յղեաց ըզքեզ գէտ եւ լըրտես ամենայնի
Առ խորամէջ նաւեկներոյն, եւ կամ դըրդեաց ըզքեզ քո միտք ։
Եւ Դոլոն պատասխանի, եւ գողդողին անդամք նորա ․
Ի բազում եղեան ըղձիւք իմ հրապուրեալ տարաւ Հեկտոր,
Որ զշըքնաղ Պելիածնին սալասըմբակ երիվարեանն
Ակնարկեաց ինձ պարգեւել եւ զպղընձանիւ կառսն նորուն,
Եւ հրաման ետ ինձ գընալ ընդ թուխ գիշեր թեթեւաձեմ,
Գալ մօտել յարս ոսոխըխմս եւ լըրտեսել 'ի նոցանէ,
Թէ կայցէ՞, որպէս յառաջն, երագ նաւացըդ պահ պատրաստ,
Թէ գուցէ վըկանդեալք եւ վատթարեալք ընդ մեր ձեռամբ՝
Խորհեցիք 'ի փախուստ 'ի ձեր միջի, եւ չկամիցիք
Պահ ունել ըզցայգութեամբս, 'ի խիստ ճըգանցըդ տաժանմանց ։
Ժըպտեալ ընդ այն Ոդիսեւս հանճարեղն՝ կըրկնեաց անդրէն ․
Ի պարգեւս ահագինս ապաքէն միտք քո հայէին
Ցերիվարսն Էակիդեայ գոռ մարտողի, զի անհնարինք

Են արանց մահկանացուաց 'ի նուաճել եւ հեծանել
Այլ ումեք բայց յԱքիլլեայ՝ զոր մայր ծնեալ անմահացու։
Այլ եկ ծն ասա ցիս զայս եւ պատմեսջիր ստուգիւ ճշգրտիւ.
Ո՞ւր թողեր այժմիկ 'ի գալդ այդր ըզհեկաւր զհովիւն ազանց,
Ո՞ւր նորա դընին զէնք արխաականք, ո՞ւր երիվարք,
Եւ այլոց առավաղագացելոցն ո՞րպէս կցեն պահք եւ խորանք,
Զի՞նչ կցեն 'ի միջի նոցա խորհուրդք. կա՞լ առ նաւուքս,
Եւ մնալ անդ 'ի բացի ցանկանայցեն, եթէ դարձցեն
Վերստին 'ի քաղաքն՝ յաղթահարեալ զաքայեցիս։
Յաւել ասել ընդ նմին Եւմեդեայ որդին Դոլոն.
Զայդ ամենայն եւ առ քեզ ճշմարտագոյնս զրուցեցից։
Հեկտոր՝ ընդ այնոսիկ որ ոյք եւ են առաջնակալք՝
Առ շիրմին Իլոսի աստուածայնոյ խորհուրդ առնու
Մեկուսի յաղմկէ. իսկ ըզպահնակս որ հարցանես,
Եւ ոչ մի ոք ընտրեալ պահէն ըզգօրն ըզգուշութեամբ։
Իսկ որ զամ մի տրովացւոցն են հրոյ խարոյկք, ոյց է իսկ հարկ,
Արթուն կան եւ ըսկեն, եւ յորդորեն զիրեարս 'ի պահ։
Բայց սակայն բազմաժողով նիզակակիցք անկեալ ննջեն,
Արտաքեալ զպահպանութիւնն 'ի տրովացիս անդր ապաստան.
Զի չեն նոցա առընթեր նստեալ մանկունք եւ ոչ կանայք։
Պատասխանի Ոդիսեւս հանճարաշատ տուեալ ասէ.
Իսկ զիա՞րդ. խառն ընդ տրովացիս ձիամարտիկս 'ի քուն կայցեն,
Թէ ուրեք ուշողք. պատմեա ինձ զայս զի գիտացից։
Պատասխանի ետ նմին Դոլոն որդին Եւմեդեայ.
Արդ եւ զայդ ամենայն ասացից յոյժ ըստուգութեամբ։
Առ ծովուն Կարիացիք եւ Պէոնեանք կորաղեղունք
Եւ Լելեգք եւ Կաւկոնք եւ դիւցազնարմն Պեղասգեանք.
Առ Թիմբրեաւ վիճակեցան Լիկիացիք, Միւսացիք խրոխտք,
Փռիւգացիքն երիվարողք եւ Մէոնեանք ձիամարտիկք։
Այլ զիս զի՞ է հարցանել զայս ամենայն մի՛ առ միոջէ.
Զի մտանել թէ ցանկայք 'ի տրովացւոցն բազմամբոխ,
Թրակացիք են աւանիկ ուրոյն նորեկք, վերջինք քան զայլս,
Եւ 'ի նոսին թագաւոր Հռեսոս որդի Էիոնեայ։
Զերիվարսն իւր տեսի պանծալագեղ եւ մեծայաղթ,
Քան ըզձիւն ճերմակագոյն, եւ արշաւանքն հանգոյն հողմոց,
Եւ կառք իւր ոսկւով եւ արծաթով արձնապաճոյճ.
Եւ զէնք իւր ոսկեղէնք, մեծ եւ ահեղ հրաշատեսիլք,
Որովք եկըն վառեալ, զոր ոչ արանց մահկանացուաց
Արժ է կրել, այլ միայն անմահից դիցն յաւերժ էից։
Այլ արդ զիս տարայք արկէք 'ի սրընթացիկ ձեր նաւատորմ,
Կամ կապեալ զիս 'ի կապանըս կարծրագոյնս՝ թողէք աստէն,
Մինչեւ դարձ արարեալ այսրէն՝ ըզփորձ իմ առնուցուք,

Թէ լսէ իմ զըբօսայգն տատանեալ ձեզ, եթէ ինչ ոչ։
Հայեցեալ 'ի նա ակնդէտ աչաց ասէ Դիոմէդ քաջ.
Մի՛ դու ինձ ըղձախօսեր, Դոլոն, ածեր ինչ ըղձըրասու՝
Գամ մ՛ 'ի ձեռըս մեր անկեալ, թէ եւ բարեաց եղեալ գուշակ։
Զի թէ այժըմ փըրկեսցուք ըղքեզ եւ կամ թողցուք ազատ,
Եկեսցես անշուշտ ապա դարձեալ 'ի նաւս աքայեցւոց,
Կամ 'ի դէտ հետազօտի, կամ ախոյեան՝ կանգնել 'ի մարտ։
Իսկ 'ի ձեռն իմ սատակեալ թէ յարեւէդ անկանիցիս,
Ոչ ուրեք այնուհետեւ արգելացւոց լեցիս 'ի խոչ։
Ասաց. եւ նա մինչ դեռ ըղձեան ըստաւար արկեալ 'ի կզակն
Համբերձեալ էր պաղատել, զխաղակաւորն ամբարձեալ սա
Մըխեաց 'ի պարանոցն եւ զերկոսին ներարգանն խըզեաց.
Ի խօսելն անդ տակաւին՝ կառափն 'ի հող թաւալեցաւ։
Առին բարձին 'ի գըլխոյն ըղսաղաւարտն կըռնգմենի,
Զգայլենին եւ զաղեղն 'ի ձիգ ձողիւ, եւ զտէգն երկայն.
Զորս գիւցազն Ոդիսեւս աւարաքն Աթենասայ
Կարկառեալ ձեռամբն 'ի վեր եւ ուխտ եղեալ բարբառեցաւ.
Խընդա սոքօք, դիցանոյշ, զի յանմահից բնակարեցունց
Առ քեզ յՈ՛լիմպ նախ կարդասցուք. այլ յուղարկեա՛ յաւել դու զմեզ
Ցերիվարսն եւ 'ի խորանս արք արանցն Թրակեցւոց։
Արդ նա զայս ձայն արձակեալ եւ ամբարձեալ 'ի բարձանց
Արկ ըղնաս զմոռչայիւ. եւ եդ նըշան երեւելի,
Համաքեալ եղեգունս եւ զմոշենի դալար կողերս,
Մի՛ վրիպել 'ի դարձին ընդ մութ գիշերն երագագոյնց։
Եւ ինքեանք գնային յառաջ ընդ զէնս, ընդ թուխ արեան ձաղաղս,
Եւ ձեռով երթեալ հասին 'ի Թրակացի արանց Ջոլերն
Որ քունեքին խոնջ եւ վաստակք, եւ զէնք նոցին գեղեցկաշուք
Առ նոքօք կային յերկիր վայելչապէս 'ի կարգս երիս,
Եւ առ մին միում նոցա զոյգք զոյգք 'ի լուծս երիվարաց։
Հռեսոս ննջէր 'ի միջին, եւ երիվարքն երագք առ իւր
Ըզեզրթանց չըրջապատեն կառաց փոկովք կային կապեալ։
Ըզնա նախ Ոդիսեւսի տեսեալ եցոյց Դիոմեդեայ.
Ահա քեզ, Դիոմեդէս, այրն եւ ահա քեզ երիվարքն
Ի Դոլոնէ մեզ պատմեալք՝ զոր արդ իսկ մեք փողոտեցաք։
Համայս եկ ցոյց զարութիւն ըզքաջութեանդ, եւ չէ իսկ պարտ
Քեզ անգործ կալ զինուքդ. աղէ դու լոյծ ինձ զերիվարսդ,
Եւ կամ զարսդ սատակեա, եւ զձիոցն ես արարից փոյթ։
Ընդ բանին աժխոյժս 'ի նա շընչեաց խաժակն Աթենաս.
Կոտորէր յաջ եւ յահեակ, եւ ել նոցին դըժնէ խուռնչիւն
Ի խողխողել սուսերին, եւ կարմրանայր գետինն արեամբ։
Որպէս առիւծ յանտէրունչ 'ի խաշնարօտ հինահարեալ
Ցայծեաց հօտանս կամ յօդեաց խոյանայցէ չարամտաբար,

Այսպէս յարգոյն Թրակացիս խաղայր գնդայր որդին Տիդեայ,
Մինչեւ սպան երկոտասանս. իսկ Ոդիսեւս ըզգօնամիտ,
Զոր Տիդեանըն միանգամ հատանել սուսերըն հարկանէր զոք՝
Զայն Ոդիսեայ յետուստ զոտիցն առեալ ձգէր 'ի բաց.
Զայս ունէր 'ի կուրծս արարեալ, զի երիվարըքըն գեղաբաշխ
Հեշտաբար անցանիցեն, եւ մի՛ յոգիսըն սոսկասցեն
Կոխելով ըզդիականսն՝ որոց չէին ինչ գեռ սովոր։
Բայց եկեալ որդւոյն Տիդեայ 'ի Թագաւոր անդր ժամուն,
Զանուշակ զեւր ոգին երեքտասան Թագաւորաց եբարձ՝
Մինչ հեծէրըն, զի երազ չար եկն եկաց 'ի նմանըս իւր
Զայն գիշեր Տիդեանին Ծնեալ խորհրդովն Աթենասայ։
Յայնժամ յանդուգն Ոդիսեւս ըզմիանաձիս ձիանն եղ լուծ,
Եւ փոկովք պարանանդեալ վարեաց արտաքս 'ի լաշկարէն
Աղեղամբըն խըթելով, զի չարկ 'ի միտ առնուլ 'ի ձեռս
Ըզմըտրակին երփնափայլ 'ի նըկարէն կառաց անտի։
Շըչեաց ապա 'ի նըշան գիւցազանըմին Դիոմեդեայ,
Որ կայցեալ մըտածէրէր՝ զինչ խորտակագոյնս ինչ ցուցցէ գործ.
Եթէ զկառսն առեալ՝ ուր զէնքըն գընէին նըկարակերպք՝
Ըզգետոյն ձգեսցէ, եւ կամ 'ի վեր բարձեալ տարցի,
Կամ թէ զեւրս յոգունց այլոց Թրակեանց հատցէ զարեւ։
Մինչ գեռ նա զայսոսիկ ածէր զմըտաւ՝ հաս Աթենաս
Եւ մատուցեալ առ գիւցազըն Դիոմէդ բարբառեցաւ.
Յուշ քեզ դարձըր քեզ յուշ, մեծահոգւոյն Տիդեայ զաւակ,
Ի գոդեալ նաւացըդ խուռն, զի մի՛ անկցիս յայն խուճապու.
Գուցէ այլ ոք 'ի դից եւ զՏրովադացիսըն զարթուսցէ։
Զայս ասաց, եւ նա 'ի միտ առ զողջ ձայնի աստուածուհւոյն,
Եւ ձիապեալ հեծաւ 'ի ձիան, եւ Ոդիսեւս հար աղեղամբն,
Եւ նոքա յերագընթաց Թըռչէին նաւս աքայեցւոց։
Սակայն ոչ գէտ ընդունայն արծաթաղեղն Ապոլոն կայր,
Իբրեւ ետես զԱթենաս ընդ հետ որդւոյն Տիդեայ կըրթեալ.
Սրդմըտեալ ընդ նա՝ եմուտ 'ի տրովացւոցն 'ի մեծ ամբոխ,
Եւ զարթոյց ըզԹրակեցւոց խորհրդականն Հիպպոկոոն,
Զհօրեղբօր Հռեսեայ զարի որդին, եւ նա 'ի քնոյն ընդոստ՝
Անդայն տեսեալ ըզվայրըն՝ ուր երագաքըն կայր ձիանն,
Եւ զարեարըն գիլթաւալ յահեղ արեանցըն ճապաղիս,
Գոյժ եղարձ իսկ եւ իսկ, եւ զսիրելին կարդայր ընկեր։
Տրովացւոցն աղաղակ եւ անհնարին հընչեաց դըղորդ
Ի խուժել միահաղոյն. տեսանէին ահեղ գործսն
Որչափ ինչ արքն արարին ու 'ի խորագոյն մեկնեցան նաւս։
Իսկ որքա իբրեւ հասեալք ուր զհետկարին ըսպանեին գէտ,
Անդ Ոդիսեւս Արամազդայ սիրուծին՝ արգել զձիանն երագ,
Եւ Տիդեանն յերկիր վազեալ՝ առ եդ 'ի ձեռս Ոդիսեւսի

Ըղկապուտան արեւմախառն, եւ յերկնային հեծաւ անդրէն·
Մըտրակեաց զերիվարսն, եւ մըտադիւր սըլանային
Ի նաւսըն խորափորս, զի՛նդ այն սըրտեցին հաճոյ Թուեցաւ:
Նեստոր նախ լըւաւ զդոփիւնն, եւ խօսեցաւ յառաջագոյն·
Ո՛վ սիրելիք, զօրավարք արգիւացւոց եւ իշխեցողք,
Սո՞ւտ Թէ ստոյգ ինչ ասիցեմ, համարձակէ առկայն հոգիս·
Փութադադոյթ անդրոււղարեան ոտին զըրնդիւն՛ գուշեկն իմ Թընդէ:
Ցանկամ՛րծ այսր Ողիսեւս եւ Դիոմեդ քաջակորով
Այսպէս շույս 'ի տրովացւոց սըլասըմբակ վարէին ձիս·
Այլ խիթամ յոյժ 'ի սըրտի, գուցէ եղեան իցեն զըլանեալ
Քաջազունքն արգիւացւոց 'ի տրովադեանց խառնամբոխէն:
Չեւ ըզխօսսըն յանդ հանեալ՝ ահա եկին հասին նոքեանք:
Եւ իջեալ նոցա յերկիր, սոքա ընկերեալք եւ խրախումբք
Ողջոյն տային աջ ձեռամբ եւ քաղցրաբարբառ կոչեալ բանիւք:
Եւ հարցեալ ընկերքն առներ Նեստոր ասպետն Գերենեան·
Եկ աստ ինձ, ով գովեալդ Ողիսեւս, փառք աքայեանց մեծ,
Ո՞րպէս կալայք զերիվարսդ 'ի տրովացւոց մըխեալ 'ի սպոյ·
Ցաստուածո՞ց միԹէ ոք ընդառաջեալ զդոսին մատոյց·
Զի՛ սերտիւ նըմանագոյնք արեգական ճառագայթից:
Համապազ ընդ տրովացիսն եմ խառնամուխ, եւ ոչ կարծեմ
Թէ մնայցեմ ինչ առ նաւուք, Թէպէտ եւ ծեր պատերազմող,
Բայց տեսեալ չեք իմ եւ ոչ ընդ միտս հարեալ ձիք այդպիսիք:
Այլ Թուի ինչ ուշ 'ի դիցն ոք հանդիպեալ ընձեռեաց ձեզ·
Զի սիրէ զձեզ երկոսեանդ եւ Արամազդ ամպայարոյց
Եւ ԱԹենաս մեղուակըն դուստր ասպարազէնն Արամազդայ:
Եւ նըմա պատասխանի ետ Ողիսեւս մըտահարուստ·
Ո՛վ Նելեանդ Նեստոր, աքայեցւոց պարծանք փառաց,
Աստուածոյ, Թէ կամք իցեն, եւ վեհագոյն քան ըզսոսին
Դիւրին է տալ երիվարս, որ զի կարօղք են զօրապէս:
Իսկ ձիանս որ հարցանես՝ նորեկք են, ծեր, եւ Թրակացիք·
Եւ ըզտէր նոցա սպան Դիոմեդէս քաջայաղԹող,
Եւ համհարզս առ նըմին երկոտասան իշխանազունս:
Եւ ըզդէտն հուպ առ նաւուք սատակեցաք երեքտասան,
Զոր լըրտես բանակիս մերում յըղեալ էր Հեկտոր
Եւ այլոց ընդ իւրեւ տրովադացւոց պերճապանծից:
Ընդ ասելն եւ զերիվարսն ըստ փոսն անցոյց սըլասըմբակս
Կայտառելով, զոյգ երԹային հըրճուիւք եւ այլ աքայեցիք:
Մինչ 'ի վրանըն գեղաշէն Տիդեան քաջին հասին նոքա,
Կապեցին բարեձեւ փոկովք 'ի մսուրն ասպաստանաց
Ըզձիանն, ուր երիվարք Դիոմեդեայ ԹեԹեւոտունք
Կային եւ ուտէին քաղցրաճաշակ ցորեան համեղ:
Իսկ զարիւնոտ կողոպուտն ըզԴոլոնի եդ Ողիսեւս

Ի խելս նաւէն, մինչեւ զոհ պատրաստեսցեն Աթենասայ ։
Եւ ընկեանք մնացեալ 'ի ծով լուսնային գլխոցն բազում
Ձուլածոյ եւ զարդերօք շուրջանակի եւ ընդարձակ ։
Իսկ յորժամ ծագեսցէ այգն լինիցի ընդոտն քերթան 'ի մարմնոյն,
Եւ հանդերձեան զարդարեսցեալ 'ի սիրտս բարեաց եւ 'ի հոգիս,
Ի կենդանի սրբասրտաց հարկեալ մխիթար լուսնային ։
Եւ այսպէս մերկացեալ, օծեալ մարմնեալ պարարս խաղով,
Ցնծութեամբ բազմութեան, եւ լուացեալ 'ի Թաղանթէն
Սպեալ նուէր հեզաձեն Աթենասայ զինեալ անոյշ ։





# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Բանայ Հեռ՝ առաքեալ յԱրամազդայ՝ զդրօշն մարտին. Ագամեմնոն սպառազինեալ վարէ զգունդսն 'ի ճակատ. նախ յերկբայս յաղթութիւն, ապա զօրանայ Ագամեմնոն: Հեկտոր ազդմամբն Արամազդայ զգուշանայ 'ի նմանէ մինչեւ վիրաւորեալ մեկնեսցի. զոր տեսեալ ապա՝ խիզախէ 'ի քաջութիւն: Դիոմեդէս վիրաւորեալ 'ի Պարիսէ՝ 'ի բաց ելանէ. Ոդիսեւս նահատակեալ ընդ տրովացիս՝ վանէ զնոսա յինքենէ, խոցեալ 'ի Սոկոսէ՝ սատակէ զնա. Էաս պաշտպանէ նմա եւ Մենելաոս հանէ զնա 'ի կռուոյն: ԶՄաքաւոն վիրաւոր 'ի Պարիսէ՝ տանեալ Նեստորի 'ի կառսն տանի 'ի խորանն, եւ մինչ Հեկտոր եւ Էաս նախճիրս գործեն, տեսեալ զնա Աքիլլեայ եւ չծանուցեալ թէ ստոյգ Մաքաւոն իցէ՝ առաքէ զՊատրոկլոս լրտեսել. որոյ երթեալ մինչեւ 'ի Նեստոր, աղաչի 'ի նմանէ՝ յորդորել զԱքիլլեւս 'ի պատերազմ, կամ անձամբ գալ կամ գոնէ զնա ինքն առաքել իւրովք զինուքն: Պատրոկլոս անտի ճողոպրեալ ելեալ՝ պատահէ Եւրիպիլոսի հարելոյ 'ի Պարիսէ, եւ բարձեալ տարեալ 'ի վրան իւր՝ բժշկութիւն եւ դարման մատուցանէ մեծի իշխանին:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՄԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԱՌԱՔԻՆՈՒԹԻՒՆ ԱԳԱՄԵՄՆՈՆԻ

Առաւօտն յանկողնոյ, Թողեալ զչքնաղ Տիթոնն, յառնէր,
Զի բերեալ ընծայեսցէ լոյս անմահից եւ մահկանացուաց.
Իսկ Արամազդ ճեպեցոյց 'ի սրաթեւ նաւս աքայեցւոց
Զհեռքն ժանտ, յորոյ ձեռքն ունէր՝ նշան պատերազմի.
Եւ չոգաւ եկաց 'ի սեաւ մեծամարմին նաւն Ոդիսեայ՝
Որ կայրն 'ի միջոցի, ձայն յերկոսին տանել կողմանս,
Ի մի Թեւ՝ 'ի խորանսն Այասայ Տելամոնեան,
Եւ 'ի միւսն՝ յԱքիլլեայն, որք խրախուսեալ 'ի քաջութիւն
Եւ 'ի բազկաց կորով՝ 'ի ծայրսն էին հանեալ զմիաչափ նաւսն:
Անդր եկեալ աստուածուհւոյն գոչեաց ուժգին՝ մեծ եւ ահեղ,
Եւ հզօր զօրութիւն արկեալ յանցնել աքայեցւոց սիրտ,
Անհանգիստ անդուլ մարտիւ կալ 'ի ճակատ պատերազմին:
Եւ անդէն քաղցրագոյն նոցա թուէր քան զդարձ անդրէն
Գոգաւոր նաւակայանիւքն 'ի սիրելին բնիկ գաւառս:
Իսկ Ատրիդէս ձայն եբարձ՝ հրաման վառել Արգիացւոց,
Եւ նա ինքն եւս առաւ զփայլակնացայտ հրաշէկ պղինձն.
Եւ նախ՝ ըզբարձիւքն ըզսրունապանսն գեղեցիկս,
Ըզգօտեալսն եւ պատշաճեալս ճարմանդիւքն արծաթեղէնք.
Յետ այնորիկ 'ի վերայ զգեցաւ կրծից լանջապանակ,
Զոր երբեմն Կինիրէս էր 'ի հիւրոյթ նմին շնորհեալ:
Զի մինչեւ 'ի Կիպրոս հարկանէր մեծ համբաւ ձայնին,
Թէ 'ի Տրոյա նաւելոցեն լաստապարտիւքն աքայեցիք.
Նմին իրի եւ զայն նմա՝ շնորհ երեսաց Թագաւորին:
Տասն էին 'ի նմա ծիրք 'ի սեւաթոյր պողպատոյ,

Եւ յոսկւոյ՝ երկոտասան, եւ յանագէ՝ քանիւ չափ·
Եւ վիշապք կապուտագոյնք կարկառէին զպարանոցան
Երեք երեք աստի անտի, ծխածանին կամարակերպք՝
Զորս ընդ ամպս եդ Զըրուանեան՝ նըշան մարդկան յօդաձայնից:
Եւ զուսովքն արկ ըզսուսերն յոսկիակուռ շղթեալ բեւեռս,
Իսկ պատեանքն արծաթիք էին պընդեալ ոսկիափոկ:
Բարձ զասպարն հաստակաբերձ՝ հաստահարուստ՝ ճարտարարուեստ՝
Գեղեցիկ, զորով տասըն շըրջանակք էին պղընձիք,
Եւ կըմբեայք 'ի նըմա էին քըսան մի անագեայք՝
Ըսպիտակք, եւ 'ի միջին՝ 'ի Թըխագոյն պողովատէ:
Եւ պատէր դըժնէհայեաց դըժոխակնեայ զնովաւ Գորգոն,
Եւ շուրջ պարունակեալ 'ի նմա Խուճապ եւ Արհաւիրք:
Անգըստին էր բառնալեքն արծաթեղէն, յորում վիշապ
Կապուտակ՝ գալարս առնոյր եւ գլուխք էին նորա երեք
Ոլորեալք ըզմիմեամբք, եւ յուղանէ միոյ բուսեալք:
Սաղաւարտ ցըցունազարդ քառախորան եւ ձիաբաշ
Ի գլուխն եդաւ, զարդմանակն ահագնագին ճօճեալ վերուստ:
Առ կըրկին հաստ գեղարդունս յեսանաստուր սլաքեալ 'ի պղինձ՝
Որ քաջ 'ի բաց մինչ յերկինս 'ի նոցանէ փայլատակէր:
Ի վերայ նորա եռուն որոտս Հերա եւ Աթենաս
Ի պատիւ ոսկեբուղխըն Միկենեայ Թագաւորին:
Տայր ապա իւրաքանչիւր կառավարին իւրում հրաման,
Առնուլ անդէն զերիվարսն ըստ օրինի անդր առ փոսոյն·
Իսկ ինքեանք 'ի զէն 'ի զրահ վառեալ հետի տային գըռոյթ,
Եւ գոռումն անհատական հընչեաց յառաջ քան զառաւօտ:
Եւ կանխեալ քան զհեծելազն 'ի փոսն 'ի կարգ յօրինեցան,
Իսկ հեծեալքն ընթանային խուռն ինչ ըզկնի, յորս աղմուկ չար
Արկ 'ի նոսա Զըրուանեանն, եւ 'ի բարձանց անտի արիւնոյն
Տեղաց ցօղ արիւնաշաղանդ, զի հանդերձեալ էր մերձ ընդ մերձ
Յոգնախուռն 'ի դըժոխըս Թօթափել յաղթ կառափունս:
Նոյն անդուստ եւ տրոհեցիք 'ի զարեւանդ անդըր զաշտին
Ըզմեծաւն Հեկտորիւ եւ զանըստգիւտ Գուլիդամաւ,
Եւ զԷնեաւ՝ որ 'ի տրովեանս աստուածօրէն պատուեալ յազգէն,
Եւ զերիւք Անտենորեամբք, զՊօլիբեա ասեմ, զքաջն Ագենովր
Եւ զԱկամաս պատանեակըն զանմահից հանգունատեսիլ:
Իսկ Հեկտոր ընդ առաջինսն ածէր զասպարն ըզբոլորակ:
Որպէս ընդ ամպըս ծագեալ փայլածէ աստղ եղեռնաթիւր,
Եւ երբեմն 'ի խաւարին ամպըն մըտեալ անդրէն Թաքչի,
Սոյնպէս եւ Հեկտոր ընդ առաջինսն երեւէր մերթ,
Մերթ 'ի վերջինս հրաման տալով, ողջոյն 'ի պղինձ փայլակնացեալ
Զօրէն հօրն խմբի շանթից վահանակրօղն Արամազդայ:
Եւ հանդոյն իմն օրինակ հընձօղք միմեանց դէմ յանդիման

Ցանդաստանն առըն Ռեսի կարգաւ զակօսն հարկանիցէն
Զսպարենայ կամ ըղձաբերոյ, եւ գէզ 'ի գէզ գլորին արեամբ,
Տրովացիք եւ աքայեանք 'ի միմեանս մյապէս ոստուցեալք
Սատակէին, եւ ուրեք գըժնեայ փախուստ ոչ լինէր յուշ։
Զոյգ ըղձյուխան ունէին 'ի մարտ՝ հրոսեալք հանդոյն գայլոց։
Հայեցեալ 'ի նոսա կայթէր անդ Հեռ. բազմահառաչ,
Զի նա եւեթ յաստուածոց գըտանէր մերձ առ մարտուցեալսն,
Իսկ այլք առ նոքօք չէին 'ի գէց ընթերակացք,
Այլ հանդարտիկ նըստէին իւրաքանչիւր 'ի տունս իւրեանց,
Ուր յարկ նոցին գեղեցկակերտ 'ի գարեւանդս էր Ողիմպեայ։
Թառէին ամենեքեան ըղՁըրուանեանն ամպրոպային,
Թարրելով զի տրովացւոցն պարգեւել կամէր պարծանս։
Զամենէր հայրն ինչ նոցա փոյթ, եւ առանձինն մեկուսի
Ցայլոց անտի հեռագոյն բազմէր 'ի փառսըն խայտացեալ,
Ի տրովեանց քաղաք ու'ի նաւս աքայեցւոց եդեալ զէտակն,
Ի փայլակնըն պըղընձոյն, 'ի սատակիչսն եւ սատակեալս։
Ցառաւօտին անդ պահու, մինչ գիւղականն անձէր գեռ տիւ,
Զերկոտեանն հարկանէին նետք ըղկողմանս, անկանէր զօրն.
Իսկ յորժամ պատրաստեալ կազմեաց ըղճաշն այր մայրեար
Ի պուրակս անտառապըլուրս, խոնջեալ հարեալ զբազկըսն փայտս
Ցագեցոյց ըղձեռըս իւր եւ ձանձրութիւն յոգւոյն անկաւ,
Եւ անուշակ կերակրոյն պաշարէ զսիրտըն ցանկութիւն,
Արութեամբ յայնժամ իւրեանց բեկին ըղգունդս աքայեցիք,
Ձայն ընկեր առ ընկեր գոչեաց 'ի գունդս արկեալ խրախոյս։
Անդ յառաջ շահատակեալ Ագամեմնոն հար սատակեաց
Զարք այրն ըղհովիւ ժողովրդոցն ըղԲիէնովր,
Եւ ապա յետոյ զընկեր իւր զՈյիլեւսըն ձիավար։
Զի վարգեալ սա յերկձիոյն եւ ախոյեան եկաց նըմին՝
Որ գէտ ուղիղ յարձակելումն եհար զճակատ սուր պըղընձովն,
Եւ չարգել 'ի նմանէ պըղընձակուռ պըսակն ըղտէգն,
Այլ թափանց եւ ընդ այն, եւս եւ ընդ ոսկրըն, եւ ուղղոյն
Դըղըրդեցաւ ուղեղն 'ի ներքս, եւ ըղմոլեալն արար նըկուն։
Եւ թողեալ արանց արքայն Ագամեմնոն անդէն զնոսա,
Որոց լանջք աներագերծեալք 'ի նմանէ լերկ պաղպաջէին,
Անց խաղաց յառաջ զԻսոսն եւ զԱնտիփոսն ըսպանանել,
Զերկուս որդիս Պրիամու՝ ըղհարճորդին եւ զհարազատ.
Երկոքին 'ի մի կառս, եւ հարճորդին կայր կառավար,
Իսկ անուանին Անտիփոս ընդ իւր հեծեալ գայր 'ի կռիւ.
Զորս Աքիլլէս առ սոսս Իդայ 'ի տաւարածին էր ըմբռնեալ,
Կապեալ ճապուկ ոստովք եւ արձակեալ ընդ փրկանաց։
Իսկ յայնժամ Ատրիդեան Ագամեմնոն վըսեմապետ՝
Նիզակաւն եհար ըզմին ընդ լանջս 'ի վեր կոյս քան զըստինսն,

Եւ զԱնտիոքոս՝ ընդ ականջըն Թրով զարկեալ արկ 'ի կառացն․
Եւ դիմեալ 'ի կողոպուտ զգեղեցիկ զէնսն 'ի նոցանէ,
Ծանեաւ զնոսա, զի կանխաւ եւս առ երագ նաւսն էր տեսեալ,
Մինչ քաջոտն Աքիլլէւս գերեալ զնոսին եբեր յԻդայ։
Որպէս առիւծ 'ի խըշտիս Թեթեւընթաց հասեալ եղին,
Եւ ժանեօք զազանութեանն յափըշտակեալ զմանկանին մատաղ,
Բեկանէ հեշտիւ եւ զգողոր ոգիս նոցա կորզեալ հանէ․
Եւ նա մօտ իսկ յոյժ անդէն թէ գտանիցի՝ չուժի օգնել,
Զի եւ զնա իսկ ինքնին անհընարին ունի դողումն,
Եւ շտապաւ փախչի'նդ պուրակս անտառախիտս եւ ընդ մայրիս
Խուճապեալ եւ քրտնախոնջ 'ի հինելոյ բարկ գազանին․
Այսպէս ոչ ոք 'ի տրովեանց հերքել զոցա զօրէաց եղեան,
Այլ ինքեանք իսկ յերեսաց զարհուրէին արգիացւոցն։
Իսկ նա՝ զՊիսանդրոս եւ զՀիպպոլոքոս ըզգոռ մարտիկ,
Զորդիսն Անտիմաքեայ քաջասրտի, որ մանաւանդ
Ընկալեալ ոսկի շատ յԱղեքսանդրէ պայծառ ձիրիւք,
Հակառակ կայր զՀեղինէ մի տալ խարտեաշ Մենելաւի․
Ըզսորա կըրկին մանկունս Ագամեմնոն կալաւ արքայ,
Որ 'ի մի զոյգըս հեծեալ՝ զձիանն երագ վարէին անդ․
Զի զերծան 'ի ձեռաց իւրեանց փայլուն երասանակք,
Եւ ինքեանք խռովեցան․ իսկ Ատրիդէս առիւծաբար
Ել ընդդէմ, եւ 'ի կառաց անտի նոքա պաղատէին․
Ապրեցո զմեզ, Ատրէորդիդ, եւ փըրկանակս ընկալ զարժանն․
Ցապարանս Անտիմաքեայ կայ կարասի բազմամըթեր,
Պղինձ եւ ոսկի, եւս եւ երկաթ ճարտարագործ․
Հայրըն մեր շնորհեսցէ փըրկանս անբաւ քեզ 'ի նոցունց,
Թէ լուիցէ զմեզ ողջ գըլխով առըեալ 'ի նաւս աքայեցւոց։
Այսպէսնակ ըղթագաւորն աղերսէին արտասուագոչ
Բանիւք ողոքանօք, այլ ոչ ողոք լըւան բարբառ․
Արդ որդիք դուք թէ իցէք Անտիմաքեայ գոռ մարտողին,
Որ տայր երբեմն յատենի տրովեանց հրաման զՄենելաւեայ
Զեկելոյն ընդ դիւցակերպն Ոդիսեւսի հրեշտակութեամբ,
Սատակել անդ առ եւեղ, առ աքայեանս անդրէն չթողուլ,
Այժըմ դուք ըզգըժընդակ հօրդ եղերան լուծջիք ըզվրէժ։
Ասաց, եւ 'ի կառաց անտի զՊիսանդր յերկիր ընկէց
Տիգաւ ընդ կուրծսըն հարեալ, անկաւ յորսայս նա 'ի գետին։
Ի բաց վաղեաց Հիպպոլոքոս, այլ սատակեաց եւ զնա'նդ երկիր՝
Նըրանաւ խըզեալ ըզձեռսն եւ զպարանոց նորա հատեալ․
Եւ զօրէն խըլըն սանդի Թաւալագլոր արկ ընդ ամբոխն։
Ըզնոսա Թողեալ դիմէր 'ի գուպար կուռ գումարտակաց,
Եւ ընդ իւր միախուռն աքայեցիքն այլք ամրազարդք։
Հետիք զհետս վանդէին ըզխուճապեալսըն տանջապաւ։

Եւ զհեծեալսն հեծեալք՝ բախեալք յետեւոյն սպանանէին ։
Ընդ նոքօք յարեաւ փոշի՝ զոր 'ի դաշտէն մրրրկեցին
Ոտնատարոփ ձիոց սմբակք . սակայն արքայն Ագամեմնոն
Վանէր ցանդ կոտորելով եւ տայր խրախոյս արգիւացւոց ։
Որպէս հուր ծախիչ յորժամ 'ի տընկախիտ անկցի մայրի ,
Եւ մրրրիկ փոթորկեալ ընդ ամենայն ճարակեսցէ ,
Թօթափին շիւք կարճնոտքն յասպատակէ հրատին ճնշեալք ,
Ի ձեռն Ատրեանն Ագամեմնոնի թօթափէին նոյն կառափունք
Տրովացւոց փախուցելոցն , եւ բարձրավիզ յաղն երիվարք
Ի շաչիւն տատանէին 'ղ մարտին շաւիղս բըլթափուր կառս
Անձկացեալս ընտիր ընտիր կառավարացն որոց կային
Անկեալ տապաստ , քան կանանց՝ անգղեաց յաւէտ սիրայօրդորք ։
Այլ զՀեկտոր Արամազդ դարձոյց յարդանց եւ 'ի փոշւոյն ,
Ի խոշոշ մահուց , յարեանց ապաժուժէ եւ յամբոխից ։
Ատրիդէս խաղայր յառաջ՝ զանայեցւոց յուժգին խրախոյս ,
Իսկ նոքա 'ի վաղեմի զարդանացւոյն Իլեայ շիրմին
Ընդ մէջ դաշտավայրանոյն դիմեալ գնային ընդ մողաթզւոյն ,
Անձկացեալք քաղաքին . խաղայր Ատրիդ յաւէժ գոռամամ ,
Թաթաւեալ անպարտելի ձեռք իւր յարիւն եւ յապածոյժ ։
Իսկ յորժամ յԱրեւմտեանց հասին դըրունսն եւ 'ի կաղնին ,
Ըզտեղի առին անդէն եւ ունէին ակըն միմեանց .
Զի կէսք դեռ ընդ մէջ դաշտին խուճապէին իբրեւ զերինջս՝
Որ առիւծ հինահարեալ 'ի տարաժամ գիշեր՝ փախոյց
Զամենեսեան , բայց միումն ընդառաջեցեալ կայ դառըն մահ .
Զոր ժանեօքըն դըժնէիւք յափըշտակեալ՝ նախ զուլն եբեկ ,
Եւ ըմպէր ապա զարիւնն եւ զփորոտին ողջոյն լափէ .
Թագաւորն այսպէս Ատրեանն Ագամեմնոն զնոսա պնդէր
Ըսպանանէր միշտ ըզյետինն , եւ փախըստեայ գնային նոքա .
Եւ շատք յորսայս եւ բերանիւեալք անկանէին 'ի կառաց
Ընդ ձեռամբն Ատրիդեայ , զի նիզակաւն ուժգին մղէր ։
Բայց մինչ կամէրն 'ի պարիսպն հասանել բարձր եւ 'ի քաղաքն ,
Ի ժամուն յայնմիկ անդէն հայրըն մարդկան եւ աստուածոց
Ցերկնուստ 'ի կատարս աղբերաբուխն իջեալ Իդայ
Գայր նըստէր , կայծակնացայտ փայլատակմանց շանթ 'ի ձեռին ,
Եւ զԻրիս ոսկեթեւ ճեպեալ յարոյց պատգամաւոր .
Արի երթ , թեթեւդ Իրիս , զայս առ Հեկտոր տարջիր պատգամ .
Յորժամ տեսանիցէ զհովիւն ազանց զԱգամեմնոն
Զի՛նդ նահատակըն գռայցէ զարի արանց սատակել սահս ,
Խոյս տուեալ խորշեսցի , հրաման այլոց տացէ զընդդաց
Ոգորել ընդ թըշնամիսն 'ի զօրաւոր պատերազմին ։
Իսկ յորժամ խոցահար եւ կամ նետիւ թէ վիրաւոր
Ի կառսն հեծանիցի , յայնժամ ես ույժ սատակչական

Տաց նըմա, մինչեւ երթեալ հասցէ 'ի նաւըսն գեղատախտ,
Արեգակն 'ի մայր դարձցի եւ ըստուերազան գայցէ նըսեմ։
Զայս ասաց, ոչ անըլսող եղեւ մըրըկոտն երագ Իռիս,
Եւ յԻդայ լերանց իջեալ 'ի սըրբանուէրն անդր Իլիոն՝
Եգիտ զորդին Պրիամու քաջին զՀեկտորըն զդիւցական
Կացեալ 'ի յերիվարսն իւր եւ 'ի կառսն ամրակառոյց.
Առ որ հուպ մատուցեալ ասէ Իռիս երագաձեմ.
Հեկտո՛ր որդի Պրիամու՝ զուգահանճարդ Արամազդայ,
Արամազդ հայր առաքեաց ըզիս քեզ զես պատգամաբեր։
Մինչդեռ տեսանիցես զԱգամեմնոն հովիւն ազանց
Զի՛նդ ախոյեանըսն մըրցեսցի զարի արանց հարկանել զունդ,
Խոյս տուեալ մեկնեսցիր, այլոց խըմբից արա հրաման
Ընդ ոսոխըսն մաքառել 'ի կարեւոր պատերազմին։
Իսկ յորժամ մըկըննդահար կամ 'ի փըղաքին խոց վիրաւոր
Ցնէր 'ի կառսն ելանիցէ, յայնժամ արկցէ 'ի քեզ կորով
Ի ջարդել՝ մինչեւ երթեալ 'ի գեղատախտ հասցես քաջախս.
Արեւ 'ի մուտըն մըտցէ եւ նուիրական գայցէ խաւար։
Զայս այսպէս բարբառեալ՝ էլ եւ գընաց Իռիս ժըրոտն։
Իսկ Հեկտոր 'ի կառաց անտի վաղեաց զինուքն յերկիր,
Եւ ճօճեալ սուր գեղարդունս ընդ համօրէն շըրջէր բանակն
Ի կըռիւ սըլեալ խրախոյս, եւ յարոյց ծանըր գուպարած։
Նոքա յետըս դարձան կացին ընդդէմ աքայեցւոց.
Անդուստ արգիւնցեք ըզգունդս իւրեանց կազդուրեցին,
Եւ գուպարն արծարծեցաւ. ճակատեցան, եւ Ագամեմնոն
Ոստեաւ յառաջ՝ յոյժ տենչացեալ նախ հատանել ընդ ախոյեանն։
Ասացէք ինձ արդ, Մուսայք, Ոլիմպական յարկաց բընակք,
Ո՛վ ոք նախ առաջին Ագամեմնոնի եկ յանդիմանն
Ի տըրովացւոց անտի եւ կամ 'ի բարեփառ նիզակակցաց։
Կորովին եւ անձնեայն Անտենորեանն Իփիդամաս,
Որ սընաւ 'ի Թըրակէ պարարտաբող՝ 'ի մայր խաշանց.
Դայեկեաց նըմա 'ի տանն 'ի տղայութեան նորա Կիսեւս՝
Մօրըն հայր, այն որ ծընաւ ըզգեղեցկայարըն Թէանով։
Այլ յորժամ 'ի վայելուչ արբուն հասոցըն ժամանեաց,
Անդ առ իւր կալաւ ըզնա եւ ետ նըմին ըզդուստրն իւր.
Իբրեւ սա, յառաջադատէ անտի Թըռեաւ յաքէանցն համբաւ
Մահկաձեւ երկոտասան նաւուք որ զհետ գնային նորա.
Զորս արար 'ի Պերկոտէ թողեալ ըզնաւսըն միաշամփս,
Իսկ ինքըն 'ի հետեւոտս եկեալ հասեալ կայր յԻլիոն.
Սա յայնժամ Ատրիդեան Ագամեմնոնի գընայր ընդդէմ։
Եւ սոքա իբրեւ յերեսս ընթանալով լինէին մերձ,
Վըրիպեալ Ատրիդեայ՝ խոտորեցաւ նիզակն 'ի բաց։
Իփիդամաս 'ի գօտւոյն եհար ներքոյ լանջապանին,

Եւ յեցաւ ինքն 'ի վերայ՝ 'ի ձեռանըն ծանր եղեալ վստահ.
Ոչ եհերձ ըզկամարըն նըկարէն, այլ անդ յառաջ
Հանդիպեալ արծաթոյն՝ կըրկնեցաւ պայքն իբրեւ կապար ։
Զորմէ բուռն կըշռանաց հարեալ կըշռանն Ագամեմնոն,
Ձըգեալ ուժգին իւր առեւծ 'ի ձեռանէն յինքըն հանէր,
Եւ չեչեալ սուսերաւն ըզպարանոցն՝ եղծ զանդամսն ։
Այսպէս անդ անկեալ տապաստ՝ հէք ըզպղընձին նընջեաց նա զքուն
Ի նըպաստ քաղաքայնոցն, 'ի հարազատ հարսնէն բացեալ
Ու՛ր նորաւէր, յոյր ոչ 'ի շնորհս ինչ վայելեաց՝ տըւեալ բազումս.
Եւս նախ արջառըս հարիւր, ապա հազար եւս այլ ուխտեաց
Այծ՝ ոչխար միանգամայն, որ իւր անթիւք արածէին ։
Իսկ յայնժամ սա ըզկապուտ գնայն Ատրիդն Ագամեմնոն,
Եւ երթայր տանէր զըզքնաղ զէնսըն յամբոխ աքայեցւոց ։
Զոր Կոօնն իբրեւ եւես՝ երեւաւորն 'ի մէջ արանց,
Երիցագոյնն Անտենորեան, սուգ անհնարին զաչօքն պատեաց
Ընդ անկումն հարազատին, եւ տեգ 'ի ձեռն առեալ չոգաւ
Կանգնեցաւ գաղտ 'ի կողմ դիւցազնէին Ագամեմնոնի,
Եւ արմըկանն 'ի ներքոյ եհար ըզնա 'ի մէջ բազկին,
Եւ յայնկոյս եղ թափանցանց փայլուն տեգին սըրածեալ սայր ։
Սարսափումն եկաւ ընդ այն զարքայն արանց Ագամեմնոն,
Համայն ոչ 'ի գուպարէն ինչ դադարեաց, ոչ 'ի կըռուոյն ։
Զհողմասունն առեալ նիզակ՝ 'ի Կոօն անդըր խոյացաւ,
Որ զեղբայրն ըզհամահայր զԻփիդամաս կալեալ զոտիցն
Հապճեպիւ ընդ քարշ տանէր եւ համօրէն կարդայր ըզքաջս ։
Եւ 'ի ձգել նորա զայն յամբոխակոյտն՝ ըզնա հարեալ
Ընդ կըմբեայ վահանաւն 'ի պղընձի տեգ՝ եղծ զանդամսն,
Եւ հասեալ՝ եհատ ըզգլուխ իւր 'ի վերայ Իփիդամայ ։
Անդ որդիքն Անտենորեանք 'ի ձեռն Ատրիդ Թագաւորի
Զճակատագրին լըցեալ օրհասս՝ իջին 'ի տուն Սանդարամետին ։
Սակայն ինքն ընդ գասակարգս այլոց քաջաց շահատակէր
Նիզակաւ եւ սուսերբ եւ մեծամեծ բըռնաքարամբք,
Ցորչափ արիւն ջերմաջերմ պըղպըղջակէր դեռ 'ի վիրէն.
Իսկ յորժամ ցամաքեցաւ խոցն, եւ արիւնըն դադարեաց,
Հարան ցաւք սայրասուրք 'ի զօրութիւնն Ատրիդեսի ։
Որպէս ըզկին ծընընդական ըմբըռնէ սուր նետ դըժընդակ,
Զոր արկեալ հարկանեն ծընընդախնամ Իլիթիեայք,
Դըստերք Հերայի՝ յորոց 'ի ձեռս են դառն երկունք.
Նոյնպէս ցաւք սըլըքեալք յԱտրիդեսին մըխեցան սիրտ ։
Եւ 'ի կառսն աշտանակեալ իւր՝ եւ պատուէր կառավարին
Ի նաւքնեայսըն խորագոգ վարել զի սիրտ իւր կըսկըծէր ։
Ձայն ուժգին բարբառոյ բարձըեալ կոչեաց առ դանայեանս.
Ո՛վ սիրելիք, առաջնորդք արգիացւոց եւ խնամակալք,

Դուք արդ այժմ պահեցէք 'ի ծովաշու լաստափայտեայն
Ըզգործնեայց մարտակոծ, զի զգօնն ինձ չետ Թոյլ Արամազդ
Մըղել ըզպատերազմն ընդ տրովացիս զօրըս ցերեկ։
Զայս ասաց, և կառավարն 'ի գոգաւոր նաւակսըն կոյս
Զգեղաբաշ ձիս մըտրակեաց, որ Թըռչէին ոչ անյօժար
Փըրփըրադէզք ըզլանջօքն և 'ի փոշի մածեալք ներքուստ,
Առ ըզխոց Թագաւորն 'ի ճակատէն հանել 'ի բաց։
Իսկ Հեկտոր՝ իբրև ետես զԱգամեմնոն մեկնեալ գնացեալ,
Խրախոյս եբարձ մեծաձայն առ տրովականսն և լիկեցիս.
Տրովադեայք և լիկեանք և դարդանիոք ընթերամարտք,
Քաջ լերուք, սիրելիք, և դիք 'ի մտի զարիութիւն։
Արանց մեծն 'ի բաց ել, և Զըրուանեանն ինձ Արամազդ
Ետ փառըս մեծ. ծն դէպուղիղ 'ի քաջաղոր դանայեցիս
Ձի արկէք սալասըմբակ՝ մեծ եւս առնուլ պարծանաց շուք։
Զայս ձայնեալ՝ յորդորեաց զամենեցուն զոյժ և զոգիս,
Որպէս դք ուրեք որսորդ զի զպատուական ըլմնաժանի
Դըրդեալ յարուցանէ 'ի վայրենի կինճ կամ յառիւծ,
Նոյնօրինակ ըզմեծանձնեայսն տրովադեանս յաքայեցիսն
Արկ Հեկտոր Պրիամեան, մարդախողող Արեայ համգոյն։
Եւ ինքնին ընդ առաջինս ամբարտաւանութեամբ խաղայր մեծաւ,
Եւ անկաւ անդր 'ի գուպարըն՝ վերնաշաւիղ մըրրկի նըման,
Որ Թափ անկեալ սաստուցեալ՝ վըրդովէ զծովըն կապուտակ։
Իսկ զո՞ նախ անդ առաջին և զո՞ վերջին արկ 'ի կենաց
Հեկտորըն Պրիամեան՝ ուր ետ նըմա փառս Արամազդ։
Նախադոյն՝ զԱսէոս, զԱւտոնոոս և զՈպիտէս,
ԸզԴո՛լոփսըն Կլիտեան, զՈփելտիոս և զԱգելաւ,
ԶԷսիմնոս և զՈրոս, զՀիպպոնոոս քաջամարտիկ.
Ըզսոսա զդանայեցւոցն ըսպան սալա՛րս, ապա զամբոխն.
Օրինակ իմըն մինչ զամպս երագաճեպըն հարաւոյ
Հալածէ Զեփիւռ՝ կոծեալ Թանձրաստարափ իմըն մըրրկաւ,
Խուռնըրնթաց կուտակադէզ դլին ուռուցիկ ալեաց կոհակք,
Ցայտէ փըրփուրըն 'ի բարձունս 'ի շունչ հողմոյն աստանդելոյ.
Նոյնպէս խիտ Թօթափէին ընդ Հեկտորիւ ամբոխին գլուխք։
Անդ կորուստ հասանէր և անհնարին լինէր նախճիրք,
Եւ 'ի նաւսըն փախըստեայք անկանէին աքայեցիք,
Եթէ չէր Ոդիսեայ հարեալ բողոք առ Դիոմեդ.
Իսկ զի՞ եղև մեզ, Տիդեանդ, զի մոռացաք զարութիւն քաջ.
Ա՛յլ ծն այսըր, սիրելի, առ իս մատիր. այպանք իցեն՝
Թէ Հեկտոր կորդակախոտոս լիցի նաւացըս զամագլխոս։
Եւ նըմա պատասխանի Դիոմեդէս քաջ և ասէ.
Կացից ես, ժուժկալեցից, այլ դուզնաքեայ ինչ եղիցի
Շահ օգտին առ 'ի մէնջ, զի Արամազդ ամպրոպայոյզ

Տրովացւոց քան թէ մեզ կամի շնորհել ըզյաղթութիւն ։
Ասաց, եւ 'ի կառացն ընկէց յերկիր ըզԹիմբրէոս
Տիգահար արարեալ յահեակ ըստինն, իսկ Ոդիսեւս
Զարբանեակն արքային զաստուածանմանըն Մոլիոն ։
Ըզսոսա 'ի կռուոյն ըդադարեցուցեալ՝ թողեալ անդէն,
Ինքեանք մխեալ ընդ ամբոխն եւ խռով հարեալ աղմըկէին,
Զերդ կըրկին վարազք հարեալք ըմբարտաւանութեամբ յասպականս ․
Սոյն օրէն դիմեալք ընդ կրունկ՝ սատակէին ըզտրովադեանս,
Ի Հեկտորէ քաջէն վանեալքն աքեանք ոգի առնուէին լուրջք ։
Անդանօր կալան ըզկառս եւ զքաջորեար ժողովրդեան,
Զերկուս որդիս Մերոպսի Պերկոտացւոյ՝ հըմտագունին
Քան ըզբնաւս հըմայից, որ չտայր թոյլ մանկանց իւրոց
Ընթանալ 'ի պատերազմըն մարդածախ, եւ լըւան ոչ ․
Զի տանեալ տանէր զնոսա սեաւ օրհասին Ճակատագիր ։
Արդ Տիդեանն ըզսոսա Դիոմեդէս աշտէնափառ
Ի հոգւոյ եւ յարեւէ արկեալ ըզզէնսն էառ կապուտ ․
Իսկ Ոդիսեւս սատակեաց զՀիպպոդամոս եւ զՀիպերոքոս ։
Անդ նոցին համահաւասար ձըգեաց ըզմարտըն Զրուանեանն
Ակն արկեալ յԻդայ 'ի վայր, եւ ըզմիմեանըս զըսուէին ։
Եւ զաւակըն Տիդեայ տիգաւ եհար զԱգաստրոփոս
Ըզդիւցազնըն Պէոնեան ընդ թամբ զըստին, զի չէին մերձ
Երիվարքըն առ 'ի փախչել, վըրիպեալ զըրկեալ նա յոյժ ․
Մեկուսի զնոսա կալեալ պաշտօնէին, եւ ինքըն հետի
Ցարձակեալ ընդ նահատակս՝ անկաւ 'ի քաղցր արեւէն ։
Իսկ Հեկտոր սուր նըկատեալ ընդ դասակարգսն՝ եւ նա նոցա
Մեծագոչ հարեալ խոյեաց, զհետ խաղային եւ տրովեան գունդք ։
Զայն տեսեալ սոսկացաւ Դիոմեդէս ահեղագոռ,
Եւ անդէն առ Ոդիսեւսն ընթերակայ եբարձ ըզձայնն ․
Ցերկոսեան 'ի մեզ եղեռնըդ հոլովեալ գայ՝ բուռն Հեկտոր ․
Այլ աղէ եկ ամրընդ կացցուք, եւ զդէմ կալեալ բեկցուք ըզնա ։
Ասաց, եւ ճօճեալ զերկայնաստուերն ընկէց նիզակ ․
Եւ դէտ կալեալ անվրէպ 'ի գլուխն՝ ըզչուրթն եհար սաղաւարտին ․
Այլ 'ի պղնձոյն սաստաւ պըղինձն՝ 'ի գեղեցիկ մորթն ոչ հասեալ,
Զի եկաց ընդդէմ արգել եռապատիկն եւ բարձրածայր
Գըլխանոցն որ էր Գուշակն Ապոլոնի տուեալ պարգեւ ։
Իսկ Հեկտոր ճեպով անհուն յետս ընթացեալ խառնեալ յամբոխն՝
Անկաւ 'ի ծունկս եկաց յեց հաստաբազուկ ձեռամբն յերկիր,
Եւ պատեալ զաչըս նորա ծածկեաց գիշեր խաւարաբոյր ։
Իսկ մինչդեռ 'ի տէգընկէց անդ իւր դիմեալ երթայր Տիդեանն՝
Քաջ 'ի բաց ընդ նախահատակսն՝ ուր ընդ գետինըն մըխեալ կայր,
Ցայնժամ ոգի առ Հեկտոր, եւ ամբարձեալ անդրէն 'ի կառսն
Եւ 'ի խուռն ամբոխն վարեալ՝ ապրեաց 'ի սեաւ օրհասէն ։

Իսկ արին Դիոմեդէս ընդհետ պնդեալ տեգաւն՝ ասէ .
Արդ դարձեալ 'ի մահուանէ փրկեցար, շուն, էր մօտաւորս
Չարն առ քեզ, կորկին Գուշակն այժմ Ապողոն թափեաց ըզքեզ,
Որում ուխտս ապաքէն դնես 'ի գալդ յարդանց 'ի շչակ ։
Այլ ըզքեզ հուսկ իմն ուրեմըն պատահեալ սատակեցից,
Թէ ոք ինձ եւս օգնական իցէ 'ի դից եւ զօրավիգն .
Այժմ ընդհետ մըտից այլոց՝ ում ձեռընհաս եւ լինիցիմ։
Զայս ասաց, եւ կողոպտեաց ըզտեգաւորըն Պէոնեան ։
Բայց սակայն Ալեքսանդրոս՝ այրն Հեղինեայ վարսագեղոյն,
Ի Տիդեան անդր 'ի հովիւն ազգաց լըմայր ըղլայնալիճն,
Ընդ արձանաւ թաքուցեալ 'ի ձեռակերտ դամբանի անդ
Դարդանեանն Իլոսի վաղընջենի ծերոյ դրոհին ։
Արդ նա յայնժամ ըզքաջին Ագաստրոփեայ զպատենազէնս
Ի կըրծիցըն կողէր ըմբոշխարէնս, զասպարն յուսոց,
Եւ ըղծանըր կորդակն . եմուտ նա 'նդ դիրկս իւր աղեղանն
Եւ եհար, ոչ վըրիպեալ նետն 'ի մատանցն ունայնավար,
Զգարշապար ոտինն աջոյ, եւ թափ ընդ այն անցեալ փըքնին՝
Ի գետին վարսեցաւ . իսկ նա յոյժ քաղցր 'ի ծաղր հառեալ՝
Վազեաց 'ի դարանէն եւ խրոխտալով բարբառեցաւ .
Խոցեցար, ոչ վայրապար թըռեաւ սըլաքս . այլ ո՛ տայր ինձ
Թէ 'ի կուշտըդ ներքին արկեալ՝ զոգիդ քաղէի .
Յայնժամ ողի առնուին եւ յաղէտանց սատի Տրովեանք,
Որ 'ի քէն, իբր յառիւծէ պատառօղ այծք, կան զարհուրեալ։
Իսկ արին Դիոմեդէս ոչ ինչ քաջքնեալ ասէ առ նա .
Լուտացօղդ աղեղնաւոր, եղջերապանծ, աղջկադըննին,
Եթէ զինուք զինուորեալ 'ի հանդիսի մարտչէիր փորձ,
Չէր ինչ քեզ օգնելոց աղեղն եւ նետք քո թանձրախուռն .
Արդ զոտին իմոյ գըծեալ քո զգարշապար՝ ունայն պանծաս ։
Չէ ինձ փոյթ, որպէս թէ կին ոք կամ մանուկ հարկանէր խօլ .
Զի կընատ եւ անպիտան առըն փըքին բութ է եւ դալ ։
Ապաքէն այլազգ յինէն, թէ եւ թեթեւ ինչ շօշիցի,
Ելանէ սըլաքըն սուր, եւ արկանէ անդէն անշունչ .
Եւ կընոջ ամուսնոյ նորին ցըռին եւ ցեղուն այտք,
Որբանայ մանկունքն, եւ ինքն ըղհողն յարիւն ներկեալ կարմիր
Տըոռեալ նեխի, եւ քան կանայք՝ հաւք պար առեալ պատին զնովաւ ։
Զայս ասաց . իսկ Ոդիսեւս կորովաշեղ հուպ մատուցեալ
Կաց հանդէպ, նա զնետըն սուր՝ նըստեալ յետոյս՝ զերծ յոտանէն,
Եւ սաստիկ ցաւոց խիթք ըղբովանդակ մարմնովն անկան ։
Ել անդէն հեծաւ 'ի կառսն եւ ետ պատուէր կառավարին
Ի քաշտակըն գոգաւոր վարել, զի սիրտ իւր մորմոքէր ։
Միայն մընաց Ոդիսեւս նիզակաւորն, եւ չեկաց ոք
Առ նըմա յԱրգիւացւոց, զի անկաւ ահ յամենեսեան .

Մենելաւ արքայական ըզձեռանէն կալեալ ըզնա
Յամբոխէն եհան յոր վայր հուպ անդր ըզձիս վարեաց ծառայն։
Իսկ Այաս 'ի տրովադացիսն անկեալ ըսպան ըզԴորիկլոս
Զհարձորդին Պրիամեան, ըզՊանդոկոս այլս եհար,
Եհար և զԼիսանդրոս, ըզՊիրասոս և զՊիղարտէս։
Օրինակ իբր յորժամ գետ յորդեալ ընդ դաշտ ընթանայցէ
Ի լերանց հեղեղատեալ, յԱրամազդայն ձեռեալ տարափ,
Բաղում չոր կաղնիս ընդ իւր առեալ գլէ և շատ բաղում,
Եւ կարտակում չեղջենեայս թաւալագլոր գերփէ 'ի ծով,
Նոյն Այաս հրաշալիքն փոթորկելով խաղայր ընդ դաշտն՝
Հարեալ զձիս և զհեծեալս, և Հեկտոր չեւ էր լուեալ ըզդասս․
Զի երթեալ պատերազմէր յահեկակողմ բոլոր ռազմին
Առ ափամբք ըզՍկամանդրոս գետոյն ուր շատ եւս մանաւանդ
Կատարունք թօթափէին արանց, և գոռ անհաս գոռայր
Ըզմեծաւն Նեստորիւ և զարիական Իդոմենեաւ։
Եւ Հեկտոր խառն ընդ նոսին՝ անհընարին գործէր նախճիրս
Ի նիզակ ու 'ի հեծելոյթ, աւերէր զպատանին դասուց դիր և տար,
Բայց քաջազն աքայեցիք յառաջարուէն չընկրկէին ինչ,
Եթէ չէր Ալեքսանդրոս՝ այր Հեղինեայ վարսագեղին՝
ԶՄաքաոն զհովիւն ազգաց 'ի քաջութեանցն ցածուցեալ
Նետաւ եռալքաւ խոցեալ ընդ ուս աջակողման։
Զահի՛ւ այն հարան մեծի աքայեցիք անհաշտունք,
Գուցէ զնա 'ի շըրջել պատերազմին սպանանիցեն։
Եւ անդէն Իդոմենեւս ձայն առ գիւցազն ընկէց Նեստոր․
Ո՛վ Նեստոր Նելէածին, աքայեցւոց պարծանքըդ մեծ,
Օ՛ն արի, հեծիր 'ի կառսդ, և Մաքաոն ընդ քեզ ելցէ,
Եւ ձեռամբդ զաւաղակամբ կաշկիր ձիանդ 'ի նաւսն կոյս։
Քանզի այր բժիշկ այլոց բազմագունից է փոխանակ
Առ 'ի զնետսն կորզել և սպեղանել քաղցըր դեղովք։
Զայս ասաց, չընդդիմանեաց Նեստոր ասպետըն Գերենեան․
Ել անդէն 'ի կառսն իւր, և Մաքաոն առ իւր հեծաւ՝
Ասկղեպեայ ըսքանչելւոյ ճարտարարուեստ բըժըշկին ձեռ․
Մըտրակեաց զերիվարսն և միասրտիւք սըլանային
Ի գնալ կարկեւրայն, անդըր սըրտեցն եղեալ հաճոյ։
Ըրթոթեալս ըզտրովացիսն յակն արկեալ Կեբրիոնի՝
Որ հեծեալն էր Հեկտորիւ, բան զայս առ նա բարբառեցաւ․
Հեկտոր, մեք աստանօր ընդ դանայեանըս գեդերիմք
Ի մի թեւ ահեղաձայն գուպարածիս, իսկ այլ տրովեանք
Խառնիխուռնն ալեկոծին ընդ իրեարս այր և երիվարք,
Եւ խռովէ զնոսին Այաս Տելամոնեան, ծանեայ զնա քաջ․
Զի զասպարն ըզլայնատարածն ունի զթիկամբք․ ե՛կ և մեք
Անդր ըզկառս և զձիս վարեսցուք, ուր առաւել յաճախագունդ

Ի Թիկանց՝ արդարեւ Մաքաւոնի Թըւի հանգոյն
Զուաւկին Ասկլեպեայ, բայց ոչ տեսի զաձնըն երեսս,
Զի զանցեին զենեւ ձիանն յառաջագնդեանըն Ճեպելով:
Զայս ասաց, եւ Պատրոկլոս անսաց սիրուն ընկերակցին,
Եւ զինեալ ընթացաւ ընդ Նաւս եւ վրանս աքայեցւոց: —
Իսկ նոքա մինչ 'ի խորան Նէլիսածնեին ժամեան եղեն,
Ինքեանք 'ի կառաց յերկիրն իջին զալարուէտ,
Եւ պաշտօնեայ ծերունւոյն ըղձիան եղյծ՝ Եւրիմեդոն:
Եւ նոքա զքիրտն 'ի շապկաց անտի իւրեանց ցամաքէին
Կանգնեալք ըզծովեզերըն 'ի սրքախառն օդոյն սողոխս:
Ապա 'ի վրան անդըր մըտեալ 'ի նըստարանսըն բազմեցան:
Ըմպելի խառնէր նոցա գեղեցկածամն Եկամեդէ,
Զոր յաւերել Աքիլլիսի առ աւերօքն 'ի Տենեդեայ՝
Ըզդուստրըն մեծանձինն Արսինոյի, զոր նուր ետուն
Աքայեցիք ընտրանաւ, զի բնաւից վեհ էր խորհրդով:
Արկ սա նախ առաջի նոցա սեղան մի գեղեցիկ,
Սեւոտնի, ողորկագոյն, եւ 'ի վերայ խան մի պղնձի,
Եւ սոխ 'ի նըմին՝ 'ի դէպ յարբումըն կերակուր,
Եւ մեղըր ծորածոյ. եւ զփոխընդին սըրբոյ զալեւր,
Եւ զբաժակըն չըքնաղ՝ զոր 'ի տանէն ած ծերունին
Ըզկըռեալըն ոսկեպալար, որում չորք էին ունկունք,
Եւ կըրկին ըզմէն միով իւրաքանչիւր շուրջանակի
Աղաւնեակք Ճարակէին, եւ կըրկին տակք էին ներքուստ:
Այլ ով հազիւ զըժուարաւ շարժէր ըզլին 'ի սեղանոյն,
Իսկ ալեւորըն Նեստոր առնոյր բառնայր զայն անաշխատ:
Արդ 'ի նմա խառնեաց նոցա կնին հանգունակ աստուածուհեաց
Պրամնեան անապակաւ, զայծենին յայն քերեալ պանիր
Քերոցաւ պղընձիւ, ցանեալ 'ի նոյն սպիտակ փոխինդ.
Իբրեւ կազմեաց զըմպելին՝ առեալ մատոյց առ նոսա յումպ:
Որ արբեալ եւ յափուցեալ ըզտապախարըշն երաշտ պապակ՝
Ըզբանիւք ընդ միմեանս անկեալ՝ խօսիւք ըզբօսնուէին:
Իսկ Պատրոկլ եկեալ եկաց անդ առ դրանն այրն աստուածատիպ.
Զոր տեսեալ ծերունւոյն՝ 'ի պաղպաջուն յարեաւ գահէն,
Եւ ըզձեռանէն առեալ եմոյծ եւ հրաւիրեաց 'ի բազմական:
Այլ սակայն Պատրոկլոս 'ի հրաժեշտի կացեալ ասէ.
Չէ նըստի ժամ եւ չածցես զիս 'ի հաւան, դիւցազնըդ ծեր.
Մեծարոյ, պատկառելի է որ յըղեաց զիս հարցանել,
Ո՛վ էր դա զոր ածէիրըն վիրաւոր, այլ աւասիկ
Ճանաչեմ ինձէն տեսեալ զհովիւն ազգաց ըզՄաքաւոն:
Արդ հրեշտակ զրուցատար առ Աքիլլէս դարձայց անդրէն.
Դու ինքնին իսկ քաջ գիտես, դիւցազնըդ ծեր, զինչ ով է նա
Այր զըժնեայ, զանմեղն անգամ Թերեւս ընդ փոյթ պարսաւորէ:

Զատոյց իւր ընտրանաւ երկքարիւրս, եւ տասնարամս :
Զի նմա պարտք մեծամեծք կային յԷլիս աստուածային ·
Չորեակ երիվարք գուպարայաղթք՝ կառօքն համերձ
Ընթացեալք 'ի մրցանակ, զի էր արշաւ զեռատանեայ ·
Եւ զնոսին Աւգիաս՝ արանց արքայ՝ գրաւեաց անդէն,
Եւ զկառապետն արձակեաց տրտմահողորդ յոյժ ըղձիւքն :
Ընդ այս բանից եւ գործոց ծանրացասուցեալ ծերունին՝
Ընտրեաց ահա անբաւ բազում, ժողովրդեանն ետ զայլն 'ի բաժին,
Զի մի՛ ոք զրկեալ՝ անմասն եղցէ յարգար բաժնէն :
Զամենայն մեք զայս ըստ այս հարկանէաք, եւ ընդ աստանն
Ցաշտ առնէաք դից, իսկ նոքին առ հասարակ յերիր աւուր
Միախուռն ամբոխ եկին ինքեանք եւ ձիք սալասմբակք
Գումարտ գնդովք, յորս երկու եւ Մոլիոնք կային վառեալք,
Հասակաւ մանկունք, եւ ոչ բնաւ արուեստեան քաջահմուտք :
Է քաղաք մի Թրիոէս, բարձրադիտակ բնակեալ բլրոյ,
Հեռի յափն Ալփէոսի եւ յաւազուտին Պիլեայ ծագս :
Ըզնովաւ պահ պաշարմամբ եդեալ քանդել նըկրտէին :
Այլ յորժամ անցին ընդ դաշտն ողջոյն, եհաս մեզ Աթենաս
Ընթացեալ յՈլիմպեայ պատգամաբեր ըղձիւլճերաւ,
Զէն առնուլ, եւ ոչ յանկամս ինչ 'ի Պիլոս խումբեաց ըղձութեամբ,
Այլ յորդորս յոյժ 'ի կռիւ · սակայն ինձ ոչ տայր Թոյլ Նելէւս
Զինուորել 'ի զէն 'ի զարդ, եւ զերիվարսն յինէն Թաքոյց,
Չկարծեալ թէ բնաւ հմուտ իցեմ 'ի գործ պատերազմի :
Սակայն եւ այնպէս շքեղ 'ի հեծելոցս էի վաշտուն,
Թէպէտ հետի, զի Աթենաս զիս այսպէս ած 'ի գուպար :
Գետ մի անուն Մինիէյոս է ծովածէժ մօտ յԱրենէ,
Ուր զաեղի տուեալ մնացաք աստուածային Առաւօտուն
Հեծելազօրս Պիլեան, բայց զայր յորդէր հետեւաց ամբոխ :
Անդուստ միահամուռ զրահաւորեալ 'ի զէն ու 'ի զարդ՝
Հասաք ըղմիջաւուրբ 'ի սուրբ հոսանս Ալփէոսի :
Հըզօրին Արամազդայ զոհս անդանօր հանեալ պայծառս,
Զցուարակ մի Ալփէայ եւ զցուարակ Պոսիդոնի,
Իսկ ծաւլին Աթենասայ երինջ ընտիր 'ի պատուակէ,
Ճաշկերոյթ արա՛նք բանակին ողջոյն առաք ըստ գունդ եւ գունդ,
Եւ 'ի քուն իւրաքանչիւր մտաք իւրովքն կազմածով
Ըզգետոյն յորձանօքն · իսկ մեծանձինքն Եպէացիք
Պատեալ կային զքաղաքաւն 'ի կործանել ըղձիւ ջեռեալք ·
Այլ նոցա յառաջագոյն եկն եւ եկաց Արեայ գործ մեծ :
Զի արեգակն իբրեւ եւ յերկաս երկրի լուսաճաճանչ,
Բախեցաք ճակատ՝ ուխտիւք առ Արամազդ եւ Աթենաս :
Իսկ յորժամ Պիլիացւոց եւ Եպէանց եղեն խառնուրդք,
Ես նախ անդ այր ըսպանի, զսալասմբակ ձիսն աւարեալ,

Աքայեանց ոչ եւս օձան լեալ դիւցազնոյդ Պատրոկլոս,
Այլ 'ի նաւսն տապաստան անկանելեան 'ի Թոյրաթուխս :
Զի որ զամ մի քաջքն էին յառաջնոյն՝ առ հասարակ
Անկեալ զինին նետահարք 'ի լաստափայտան եւ տխրախոցք
Ի ձեռաց տրովադացւոցն, որոց երթայ յորդէ կորով:
Մակային դու կեցո զիս՝ տարեալ 'ի նաւսն իմ սեւաթոյր,
Հան 'ի բաց յաղջկերես ըղնեան եւ զթուխ ըլաս զարիւնն
Եղկ լըրոմ 'ի նմանէ, եւ օծ ամոք ըսպեղանեօք
Աղջեւորոք՝ զոր եւ ասեն քեզ յԱքիլլէ անաի ուսեալ,
Զոր ուսոյցն Քիրոն՝ Ցուշկապարկացն արդարաձոխ :
Զի ըղձիչկք մեր Գոզալիր եւ Մաքաւոն արուեստագէտք,
Ըզան՝ 'ի խորանին իւրում կարծեմ խոց վիրաւոր,
Գըլխոմքին եւ նա խոկ ճիգըն ըղձըղկի քաջի կարօտ.
Իսկ միւսն 'ի դաշտ տրովականն զուպարի նըզգէմ բուռն Արէսի:
Մենիտեայ հըզօր որդին պատասխանի արար նըմա.
Զինչ բանեարս լեալն, դիւցազն Եւրիպիլոս, զի՞ գործեցեմք.
Ահ Աքիլլեւս զոռ ընթանամ՝ պատգամ առ նա զարձուցանել
Զոր պատուէր ետ Գերենեան Նեստոր՝ պահապանն աքայեցւոց.
Այլ ոչ եւ այսպէս ըզքեզ 'ի վիշտըս քո լըքեց անփոյթ:
Ասացեալ, եւ զերկս արկեալ տարաւ 'ի վրան զհովիւն աղանց.
Զոր տեսեալ պաշտօնէին՝ արջառենիս արկանեաց անկուածք:
Անդ ըղնա զառացուցեալ՝ եւ 'ի զըստէն կըտրեաց սուսերին
Ըզսուր նետըն զաժան, եւ 'ի նմանէ զարիւնըն սեւս
Լըւաց 'ի ջուր բարեխառն, եւ զգառն արմատըն զախտաբոյժ
Շփեալ ընդ ափ ած ըղմոմխմբ, որ զամենայն ըղցաւսն եհատ.
Ցամաքեաց վէրաբերանն եւ դադարեալ եկաց արիւնն:

Ինն օր զուխան արկ 'ի պարիսպն՝ եւ Արամազդ անձրեւէր ջուրս,
Անդէն վաղվաղակի գընել զպատուարըն ծովասոյզ։
Եւ նոյն ինքն Երկրասասան զերկեքարձէնն 'ի ձեռս առեալ
Կայր 'ի գլուխ, եւ բովանդակ զհիմունսն ալեացըն տայր տանել,
Զհեծանաց եւ ըզվիմաց՝ զոր ճըգնախոնջ արկին աքեանք,
Եւ կացոյց հարթայատակ առ յորձնեռանդն Հելլեսպոնտիւ,
Եւ անդրէն զահագինն աւազախիր ծածկեաց ծովեզր,
Ըզպատնէշըն տապալեալ, եւ զգետս ընդ կրուկ դարձոյց 'ի գնացս
Ընդ յատակսն ընդ որ յառաջ գեղածաւալ հոսէին ջուրս։
Զայս յապայս հանդերձեալ էր Պոսիդոն եւ Ապոլոն
Յարդարել առնել, իսկ 'ի ժամուն՝ խռչիւն եւ մարտ վառեցաւ շուրջ
Զկարծրակերտըն պատուարաւ. բըրգանցն 'ի թռայ թըրնդէին փայտք,
Եւ տանջեալ արգիւացիք 'ի մըտրակէն Արամազդայ՝
Զօրըրեալ ամփոփեցան առ գոգաւոր նաւատորմիւն
Ահաբեկք 'ի Հեկտորէ հնարագիւտէն խուճապանաց.
Նա սակայն՝ որպէս կանխաւըն՝ փոթորկի հանգոյն գոռայր։
Եւ օրինակ իմն որպէս յասպականիս ու 'ի պառաւկանս
Անկեալ նազի կինճ կամ առիւծ յանձնապաստան ահագնատես,
Եւ նոցա գունդագունդ կազմեալ զանձինս իւրեանց 'ի կռիւ՝
Ելանեն կան ախոյեան, եւ արձակեն թանձրատարափ
Ըզգեղարդսն 'ի բազկացն, այլ ոչ նորա սիրտ քաջալանջ
Դողայ բնաւ կամ տագնապի, եւ մըղձկէ զանձն իւր արութիւն.
Եւ յածի յողայ առէկ՝ 'ի փորձ դիմեալ ընդ ջոկս արանց,
Եւ յոր կոյս խոյանայցէ՝ տեղի անսոփ տան արանց ջոկք.
Այսպէս եւ Հեկտոր ընդ բազմամբոխն երթայր եւ գայր,
Խրախոյս հարեալ առ ընկերսն՝ ըստ փոսն յայնկոյս խաղալ գնալ։
Բայց չիշխէին ձիքն երագունք, այլ ըզչըրթամբ կացեալ ափին
Բառնային խոխոջ խըրխինջ, զի խրամըն լայն խըրտուցանէր՝
Որ առ վազել չէր ինչ մօտ, եւ ոչ դիւրին առ անցանել։
Զի կային առ հասարակ աստի անտի վայրք քըռաւորք,
Եւ սրածայր ձողեօք վերուստ պատնիշապատ էր ամրացեալ,
Զոր որդիք աքայեցւոց կանգնեցին խիտ եւ մեծամեծ՝
Յերեսաց դիմամարտից արանց ամուր ապաւէնի։
Ոչ միջամուխ լինէր հեշտիւ ձի զքաշանիւ ձգեալ ըզկառս,
Հետեւակք անդադրէին՝ թէ տանիցին արդեօք 'ի գլուխ։
Մատուցեալ յայնժամ առ քաջն Հեկտոր ասէ Պուղիդամաս.
Հեկտոր, եւ որ այլ պետք տրովադացւոց եւ սատարաց,
Յախուռն ընդ փոսըդ վարեմք ըզթեթեւասան երիվարեանդ.
Եւ նա յոյժ դըժուարագոյն առ անցանել, զի կան 'ի նմա
Շերտք կանգնեալք սայրասուրք եւ աքայեանց պատուար զնոքօք։
Ուր երբեք անդր իջանել, ոչ մարտընչել հեծելախումբ,
Զի առ անձուկ նեղութեան՝ կարծեմ թէ վէրս առնուցուն անդ։

Զի թէ բնաւ չարիս նիւթեալ ահեղամառանչն Արամազդայ
Ի կորուստ մատնեսցէ եւ հաճեսցի օգնել տրովադացս,
Կամէի եւ ես ինքնին վաղվաղակի հետ զայդ լինել,
Անանուն աստ յԱրգոսէ հեռի զբաւել աքայեցւոց.
Բայց այսրէն եթէ դարձցին եւ 'ի նաւաց հալածեսցեն,
Եւ 'ի փոսոյդ խորափոր անկանիցիմք մեք խառնիխուռն,
Ոչ կարծեմ այնուհետեւ եւ ոչ հրեշտակ զոք դուժարկու
Դարձ անդրէն յաստանն առնել՝ 'ի փախթորկելս յոգեանցն յայսկոյս:
Այլ եկայք, որպէս ինչ ես ասեմ՝ լուիցուք ամենեքեան:
Զերիվարսդ պաշտօնեայք աստ առ պարիսպն կալցին փոսոյս,
Իսկ մեր՝ հետեւակեալ 'ի զէն 'ի զրահս ամրապատեալք՝
Համագունդ ընդ Հեկտորի փութասցուք հետ, եւ ոչ կացցեն
Աքայեցիք մեր աքայեանք, թէ կորստեանն է հասեալ կէտ:
Զայս ասել Պուղիդամայ, Հեկտոր ընդ ողջ բանն հաճեցաւ,
Եւ անդէն 'ի կառացն ոստեաւ յերկիր զինուքն համանգերձ.
Եւ ոչ այլ տրովադացիք հեծելազունդ գումարեցան,
Այլ իջին ամենեքին՝ զաստուածայինն Հեկտոր տեսեալ:
Եւ ետ այր իւրաքանչիւր կառավարին իւրում պատուէր,
Զերիվարսն ըստ օրինի անդ առ փոսոյն ունել կարգաւ.
Եւ ինքեանք գասակարգեալք, յանձինս իւրեանց կազմ եւ պատրաստք,
Հնգերեակ կայեալ շարք՝ զօրավարացն երթային զհետ:
Կէսք չոգան ընդ Հեկտորի եւ ազնուելոյն Պուղիդամայ,
Որ բազումք եւ լաւքն էին եւ տենչեալ յորդորագոյնք՝
Խորտակեալ ըզպարիսպն առ խոր նաւուքն 'ի կռիւ մտանել.
Գայր երրորդ ընդ նոսին Կեբրիոնէս, իսկ Հեկտորի
Զայլ ոք առ կառս իւր թողեալ խոնարհագոյն քան զԿեբրիոն:
Իսկ միւսոյ Պարիս էր գլուխ, Ալկաթոոս եւ Ագենովր.
Երրորդացն՝ Հելենոս եւ Դեիփոբոս աստուածանմանն՝
Պրիամու ծնունդ երկոքին. եւ Ասիոս քաջն էր երրորդ,
Ասիոսն Հիրտակեան՝ զոր յԱրիսբեայ շէկ երիվարք
Բերէին յաղթամարմինք 'ի վտակաց Սելլէէսի:
Իսկ չորրորդացն առաջնորդ արի որդին էր Անքիսեայ
Էնէաս, եւ երկոքին Անտենորեան մանկունքն ընդ իւր
Արքելոքոս եւ Ակամաս՝ բոլոր մարտից քաջահմուտք:
Եւ Սարպեդոնն զօրագլուխ էր հռչակաւոր նիզակակցացն,
ԸզԳլաւկոս առեալ ընդ իւր եւ զարիականն Աստերոպէոս.
Զի սոքին թուեցան նմա քաջք 'ի քաջաց հզօրագոյնք
Առաւել քան զայլս յետ իւր, ամենեցունց ինքն վեհագոյն:
Արդ սոքա, հաստ ասպարօք մած առ միմեանս կարծրակուռք,
Խիզախեալ գնացին ուղիղ առ դանայեանս եւ չհամարեալ
Թէ կացցէ ոք առաջի, այլ 'ի թուխ նաւսն անկանիցին:
Անդանօր այլ տրովացիքն եւ օգնականք հեռաւհրաւէրք

Եւ ըզկնի ապա զՄենոն, ըզՅամենոս եւ զՈրեստէս
Ըզմիմեանս առ հասարակ յերկիրն ընկէց բազմաբերդուն:
Մինչ նոքա զըսպանելոց կողոպտէին պայծառաշխան զէնս,
Պուլիդամայ եւ Հեկտորի զհետ խաղային երիտասարդք
Յոգնաթիւք եւ քաջագոյնք եւ խիզախեալք յոխորտաբար
Հատանել ըզպարսպուարն եւ զնաւատորմն 'ի հուր դատել:
Այլ սոքա դեռ խորհէին զպարիկէն փոսին տարձանացեալք.
Զի սոցին յորդորելոցն յայնկոյս դիմել՝ հաւքն հրմայք,
Արծուի մի բարձրաթռիչ յահեակ կուսէ կասեալ ըզզօրն,
Ի մագիլսն օձ մի բարձեալ արիւնըռուշա եւ անարի,
Կենդանի եւ կայտառ՝ ոչ մոռացեալ ըզպատերազմ:
Զի եհար զյափըշտակիչն ընդ լանջըս իւր մերձ առ ուլանցն
Յետըս կոյս գալարելով, եւ նա յանձնէն ընկէց յերկիր
Առ ցաւոցըն տանջանաց, եւ արկ 'ի մէջ գումարտակին,
Եւ կանչիւն արարեալ թըռեաւ սլացաւ 'ի շաւնչ հողմոյն:
Սոսկացան Տրովադացիք զօձըն տեսեալ ըզգալարուն,
Որ անկեալ կայր 'ի մէջ անդր, ասպարակիրն Դիոսի նշան:
Մատուցեալ Պուլիդամաս յայնժամ առ խօսեան ասէ Հեկտոր.
Միշտ գոգցես, Հեկտոր, յատեան հրապարակի կըշտամբես զիս,
Թէպէտ ուղիղ խօսիցեմ. զի չէ 'ի դէպ իսկ, ոչ պատշաճ
Թէ ուրս ինչ ոչ 'ի ժողովս եւ ոչ 'ի մարտ պատերազմաց
Բարբառել քաղաքացւոյ եւ զպերճութիւնդ աճել եւեթ.
Ասացից արդ միւսանգամ որպէս ինչ ինձ թուի բարւոք:
Մի 'վերայ նաւացն 'ի կռիւ ինչ երթիցուք ընդ դանայեանս:
Զի այսպէս համարիմ ատնուլ վըճար, թէ հաւաստեաւ
Եկին հրմայքս առ տրովեանըս յորդորեալս յայնկոյս դիմել,
Արծուիս այս բարձրաթռիչ՝ որ զզօրն յահեակ կոյս կասեցոյց,
Ի ճանկուսն օձ մի բարձեալ արիւներանգ եւ վիթխարի,
Ընչակիր, եւ արկ անդէն մինչ չեւ հասեալ 'ի քաղցըր տունն,
Եւ ոչ կարաց կատարել՝ տանել իւրում մանկտոյն տալ ջամբ:
Նոյն եւ մեք, թէպէտ եւ զդրունս եւ ըզպարիսպն աքայեցւոց
Խորտակեսցուք մեծաւ ուժով եւ վանեսցէն աքայեցիք,
Կորանօք մեզ 'ի նաւաց լինիցի դարձ ընդ նոյն շաւիղս.
Զի զյոլովս 'ի տրովացւոցըն վանեսցուք զոր կորուսցեն
Աքայեանք 'ի սայր պղնձի՝ պատերազմեալք ըզմակուկացն:
Այսպէս զայդ հանիցէ կիւսահրմայ քաջահըմուտ՝
Հրաշագէտ մըտօք իւրովք, եւ ժողովուրդք նըմա լուիցեն:
Հայեցեալ ոխըզք աչաց սաղաւարտաձօձն ասէ Հեկտոր.
Ոչ դու ինձ, Պուլիդամաս, հաճոյական զայդ բարբառիս.
Գոյր եւ այլ ինչ քեզ քան զայդ ածել զմըտաւ բան շահաւէտ:
Իսկ արդ եթէ մըտօք սերտիւ եթէ յառաջ բերես դու զայդ,
Ապա դիք ինքնին 'ի քէն առեալ բարձին ըզխելըս քո՝

Որ հրաման տաս մտանել զահեղագոչն Արամազդայ
Ըղձորհուրդս որ ինձ 'նա ինքըն խոստացաւ եւ ակնարկեաց ։
Իսկ դու ինձ հոլաթեւեան հաւուց պատուէր տաս հնազանդել,
Ցորոց չանծեմ ինչ եւ ակն, եւ ոչ հանճարն փոյթ ինչ առնեմ,
Եթէ 'նդ աջ շողայցեն՝ ընդ Արուսոն եւ յԱրեւ կոյս,
Եւ թէ 'նդ գեհ ահեկի՝ յաղջամուղջին կողմ 'ի խորթնին ։
Այլ մեծին Արամազդայ հպատակեսցուք մեք խորհրդոց,
Որ ամէն է համօրէն մահկանացուաց եւ անմահից ։
Մի եւեթ հրմայք են քոյ, մարտիւ պաշտպան կալ հայրենեաց ։
Եւ զի՞ է քեզ զանգիտել 'ի Ճակատէ պատերազմի ․
Զի թէ մեք բոլորեքեան առ 'նաւս աքեանց կոտորեսցիմք,
Քեզ չիք ինչ ուստեք անձնուէին երկիւղ մահու,
Զի սիրտ ոչ գոյ 'ի քեզ պատերազմօղ եւ դիմակալ ։
Իսկ թէ դու 'ի դուպարէս եղես 'ի բաց, կամ զմի ոք այլ
Դարձուցես 'ի կռուոյս՝ հրապուրանօք արկեալ 'ի բանս,
Անդէն 'գ իմով նիզակաւս հարեալ զոգիդ կորուսցես ։
Զայս խօսեալ՝ խաղայր յառաջ, զհետ գընդէին նոքա համաւ
Ահագին ձայնից գոչմամբ, եւ Արամազդ փայլակնաղուարձ
Յիդական յարոյց լերանց ըղփոթորիկ սաստիկ հողմոյ՝
Որ 'ի նաւսըն դէպուղիղ վարէր զփոշին, եւ ափիշեցոյց
Զաքայեանց խելս, եւ տրովեանց եւ Հեկտորի փառս ընձեռեաց ։
Ի նորա հրաշանշանսըն խրախուսեալ եւ յարութիւն,
Պատառել կըրթէին զաքայեցւոցն ըզմեծ պատնէշ ․
Զմահարձանս ամբարտակաց խըլեալ, զմարտկոցըն քանդէին,
Առնէին նըդախարխար զկարկառակոյտ մեծաց հաստոցս՝
Զոր հիմն յերկիր աքայեանք արկին բըրգանցըն հաստատուն ։
Բուռն հարեալ սոցա ձգէին՝ յուսով զաքեանց քակել պատուար ․
Ոչ սակայն աքայեցիք վերջուանէին 'ի տեղւոջէն,
Այլ արկեալ պատ մարտկոցացըն վահանօքն արջառենի՝
Զպարըսպամարտս 'ի նոցունց հարկանէին ըզթըշնամիս ։
Իսկ Էասըն երկոքեան խրախոյս բարձեալ ընդ աշտարակս՝
Այսր եւ անդր ընթանային վառել զոգիս աքայեցւոց,
Էր զոր բանիւք ողոքէին, էր զոր խըստիւ կըշտամբէին,
Զոր ուրեք ոք թուլացեալ 'ի դուպարէն տեսանէին ․
Ո՛վ սիրելիք, արդիւնացւոցըդ փառաւորք եւ չափաւորք,
Եւ որ այլ 'նըւաստագոյնք, քանզի եւ ոչ ամենեքեան
Հաւասարք են արք 'ի մարտ, ամենեցուն արդ գործ եհաս,
Դուք ձեզէն իսկ տեսանէք ․ մի՛ ոք 'ի ձէնջ յետս ընդ կըրունկ
Դէմ 'ի նաւս եդեալ դարձցի՝ ձայնիցն 'ի լուր ըսպառնալեաց ․
Այլ յառաջ մատիք յառաջ, եւ կարդացէք միմեանց խրախոյս ․
Զի շանթաձիգն Արամազդ Ոլիմպական տացէ թերեւս
Զոյս վանեալ մեր ըզկըրունս՝ զոստոխս յատամն անդր հալածել ։

Զայս հարեալ սուր խորախոյս՝ բարբառեցին զաւրայեանց մարտ:
Զոր օրինակ խուռնախումբ հիւսիսականաց Թօթափին բուքք,
Մինչ յաւուրըս ձմերայնի զգօնն Արամազդ սաստէ տեղալ՝
Ցայտ յանդիման 'ի մարդիկ ցուցեալ նշան ըզնետըս իւր.
Եւ 'ի քուն զհողմս արարեալ՝ հոսէ անդուլ մինչեւ ծածկել
Ըզլերանց բարձանց գըլուխս եւ ըզբլրոց սարաւանդակս,
Եւ ըզդաշտըս ծաղկաւէտս եւ զմարդկան երկս արգասաւորս.
Եւ 'ի սպիտակ 'ի ծովուն սփռի յափունս եւ նաւակայս,
Բայց ալեացն 'ի նոսին Թաւալ անկեալ՝ չտան Թոյլ կալ,
Այլ ամենայն պատի վերուստ յԱրամազդայ տեղատարափ.
Սոցին նմանեալ յերկոցունց կողմանց քարինք Թռչէին խիտ,
Որ հարուած 'ի տրովադեանս, որ 'ի տրովեանց յաքայեցիս.
Իսկ 'ի վերայ պատնիշին յարեաւ Թընդիւն առ հասարակ:
Սակայն ոչ տրովացիք եւ ոչ Հեկտոր պանծալաշուք
Ըզդուռըս պարըսպին խորտակէին եւ զնիգն երկայն,
Եթէ չէր Արամազդայ հանճարեղ գըրգեալ զորդին
ԶՍարպեդոնն յարգեացս, զերդ կորեալ իւր եզանց՝ առիւծ:
Նոյնժամայն զասպարն յառաջ կարկառելով զկարակնականս,
Զգեղեցիկն, ըզպղնձեն, ըզկռանակուռ Թիթեղնապատ,
Զոր կոփեալ դարբին կարեաց ներքուստ ըստուար արջառամորթս,
Ցանկօծիւք ոսկեղինօք շըրջաբոլոր:
Զայն կալեալ առաջի եւ ճօճելով կըրկին նիզակս,
Դիմեաց գընալ խըրխ առիւծ մի լեռնասուն եւ անսուաղ
Ընդ երկար 'ի շաղիղ, եւ 'ի յանդուգն ոգւոյն վարեալ
Ի խաշին մտանել 'ի փորձ եւ յամրափակ երԹալ փարախ.
Որ Թէպէտ եւ առ նովաւ գըտանիցէ զաւուարածականս
Զի զհօտիւքն զամփոփսոք եւ աշտէիւք ունկցին պահ,
Ոչ անդարձ 'ի հանդիպէ յանձն 'ի դաւԹէն առնու մերժել.
Այլ վաղեալ յափշտակեաց, եւ կամ էառ նա լինքըն վէրս
Ցառաջին նահատակն 'ի ժիր ձեռաց մըկընդահար.
Այսպէս անդ ըզՍարպեդոնն աստուածանման՝ մղեաց ոգին
Ցարձակել 'ի պատնէշն եւ ըզմարտկոցսն փլուզանել:
Եւ անդէն առ Գլաւկոս ասէ ցորդին Հիպպողոքեայ.
Գլաւկէ, առ ինչ մեք քան ըզայլսս 'ի մեծարանըս վայելեմք
ԱԹոռով 'ի Լիկիա, խորտկօք եւ լի նուագօք գինեաց,
Եւ 'ի մեզ խըրա յառատաւուծս ամենեքին արկանեն ակն.
Եւ առ Քսանթեայ զարափանկ բաժանիմք անդըս մեծամեծս
Արդասանաց յայգետան եւ յարտորեայ ցորենաբեր:
Արդ արժան է 'նդ զինակցաւ լիկեացին անցանել կալ
Եւ ախոյեան 'ի հրաշամանչ պատերազմին նահատակել,
Զի այսպէս ոք ասասցէ 'ի կուռ վառեալ լիկեացւոց.
Ոչ անշուք ինչ աղեղէն տիրապետեն մեր Թագաւորըս

Ի Լիկիա ափրեն եւ գետաշինչըն ձաւարակներն ըղձապարարակ
Եւ ըղնտիրս անոյշ գինեաց, այլ է նոյնուն ոյժ կորովի,
Զի 'նդ նահատակս լիկեանց պատերազմեալ կան աւասիկ։
Եթէ զամ մի ապրեալ, ով սիրելիդ, յայսմ մարտէ,
Գոյր մեզ բնաւ անծերական լինել անմահ յաւէժաբար,
Ոչ ես ինչ մըրցէի նախամարտիկ ընդ ախոյեանս,
Ոչ եւ զքեզ 'ի պատերազմ յորդորէի փառաւորատոյց։
Իսկ զարդիս, քանզի մահու սպառնան օրհասք բիւրք 'ի բիւրոց,
Յորոց ոչ է փախչել կամ ձողոպրել մահկանացուի,
Օ՛ն երթիցուք, կամ մեք ումեք լիցուք 'ի փառս, եւ կամ ոք մեզ։
Զայս ասաց, եւ ոչ Գլաւկոս ինչ խորշեցաւ կամ անսաստեաց.
Եւ գնային ուղիղ՝ վարեալ զլիկիացւոցն ըզմեծ ամբոխ։
Զոր տեսեալ Մենեսթեւս՝ Պետէոսի որդին՝ պակեաւ,
Զի յիւր բուրգնըն դիմէին ածեալ բերեալ չարեաց ոճիր։
Աչս 'ի գունդ աքայեցւոց շուրջ արձակեաց՝ թէ տեսցէ զոք
Յիշխանացն որ զեղեան 'ի զինակցացըն վանեսցէ։
Եւ եսես զերկոսին Այաս անյագս 'ի պատերազմ՝
Զի կային մերձ, եւ զՏեւկրոս 'ի խորանէն այն ինչ եկեալ։
Սակայն չէր ինչ մարթ լինել յաղաղակել իւր լսելի,
Այնքան իմն էր խօշիւն, եւ շաւիղն յերկինս ժամանէր,
Ի կոփիւնըս վահանացն եւ ձիասէս սաղաւարտից
Եւ դրանդեաց, զի ափխեալ բռնաւըքն էին, եւ առ նոքօք
Կացեալ սոցա՝ խորտակել եւ անցանել բուռն տանէին։
Եւ անդէն առ Այաս յղէ զքարոզ իւր զԹոովտէս.
Թոովտէս գնացողն, երթ, ընթա ձայնել առ իս զԱյաս,
Զերկոսեան իսկ մանաւանդ, զի լաւագոյն այնպէս իցէ.
Գուցէ աստ 'ի անդուռս հասցէ կորուստ դառնագոյն,
Քանզի այսըր ծանրեցին լիկեանցըն պետք՝ որ եւ նախուստ
Ուժգնագոյն հանդիսանան 'ի զօրաւոր պատերազմունս։
Իսկ թէ նոցին եւս անդէն վաստակ հասեալ կայ եւ գուպար,
Եկեսցէ գոնէ միայն Տելամոնեանն արին Այաս,
Եւ ընդ իւր գայցէ Տեւկրոս աղեղնաւոր քաջահրմուտ։
Զայս ասաց, եւ 'ի լուր բանին նուիրակին ոչ անսաստեաց,
Ընթացեալ առ պատնիշաւ պատենաւորքն աքայեցւոց՝
Անդ եկաց առ Այասիւքն եւ ձայն եբարձ անդէն եւ ասէ.
Այասեանք, ըղընձաձաւա արգիւացւոց ըստապատաւորք,
Դիւցազնածնունդ Պետէոսի սիրուն որդին աստ ձեզ հրաման՝
Անդր երթալ, զէթ սակաւիկ մի մըրցանացն հաղորդ լինել,
Երկոցունցըդ մանաւանդ, որ լաւագոյն իսկ այդ իցէ,
Գուցէ թէ անդանօր հասցէ եղեան ինչ դըժընդակ։
Քանզի անդըր մըղեցան լիկացւոց պետք՝ որ եւ նախուստ
Սաստկագոյնս ամէհեն 'ի կարեւոր ճակատամարտս։

Իսկ թէ աստ եւս յարուցեալ կայ՝ տաժանմամբ եւ զաւսպարած,
Փարթար Տէլամոնեանն եւեթ Էաս զայցէ հաւժկուն,
Ընդ նմին եկէ Տեւկրոս Ճարտարադէտն աղեղնաւոր ։
Զայս ասաց, եւ մեծն Էաս Տէլամոնեան ոչ ինչ հեռեւեալ
Իսկ եւ իսկ զերապաթռիչ խօսեցաւ բանս առ Ոյիլեանն․
Էաս, դուք աստանօր, դու եւ սրտաեայն Լիկոմեդէս,
Դանայեանց կացեալ խրախոյս տուք մարտընչել ուժեղագոյն,
Իսկ իմ անդր ընթացեալ՝ պատահեցայց պատերազմին,
Եւ եկից այսրէն փութով, որպէս օգնեալ նոցա ։
Զայս խօսեալ եւ յարեաւ գնաց Էաս Տէլամոնեան․
Գնայր ընդ իւր Տեւկրոս եղբայր իւր հարազատ եւ համահայր,
Ընդ նոսին եւ Պանդիոնն բերէր Տեւկրի զաղեղն ըղկոր ։
Իբրեւ չոգան յաշտարակն մեծանձին Մենեսթեւսի,
Ընդ պատնէշն յառաջ անցեալ՝ առ տագնապեալսն եկեալ հասին ։
Իսկ արք զօրավարք Լիկիացւոց եւ առաջնորդք
Ի մարտկոցս ելանէին թուխ մըրրկի հանգունատիպք․
Բախեցան 'ի զուպար միմեանց ընդդէմ, զաւժեցին զոռք ։
Եւ նախ այր մի եհար ըսպան Էաս Տէլամոնեան,
Ըզմեծանձն Եպիկլէս, զընկերակից Սարպեդոնի,
Ապառաժ հարեալ վիմով որ կայր 'ի ներքս 'ի պարըսպին
Ահագին առ մարտկոցաւըն վերագոյն, զոր ոչ հեշտիւ
Երկոքումբք բարձցէ ձեռօք 'ի քաջատոյդ ոք պատանեաց,
Որպէս այժմուս են որեար․ իսկ նիզն առեալ արկ 'ի վերուստ,
Եւ ջաղխեալ ըզչըրքեանոցըն քառատատ՝ զոսկերան եբեկ
Համօրէն ըղկառափին, եւ նա զօրէն խարէշ լողորդ
Ի բարձանց աշտարակէն անկաւ, ելիք ոգին զոսկերս ։
Իսկ Տեւկրոս ըզԳըլաւկոս, զարի որդին Հիպպողոքեայ,
Ի բարձրադէտ պատուարէն եհար նետիւ ըզյարձակեալն,
Ուր ետես մերկ ըզբազուկն, եւ լըռեցոյց 'ի գոռալոյն․
Որ յետկոյս 'ի պատնիշէն վաղեալ թաքեաւ, զի մի տեսցէ
Յաքայեանց ոք զնիզըն խոց, եւ տռընհար լիցի խրոխտով ։
Վըշտացաւ Սարպեդոնն ընդ Գըլաւկոսին մեկուսանալ՝
Նոյնհետայն լեալ խրադեկ, սակայն ըզկռիւն ոչ մոռանայր,
Այլ զԱլկմաւոնն տիգահար վիրաւորեաց ըզԹեստորեանն,
Եւ 'ի բաց ձըգեալ զաշտէն՝ նա զհետ տիգին անկաւ 'ի պորտ,
Եւ զիւրեաւ շառաչեցին պըղընձակերտ նըկարէն զէնք ։
Սարպեդոնն բուռն ուժգնակի զմահարձանէն հարեալ քարշէր
Կորովի բազկօքն՝ եւ նա երթայր ըղհետ համանդամայն․
Մերկացեալ վերուստ պարիսպն՝ եդ անխափան բազմաց ուղի ։
Բայց Էաս եւ Տեւկրոս 'ի միասին դիմեալք 'ի նա,
Սա փըքնաւ շուրջ ըզլանջօքն եհար ըզփոկն արծաթափայլ
Զասպարին պարածածկոյթ, այլ Արամազդ մերժեաց զօրհասն

Հեկտորի յափըշտակեալ բերէր ըզվէմ մի որձաքար
Որ առաջի կայր դըրանցըն Թանձրատակ եւ ծայրասուր,
Զոր եւ ոչ արք երկու կորովագոյնք 'ի խուժանէն
Դիւրահեշտ էին 'ի գետնոյն շարժեալ 'ի սայլ ամբառնային
Ցորոց այժմըս են մարդիկ, իսկ նա միայն ճօճէր հեշտաւ.
Փոքրոգի եդ զայն նըմա կորովամիտ Զըրուանայն ծնա:
Որպէս հովիւ՝ դիւրատար բառնայ զարու գառին գըղմաթ
Ի միում կալեալ ձեռին, եւ ըզնա դոյզն ինչ ճըզնէ բեռն,
Այսպէս Հեկտոր դէպուղիղ առեալ բերէր զվէրգն 'ի տախտակս
Որ ըզդուրսն ամրապինդ պարըսպէին ստուարակարկառս,
Երկփեղկեանս՝ բարձրաշէնս, եւ 'ի ներքուստ կըրկին սողնակք
Անցեալ զմիմեանցք պընդէին, եւ պատաշաճեալ կայր մի փական:
Մօտ երթեալ արձանացեալ, մըղեալ ուժգին՝ եհար ընդ մէջ,
Մեծաքայլ կանգնեալ՝ զի մի վիմեղէն ձիգն եղէ անզօր:
Զերկոսին ծըխնիսն եբեկ, վէմըն կըշռովն անկաւ 'ի ներքս.
Մռնչեցին դրուներըն սաստիկ, ոչ փակաղակք ժուժկալեցին,
Այլք այլուր ցընդեալ տախտակք յարատածին բըռնութենէ:
Հրաշալին ոստեաւ Հեկտոր՝ սուր գիշերոյ նըմանատիպ,
Եւ պղընձովն որ ըստ մարմնոյն էր ըզգեցեալ ահեղակերպ՝
Փայլատակէր, եւ կըրկին 'ի ձեռսն առեալ ունէր նիզակ:
Չէր ումեք, քաւ յաստուածոց, կըրճիմ ընդ մէջ զնա արգելուլ՝
Մինչ ընդ դուրսըն վազեաց, եւ աչքն 'ի հուր բոցանային:
Եւ դարձեալ 'ի տրովացւոցն ամբոխակոյտ կարգայր խըռնոյն՝
Անցանել ընդ պարիսպն. եւ ունկն եդեալ նոցա խրատուն՝
Էր որ անդէն վազեցին ըզպատուարաւն, էր որ հեղան
Ընդ դրունսըն փեռեկեալս, եւ դանայեանց առեալ փախուստ
Դէմ 'ի նաւսըն գոգաւորս՝ անհընարին եհաս խուճապ:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ԵՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ՄԱՐՏ ԱՌ ՆԱՒՕՔՆ

Իսկ մինչ զՀեկտոր եւ զտրովացիս 'ի նաւաստորմն արկ Արամազդ,
Անդանօր զնոսին թողեալ յանդուլ վաստակ եւ 'ի տագնապ'
Ինքն անդրէն 'ի բաց դարձոյց ըզլուսաւոր ականողիան,
Ատուցք 'ի Թրակացւոց ձիաւորացն հայել երկիր,
Միսացւոց մերձամարտից, եւ պերճալի ձիակըթաց,
Կաթնակեր օրապարէն արդարաձոյս մարդկան զգունդ:
Եւ այլ ոչ եւս 'ի Տրովա զաչսն շըրջէր փայլակնացայտս.
Զի չունէր ակն 'ի միտսն' թէ յանմահից եկեալ ուրուք
Ի թիկունս հասանիցէ տրովադացւոց կամ դանայեանց:
Այլ ոչ դէտ ոք զաչացու կայր Թագաւորն Երկրասասան'
Որ 'ի գըլուխ սըխրացեալ նըստէր մարտի պատերազմին
Ի բարձունս անդ ծայրից անտառախիտ սարոյն Սամեայ
Թրակեցւոյ, զի էր անդուստ ողջոյն Իդա երեւելի,
Երեւէր եւ Պրիամու քաղաքն եւ Նաւք աքայեցւոց:
Անդ ելեալ 'ի ծովէն նըստէր, գըթայր յաքայեցիս'
Տրովացւոց նըկուն եղեալս, եւ յոյժ ցասնոյր Արամազդայ:
Էջ անդէն փութանակի յապառաժուտ անտի լեռնէ
Ճեմըզճեմս ճեպ ընդ ճեպ. սարսէին սարք բարձունք անտառք
Ընդ անմահ գարշապարօք ընթացելոյն Պոսիդոնի:
Երրակի քայլըս պարզեալ' 'ի չորրորդումն եհաս 'ի կէան,
Ցէգաս' ուր էր ապարանք յատուկ ծովուն հոյակապեալ
Ոսկեղէն' լուսակարկաջ կայր կառուցեալ յաւէրժ անեղծ:
Անդր հասեալ' զպղնձասմբակ լծեաց 'ի դոյգսն զերիվարսն
Ըզօրաթռիչ, օդապարիկս' ոսկեգեղեամբ վարսագեղեալս.

Եւ նա ինքըն զիրանօքն ոսկի զգեցեալ, եւ ըզմըտրակն
Ոսկեկազմ՝ գեղայօրէն, եւ ամբարձաւ 'ի կառըս իւր:
Գընաց վարեալ ընդ ալիսն, եւ ընդ իւրեւ կայտռէին կէտք
Ցամենուստ 'ի Թաքըստից, եւ զարքայն ոչ զանխըլլացան.
Հերձանէր ծով ցընծութեամբ, Նոքա սըրարշաւ սըլանային,
Եւ ոչ ինչ 'ի ներքուստ Թանայր առանցըն պղընձաձոյլ.
Ածէին զինքն երիվարըքըն քաջավազք յաքայեանց նաւս:
Է քարայր մի լայնատարր յալըս ներքին խորոց ծովուն
Ի միջի անդ Տենեդեայ եւ Իմբրոսի առապարին.
Անդ հանգոյց զերիվարսըն Պոսիդոն երկրադըղորդ
Ի կառաց լուծեալ՝ արկեալ նոցա 'ի կեր զանմահ ճարակ:
Եւ ալընդեալ յոտըս նոցին 'ի ճախանոց սարիս ոսկի
Անլուծս՝ անխըզելիս, զի անդ անշարժ բնակեսցեն
Դառնալոյ Թագաւորին, ինքն յաքայեանց չոգաւ բանակ:
Բայց տրովեանք միախուռն, իբրեւ ըզբոց կամ ըզմըրրիկ,
Պրիամեանն Հեկտորի յետանգն անդուլ գնային ըզհետ
Մըռընչելով եւ գոչելով, եւ զաքայեանց յուսային նաւս
Ըմբռնել, եւ սատակել զաքայեցիս ողջոյն զաւեղեան:
Այլ սակայն Պոսիդոն աշխարհակալ երկրատատան
Ըստախոզէր զարգիացիսն, 'ի խոր ծովէն ելեալ հասեալ
Մարմնով եւ բուռըն ձայնիւ 'ի Կալքասայ նըմանութիւն.
Նախ յԷասըն երկոսին բարբառեցաւ յինքնայորդորս.
Էասեանք, ըզժողովուրդն աքայեցւոց դուք կեցուցջիք,
Յուշ ածեալ ըզքաջութիւն եւ մի զփախուստ խուճապական:
Զերկընչիմ ինչ ես այլուր յանպարտելի ձեռաց տրովեանց
Որ յախուռն ամբոխիւ անցին զանցին զմեծ պարըսպաւս,
Քանզի զդէմ կալցին հանուրց աքայեցիքըն բարձաղէնք:
Բայց աստ՝ յոյժ կասկածեմ Թէ գուցէ չար ինչ անցցէ'նդ մեզ,
Ուր Հեկտոր մոլեգնոտ բոցատեսիլ զօրավարէ,
Խըրոխտացեալ որդի լինել հզօրին Արամազդայ:
Այլ սակայն՝ զայս ոք 'ի գից արկցէ 'ի միտ ձեզ երկոցունց,
Զի ալընդ կացջիք դուք ինքնին եւ քաջալերս այլոց տաջիք,
Եւ լիջիք այսպէս վանել յերագընթաց լատատափոյթեկցդ
Ըզմոլեալըն անդադ՝ Թէպէտ եւ Ոլիմպեանն ինքն յարուցէ:
Ասացեալ զայս երկրակիր Գետնատատանն, եւ զերկոսին
Ջըռնեալ գաւազանաւն՝ ելից հուժկու կորովութեամբ,
Եւ զանդամսըն եդ Թեթեւս եւ զոտսն եւ զձեռսն 'ի վեր կուռէ:
Իսկ նա ինքն՝ երագաԹեւ իբրեւ բազէ սաւառնեցաւ,
Որ 'ի սեպ յապառաժուտ քարաժայռէն ընդոստուցեալ
Ընդ դաշտ խոյանայցէ ալընդել ըզհետ այլում Թըռչնոյ.
Պոսիդոն գետնադըղորդ նոյնպէս ալացաւ 'ի նոցանէն:
Եւ նախ 'ի նոցունց ծանեաւ Էաս շըյան Ոյլէան,

Որ խառնեալ ընդ նըմա՝ պաշտպան լինել ընկերատանան
Երագընթաց նաւակներոյն, այլ առ նոքօք կան կառօքն:
Բայց Թէպէտ եւ արդարեւ վըհատապարտ իցէ ըմբոշ
Դիւցազն Ատրիդեա ամենիշխանն Ագամեմնոն,
Այնու՝ զի զարագոտանըն Պեղէոսեան արհամարհեաց,
Ի կըռուոյս չէ ինչ երբեք ամենեւին Թողանեալ մեզ:
Այլ խընամ տարցուք ընդ փոյթ. զի լաւաց միտք են դիւրաբոյժ:
Եւ ձեզ ոչ 'ի դէպ կասել 'ի քաջամարտ արութենէ
Որոց էքդ 'ի բանակիս արուարագոյնք ամենեքեան:
Ոչ զըժնիմ ես ընդ այր վատ, որ 'ի մարտէն վէհերիցի.
Իսկ ընդ ձեզ՝ 'ի սրտէ ծանրագոյնս ցասումըն զայրացնիմ:
Ցոյլութեամբդ, ով կնամարդիք, մեծ եւս ընդ հուպ ածջիք զըվնաս.
Այլ արդ այր իւրաքանչիւր ըզպատկառանս եւ ըզպարսաւ
Աղէ դիք 'ի մըտի, զի կռիւ ահա բըրդեալ կայ մեծ:
Առ նաւուքն ահեղագոչն Հեկտոր 'ի մարտ մըխեալ հըզօր,
Ըզդըրունսն խորտակեալ եւ զպարըզանակն երկայնաձիգս:
Զայս խրախոյս տուեալ զարթոյց զաքայեցիս Երկըրապարփակն,
Եւ զԱյասօքն երկոքումբք կային կանգնեալ գունդք պընդակազմ,
Զորս եւ ոչ Արէս ինքնին անգըր գըտեալ անարգանէր ինչ,
Ոչ Աթենաս ամբոխագրգոյթ, զի այրընտիր քաջ նահատակք
Ընդ տրովեանց եւ դիւցազանն Հեկտորի 'նդ դէմ ճակատէին
Տէգ 'ի տէգ խիտ ընդ խիտ, ասպար յասպար, կորդք Թանձրախուռն.
Ի վահան յենոյր վահան եւ սաղաւարտ 'ի սաղաւարտ,
Եւ այր յայր, եւ ձիագէս ճօճեալ կորդակք խորանափայլք
Շըփէին ըզգագաթամբք. այնչափ հոծեալ կային 'նդ իրեարս,
Եւ նիզակք յոխորտ բազկացըն տատանեալ ծածանէին.
Եւ դիմեալ գնային ինքեանք բոցավառեալք 'ի կռիւ մարտի:
Նախ տրովեանքըն բախեցան կուռ, եւ Հեկտոր կարապետէր
Դէմ ընդդէմ շահատակեալ, եղեւնընդոստ իբր 'ի ժայռէ
Վէմ՝ զոր գետ 'ի գագաթանց անտի գըլեցէ հեղեղատաս՝
Խորտակեալ սաստիկ ուղխիւքն ըզկապարանս ժըռայրհ ժըռին,
Բարձրաթռիչ վազեւք ոստնոյ, եւ ընդ իւրեւ Թընդէն մայրիք.
Ինքն անխափան ժիր հոլովի մինչեւ հասցէ դաշտացն 'ի հարթ,
Եւ 'նդ ոլորտս այլ չըմտանէ անդէն, Թէպէտ յորդորամիտ.
Նոյն Հեկտոր սպառնայր 'ի սպառ՝ մինչ 'ի ծով անդըր Թեթեւով
Հասանել հարուածովք յաքայեցւոցն 'ի վըրանս եւ նաւս.
Այլ յորժամ կարծրակուռ գումարտակացըն պատահեաց,
Անդ կասեալ էառ ըղկայ. իսկ աքայեանց մանկունքն զինակ
Երկսայրի սուսերօք եւ նիզակօք հարկանելով
Վանեցին յինքեանց, եւ նա անդի տուեալ սասանեցաւ:
Եւ կարդաց ահեղագոչ առ տրոյացիսն հարեալ բողոք.
Տրովացիք, լիկիացիք եւ դարդանիք մերձամարտիկք,

Գնդ կոչէք, զիմ ոչ յերկար աքայեցիք կայցեն ընդդէմ,
Թէպէտ եւ ամբարտակ առնուր զանձինքս կազմեսցեն,
Այլ՝ անդի ասացեն, կարծեմ, 'ի նիզակես, թէ հաւատաեաւ
Ամենազօրն 'ի գլխ այրն. Հերայ դալրակաց զիս որոտողն:
Ցայս բարբառ կազդուրեցոյց ասընդկաց զհանուրց զոյժ եւ զուգիս.
Ընդ որս փըքայր ընթանայր Պրիամեան անդ Դէիփոբոս
Ցառաջոյ կալեալ խելմէ զասպարն համակ կարակնակերպ,
Ցառաջեալ թեթեւ ոտիւք եւ վահանաւ ամփածածուկ:
Եւ զնա բուռըն դէտ կալեալ փայլուն տիգին Մերիոնէս՝
Անվրիպեաց եհար յասպարն 'ի բոլորչի յարջասամորթ,
Բայց ընդ այն ոչ եւ յայնկոյս, այլ յոյժ կանխեալ յառաջագոյն
Անդէն խոկ 'ի բունեն բեկոտ բեկեալ նիզակն երկայն:
Իսկ Դէիփոբոս յանձնէն 'ի բաց կալեալ զվահանն արջառենի՝
Արտաթունդ լեալ յաշտէէն քաջասրտին Մերիոնեայ.
Բայց զինուորն այն խոյս տուեալ էանց անդրէն յընկերաց դաս,
Սրտամտեալ յոյժ ընդ վրիպել յաղթանակին ու՛նդ տիգին բեկ:
Եւ գնաց ընդ խորանաւն եւ ընդ քաշտիս աքայեցւոց՝
Առնուլ զայլ անդ մի երկայն՝ զոր 'ի վրանին բերում թողեալ:
Սակայն այլքն կռուէին եւ աղաղակ դաժեաց անհատ.
Եւ Տեւկրոս Տելամոնեան նախ առաջին ըսպան զայր մի,
Զիմբրիոս քաջազէն՝ ըզձիաձոխ Մենտորի ձեռ,
Ըզբնակեալն 'ի Պեդէոն՝ չեւ աքայեանց եկեալ մանկայն,
Եւ ունէր ըզՊրիամեայ դուստր հարձածին զՄեդեսիկաստէ:
Իսկ 'ի գալ զանայեցւոց ձօձձեմական նաւատորմին,
Ցնչիւն դարձեալ անդրէն՝ փառաւորէր 'ի տրովացիս,
Առ Պրիամու կայր բնակեալ, որ զինքն որդւոցըն զոյգ պատուէր:
Արդ ըզսա յերկայն նիզակ Տելամոնեանն որդի՛նդ ունկանքն
Հարեալ քարչեաց ըզգետնարգն, եւ նա նըման անկաւ հացւոյ,
Որ 'ի գագաթըն լերին երեւելւոյ 'ի հեռաստան
Պղնձով կտրեալ յերկիր ըզգերդ սաղարթուն ընկենուցու.
Սոյնպէս անկաւ, եւ զերբեւ պղնձաձամանակ շաչեցին զէնք:
Իսկ Տեւկրոս ընթացաւ՝ տրոփեալ ըզզէնսն առնուլ կապուտ.
Բայց Հեկտոր 'ի դիմեալն արձակեաց անդ փայլակնադէտ,
Զոր անդուստ տեսեալ խուսեաց նա մազապուր 'ի պղնձի տիգէն,
Եւ սա զորդին Ակտորեանըն Կտէատեայ զԱմփիմաքոս,
Որ եկեալ գայր 'ի ճակատ, եհար ընդ լանջըն գեղարդեամբ.
Եւ անկեալ՝ թընդիւն եհան, շառաչեցին զէնքըն զիւրեաւ:
Իսկ Հեկտոր՝ 'ի գըլխոյ մեծասրտին Ամփիմաքեայ՝
Դիմեաց խըլել զսաղաւարտըն յքրտնունս անդր ադուցեալ:
Խոյս 'ի խոյացեալն Հեկտոր ձըգեալ անդ շողշողուն
Չեհաս ինչ 'ի մարմինն՝ յահեղ պղնձի պատեալ համակ.
Եւ սակայն 'ի վահանին կոփեալ նորա պորտ կըմբաւոր՝

Մըղեաց հըզօր զօրութեամբ. նա յետս ընդդէմ առնելով նահանջ
Ցերկոցունց 'ի դիտականցն, եւ աքայեանք տարան զնաւս:
Իսկ զԱմփիմաք Ստիքիոս եւ զիւցազարմըն Մենեսթեւս՝
Իշխանք աթենացւոց՝ յաքայեցւոցն ածին բանակ.
Եւ զԻմբրիոս՝ Էասեանք նախանձաւորք յանձնէին մահու:
Որպէս զայծ 'ի գամփռանց բռնատէտանեաց առիւծք երկոքին
Յափըշտակեալ տանել զոխան ընդ թանձրաթուփ մացառուտս
Ամբարձեալ 'ի գետնոյ կալեալ 'ի վեր 'ի ծամելիս,
Նոյն ըզսա երկոցունց բարձեալ 'ի վեր զօր. Էասեանց՝
Արարին զէնապերծ, եւ զգլուխն 'ի գեղգ. պարանոցէն
Հատ խըղեաց Ոյլեանն՝ յԱմփիմաքեայ սակս ոխացեալ,
Եւ գըլորեալ զընդառեալ 'ի բազմամբոխ անդր արձակեաց,
Որ երթեալ փոշեթաւալ անկաւ առ ոտըն Հեկտորի:
Անդ յայնժամ զառնապէս Պոսիդոնին զայրացաւ սիրտ
Ընդ թոռինն անկանել 'ի սաստկացեալ պատերազմին.
Անց գընաց ըստ վըրանս եւ ըստ նաւակս աքայեցւոց՝
Խրախուսել ըզդանայեանս, եւ տըրովացւոց երկնէր չարիս:
Ել նըմին ընդ առաջ Իդոմենեւս կորովաւետ
Անդրէն դարձեալ յընկերէն՝ 'ի կըռուոյն այն ինչ եկեալ,
Ի թամբի սրունիցըն կարթ սուր պըղընձով վիրաւորէ,
Զոր ընկերըքն առին 'ի բաց. նա բժըշկաց տըւեալ պատուէր՝
Գայր 'ի վըրանըն ցանկութեամբ դարձ առնելոյ կըրկին 'ի մարտ:
Իսկ առ նա թագապանծոյն Երկրասասան բարբառեցաւ,
Թոասայ նըմանեալ՝ Անդրեմոնի որդւոյն՝ ձայնիւն,
Որ յամենայն 'ի Պղեւրոն եւ 'ի բարձուն Կալիդոնի
Էտովլեանց էր իշխեցող աստուածաբար յարգէն պատուեալ.
Յո՞ գնացին ըսպառնալիքն, Իդոմենեւս՝ կրետացւոց պետ,
Զոր մանկունք աքայեցւոց տրովադացւոցն ըսպառնային:
Եւ նըմա պատասխանի կրետեանց իշխանն Իդոմենեւս.
Ո՛վ Թոաս, չէք՝ որչափ ես համարիմ՝ մեղ դընել ումեք,
Քանզի եմք ամենեքին ուսեալ կըռուոյ պատերազմի.
Չունի երկիւղ զոք վատութեան, ոչ զանգաղեալ ոք հեղգութեամբ՝
Փախուցեալ խուսափէ 'ի գըժընդակ գուպարածէս,
Այլ Զըրուանեան հըզօրին՝ այսպէս թըւի հաճոյ եղեալ,
Վատափառ կորընչել աքայեցւոցս աստ յԱրգոսէ:
Բայց, Թոաս, քանզի էիր դու եւ յառաջն իսկ զօրամարտիկ,
Նա եւ զայլս ես յորդորես զոր տեսանես ոք թուլացեալ,
Մի եւ այժմ ինչ դադրէր, ձայնեա առիպեա զայլ ամենայն:
Պոսիդոն գետնադըղորդ դարձոյց առ նա պատասխանի.
Մի եւս այն այր 'ի Տրոյայ, Իդոմենեւս, դարձցի անդրէն,
Այլ խընձոյ լիցի շանց աստէն ձըգձեալ յառ եւ յապառ,
Որ յաւուրս աստ յայսմիկ կամաւ 'ի կախ ծուլասցի ոք:

Ուր արանց եւս յայտնագոյն արիութիւն յանդիմանի,
Ուր ակներեւ գայ 'ի լոյս առաքինին եւ վատասիրտ. —
Զի վատին՝ այլ ընդ այլոյ յեղափոխի գոյն երեսացն
Եւ հոգին ոչ անսասան նըստել 'ի սիրտըն հանդարտէ,
Այլ 'ի գուճըս կոր 'ի կոր անկեալ կըքի յերկոսին ոտս,
Եւ 'ի լանջս իւր սիրտն 'ի ներքս ուժգին թընդմամբ արոփէ վազեալ,
Զի համեալ կարծէ զօրհասն, եւ ատամունքըն կարկաչեն.
Իսկ քաջին՝ ոչ գոյն դիմաց շըրջի, ոչ մեծ ինչ գող գողայ՝
Ուր ուրեք դամ մի'նդ արանց անցեալ կայցէ 'ի դարանի,
Եւ տենչայ երթալ խառնել երագասուր 'ի դըժնեայ ռազմ. —
Ոչ եւ անդ ոք ըզքո սիրտ եւ ոչ ըզձեռս անգոսնեսցէ:
Զի հեռուստ թէ 'ի կըռուի հարցիս, կամ վէրս առցես մօտուստ,
Ոչ յետուստ 'ի պարանոցդ անկցի սըլաք կամ 'ի թիկանցդ,
Այլ կըրծից առաջեն պատահեսցէ կամ գանձակի
Մըղելոյդ դիմագրաւ ընդ գումարտակս ախոյենոյ:
Բայց արդ ծն, մի եւս այլ արձանացեալ խօսեսց հանգոյն
Զբանիւքս անկցուք, գուցէ ոք ամբարհաւաճս ըստգըտցէ զմեզ.
Այլ դու երթ 'ի խորանն եւ առ զաշտէն հաստահարուստ:
Զայս ասաց, եւ Մերիոն՝ սուր Արէսի համանմանեալ՝
Հապըշտապ 'ի վրանէն ըզպղընձի տէգն առեալ երթայ
Եւ ըզհետ ընթացաւ Իդոմենի՝ ձեռեալ 'ի կռիւ:
Որգունակ 'ի պատերազմ Արէս խաղայ մարդախոշոշն,
Եւ ընդ իւր երթայ սիրուն որդին Խուճապ հուժկու անահ,
Որ անգամ եւ զըրրտապինդ պատերազմօղն ահաբեկէ.
Երկոքեան 'ի Թրակիոյ յԷփիւրացիսն 'ի դէն վառեալք,
Եւ կամ 'ի Փլեգիանացըն մեծանձինս, այլ ոչ հըլուք
Երկոցուն եւըս կողմանց, միում եւեթ տուեալ ըզփառս.
Նոյնգունակ Մերիոնէս եւ Իդոմեն՝ արանց իշխանք՝
Խաղային 'ի մարտակռիւ՝ զինազարդեալք 'ի պղինձ հըրաշէկ:
Եւ առ նա նախ Մերիոն կանխեաց ըսկըզբն առնել խօսից.
Դեւկալիոնեանդ, յորմէ կուսէ եդիր 'ի մտի մըխել յամբոխն,
Արդեօք յաջմէ միախուռն զօրականին, թէ 'ի միջոյ,
Թէ'նդ ահեակ. զի ուստեք գեղավարսիցն աքայեցւոց
Ակն երբեք պակասելոյ չունիմ մարտի պատերազմիս:
Եւ նըմա պատասխանի կրետեանց իշխանն Իդոմենեւս.
Ի միջի անդ նաւկըներոյն ահա կան այլք ընդդիմակացք,
Երկոքին Էասք, Տեւկրոս՝ աքայեցւոցըս քաջաղեղն,
Ախոյեան եւ յոտընկաւ յետեզակալ գուպարածի.
Որք ըզնա եւ զամեհին անգամ 'ի կռիւ՝ կալցին աշխատ՝
Ըզհեկտորըն Պրիամեան, թէպէտ եւ բուռըն սաստկանդամ:
Խիստ իմն յոյժ լիցի նըմա, թէ եւ մոլեալ 'ի պատերազմ,
Ըզնոցայն 'ի պարտութիւն մատնեալ կորովն եւ զանյաղթ ձեռս՝

Հուր 'ի նաւս արկանել, թէ միայն ինքըն Զըրոնեան
Մի խանձող մի հրաբորբոք յերագաձեռ ընկեսցէ նաւս ։
Իսկ մարդոյ՝ չասացէ անդի Տելամոնեանըն մեծն Էաս,
Սա ուրեք մահկանացուի՝ որ զԴեմետրի քերս ուտիցէ,
Դըղընձով պատառելի եւ մեծամեծ բրաձաքարամբք ։
Նա եւ ոչ յԱքիլլեայ ասպանահատէն խուսեսցէ ինչ
Ցետեղակալ 'ի գուպար. իսկ ոտիւք չէք ընդ իւր մըրցել ։
Արդ դարձիր դու մեզ յանհեռակ զօրականերդ, զի՞նչ փոյթ առեցուք
Մեք ինչ ուրեք պարծանաց ընծայեցեմք շուք, թէ մեզ դք ։
Զայս ասաց, եւ Մերիոն՝ ժիր Արէսի զուգակերպիկ՝
Անց գընաց, մինչեւ հասին անդր 'ի բանակին ուր եւ հրաման ։
Իսկ նոցա զբոցանըշանն ուժով առեալ զԻդոմենեւս,
Ըշնա զէնըն եւ զարբանեակն՝ արուեստախառն հանդերձ զինուքն,
Հարեալ խըռախոյս ընդ ամբոխին՝ անկան 'ի նա միահամուռ.
Եւ նոցա՝ միահամեալ եկաց պայքար նաւացն 'ի վերջս ։
Եւ զօրէն իմն 'ի շըչող այսոց վարեալ ասանուսն մըրրիկք
Ցուտոր՝ յորում փոշի է գէղագէղ ընդ ճանապարհս,
Որ եւ անդէն ըղհօղոյն յարուցանեն մէգ թանձրամած,
Սոյնէս տոցուն խըռնեցաւ ճակատ, վառեալ 'ի սիրտս իւրեանց
Սատակել ըղմիմեանս 'ի սուր պղընձ անդ 'ի խազմին ։
Եւ մարտըն մարդածախ քըստմընեցաւ երկայն ատեգօք
Զորս 'ի ձեռին ունէին մարմնապատառս, եւ շող պղընձի
Շլացուցանէր զաչս՝ հատեալ 'ի փայլիփայլ զըլխանոցաց,
Ի գեռաջինջ պատենից եւ յասպարաց ճաճանչելոց
Ի գոռթելըն համագունդ. եւ անհնարին գոյր պընդասիրտ՝
Որ զձըդգունըն տեսեալ բերկրէր եւ ոչ ողբանայր ։
Բայց Զըրոնեան երկոքեան հըզօր որդիք երկպառակեալք՝
Արանցըն զխեցազանց պատրաստէին զըժնեայ երկունս ։
Արամազդ ընդ յաղթութեան կամէր տրովեանց եւ Հեկտորի,
Ըզքաջոտն Աքիլլեւս փառաւորել, սակայն չունէր
Ցանձին քնաւ զաքայատատ ազգն յԻլիոն կորուսանել,
Այլ Թետեայ զընէր շուք եւ ուժգնասիրտ նորին որդւոյն ։
Իսկ Պոսիդոն յորդորէր զարգիացիսն անցեալ 'ի մէջ
Ի սպիտակ ծովէն ելեալ գաղտ, եւ 'ի մտին բատըրջանայր
Ընդ պարտիլ նոցա տրովեանց, եւ յոյժ ցասնոյր Արամազդայ ։
Երկոցունց աղաքէն սերունդ էր նոյն, հայրենիք մի,
Բայց Արամազդ նախածին եւ բազմագէտ էր հանճարով.
Ցայն 'ի գէմս՝ եւ նա խորշէր կալ 'ի թիկունս յայտ համարձակ,
Իսկ 'ի գաղտնիս՝ ցանդ գըրգռէր զնոսին ընդ զօրն՝ այլակերպեալ ։
Արդ սոքա՝ զուժեղ կըռուոյն եւ զմիազօր գուպարածին
Շըրջեալ այսր անդր ըզկէտն ընդ երկոսին ձգեցին կողմանսն
Անխըզելի եւ անքակ, որ զյոլովից լուծ ըզծունկս ։

Արդ թէպէտ եւ աղէրսէկ, խրախոյս բարձեալ առ դանայիս,
Ոստուցեալ 'ի տրովացիսն ընկէց խուճապ Իդոմենեւս,
ԶՈթրիոնեւս ըսպանեալ՝ զեկեալ հասեալն 'ի Կաբեսեայ,
Որ գեռ այն ինչ 'ի համբաւ գոյր հետեւեալ պատերազմին,
Եւ խնդրէր զչըքնաղագեղն 'ի դըստերացըն Պրիամու
ԶԿասանդրէ՝ առանց օժտից. եւ խոստացեալ էր մեծ ինչ գործ,
Բռնաբար 'ի Տրոյիոյ վանել զորդիսն աքայեցւոց:
Եւ ծերունին Պրիամոս կապեալ էր բան եւ ակնարկեալ
Տալ նըմա, եւ նա 'ի յոյս խոստմանց նորին կայր ոգորէր:
Այլ 'ի նա փայլուն տիգաւն Իդոմենեւս կալեալ զէտոյն՝
Հար անվրէպ ըզսիգաքայլն, եւ պըղընձին զգեցեալ զըրահ
Չեղեւ ինչ բաւական, եւ յորովայն անդր հարըստեաց.
Նա թընդմամբ տապալեցաւ, եւ սա 'ի նա խըրոխտեալ ասէ.
Զքեզ արդարեւ, Ոթրիոնեւս, գովեմ քան զամենայն մահկանացուս,
Եթէ ստոյգ վըճարեսցես զոր ինչ ուխտեալդ ես զամենայն
Դարդանեան Պրիամոսի, որ եւ նա զդուստր իւր է խոստացեալ:
Զոր թէ մեր ինչ էր քեզ խոստովան լեալ՝ կատարէաք,
Ըզդուստր Ատրիդեսի զգեղեցկագեղըն մատուցեալ
Ածեալ քեզ յԱրգոսէ 'ի կընութիւն ամուսնութեան,
Թէ զԻլիոն չինաշխատ քաղաքն ընդ մեզ կործանէիր:
Այլ արի, առ ծովաշու նաւս յուխտ մըտցուք ըզհարսանեաց,
Քանզի բնաւ խնամախօսքըս չեմք անէրք ինչ անաղարք:
Զայս ասացեալ, զոտանէն առեալ զեւցաղն Իդոմենեւս
Ընդ ահեղ ռազմըն քարշեաց. այնժամ Ասիոս եղ վրէժխնդիր
Հետեւակ համբէտ ձիոցըն, զորս ունէր միշտ կառավարն
Առ ուսովքըն թաւալով, եւ նա ցանկայր յեւրում սըրտին
Հարկանել զԻդոմենեւս. կանխեաց եհար սա զնա տիգաւն
Ի կոկորդն ընդ կըլլափամբն, եւ ըզպըղընձին եհան թափանց:
Գըլորեցաւ նա զեւրդ կաղնի մի կործանեալ, կամ կաղամախ
Կամ շոճի բարձրաբուն՝ զոր 'ի լերինս հիւսանց մանկունք
Նորաթեկք հարին զակուօք՝ նաւափայտ եղեալ 'ի պէտս.
Այսպէս ձիոցն առաջի եւ կառաց նա տապաստ անկաւ
Կըրճելով զատամունսն եւ զարիւնաշաղ ըմբռնեալ հող:
Իսկ իւրում կառավարին, ապշեալ միտք զոր նախն ունէր,
Ոչ զօրեաց աճապարել 'ի թըշնամեացն ապրել ձեռաց
Ցետս ըզձիսըն դարձուցեալ, զոր մըրցանակաւն Անտիլոքոս
Հասեալ 'ի նա նիզակաւն ընդ մէջ շամփրեաց, եւ ոչ արգել
Պըղընձին զրահ զոր կըրէր, եւ հար վարեաց 'ի փոր նորա:
Եւ սա ինքն հեծեծելով 'ի գեղաշէն անկաւ զուգիցն,
Եւ զերիվարսն Անտիլոքոս՝ ձեռն մեծանձին Նեստորի՝
Ի տրովեանց անտի վարեաց 'ի քաջաբարձ աքայեցիսն:
Այլ տըրտմեալ զԱսիոսէ Դէիփոբոս եկն յԻդոմեն,

Ահագինս Իդոմենեւ խրոխտացեալ գոչեաց մեծաբարբառ.
Ուղիղ արդեօք դատեցիմք, Դէիփոբէ, հաւասարել
Ընդ միոյ երիս մահուանս, որ զի պարծիս դու իմն այդպէս:
Այլ, է խօլ, դու եւս ինքնին արի՛ մատիր ինձ ախոյեան,
Զի տեսցես՝ Արամազդայ ծնեալ որպիսի հասեալ կամ աստ,
Այն որ նախ ըզՄինոս ծնաւ Կրետեայ պահապան քաջ,
Եւ Մինոս ծնաւ որդի զըսքանչելին Դեւկալիոն,
Իսկ ծընաւ Դեւկալիոն զիս Թագաւոր արանց բազմաց
Ի Կրետէ ՚նդարձակատարր, եւ այժմ ածին նաւք աստանօր
Քեզ եւ հօր քում պատուհաս եւ համօրէն տրովադացւոց:
Զայս ասաց, եւ Դէիփոբոս յերկմիտս եղեալ վարանեցաւ,
Թէ առեա՛լ զոք զինակից ՚ի տրովացւոցն մեծանձանց
Ընդ կրունկ անդրէն դարձցի, թէ առանձ եկցէ ինքն ՚ի հանդէս:
Եւ ՚ի խորհուրդըս սըրտին՝ օգտակարն այս թուեցաւ նըմա,
Գըտանել առ Էնիաս, զոր գտեալ կացեալ գընդին ՚ի վերջ.
Զի քինայր ընդ գեղեցկին Պրիամու միշտ հանապազ,
Քանզի՚նդ արի առս ըզքաջն ոչ ՚ի պատիւ ինչ մեծարէր:
Որում մերձ հասեալ կացեալ՝ բարբառեցաւ ըզթըռչուն բանս.
Էնիաս, տրովկեանց իշխան, քեզ արդ քոյում պարտ է քեռայն
Հասանել յօգնութիւն, թէ հոգ խնամոյ փոյթ ինչ է քեզ:
Օ՛ն արի արդ ընդ իս՝ Ալկաթոյայ եկ ՚ի թիկունս,
Որ երբեմն ՚ի տղայ տիս սընոյց ըզքեզ ՚ի տան քեռայր,
Իսկ արդ զինքն Իդոմենեւս կորովատէգ հար սատակեաց:
Զայս ասաց, եւ ՚ի լանջըս նորա զսիրտն թընդեցոյց.
Եւ դիմեաց յԻդոմենեւս՝ եռանդնալից ՚ի պատերազմ:
Սակայն ոչ ահ ինչ կալաւ զԻդոմենեւս երբեւ զմանուկ,
Այլ եկաց, որպէս վարազ ոք ՚ի լերինս յուսացեալ յուժն,
Որ մընայ յարուցելոյ մեծի գընդի բազմամբոխից
Ցամայի ուրեք վայրի, եւ քըստմընէ զողն ՚ի վերուստ,
Աչք իւր հուր փայլակնանան եւ ըզժանիս իւր յեսանէ,
Մըամբռնեալ պաշտել վանել ըզշանս վոհմակն եւ զորսորդն:
Նոյնպէս կայր Իդոմենեւս նիզակաւորն եւ չըտայր խոյս
Ցէնեայ քաջամարտէ յարձակելոյ, ձայնէր ընկերս
Ակնարկեալ յԱսկաղափոս, ՚ի Դէիպիր եւ յԱփարեւս,
ՑԱնտիլոք ու՚ի Մերիոն՝ ՚ի հըմտամարտըս գուպարմանց.
Առ սոսա զերագաթեւ արձակեաց բանս յորդորական.
Օ՛ն արիք, սիրելիք, եւ օգնեցէք ինձ միայնումս.
Ցոյժ խիթամ յեկիցն Էնեայ երագոտին յիս դիմելոյ,
Որ հըզօրն է ըզօրութեամբ խոշոշել զարս ՚ի ճակատու,
Եւ ՚ի ծաղկի մանկութեան՝ որ մեծագոյն է զօրութիւն:
Զի սովին եթէ հասակաւ հասակակից պատահէաք,
Իսկ եւ իսկ՝ կամ նա տանէր պարծանըս մեծ, եւ կամ թէ ես:

Ցիգահար զրահաքօղ նորին խոցեալ, անկաւ անդ 'ի ձեռաց
Երկայնաձեւ սաղաւարտն, եւ ընդ գետնին հընչեաց բամբիւն։
Խոյացեալ Մերիոնէս անդրէն անգեղ նըմանաբար,
Ի ծայրէ բազկին խըլեալ ըզհաստատուն հանեալ նիզակ,
Խոյս յընկերացն ետ անդրէն խումբ։ Այլ հարազատն իւր Պօլիտէս
Ըզթեւս իւր ըզմիջով արկեալ նորին գըրկատարած,
Յահեղամարտանէ 'ի խաղմէն կորզեալ եհան 'ի սրաթեւ ձիան,
Որ 'ի յետս կուռէ մարտի պատերազմին կային նըմա
Կառավարաւն եւ կառօքն հանդերձ պաճուճ յօրինելովք·
Որ եւ զնեղն ըզցաւանահեծ հառաչըլեալն տարեալ գնային
Յոստան անդր, եւ արիւնն 'ի գետախոց հոսէր բազկէն։
Այլք կային կըռուէին եւ անհնարին գուժեաց գոռանն։
Անդ Էնեայ յարձակեալ՝ զԱփարեւս Կալետորեան
Զյինքըն կոյս դարձելոյն եհար ըզփող սուր պըղընձով·
Գլուխն անկաւ յայնկոյս եւ զհետ երթայր վահանն եւ սաղաւարտ,
Եւ հեղաւ ըզնովաւ ոգեպահանջիչ մահուն օրհաս։
Իսկ դիտակն Անտիլոքոս սլէր 'ի Թոոնն թիկնադարձոյ՝
Ոստուցեալ խոցեաց ըզնա, եւ բովանդակ խըզեաց զերակն՝
Որ ընդ ողնոյն ընթացեալ թիկունս եւ յուղն երթայ յանդիք·
Եհերձ զայն խաղաբաշտուն, նա 'ի փոշւոյն անկաւ յորսայս՝
Զերկոսին ձեռսն առ սիրուն ընկերակիցսն տարածեալ։
Անտիլոք, որք էր 'ի շուրջ, դիմեալ զերծայր յուսոյն ըզզէնսն,
Իսկ տրովաեանք, այլ ոք այլուստ՝ շուրջանակի արձանացեալք՝
Կոփէին յասպարն 'ի լայն՝ խայտառձամնակ, եւ չմարթէին
ԶԱնտիլոքեայ ըզմորթ փափուկ մըխել ցըռուկ ժանտ պըղընձով։
Զի յամենայն կողմանէ գետնադըղըրդըն Պոսիդոն
Ցերեկաց խուռն իսկ նետից ըզՆեստորի զորդին պահէր,
Որ յոսոխաց չէր ինչ փարատ, այլ 'ի նոսին ցանկարգեալ։
Ոչ նիզակ իւր դադարէր, այլ յամենայն ժամ յարաձօձ
Ընթանայր փաթորկացեալ, եւ ուշ եդեալ կայր 'ի սրտին
Կամ հեռուստ ըզք հարկանել, կամ դէմ 'ի դէմ գնալ շահատակ։
Սակայն մինչ իւր չեղեն զանխուլ յԱսեանն Ադամասայ,
Որոյ դիմեալ հասեալ մօտ՝ 'ի սայրասուր բախեաց պըղընձ
Զասպարն նորա զկուռն· այլ Պոսիդոն խափանէշահէր
Բըլթեցոյց ըզարըլաքն՝ յարեւ քաջին անխնայելով։
Եւ կէս նորա մընաց անդ 'ի վահանին Անտիլոքեայ
Իբր ըզձող ինչ խանձող, եւ կէսն անկեալ կայր ընդ գետնին։
Ինքն յընկերաց դարձ ընդ կըռուի յօրահասէն զերծեալ խուսեաց։
Զհետ ալընդեալ փախըստականին՝ եհար անխնայ Մերիոնէս
Ընդ արտ նորին եւ ընդ հարմ, ուր դառնադէր քան զամենայն
Անկանի եկեալ Արէս 'ի տառապեալ մահկանացուս։
Անդ վարեաց ըզնիզակն, եւ նա գըլորեալ ըզզէնիւ նորուն

Ցերկայն, 'ի քերածոյ, եւ 'ի նըմին հասեալ յերեսարս։
Սա զհօրեան թաւարաշ գըլխանոցին կոփեալ եհար
Ընդ ընչըռն զարդմանակէն, եւ նա զճակատ գխմեցելոյն
Ցաչամէջս 'ի տակ քըլթացն, եւ ճարճատեալ հերձան ոսկերըքն,
Աչքն առ ոտան արիւնահոս փոշեթաւալ անկան յերկիր։
Կործաւ 'ի գըլորելն, խակ նա 'ի կուրծան ոտամբն ելեալ
Ձերծ ըզզէնսն 'ի նմանէ եւ սխրալպանծ բարբառեցաւ.
Այսպէս աւրեմըն թողջիք զերագաձի գանայեանց նաւս,
Ամբարտաւան տրոյացիքը, 'ի գըժընդակ խաղին անյագք,
Անխապք յայլ խնդէք թըշնամանաց եւ յամօթոյ
Որով զինն այպանեցէք, շունք վատըրւթըք, եւ ոչ երկեայք
Սըրտիւք 'ի ծանըր վըխծուց որոտընդաստն Արամազդայ
Վանատրէն, այն որ երբեմն աւերեսցէ զբարձըր քաղաքդ։
Որ զնորատեր ամուսին եւ զըստացուածս իմ ըզբազում
Տարապարտ առեալ գնացէք՝ հիւրընկալեալք առ 'ի նմանէն։
Ձայրացնէք եւ արդ դարձեալ՝ ըղձավաչու նաւատորմիս
Հարկանել հուր սաստկէկ, եւ կոտորել զքաջազն աքեանս.
Այլ գայցէ ժամ՝ լըռեսջիք յորդորելոյդ, թէ եւ մոլեալք։
Արամազդ հայր, յիրաւի քան զայլս ասեն զքեզ զերիմաստ՝
Քան զմարդիկ եւ քան զաստուածս, այլ քեւ լինին այս ամենայն։
Որպէս այժմ խակ շընորհուկս առնես արանցըս հըպարտաց
Տրովացւոց, որոց ոգիք միշտ անօրէնք չմարթեն բըռնաւ
Ցագենալ 'ի կըռուոյ նըմանաձայն պատերազմին։
Է յագուրդ ամենայնի, եւս եւ քընոյ եւ սիրոյ խակ,
Եւ երգոց քաղցրութեան եւ կաքաւուց գերազանց,
Զորոց ըղձումն առաւել քան զմարտի ոք սիրէ լինել.
Իսկ դոքա տրովադացիքդ անյագելի են 'ի խաղն։
Ասացեալ զայս՝ եւ կապտեալ զարիւնոտ զէնսն 'ի մարմնոյն՝
Ա՛ռ աւար եւ ետ ցընկերսն հրաշալին Մենելաւոս,
Ինքն անդրէն դարձաւ գընաց ընդ նախամարտիկսն խառնեցաւ։
Անդ որդին գիմեաց 'ի նա Պիլեմենի թագաւորին
Հարպալիոն՝ որ սիրելոյ հօրն եկն ըզհետ 'ի մարտ Տրոյայ,
Եւ այլ ոչ դարձաւ անդրէն 'ի հայրենին իւր 'ի գաւառ.
Զի հասեալ եհար տիգաւ զմէջ վահանին Ատրիդեսի,
Բայց թափ ընդ այն ոչ բաւեալ անցուցանել ըզպղնձին ոճոյն՝
Ցընկերացն անդրէն 'ի գունդ խոյս ետ տալ 'ի մահուանէ,
Աչս ածեալ շուրջանակի՝ մի՛ զմարմինն ոք հարցէ զէնու։
Այլ Մերիոն՝ գնացելումն առաքեալ նետ պղընձակուռ,
Հար խոցեաց ըզգաւակն աջակողմեան, եւ եղ սըլաքն
Ի հանդիպոյ՝ թափանցանց ընդ աւաւուշոն ընդ ոսկերաւն։
Եւ անդէն ընդդըրմեալ 'ի սիրալիր հանճարոյց ձեռս,
Եւ փըչեալ զոգին՝ իբր որդըն տարածեալ կայր ընդ գետին,

Դէիփոբոյ եւ արքային Հելենոսի կորով եւեթ
Ի բաց եղեն վիրաւորք յերկայնաբուն նիզակաց աքեա
Երկոքեան 'ի թաթ ձեռին, այլ Զբրուանեանն հերքեաց ըզմահ:
Արդ վարեա՛ յոյժ ուրեք սիրտ քո եւ հոգի տայ քեզ հրաման,
Եւ մեք յօժարափոյթ զհետ եկեսցուք, զի ոչ կարծեմ
Կարօտել մեզ քաջութեանց, որչափ իցէ կար զօրութեան.
Իսկ 'ի վեր քան ըզկար՝ խիզախելովն իսկ չէք կռուել:
Ի սոյն յոյս բան դիւցազն հաւանեաց ըզմիտս եղբօր իւրոյ:
Եւ յարեան գնալ ուր մարտ էր սաստկագոյն եւ գուպարած,
Ուր իւրովքըն Կեբրիոն եւ հրաշալին Պուլիդամաս,
Եւ Փալկէս եւ Որթէոս եւ դիցանման Պոլիփիտէս,
Եւ Պալմիս եւ Ասկանիոս եւ Հիպպոտեան որդին Մորիս.
Որ եկին յարգաստաւորն Ասկանիոյ հեռաստանէ
Յառաջնում աւուրն, եւ յայնժամ Արամազդ գրգռեաց 'ի կռիւ:
Եւ սոքա մրրկի համգոյն ուժգին հողմոց ընթանային՝
Որ գայ 'ի դաշտ անկանի յորոտմանց հօրն Արամազդայ,
Եւ գղորդիւ ահագնաձայն խառնել 'ի ծով յառնեն կոհակք
Դէզղազէզ կուտակեալք 'ի բազմաղաղաջ ծովս անդընդոց,
Փրփրափայլք՝ փըքացուցեալք, այլք զայլս առեալ միմեանց ըզկնի.
Այսպէսնաւ տրոփագոյնք կուռ զիրերաց խռնեալ ըզհետ՝
Փայլատակեալք 'ի պղընձ խաղային զհետ զօրավարացն:
Եւ Հեկտոր Պրիամեան՝ մարդախոշոշ Արեայ համգոյն՝
Առաջնորդէր՝ առաջի զբոլորածիրն ասպար կալեալ
Զկարծրակուռն մորթովք եւ զբազմաթերթ պղընձապատ.
Եւ զխրանամբքըն շարժէր փայլակնացայտն սաղաւարտ:
Եւ ընդ այս կոյս եւ ընդ այն 'ի փորձ մատչէր առընխըլթի,
Թէ ուրեք տայցեն նըմա գունդքն՝ 'ի խաղալն ընդ վահանաւն.
Այլ ոչ սակայն խարխարեաց զոգիսն 'ի լանջս աքայեցւոց:
Եւ Էաս նախ մեծամեծս ընթացեալ արկ նըմին գըրգիռ.
Ցիս մատիր, քաջդ, էր այդպէս աքայեցւոց արկանես ահ.
Չեմք ինչ անհմուտ եւ անտեղեակ պատերազմի,
Այլ խիստ քըրքովքն Արամազդայ եղեաք նըկուն աքայեցիքս:
Ապաքէն ոգիդ 'ի քեզ յուսայ նաւացս ածել աւեր,
Սակայն են եւ մեր բազուկք 'ի պատրաստի վանել 'ի բաց:
Վաղագոյն՝ յաներկբայս՝ քաղաքըդ ձեր գեղեցկաշէնակ
Ի ձեռաց աստի մերոց առեալ աղարտ վարեսցի:
Եւ քեզ ինքեան մերձ լինել ասեմ ըզժամն յոր փախուցեալ,
Աղերս հօրն Արամազդայ եւ անմահիցն արկցես այլոց,
Զի պերճաբաշ երիվարքըդ քան զբազէս լիցին արագթռիչ՝
Ի քաղաքն ըզքեզ տանել փոթորկելով զփոշին ընդ դաշտ:
Ընդ խօսել նորա զայս՝ թըռեաւ զգըլխովն հաւ աջողակ՝
Արծուի բարձրաթռիչ, եւ ձայն եբարձ գունդքն աքայեան

Ի հմայեցն առեալ խրախոյս, եւ մեծն Հեկտոր կրկնեաց ընդդէմ.
  Այաս, ունայնաբան յոխորտապանծ, զի՞նչ խօսեցար.
Տա՜յր ոք ինձ՝ այնպէս որդի վահանագրոշն Արամազդայ
Լինել զաւուրս ամենայն, եւ նազելայն Հերայի ծնունդ,
Եւ պատիւ գտանել իբր Աթենաս եւ Ապողոն,
Որպէս օրս այս ածիցէ արգիւացւոց հանուրց ոճիր։
Եւ դու ինքն ընդ նոսին սատակեսցիս, թէ իշխեսցես
Կալ մընալ երկայն տիգիս՝ որ յօշեսցէ զմարմինդ տաւոյդ,
Եւ ըզշունս եւ ըզթըռչունս յագեցուսցես ըզտրովացւոց
Ճարպովդ եւ շաղղով զաքայեցւոց անկեալ նաւուք։
  Զայս բարբառ արձակեալ՝ կարապետէր, նոքա գրոհիւ
Զհետ փողէին ահագին գոռմամբ, յետուստ գոչէր ամբոխն.
Եւ անդուստ արգիւացիք ձայն առ նոցա կրկնէին ձայնս,
Արութիւն 'ի մտի՝ մնալով տրովեանց քաջացըն խուժելոց։
Աստի անտի հասին գոռք յարփին ու՛ի նշոյլս Արամազդայ։

837



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Նեստորի առեալ զխօշելն մարտին՝ ելանէ գնայ առ Ագամեմնոն խորհել զվտանգէն ուրեանց. Նա դարձեալ խորհուրդ տայ 'ի փախուստ աճապարել. Ոդիսեւս ընդդէմ կայ, Դիոմեդէս խրատ տայ՝ վիրաւոր իշխանացն ելանել եբեւել բանակին 'ի խորախոյս մարտկացն, անդուստ եւ Պատրոկղոն եւս քաջալերէ զնոսա: Յայնմ վայրի առեալ Հերայի յԱստղկանէն զլանջագեղ կամար նորա՝ զարդարեալ երթայ առ Արամազդ յԻդա լերին՝ խաբել զնա 'ի ձեռն Քնոյ: Մինչդեռ նա 'ի քուն առնէր զայր իւր ընդ իւր, Պոսիդոն համարձակ զօրավիգն կայ Յունաց 'ի հարուածս տրովացւոց, մինչեւ Հեկտոր անդամ հարկանի սաստիկ քարիւ 'ի Տելամոնեանն Էասայ, եւ կիսամահ բառնան տանին զքաջն 'ի քաղաքն կոյս:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ՉՈՐԵՔՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԱՐԱՄԱԶԴԵԱՅ ԽԱԲԿԱՆՔ

*Ոչ զանխուլ եկաց խուչիւնն 'ի Նեստորէ, թէպէտ յըմպել էր,*
*Այլ բանիւք առ Ասկղեպեանն՝ երագախօս բարբառեցաւ.*
*Տես զելեւանելոց, Մաքաւոն, իրքս այս գործոց վախճանեսցին.*
*Զօրացաւ գոչիւն առոյգ պատանեկաց առ նաւակներոյն:*
*Սակայն նիստ դու աստանօր, արբ ըմպելիքդ սեւատեսակ,*
*Մինչեւ ջերմին լոգարանս Հեկամեդէ գեղեցկածամ*
*Ջեռուցեալ լուասցէ 'ի քէն զարիւնն եւ զապաժոյժ.*
*Իսկ երթեալ 'ի դիտանոցն՝ եղէց փութով ես խելամուտ:*
*Զհետ բանիցն՝ եբարձ զասպարն արուեստակերտ որդւոյն իւրոյ*
*Զձիամարզ Թրասիմեդեայն՝ որ կայր շողայր պղնձափայլ 'ի վրանին.*
*Իսկ նորա՝ առանձնեալ ըզհօրն իւրոյ վահանն էր եւ գնացեալ:*
*Եւ զնիզակն առեալ հզօր՝ զի սայրասուր սրեցեալ պղնձին,*
*Ել եկաց ըստ խորանն, ետես անդէն զանարգութեան գործ,*
*Աղմկեալս ըզնոսին, եւ 'ի թիկանցն հալածեալ խուճապ*
*Ըզպարծեալսն մրմռեալս, եւ զաքայեանց քանդեալ պատնէշ:*
*Որպէս յորժամ մեծածաւալն մըթագնի ծով խուլ կոհակօք,*
*Գուշակեալ այնուիւ զշնչող այսոց զընթացս երագաձեւս,*
*Եւ անշարժ է աստուածն՝ յայս եւ կամ յայն կողս անթաւալ,*
*Մինչեւ հողմ ինչ առնէ սերտ յԱրամազդայ իջանիցէ.*
*Այսպէս ծըփէր ալեւորն 'ի միտս իւր հերձեալ յերկուս,*
*Թէ 'ի գունդն երթիցէ երագաձի դանայեցւոց,*
*Թէ արդեօք առ Ատրիդեան Ագամեմնոն հովիւն ազանց:*
*Եւ այս նմա 'ի խորհրդոց իւր օգտակարագոյն երեւեցաւ,*
*Գընալ յԱտրիդ. իսկ նոքա մարտիւ զմիմեանս սատակէին,*

Եւ պղինձն անմըկանդ զմարմինովք իւրեանց շուրջ զանգաչէր
Ի զարկուածըս սուսերացն եւ գեղարդանցըն երկայրից ։
Նեստորի՝ Թագաւորունքըն դիւցազանունդք դիպան 'գաւառ
Ի նաւացն ելեալք 'ի դուրս, որ վիրաւորքն էին պղընձով,
Տիդեանն եւ Ոդիսեւս եւ Ատրիդէսն Ագամեմնոն ։
Քանզի յոյժ մեկուսի քարշեալ կային նաւքն 'ի կըռուոյն
Զըսպիտակ ծովուն ափամբ. զի առաջինքըն մինչ 'ի դիւրըն
Էին հանեալ, եւ զնեկաշք նոցին պատուարն էր կառուցեալ ։
Զի եւ չէր ինչ չէր հըննար Թէպէտ եւ լայն ծովեզերին
Զամենայն տանել ըզնաւս, եւ նեղէին զօրքն 'ի յանձկի,
Ցայն ազագս՝ աշտիճանեալ ձըգեալ էին, լըցեալ ողջոյն
Զերկայն բերան ծովափին՝ որչափ տանէր ծագէ 'ի ծագ ։
Արդ սոցա ցանկացեալ 'ի տես խաղմին եւ ճակատուն՝
Ի նիզակն յեցեալ գնային կուռ, եւ ողիքն 'ի լանջս իւրեանց
Տըրտմագին էին յոյժ. որոց դիպեալ ծերըն Նեստոր
Ըզսիրտս 'ի լանջըս նոցին զարհուրեցոյց զաքայեցւոց ։
Եւ առ նա բարբառեալ ասէ արքայն Ագամեմնոն.
Ո՛վ Նեղէանդդ Նեստոր, աքայեցւոց պարծանքըդ մեծ,
Ըզի՞մ Թողեալ ըզպատերազմըն մարդածախ՝ այսր հասեալ գաս ։
Կասկածեմ՝ գուցէ հըզօրն Հեկտոր ըզբանն 'ի լըռումն ածցէ
Զոր երբեմն ըսպառնացաւ յատեան տրովեանց ճառանգեալ,
Մի՛ դառնալ 'ի նաւաց աստի անդրէն յետս յԻլիոն՝
Մինչ չեւ հըրձիգ արարեալ զնաւկոյկս եւ զմեզ սպանեալ անգէն.
Այսպէս նա ճառ արկանէր, արդ ամենայն 'ի գլուխ երթայ ։
Ո՛վ դիք, աշա եւ այլ աքայեցիքս առոյգապարտք
Ոխակալ ընդ իս եղեալ 'ի սիրտս իւրեանց իբր Աքիլլէս՝
Ոչ կամին կալ կըռուել յետուստ կուսէ նաւաստորմին ։
Եա նըմա պատասխանի Նեստոր ասպետըն Գերենեան.
Արդարեւ խակ այդըքիկ յարդիւնս եկին, ոչ այլ իմն ազգ
Ամպորոտն խակ Արամազդ ինքնին փոխել ինչ գիտասցէ ։
Զի պատնէշ պատուարիս տապալեցաւ՝ յոր յուսայաք
Նաւկներոյս եւ մեզ ինքեանց լինել ամուր ապաւէնի ։
Իսկ սոքա զերագ քաշտեօքս անդուլ մըղեն մարտ անձնուէր,
Մինչեւ ո՛չ եւս իմանալ, Թէպէտ եւ մանր ակն դիցես,
Յորմէ կուսէ խուճապեալ տագնապեցեն աքայեցիք.
Այնպէս խառըն կոտորին, եւ աղաղակն յերկինս հեցի ։
Աղէ մեք տեսցուք խորհուրդ, եթէ այսմ իրաց լիցի վըճար,
Եթէ միտք են ինչ կարող. չասեմ 'ի կռիւ մըտանել մեզ,
Զի չմարթի ուրեք երբեք վիրաւորի տալ պատերազմ ։
Եւ առ նա կըրկնեաց անդրէն արանց արքայն Ագամեմնոն.
Քանզի, Նեստոր, ըզնեկաշք նաւացս 'ի վէգ մատուցեալ կան,
Ոչ պարիսպըդ կառուցեալ եւ ոչ Թէ փոսդ օգնեցին ինչ,

Յոր բազում եղեն աշխատ դանայեցիք յոյս 'ի սրտի
Նաւակներոյն եւ անձանց լինել ամուր եւ ապաւէն.
Այսպէս ինչ գերագօրին Արամազդայ հաճոյ թուեցեալ՝
Անանուն յԱրգոսէ կորնչել աստ աքայեցւոց։
Գիտէի մինչ մըտադիւր դանայեցւոց կայր զօրավիգն,
Իսկ զարդիս տեսանեմ՝ զի զնոսա զոյգ դիցն երջանկաց
Փառաւոր առնէ, եւ զմեր կապեաց ըզձեռս եւ ըզկորով։
Այլ եկայք, որ զինչ ասեմս յանձին կալցուք ամենեքեան.
Որ միանգամ հուպ 'ի ծովու յառաջակարգք հանեալ կան նաւք,
Քարշեալ զամենայն արկցուք 'ի ծովն աստուածային,
Եւ 'ի խորս անդ խարսխել, մինչեւ գայցէ գիշերն անմահ,
Եթէ եւ յայնժամ ինչ կասցեն տրովադացիք 'ի կռուելոյ,
Ապա եւ զայլ նաւատորմն առ հասարակ առեալ արկցուք։
Զի եւ ոչ գիշերախառն առ 'ի չարեաց փախուստ է ստգիւտ.
Լաւ է զերծուլ 'ի չարէն փախըստական, քան ըմբռնիլ։
Հանճարեղն Ոդիսեւս ասէ առ նա խոժոռադէմ.
Որպիսի բան, Ատրիդէս, ընդ ատամանցդ ել թռեաւ ցանկ։
Չուառականդ, իցիւ այլում կայեր գընդի հրամանատար,
Եւ ոչ մեզ ինչ իշխէիր՝ որց Արամազդ ետ յանդ հանել
Դըժընդակ պատերազմունս 'ի տղայ տիոցս եւ յալեւոյթ,
Մինչեւ մեք ամենեքին բոլորովին ըսպառեսցուք։
Այսպէս իմն արկեր 'ի միտ, ըզլայնուղին տրովեանց քաղաք
Լքանել թողուլ՝ յոյր սակս տառապիմք բազում երկամբք։
Լռեա լեր, մի եւս ոք այլ յաքայեցւոց լուիցէ զայդ բան,
Զոր եւ ոչ 'ի բերան ոք առնուցու՝ որ այրն իցէ,
Եւ գիտիցէ 'ի մըտին խօսել առողջ բան կատարուն,
Եւ իցէ մականակիր, եւ զօրք ըզհետ գնայցեն այնչափ,
Որչափիկ դու 'ի վերայ Թագաւորես արգիացւոց։
Եւ արդ այժըմ պարսաւեմ զոր պատմեցեր զմըտացդ իմաստ.
Զի հրամայես աստ 'ի խառնուրդ հասեալ մարտի պատերազմիս՝
Զգեղատախտ նաւսն արկանել 'ի ծով, զի յոյժ տրովեանց տենչումն
Ի գլուխ երթեալ յանկիցի նոցին արդէն իսկ յաղթողաց,
Եւ 'ի մեզ սատակումն անկանիցի չարախտաւոր։
Զի յածել քաշեսցեն 'ի ծով, ոչ եւս աքեանք կայցեն 'ի կռիւ,
Այլ զաչս 'ի բաց դարձուցեալ՝ տեղի տայցեն 'ի ճակատէն.
Յայնժամ քո խորհուրդդ յեղեալն լինիցի, ազանց իշխանդ։
Եւ անդրէն պատասխանի արքայն արանց Ագամեմնոն.
Ո՛վ Ոդիսեւս, զիս կարի յոգի հարեր ծանըր սաստիւդ.
Սակայն ոչ եթէ ես յակամայ կամս ինչ տամ պատուէր
Զգեղատախտ մակոյկս 'ի ծով ձգել որդւոցդ աքայեցւոց։
Արդ լիցի ոք ցուցանել քան զայս խորհուրդ ինչ պիտանի,
Երիտասարդ թէ հին աւուրց, ըղջմըտութեամբ ողջունեցից։

Խօսեցաւ ընդ նոսա Դիոմեդէսն ահեղագոռ .
Մերձ է այրն, ոչ խնդրեսցուք յերկար, լսել թէ կամիցիք,
Եւ մի՛ քինու յաշաղել անդստանեսջիք իւրաքանչիւր,
Ցայն 'ի դէմս՝ որ զի տիովք կրտսերագոյն եմ 'ի մէջ ձեր :
Այլ 'ի հօրէ 'ի քաջէ պանծամ եւ ես լինել սերունդ,
Ի Տիդեայ՝ զոր հողակոյտն անդ 'ի Թեբէ խաղաղեաց :
Զի երեք Պորթեւսի ծընան որդիք ընտրելականք,
Ի Պլեւրոնի բնակաւորք եւ 'ի բարձունն Կալիդոնի,
Ագրիոս եւ Մելաս, եւ էր երրորդ Ինեւսն ասպետ,
Հայր իմոյ հօրն, արութեամբ գեր 'ի վերոյ նոցունց անցեալ :
Այլ սորա մնացեալ անդէն, հայրն իմ յԱրգոս բնակեաց յաջսոր .
Քանզի այս Ադրաստեայ եւ աստուածոցն այլոց էր կամ :
Եւ ած կին 'ի դըստերացն Ադրեստոսի, եւ նըստեալ կայր
Ցընչաւէտ տանն, եւ էին իւր անդք յոլովք ցորենաբերք,
Եւ բազում էին զըրախտք շուրջանակի դարաստանաց,
Եւ խաշինք էին յոգունք, եւ զանցանէր 'ի տէգ նիզակ
Զհամօրէն աքայեցւովք . զոր ձեզ լսել զայս հաւաստեաւ :
Եւ արդ մի՛ առ վատազգիս զիս աննարիս համարելով
Խոտեսջիք զխրատականխօս բանս որ ցուցից ըստուգութեամբ :
Օ՛ն եկայք, թէպէտ եւ խոցք, գնասցուք 'ի կռիւն առ վըտանգին,
Անդ ապա 'ի նետից կացեալ բացէ խաղմին ընթեր,
Զի մի՛ վէրս 'ի վերայ վիրաց դուցէ ոք առնուցու,
Խրախուսեալ յորդորեսցուք զայլս որ արդէն ըստ կամս անձանց
Ըստ մըտաց գիւրի անցեալ կան մեկուսի, մարտընչէին ոչ :
Զայս ասաց, եւ ունկն եդեալ նոցա մտադիւր հաւան եղեն .
Խաղացին գնացին, եւ դըլուխ կայր ոգեան արանց Ագամեմնոն :
Ոչ վրիպեաց յականէ դքանչելափառ Գետնադղորդին,
Այլ մատեաւ եկն առ նոսա՝ հնօրէի տարըն հանդոյն,
Զձեռանէն կալեալ զաջոյ զԱգամեմնոն Ատրիդեսի,
Եւ յանուանէ կարդացեալ՝ բարբառեցաւ արաթեւ բանիւք .
Ատրիդէս, այժմ օն եւ օն Աքիլլեայ սիրտըն ժանտաժուռ
Խայտայ 'ի լանջս իւր՝ գիտեալ զաքեանց նախճիրս եւ ըղձփախուստ,
Որ զի չիք ինչ 'ի նմին ըղջմտութիւն եւ ոչ խոհն մի,
Բայց ինքն այսպէս կորիցէ, աստուած նըկուն արասցէ զինքն :
Իսկ ընդ քեզ՝ ոչ մինչ 'ի բուռն ցասմամբ են դիքն երջանիկք .
Այլ տըամեանցըն վերըստին ըսպարապետք եւ առաջնորդք
Ի փոշի փոթորկեսցեն ըղդաշտըն լայն, եւ դու տեսցես
Փախըստեայս զնոսին յաստանն 'ի նաւէկերայց եւ 'ի վըրանաց :
Ասացեալ՝ գոչեաց ուժգին՝ յարձակ յարձակ դիմեալ ընդ դիւրն .
Եւ որչափ ինչ ինն հազարք կամ հազարք տասն հարկանեն գոռա
Արք 'ի մարտ պատերազմի յարձակման խըմբեալք գումարը,
Ձայն ըղձոյն չափ 'ի լանջացն ընկէց աջքոյն երկրատասպան,

Ետ նըմա պատասխանի Արամազդայ դուստրըն Աստղիկ.
Մեծարոյդ աստուածուհի, Հերա, մեծին Զրուանայ դուստր,
Աղէ ասա զոր խորհիս, 'ի կատարել սիրտս յօժարէ,
Թէ կարող եմ վըճարել, եւ թէ հնարին իցէ ինչ այն։
Եւ առ նա պատկառելին Հերա նենգաւ բարբառեցաւ.
Տուր ինձ այսր այժմիկ ըզսէր եւ ըզորսափումն որով պարտես
Ըզբընաւ անմահըն դու եւ ըզմարդիկ մահկանացուս։
Քանզի այց գընամ առնել 'ի բիւրաբեր երկրի սահմանս,
Եւ առ ծընօղն աստուածոց Ովկիանոս, եւ մայր Տեթիս,
Որ բարուք զիս սընուցեալ 'ի տան իւրեանց դայեկեցին
Ընկալեալ 'ի Ռեայ, մինչ ըզԶըրուան գոռոզն Որմիզդ
Ի ստորին անդընդամէտս ընկէց երկրի անբեր ծովուն։
Ըզնոսա գնամ տեսանել եւ զանվըճար դատել պայքարսն,
Որ յերկար ժամանակաց ահա հեռացեալ կան 'ի միմեանց
Ցանկողնոց եւ 'ի սիրոյ, զի բարկութիւն յոգիսն անկաւ։
Եթէ զսիրտսըն համոզեալ ածեալ բանիւքս 'ի հաճութիւն
Ցանկողինսըն դարձուցից զուգաւորել սիրելութեամբ,
Միշտ նոցին սիրելի եւ նազելի անուանեցիմ։
Կըրկնեալ առ նա վերըստին ասէ Աստղիկըն ծաղրասէր.
Չէ ինչ մարթ եւ ոչ օրէն՝ լինել 'ի քո բանիցդ յուրաստ,
Զի արուոյն եւ հըզօրին Արամազդայ ննջես 'ի գիրկս։
Ասաց, եւ 'ի լանջացըն զազընեգործն ելոյծ կամար,
Ըզնըրկարէն գեղեցիկ, ուր բնաւ հրապոյրք իւր կային կազմ.
Անդ է սէր եւ տըռփումն, անդ ամուսնաց խօսից մըրմունջք,
Ցորդորումն՝ որ զիմաստնոցն իսկ գողացաւ զուշ եւ զուրուշ։
Զայն 'ի ձեռս արկ նորա եւ բարբառեալ զայս խօսեցաւ.
Առ ընկալ արդ, դիր 'ի ծոց քում ըզկամարդ նըկարէն,
Ցորում կան ամենայն ինչ յօրինեալ, եւ ոչ կարծեմ
Թէ անգործ դարձցիս այսրէն յորոց 'ի միտ քում որոճես։
Զայս ասաց, եւ ժըմտեցաւ աչեղն Հերա վեհապատիւ,
Եւ 'ի ժըմտելն անդ առեալ էարկ անդէն 'ի ծոց իւրում։
Աստղիկ դուստր Արամազդայ ելեալ գընաց յիւր ապարանս.
Իսկ Հերայ խոյացեալ՝ զոլիմպականն եթող կատար,
Եւ սլացեալ ըզՊիերեաւ եւ զԷմաթեայն սիրելով,
Անցանէր ըզձիւնեղէն լերամբք Թրակաց ձիաւորաց,
Զբարձրաբերձ գագաթամբք, եւ ոչ ոտիւքն հըպեալ յերկիր.
Եւ յԱթոս լեռնէ գնացեալ՝ եկն էջ 'ի ծով կոհակաւէտ,
Եւ եհաս 'ի Լեմնոս՝ 'ի Թոասայ վեհին քաղաք։
Անդ Քընոյն հանդիպեցաւ հարազատի Մահուն եղբօր,
Եւ ձեռն 'ի ձեռըն խառնեալ՝ կարդաց զանուն իւր եւ ասէ.
Քուն, իշխան բոլորեցուն դից եւ մարդկան առ հասարակ,
Լըսեր ապաքէն բանիս երբեմն, անսա եւ այժմ,

Եւ ես՝ զամենայն աւուրս եղէց քեզ շնորհակալ։
Ե՛կ ինձ Թըմբրեա զըլուարթ աչերն Արամազդայ՚նդ արտեւանամբքն
Անդէն եւ անդ 'ի ննջել խմոււմ սիրով 'ի գիրկըս իւր։
Գահ մի տաց քեզ 'ի պարգեւս՝ ընտիր, ոսկի, յաւէրժ անեղծ,
Զոր որդեակն իմ Հեփեստոս՝ կաղ յերկոցունց ոտիցն իւրոց՝
Վաստակեալ յօրինեսցէ, եւ պատուանդան արկցէ՚նդ ոտիւք,
Ուր զմաքուր Թաթսըդ դիցես 'ի խընճոյից բազմել խրախճանս։
Զայն առ նա՝ քաղցըր Քընոյն արձակեալ ես պատասխանի.
Մեծաշուք աստուածուհիդ, Հերա, մեծին Զըրուանայ դուստր,
Ցայլ ոք ինձ դիցն յաւէրժից դիւրին իցէ արկանել նիրհ,
Եւս եւ 'ի նոյն իսկ յորձանս ուղխից գետոյն Ովկիանու,
Որ եւ է իսկ ծընող բոլորեցունց առ հասարակ.
Սակայն ոչ 'ի Զըրուանեանն Արամազդ մօտ իմ՛ երթայց ես,
Ոչ Թըմբիր ինչ ածից, մինչ չեւ ինչ իւր տըւեալ հրաման։
Զի եւ այլ ուրեմն երբեմն ըղձօնացոյց զիս քո պատուէր,
Ցաւուրն՝ յորում մեծամեծըն որդեկին Արամազդայ
Ըզպարտեանց քանդեալ քաղաք՝ նաւեալ դընայր յԻլիոնէ։
Քանզի զմիտս ամպարակիրին Արամազդայ ննջեցուցի
Քաղցըր հեղեալ զնըլու, եւ դու նենգ երկնէիր նըմա 'ի սիրտ
Ցարուցեալ ըզհողմոցըն դըժնեից շընչմունս 'ի ծովս.
Եւ ապա 'ի Կոս ըզնա տարեալ հանէեր 'ի չքնաղիտս,
Թափուր 'ի բնաւ սիրելեացն. իսկ զարթուցեալ նա սըրտմըտէր,
Վըրդովէր ըզդիս ընդ տունն, ինձ քան այլոց 'ի խընդիր լեալ։
Եւ կալեալ զիս ըզչէքս՝ յարփւոյն 'ի ծով ընկենոյր խոր,
Եթէ չէր փըրկեալ Գիշեր՝ տիրող մարդկան եւ աստուածոց՝
Յոր անկայ փախըստեայ, եւ ինքն եկաց լի բարկութեամբ,
Ահն ածեալ չաւնել երագ Գիշերոյն գործ ինչ դըժկամակ.
Եւ արդ զարձեալ զայս յանհնարից ինչ հրամայես ինձ կատարել։
Կըրկնեաց առ նա վերըստին մեծապատիւ աչեղն Հերա.
Զի՞ է, Քուն, զայդոսիկ ածել զարդիս քեզ ըզմըտաւ.
ԶԱրամազդ որոտագոչ ա՞յնպէս Տըովեանց կարծես տեսուչ,
Զոր օրինակ ցասուցեա՞լն էր վասն որդւոյն իւր Հերակլի։
Այլ արի՛, եւ ես ըզմին քեզ 'ի Շնորհաց մանկագունից
Տաց ածել 'ի հարսնութիւն եւ յամուսին քեզ անուանել,
ԶՊասիթէէ, զորմէ կըղկաթ ես կաթոգի զօր ամենայն։
Զայս ասաց, խընդաց Քունն, եւ յաւելեալ կըրկնեաց անդրէն.
Հա՛մա եկ ինձ արդ երդուիր 'ի Ստիգեայ ջուրսն անդըրժելիս,
Զեռամբըդ միով կալեալ զերկիր բիւրաբեղուն,
Միւսովդ ըզծով լուսակարկաջ, զի մեզ վըկայ լիցին հանուրք
Որ 'ի խոր սանդարամետս ըզԶըրուանաւն իցեն աստուածք,
Ի Շնորհացն ինձ ըզմի մանկագունից տալ ըստուգիւ,
ԶՊասիթէէ, յորում եւըն տըռփանամ զօրհանապազ։

Զայս ասաց, լըւաւ Հերա լուսածըղին աստուածուհի,
Եւ երդնոյր ըստ խնդրոյն, եւ ըզհամօրէն անուանէր զնս
Որ 'ի ստոր սանդարամետս, եւ Տիտանեայքն են յորջորջեալ:
Իսկ մինչ եղեւ երդմընն եւ հան 'ի գլուխ զերդմանն օրէն,
Երկոքեան գնացին Լեմնեայ եւ զԻմբրոսի թողեալ զքաղքն,
Ըզգեցեալ մէգ զմարմնովք եւ ժիր զընթացքն վճարեցին:
Եւ հասին 'ի բիւրաղբեան Իդա, 'ի մայրըն գազանաց,
Ի Լեկտոն, ուր 'ի ծովէն ելեալ գնային նախ ընդ ցամաք,
Եւ գլխոյ ծայրից մայրւոյն սասանէին 'ոտիւք նոցին:
Կաց մընաց Քունն անդէն, Արամազդայ չեւ յաչս անկեալ,
Ցեղեւնին մի բարձրաբերձ ելեալ՝ որ անդ յայնժամ յԻդա՝
Բուսեալ երկայնաղէզ՝ ընդ օդս յարփին երթեալ կցէր.
Անդ նըստաւ նա թաքուցեալ 'ի թանձրաթաւ ոստս եղեւնեայ,
Քաղցրաձայն հաւուն նըման՝ որում 'ի սարս անդ 'ի լերանց
Աստուածքըն Քաղկիդեակ անուն կոչեն, մարդիկ՝ Կոակամ:
Իսկ Հերա ճեպով 'ի ծայրս Իդայ բարձուն 'ի Գարգարոն
Գնայր ելանէր, եւ Արամազդ ամպրոպայնն եւես ըզնա,
Եւ 'նդ տեսիլն՝ խակոյն զըգօն միտս նորին պաշարեաց գութ,
Որպէս մինչ անդ ուրեմըն նախ սիրով ամուսնացան
Ցասուցին ելան յանկողին, 'ի ծնողաց զանխուլ:
Ցանդիման եկաց նորա եւ ձայնարկեալ բարբառեցաւ.
Հերա, յո՞վ դէմ եդեալ հասեալ կաս այսր յՈլիմպոսէ.
Եւ չեն մերձ երիվարք եւ կառք առ քեզ հեծանելոյ:
Խաբուսիկ միտօք ասէ առ նա Հերայն վեհապատիւ.
Այց առնել երթամ զըննամ արգասաւոր երկրի ծագաց,
Առ զիցահայրն Ովկիան եւ առ Տեթիւսն զիցամայր,
Որ յապարանս իւրեանց զիս բարուք սնուցեալ զարգացուցին:
Ըզնոսա գնամ տեսանել եւ զանըսպառ լուծանել վէճս.
Զի 'նդ բազում ժամանակս ահա խեռեալ կան յիրերաց
Յանկողնոց եւ 'ի սիրոյ, կալեալ զոգիսըն բարկութիւն:
Իսկ ձիանս՝ առ ըստորոտամբըն կան Իդայ բիւրաղբեան,
Որ զիս ընդ ցամաք բարձեալ տարցեն եւ 'նդ նաւարկս:
Իսկ զարդիս՝ 'ի քո պատճառս եկեալ կամ այսր յՈլիմպոսէ,
Զի գուցէ թէ յետոյ սըրտմըտեսցիս 'ի յիմ վերայ,
Թէ լռելեայն մտիցեմ 'ի տուն յորձանահոսըն Ովկիանու:
Արամազդ ամպայարոյց ասէր նըմին պատասխանի.
Անդր եւ յետ այսորիկ, Հերա, գոյ զնի ուրեմն երթալ.
Իսկ մեք եկ աղէ 'ի սէր վայելեսցուք մըտեալ 'ի քուն:
Զի ընաւ ոչ աստուածուհւոյ եւ ոչ կընոջ սէր այսպէսնակ
Ողողեալ երբեք 'ի լանջս իմ եւ զոգիս իմ նուաճեաց.
Ոչ յորժամ Իքսիոնեանըն ցանկացայ սըրափեալ կընոջ,
Որ ծընաւ զՊերիթոոս զաստուածախառըն հանճարեղ.

Ասացեալ զայս՝ անց գնաց 'ի հոյանուտն առհմըս մարդկան,
Իսկ ընդ նմա՝ եւս առաւել դըրդեաց օգնել դանայեցւոց,
Որ վաղեալ մեծ իմն անդէն 'ի նաւահանգստեան եռանդ խորախոյս.
Պրիամեանն Հեկտորի միթէ դարձեալ, արգիւացիք,
Զյաղթութիւն Թողցուք տիրել նաւատորմին, տանել ընդ փառս.
Այլ նա յայգ խորխատայ 'ի միտս, այն զի առ խոր լատատափայութեանն
Աքի՛լլէս սըրտմըտեալ անգործ նըստի քինախնդիր:
Բայց սակայն ոչ անձկաբեկ կարօտեսցուք ինչ մեք նորա,
Թէ միայն կայ 'ի միմեանց վերայ կըռուել յորդորեսցեմք:
Այլ եկայք որ զինչ ասեմս ունկըն դիցուք ամենեքեան:
Ընտիր եւ յաղթ ասպարօքն որ 'ի զօրուս՝ վահանաւորք,
Եւ ընդ լուսն առուցեալք փայլակնացայտ սաղաւարտիւք,
Եւ 'ի ձեռս երկայնագոյն բարձեալ նիզակս՝ մն երթիցուք.
Ես ինքնին կարապետ անցից յառաջ, եւ ոչ կարծեմ
Թէ պրիամեանն Հեկտոր ընդդէմ կալցի ընաւին սաստկութեամբն:
Եւ որ այր ոք քաջամարտ իցէ եւ փոքր ասպար իւր յուս,
Տացէ առն անուաղի, եւ ինքն առցէ վահան մի յաղթ:
Զայս ասաց, նոքա լուան եւ անսացին նորա մտադիւր:
Թագաւորքն իսկ կազմէին զնոսա, Թէպէտ եւ վիրաւորք,
Տիդեանն եւ Ոդիսեւս եւ Ատրիդեան Ագամեմնոն,
Եւ շըրջեալ զամենեքումբք՝ զպատերազման փոխէին զէնս.
Զօրեղն ամուրս ընդդէմ, եւ տըկարին տային ընդ ուխս:
Իսկ յորժամ ըզմարմնով զփայլակնազարդն արկին պըղինձ,
Խաղացին, եւ Պոսիդոն երկրասասան էր առաջնորդ՝
Սուսեր հիազարհուր երկայնաձիգ 'ի ստուար ձեռին
Փայլատական հանդունակ, ընդ որում չէ խառնել օրէն
Ի դըժնէ գուպարածի, այլ արհաւիրք ընկըրկեն զայրս:
Ըզպարովեանս յայնժամ կուռէ վառէր կազմէր շըքեղն Հեկտոր:
Անդ յայնժամ մարտ սաստիկ յարդարեցին պատերազմի
Պոսիդոն կապուտավարս եւ սպետափառն Հեկտոր,
Սա ինա տրովադացեաց, արգիւացւոց նա մարտակից:
Եւ ել ծով յորդեաց 'ի վրանսն եւ կարկուրայս արգիւական.
Իսկ նոքա հարան ընդդէմ ամբոխատաստ աղաղակաւ:
Ոչ բընաւ ծովուն ալիք այնչափ գոչէն 'ի ցամաք կոյս
Ցանդընդոց անտի յուզեալք 'ի հիւսիսի շնչմնչ դըժընդակ,
Ոչ այնչափ ինչ շաչիւն բըրդի հըրոյն բոցբոցեալ
Ցանտառախիտս լերին՝ մինչ հըրդեհել յառնէ զմայրիս,
Եւ ոչ այնչափ հընչէ հողմ 'ի բարձրավարս կաղնեաց Թաւուտս՝
Որ կարի յոյժ զայրագին եւ մեծամեծըս մըռընչէ,
Որչափ ել խօշիւն ձայնի տրովադացւոց եւ աքայեանց
Ի գոռալն ահագնաղուր եւ 'ի միմեանց դիմել վերայ:
Նախ յԱյաս տէգ ընկէց եղեւ Հեկտոր շըքեղաձոխ,

Զի առ նըքըլն դէմ ընդդէմ կայր նա դարձեալ, եւ վրիպեաց ոչ
Ուր կըրկին բռնակալքը զիւրով լանջօք կային ձըգեալ,
Մի վահանին, եւ երկրորդ արծաթազարդ իւր սուսերին,
Որ ըզգերդ մարմին նորա պահպանեցին. ցասեաւ Հեկտոր,
Զի աշտէն սուր ընդունայն 'ի ձեռանէ իւրմէ ուղացաւ.
Եւ յետս 'ի խումբ ընկերացն 'ի մահուանէ զերծեալ խոյս առ:
Ի մեկնել իւրում անդէն Տելամոնեանըն մեծն Էաս
Բըռնաքարամբ, յորոց շատք, նեցուկք երագ նաւաստայիցն,
Առ ոտս իսկ անդանոր Թաւալէին մարտուցելոցն,
Ըզմին բարձեալ՝ ըստ ասպարին շուրթն յուլըն հուալ՝'ի կուրծս եհար.
Եւ յընկենուլն իբր անիւ փոթոր պտուտեալ՝ շուրջ 'ի գիլ գնայր:
Զերդ 'ի հօրն Արամազդայ 'ի հարուածոյն՝ արմատախիլ
Փլանի կաղնի, եւ անդուստ ծըծըմբահոտ բուրէ սաստիկ.
Եւ որ մերձ հասեալ ըզնոյն տեսանիցէ՝ չըժուժէ սիրտ,
Զի մեծին Արամազդայ դըժնեայ հրացանն է բարկութիւն.
Նոյն 'ի գետին ընդ փոշի անկաւ իսկոյն Հեկտորեանն ոյժ:
Տէգն յափոյն ել եւ զնովաւ գըլեցաւ վահանն եւ սաղաւարտ,
Եւ զիւրեւ շառաչեցին զէնքն 'ի պըղնձեայ խայտանըկարըք:
Իսկ որդիքն աքայեցւոց դըռոհ եռուն ուժգին գոչմամբ,
Ցուցացեալ ձըգել յինքեանս, եւ ցընդէին նետից տարափ:
Այլ չեղեւ ոք ձեռընհաս նետահարել եւ ոչ խոցել
Ըզհովիւըն զօրաց, զի հասին քաջքն աճապարեալ
Պուլիդամաս ու Էնէաս եւ Ագենովր դիւցազնըմամբ,
Եւ Սարպեդոնն լիկիացւոց պետ եւ Գլաւկոս հրաշալի:
Եւ ոչ յայլոց անտի ոք անփոյթ արար ըզնըմանէ,
Այլ զասպարսըն զառաջեաւ իւր ունէին զգեղապարոյրս,
Եւ բարձեալ ընկերքն 'ի ձեռս հանէին զնըսն 'ի ճակատէն,
Մինչեւ յերագ 'ի ձին եհաս յետըս մարտի պատերազմին,
Ուր կային կառավարն եւ նըկարէն կառքն հանդերձ,
Որ տարեալ ըզնա յաստան անդր ածէին ըզբազմահեծն:
Այլ սակայն 'ի հունն յորժամ գեղավէտակ գետոյն հասեալք
Յորձնեանըն Քսանթոսի՝ զոր Արամազդ ծընաւ անմահն,
Անդ 'ի կառացն 'ի գետին եդեալ ըզնա՝ սըրսկեցին ջուր.
Եւ ոգի եկեալ նորա՝ զաչս իւր եբաց եւ հայեցաւ,
Եւ 'ի ծունկս իջեալ նըստեալ՝ սեւաթոյրն փըսխեաց արիւն,
Եւ անդրէն 'ի Թիկունըս կոյս յերկիր գըլորեալ անկաւ,
Զաչսըն սեաւ ծածկեաց գիշեր, եւ դեռ զադիսն այրէր հարուածն:
Արդ յորժամ արգիւացիք տեսին զՀեկտոր 'ի բաց երթեալ,
Ամենայնոյն 'ի տըռփեանան սաստեան եւ ուշ եդին կըռուոյն:
Ոյլեանն երագ Էաս անդ քան ըզզինուս յառաջագէմ
Սուր արդամբն յարձակեալ վիրաւորեաց ըզՍատնիոս
ԶԵնոփեան; զոր Նէիս երկնեալ ծընաւ հարսն ընտրական

Ել զինեաց յԱկամաս՝ որ յարձակմանն ոչ հանդուրժեաց
Արքային Պենելեայ, եւ նա եհար զԻլիոնեւս
Ըզզաւակըն Փորբասայ խաշնաւէտին՝ զոր 'ի տոհմէանց
Առաւել սիրէր Հերմէս, եւ ստացուածոց տրար զնա տէր.
Եւ մօր նորում միամօր Իլիոնեւս էր 'ի նմանէ.
Ըզսա յայնժամ ընդ յօնիւքն յակնակապիճ նորին եհար
Եւ ըզբիբն ընկէց արտաքս, եւ անցին ընդ ակն եւ ընդ ծոծրակն
Ել Թափանց, եւ նա նըստաւ՝ զերկոսին ձեռսըն տարածեալ։
Իսկ ձըգեալ Պենելէոս ըզսուրըն հանեալ վաղվաղակի՝
Մըխեաց 'ի պարանոցն, եւ զգլուխն հանդերձ զըլխանոցաւն
Ընդ գետնին արկ Թաւալգլոր, եւ գեռ զեղարդն հաստահարուստ
Կայր անդէն յակնակապիճն. զերդ խաշխաշի բարձեալ նա զգլուխն,
Առ տոհմեանըն բարբառեալ՝ յախորտօրէն ասաց ըզբանս.
Ո՜ն դուք ինձ, տրովադացիք, Իլիոնեայ քաջափառի
Գոչէք հօրըն սիրելւոյ եւ մօր ամուսնոյ կոծ յապարանին։
Ոչ եւս այլ ամուսինն Ալեգենորեանըն Պրոմաքեայ
Առն նորում եկելոյ զուարթերես ելցէ՛նդ առաջ
Մինչ 'ի Տրոյայ նաւալուղակ դարձցուք որդիքս աքայեցւոց։
Զայս ասաց, եւ զամենեցուն կալաւ դողումն,
Եւ այր այր աչս ածէին 'ի ժանտ մահուն ուրէք փախուստ։
Ասացէք ինձ արդ, Մուսայք, ոլիմպական յարկաց բընակք,
Ո՞վ ոք նախ յաքայեցւոց արիւնազանգ աւար կապուտ,
Իբրեւ ըզմարտըն շըրջեաց հրաշանշանն Երկրադղորդ։
Էաս նախ Տելամոնեան վիրաւորեաց ըզՀիրտիոս
ԸզԳիրտեանն՝ ըզՄիսացւոցն ուժգնաստըրտաց ըսպարապետ.
ԸզՓալկէս Անտիղոքոս եւ զՄերմերոս հար կողոպտեաց,
Մասաղկեաց Մերիոնէս զՀիպպոտիոն եւ ըզՄորիս,
Տեւկրոս կորոյս սա աւար զՊերիփետէս եւ զՊրոթոոն։
Իսկ ապա եւ Ատրիդէս զՀիպերենոր՝ զհովիւն ազանց՝
Խոցեաց ընդ կուշան եւ զաղէարն պատառեալ լափեաց պըղինձն,
Հոգին 'ի հարըն ճեպեալ ելաւ ընդ հերձ վիրաւորեալն,
Եւ զաչկունս նորա պատեալ ծածկեաց մութ խաւարին։
Ըզյոլովսն ըսպան Էաս շուտասանձն որդին Ոյլեայ.
Զի նմա չէր ոք 'ի զոյգ՝ յարշաւ ոտիւն պընդել ըզհետ
Ի փախչել արանց՝ յորժամ ահ 'ի նոսին տայր Արամազդ։

521

---

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Զարթուցեալ Արամազդ 'ի քնոյն՝ տեսանէ զի Յոյնք օգնականութեամբ Պոսիդոնի խորտակեն զտրովացիս. սրտմտեալ եւ ողոքեալ զայն՝ առաքէ զՀերա յՈլիմպոս պատգամաւոր. բանք սորա անդ: Առաքէ Արամազդ զԻրիս առ Պոսիդոն՝ ասել նմա 'ի ճակատէն, եւ զԱպողոն առ Հեկտոր՝ արծարծանել զոգի նորա, զոր յարուցեալ եւ ինքնին ընթացեալ յառաջոյ քաջին 'ի կախն՝ հարթէ զփոսն. տապալէ հիմն 'ի յատակ զպատուարն: Մարտ տուեալ է առ նաւօքն. Այաս նիզակակարոյտ վանէ զՀեկտոր եւ զտրոյացիս՝ որ ահա հասեալ կան հրձիգ առնել զնաւսն:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

—•••• ❖ ••••—

## ԵՐԳ ՀՆԳԵՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ԱՆԴՐԷՆ ՀԱԼԱԾՈՒՄՆ Ի ՆԱՒԱՑ

Իսկ փախըստեայք 'ի շերտափակն եւ 'ի պարիէն փոսին հատեալք,
Բազմաց դի անկանելով 'ի դանայեանց ձեռաց տապաստ,
Առ կառօքն ընկըրկեալ կային միայլն դեղնեալք յահէն,
Ցերկիւղէն զարհուրեալք. իսկ Արամազդ զարթեաւ 'ի քնոյն
Ի գագաթան անդ Իդայ յոսկեգահէն Հերայ ծոցոյ.
Յարուցեալ եկաց ընդոստ, տես ըզտարոժեանս եւ զաքայեցս,
Ըզնոսին հալածականս, եւ զհետս պնդեալ զարգիւացիսն,
Եւ 'ի մէջ անդ սոցին ըզԹագագլուխըն Պոսիդոն:
Եւ զՀեկտոր եռեալ անկեալ 'ի դաշտն եւ շուրջ նըստեալ զընկերսն.
Հեծծեայր նա դառնապէս, խելացնորեալ, արեան ժայթքեալ.
Քանզի ոչ ոք անարի եհար ըզնա յաքայեցւոց:
Յայն հայեցեալ՝ գըԹացաւ աստուածոց հայրըն եւ մարդկան,
Եւ խեԹի անդրէն ահեղ ակն 'ի Հերայն արկեալ ասէ.
Չարարուեստ քո նենգուԹիւնդ անշուշտ, Հերա զըժնախաբեռ,
Ի մարտէն դըշխոցաց Հեկտոր կարծեաց եւ զզօրսն եդ 'ի փախուստ.
Բայց ոչ գիտեմ Թէ դարձեալ զեղեռնաւոր խարդաւանացդ
Ըմպոշխիցես նախ դու զպտուղն, եւ զքեզ գանիւք հարուածիցեմ:
Չածիցես յուշ 'ի բարձանց մինչ կախեցար, եւ առ ոտն երկին
Զոտեցդ արկի, եւ 'ի ձեռաց ոսկի կապանս անխըզելիս,
Եւ այնպէս դու յարփին եւ խառն ընդ ամպըս կախեցար:
Իսկ ընդ երկայնն Ողիմպոս 'ի բարկուԹիւն բըրդէին դիք,
Եւ կացեալ մերձ լուծանել զորէին ոչ, զի բուռն հարեալ
Զոր ոք գամ մի ունէի՝ զընկենուլ յերկնից սեմոց,
Մինչեւ յոգիսն ապաստան երԹեալ յերկիր անդր հասանէր.

Եւ ոչ այնպէս 'ի սրրտէս փարատէր բարկ ցաւ գիւցազնին
Հերակլի՝ զոր Հիւսիսի հողմով յուզեալ քո զմրրիկս,
Ընկեցեր ընդ ծով անբեր՝ չարիս նմա խորամանգեալ,
Եւ հաներ հուսկ ուրեմն 'ի բնակաւէտն զնա 'ի Կով·
Իմ անդուստ փրկեալ զնա՝ դարձեալ անդրէն թափեալ ածի
ՅԱրգոս 'ի ձիաբոյծն, յետ հանդիսից բազում ճգնանց։
Զայս քեզ յուշ ածից կրրկին, զի ցածնուցուս 'ի դաւաճանացդ,
Եւ 'ի միտ առցես թէ քեզ իցէ՞ն ինչ շահ սէր սանկողնիք,
Յոր եկեալ 'ի դից անտի եւ զուգաւորութեամբ պատրեցեր զիս։
Զայս ասաց, սոսկացաւ աչեղն Հերա շքեղաշուք,
Եւ առ նա բարբառեալ զերագաթռիչ խօսեցաւ բանս.
Լուիցէ զայս արդ Երկիր եւ 'ի վերուստ անդորր Երկին,
Ստիգեան ուխք անդրնդաբուղխ՝ որ ահաւորն է յերդմունս
Եւ նոցուն իսկ աստուածոցն երանելեաց սարսափելի,
Եւ խրնկելիդ քո գլուխ, եւ կուսութեան մեր ընկողնիք,
Յոր ոչ ընաւ ինչ երբեք վարկպարազի երդնուցում ես.
Ոչ իմով ինչ խորհրրդով գետնադղրդողն Պոսիդոն
Վնասակար լինի տրովեանց եւ Հեկտորի, եւ սոցա մեզ,
Այլ անշուշտ սիրտ իւր զնա գրգռէ 'ի նոյն եւ յօժարէ,
Եւ վրշտալմեբրս առ նաւուք տեսեալ զաքեանս՝ ողորմեցաւ։
Սակայն ես՝ եւ նմա տայցեմ խրրատ, անդր հետեւել
Յոր դու ինքդ, Ամպրոպային, առաջնորդեալ տացես հրաման։
Զայս ասաց, եւ ժպտեցաւ հայրըն մարդկան եւ աստուածոց,
Եւ տուեալ պատասխանի՝ զերագաթեւ խօսեցաւ բանս.
Թէ յայսմհետէ, աչապեղըդ դու Հերա մեծարելի,
Հաւասարակ ընդ իս զգեցեալ միտս՝ յանմահից նըստցիս ակումբ
Նովին իսկ Պոսիդոն, թէ եւ այլազգ ինչ բերեալ իղձ,
Փոխեսցէ զխորհուրդն անդէն ըստ քում սրրտիդ եւ ըստ իմում։
Այլ սակայն, եթէ սերտիւ եւ ստուգախօս աստ ըզրոյցդ,
Արի արդ երթ 'ի դիցն երամ, եւ կոչեցեալ պատուէր տաջիր
Առ Իրիս եւ Ապոլոն աղեղնաւոր՝ գալ այսր առ իս.
Զի երթիցէ նա 'ի զօրն 'ի պղնձազգեստ աքայեցւոց,
Եւ յինէն՝ արքային Պոսիդոնի տացէ հրաման,
Դադարել 'ի խաղմէն, դառնալ դըռնալ յիւր ապարանսն։
Իսկ Գուշակն Ապոլոն զՀեկտոր 'ի կռիւ կազդուրեսցէ,
Եւ շընչեալ անդրէն կորով՝ դարձուսցէ զցաւսն 'ի մոռացօնս
Որ զօգիս նորա տանջեն այժմ աւաղիկ, եւ յետոյ անդրէն
Քերքեսցէ զաքայեցիս՝ արկեալ նոցա զվատոյ խուճապ։
Եւ փախուցեալ 'ի նաւակնեարն անկանիցին 'ի բազմատախտ
Ի Պէլեանն Աքիլլեսի, որոյ զհամհարզ իւր յարուցեալ
ԶՊատրոկլոս, շքեղն Հեկտոր սպանցէ զնա նիզակաւն Ջամբ
Իլիոնի յանդիման՝ 'ի կոտորելն որեար բազում,

Արդ չարիս զինչ եւ յղեսցէ միում միում 'ի ձեռն՝ տարայք ,
Զի խիթամ թէ եւ Արեայ զարգիս եղեան ինչ կայ հասեալ .
Այն զի որդին իւր կորեաւ 'ի ճակատու , սիրելին յարս ,
Ասկալափոս՝ զոր իւր ասէ լինել Արէսդ ահեղագոր ։
Զայս ասաց , եւ ձեռամբն ափովք զազդերսն առոյգաբարձ
Բախեալ Արեայ , եւ յողբս ելեալ բան զայս բարբառեցաւ .
Մի եւս արդ ինձ ցասնուցուք , բնակք յարկացս ոլիմպական ,
Ի խնդրելս ըզվրէժ որդւոյս՝ անդր յաքայեանց իջեալ 'ի նաւս ,
Թէպէտ կայցէ ինձ օրհաս՝ յԱրամազդայ լեալ շանթահար
Անկանել խառն ընդ մեռեալս յարեան թաթախ եւ 'ի փոշի ։
Զայս ասաց , եւ զձիսն Ահին եւ Երկիւղին հրամայեաց լծել ,
Եւ նա ինքն ագանէր փայլակնակերպ ըզպատուաղէնս ։
Անդանօր մեծ իմն ահեղ եւ սոսկալի յԱրամազդայ
Այլ նորոգ բարկութիւն յանմահսն եւ վրէժ զարթուցեալ գայր ,
Եթէ ոչ Աթենաս՝ ըզհամօրէն զդիցն երկուցեալ՝
Թողեալ զաթոռն յոր նըստէր , եւ ընդ գաւիթն ոստնոյր արտաքս ։
Ի գըլխոյ նորա կորզեալ ըզսաղաւարտն , յուսոց զասպարն ,
Եւ զնիզակըն պղնձակուռ 'ի ստուար ձեռացն հանեալ յեցոյց ,
Եւ բանիւքըն խրատուք յանդիմանեաց ըզբուռն Արէս .
Մոլեգ դու խելացնոր , զեղծար արդեօք . ականջք են քեզ
Անօգուտ առ 'ի լսել , խելք եւ ամօթ կորեան զնացին ։
Ո՞չ լսես՝ զինչ լուսածղի աստուածուհին զրուցէ Հերա ,
Որ զեռ եւս յոլիմպեանն Արամազդայ եկեալ եհաս ։
Միթէ կամ իցէ քեզ ընդ փորձ բազում վըշտաց անցեալ
Դառնալ այսրէն յՈլիմպոս ցաւովք մեծաւ եւ վըտանգիւ ,
Եւ այլոց ամենեցուն եղեան ինչ մեծ բուսուցանել ։
Զի թողեալ անդէն զարի տրովադացիսն եւ զաքայեցիսն՝
Այսր առ մեզ ընթանայցէ խառնակ հարկանել ընդ Ոլիմպոս ,
Բուռն հարկանել մի 'ստ միոջէ զյանցաւորէն եւ զանմեղէն ։
Ուստի քեզ պատուէր տամ արդ , մոռա զվըյրոյթ որդւոյ մանկանդ ։
Զի եւ այլ ոք քան ըզնա կորովագոյն յոյժ ու'ի բազուկ
Կամ մեռեալ է արդէն , եւ կամ մեռցի յետ այսորիկ .
Դըժուարին է զբոլորից մարդկան փըրկել զազգ եւ զծընունդ ։
Զայս ասացեալ բազմեցոյց անդրէն 'ի գահն ըզբուռն Արէս ։
Իսկ Հերա զԱպոլոն կոչեալ արտաքս 'ի տաճարէն ,
Եւ զԻրիս՝ որ աստուածոցն է անմահից պատգամաւոր ,
Եւ առ նոսա բարբառեալ զերագաթեւ խօսեցաւ բանս .
Պատուէր տայ ձեզ Արամազդ երթալ յԻդա փութանակի .
Եւ յորժամ ժամեան եղեալ առաջիք զերեսս Արամազդայ ,
Արարջիք զոր ինչ նայն տացէ հրաման ձեզ եւ պատգամ ։
Զայս այսպէս խօսեցեալ՝ արգոյն Հերա դարձաւ անդրէն
Բազմեցաւ 'ի գահուն , նոքա թռուցեալ ընթանային ,

Իսկ երկիր եւ բարձր Ոլիմպ՝ հասարակաց ամենեցունց ։
Սրտին իւր՝ ոչ ըստ քիմս Արամազդայ գնացից 'ի կեանս .
Այլ խաղաղ, Թէ եւ հըզօր, Թող կայ մընայ յերիր բաժնին ։
Մի՛ բազկաւն ինչ զիս երբեք ահացուցէ իբր ըզլորտ ոք .
Դըստերացն եւ ուստերացն՝ որոց նա ինքն եղեւ ծընօղ՝
Լաւ լիցի յըղել պատգամ պակուցանօղ բանից սաստիկ ,
Ի հարկէ իսկ վըտանգին՝ լուիցեն իւրում պատուիրելոյն ։
Եւ նըմա պատասխանի մըրրկոտն Իրիս երագաոտն .
Արդ ուրեմն առ 'ի քէն, կապուտավարս Երկրապարփակ ,
Ա՞յդպէս զայդ առ Արամազդ տարայց պատգամ խիստ եւ սաստիկ ,
Թէ ունիցիս ինչ փոխել . զի դիւրադարձ են լաւաց միտք ։
Դըժոխոց գիտես զահիճքն իբր երիցանց սպասաւորեն ։
Գօտեգօտն երկրասասան կըրկնեաց առ նա պատասխանի .
Զայդ բան, Իրիս աստուածուհիդ, արդարապէս յոյժ ճահեցեր .
Ի դէպ եւ այն՝ զի ըզպատաշաճսըն գիտիցէ պատգամաւոր ։
Բայց 'ի սիրտ իմ եւ 'ի միտս այս հարկանի դառնութեան ցաւ ,
Յորժամ զհաճակակիցն եւ ըզնըմին բախտի բաժնորդ
Բարկացայտ սըրտմըտութեան բանիւք կամի Թըշնամանել ։
Այլ եւ այնպէս ուստիկ առեն յերեսացն ասեալ՝ մեկնիմ ։
Իսկ քեզ այլ ինչ ասացից եւ 'ի սըրտիս ըսպառնացայց .
Զի արտաքոյ եԹէ իմ եւ աւարօղն Աթենասայ ,
Հերայի եւ Հերմեայ եւ արքային Հեփեստոսի ,
Խնայեալ 'ի բարձր Իլիոն՝ ոչ կամիցի սատակել զայն ,
Եւ ըզմեծ զայս յաղթանակ արգիլասցէ ըզն պարգեւել ,
Գիտասցէ զայս զի եւ մեզ անհընարին անկցին զայրոյթք ։
Զայս ասացեալ Երկրաշարժն եԹող զբանակն աքայեցի ,
Եւ գնացեալ սուզաւ 'ի ծով . կարօտացան աքայեանն քաջք ։
Արամազդ ամպայարոյց առ Ապոլոն ասէ յայնժամ .
Սիրելիդ Գուշակ, արի առ պղնձազէնն արդ երԹ Հեկտոր .
Զի ահա Գետնադըղորդն երկրապարփակ անցի անցեալ
Ի մեր ծանր ցասմանէս՝ եւ գնաց 'ի ծովն աստուածեղէն .
Քանզի սաստիկ պատերազմ եւ այլոց կայր մընայր լըսել
Որ 'ի խոր սանդարամետս ըզՔըրոնոսաւն են շուրջ աստուածք ։
Սակայն այս՝ յոյժ օգտակար էր եԹէ ինձ եւ Թէ նըմա ,
Զի յիմմէ բազկէս խորշեալ յառաջագոյն հըպատակեաց .
Քանզի ոչ առանց քըրտանց ինչ հանդերձեալ էր վըճարել ։
Իսկ արդ առ քո 'ի ձեռս առեալ զասպարըն քըղանցաւոր
Եւ ուժգին շարժելեալ՝ արկցես առ դիւցազանցն աքայեցւոց ։
Եւ 'ի քո, Կորովաձիգդ, 'ի խնամըղ յանձն Հեկտոր շըքեղ,
Յայն 'ի նա զարԹուսցես զօրուԹիւն մեծ, մինչեւ աքեանք
Փախուցեալ հասանիցեն 'ի Նաւատորմն եւ յԵլլեսպոնտոս .
Իսկ 'ի յայնմ ապա հետէ՝ բանիւ եւ գործովք խորհեցայց ես ,

Զի ոգի աքայեցիքն անդրէն առցեն 'ի մրցմանէն ։
Զայս ասաց, եւ Ապողոն ոչ եղեւ հօրն ըստամբանդամող,
Եւ դընաց յԻդայ լերանց՝ 'աստօրինակի Թեւթեւաթեւ
Հովբալըսպան բազէին յօդաթըռչնոյն արագունի ։
Ըզքաջին Պրիամու եգիտ զորդի՝ զդիւցազն Հեկտոր՝
Զի նըստէր, ոչ եւս անկեալ, եւ ժողովեալ այն ինչ զոգիս՝
Ճանաչէր զիւրեւ զընկերս, քիրտն եւ Թասսումն էր դադարեալ.
Զի միտքն ըզնա կազդուրէր վահանադրոշն Արամազդայ ։
Հասասաձիգն Ապողոնի հուպ մատուցեալ բարբառեցաւ.
Հեկտոր որդի Պրիամու, զի՞ է զի դու յայլոց փարատ
Նըստեալ կաս ոգեսպառ. միթէ ինչ արդեօք հարաւ 'ի քեզ ։
Եւ առ նա հեւանդագին սաղաւարտաձօձն ասէ Հեկտոր.
Իսկ ո՞վ ես դու, դից վեհագոյնդ, որ հարցանես զիս յանդիման.
Ո՞չ գիտես՝ զի զիս առ խելս աքայեցւոց նաւաստորմին,
Մինչ զընկերս իւր ծախէի, հարեալ 'ի լանջս իմ բըռնաքար
Էասն ահեղագոռ՝ յուժեղագոյն արկ կորովոյ.
Եւ յանձն իմ Թըւէի զԴըժոխոց տունն եւ զուրուականս
Առ օրին տեսանել. զի մերձ էի փըչել զոգիս ։
Ապողոն՝ արքայն նետող՝ դարձոյց անդրէն պատասխանի.
Քաջ լեր արդ. քեզ այնպիսի զօգ յԻդայէ մեծ զօրավիգն
Առաքեաց Զըրբուանեանն, որ 'ի Թիկունս առ քեւ կայցէ,
ԸզԳուշակս Ապողոն զոսկեսուսերս, որ եւ նախուստ
Պահապանն եմ քո համայն եւ քաղաքիդ բարձրացելոյ ։
Այլ արդ ո՛ն խրախուսեսջիր ըզյոգնախումբ հեծելազունդն
Երագոտն երիվարօքն ասպատակել 'ի գոգեալ նաւսն.
Իսկ իմ յառաջոյ կարապետեալ անդրուվարացն՝
Հարթեցից զուղին ողջոյն, զդիւցազն աքեանս ընկըրկեցից ։
Ասացեալ, մեծ 'ի հովիւ անդր ամբոխից շընչեաց կորով ։
Իբր երիվար ասպաստանիկ եւ մըսրամսուս բըռնկան գարւոյ
Պախուցանթափ ընթանայ դառթեալ ընդ դաշտ որոտընդոստ,
Սովորեալ 'ի լըգանալ 'ի գեղահոս գետոյն յորձանս,
Խըրոխտալիր, բարձրավիզ, եւ բաշք զուսովքըն ծածանեալ,
Ինքն 'ի գեղ վայելչութեան իւրում անձին Ճախրելով սէգ,
Ճեպ 'ի Ճապուկ ծունկըսն 'ի ծանօթ վարէ զնա վայրս յարօտ Ճոյկաց,
Նոյնպէս զաստըն Հեկտոր շարժէր եւ զծունկս երագ երագ,
Յորդորեալ ըզհեծելազն յետ զաստուածոյն ձայն լըսելոյ ։
Եւ զօրէն իմն 'յեղջերու եղջերաւէտ եւ կամ յայծեամն
Արշաւեն ըշտապաւ բարաւէք առեալըն շինական,
Եւ սակայն 'արփիածեմ վէմ եւ անտառ Թանձրամայրի
Փըրկեաց զայն, զի չէր նոցունց 'ի Հրամանաց գոլ գամազիս.
Իսկ 'ի խօշիւն նոցին առիւծ մօրուեղ յուղւոյն անդ երեւեալ՝
Նոյն հետայն արար ըզբնաւ հետամըտեալըն հալածական.

Սոյնպէս ցայն վայր զանտայնոսք միահամուռ վանէին ցանդ
Սուսերօքն հարկանելով եւ գեղարդեամբքն երկայնօք.
Իսկ յորժամ տեսին զՀեկտոր շահատակեալ յարանց ամբոխ,
Զահի հարան, եւ ոգիքն առ ոտսն անկան ամենեցուն:
Խօսեցաւ ապա՛ նոցա նոյն Անդրեմոնի որդին Թոաս,
Ետովլեանն ազնուազոյն, աշտենաւոր քաջահմուտ,
Եւ յառակայութիւն կռուոյ ժիր, իսկ յատենի սակաւք յաքեանց
Յաղթէին նմա յորժամ գային ՚ի բանից պայքար մանկանքն.
Որ նոցա զբարին խորհեալ եւ խօսս արկեալ բարբառեցաւ.
Ո՜վ սքանչելիք. արդարեւ զարմանալս մեծ յաչս տեսանեմ.
Իսկ զիա՛րդ յօրահասէն զերծեալ անդրէն յարեաւ Հեկտոր:
Այսպէս ամենեցուն անշուշտ նմա սիրտ ակն ունէր
Ընդ ձեռամբ Էասայ Տելամոնեանց սատակելոյ:
Այլ ՚ի դից ոք վերստին փրկեաց զՀեկտոր եւ ապրեցոյց,
Որ զբազում ամբոխի դանայեցւոց եղոյծ ըղծունկս,
Որպէս եւ այժմ իսկ կարծեմ լինել, զի ոչ առ նահատակ
Առանց ահեղագոչն Արամազդայ կայ եւ մնայ:
Այլ եկայք՝ որպէս ինչ ես ասեմ՝ լուիցուք ամենեքեան.
Խուժանին հրաման տացուք դառնալ դիմել ՚ի նաւատորմն,
Իսկ որ այլք զօրութեան պանծամք լինել ՚ի բանակիս,
Գնդ կացցուք. առաջին եւ առա ընկճեմք թերեւս ըդդէմ կալեալ
Մրկրնդօք ամբարձելովք. եւ զբոցաբոշաւըն զայն կարծեմ
Զանգիտել սրտանց եւ մի մխել ՚ի խուռն դանայեցւոց:
Զայս ասաց, նոքա սերտիւ լուան նմա եւ անսացին:
Իսկ իւրովքն հանդերձ Էաս եւ Թագաւորն Իդոմենեւս
Եւ Տեւկրոս եւ Մերիոն, Մեգէս Արեայ հաւասարորդ
Ըզքաջն յարգարէին ըղբախտագունեան հաւաքելով
Դէմ ընդդէմ Հեկտորի եւ տրովացւոց, իսկ յետ կուսէ
Խառնամբոխն ՚ի նաւատորմն աքայեցւոց մեկնեալ երթայր:
Նախ տրովեանք խուռն ընդհարան, Հեկտոր ՚ի գլուխ կայր մեծա-
Եւ առաջի երեւաց իւրոց Գուշակ փեայր Ապոլլոն՝ [քայլ.
Ամպ զուսովքն զգեցեալ, ասպարն ՚ի ձեռսն ամեհամուղ,
Ահաւոր, շուրջ ծոպախիտ, հրաշանշան, զոր ետ Ճարտարն
Հեփեստոս Արամազդայ՝ յահարկութիւն բառնալ մարդկան.
Զայն նորա կալեալ ՚ի ձեռսն՝ առաջնորդէր մարտամբոխին:
Մխադունդ ըդդէմ կալան արգիւացիք, եւ սուր շռինդ
Ի կողմանցն երկոցունց, եւ ՚ի լարից ոստնուէին նետք, —
Եւ բազում գեղարդունք ՚ի կաշռմբուեան ուժեղ մատանց,
Էր որ վարսեալ ընդ իրանս արիական պատանեկաց,
Եւ շատ այն էր որ ՚ի մէջ, չեւ ճաշակեալ մարմին սպիտակ,
Ընդ գետին կայէին՝ յագել առ ՚ի մարմնոյ փափաքելով:
Մինչեւ Գուշակն Ապոլլոն զասպարն ՚ի ձեռսն ունէր անշարժ,

Յայժ 'ի կողմանց երկոցունց խոցէին նետք, զօրն անկանէր։
Իսկ յորժամ յերագաձի Դանայեցւոց դէմս եդեալ դէտ՝
Թօթափեաց զայն եւ յաւել եւս եւ ինքնին գոչել ահեղ,
Լքոյց ըղձիթոսաղն 'ի լանջս եւ մտացան զպարծանութիւն։
Զարշաւոց զոր օրինակ զանդեայ կամ զհօտ օդեաց ըղձեան
Խուձապեն զաղանք կորիքն 'ի տարաժամ սեաւ գիշերի՝
Ընթացեալք յանկարծադէմ, հովապետին կալեալ բացէ,
Այսպէս փախեան ահաբեկ աքայեցիք, զի Ապողոն
Արկ երկիւղ, եւ արծաղացւոց եւ Հեկտորի փառս ընծեռեաց։
Ի ցրուել անդ յայնժամ պատերազմին այր զայր ըսպան։
Հեկտոր զԱրկեսիլայ եւ զՄենեսթեայ զարեւն եհատ,
Յորոց նա պատանեալքն Բիովտացւոցն էր զօրավարւ,
Մենեսթեայ սա մեծամեծին հաւատարիմ ընկերակից։
Էնէաս ըզՄեդոն եւ ըզՅասոս արկ յարեւէ.
Եւ էր սա հարձորդի Ոյիլեւսեայ գեւցազարմին,
Մեդոն՝ եղբայր Էյասայ եւ բնակեցեալ 'ի Փիլակէ,
Յերկրէ հայրենի ատարագիր, վասն զի սպան անկանելոյ՝
Եղբօր մօրուքն Երիովպեայ զոր Ոյիլեւսն ունէր կնութեան։
Իսկ Յասոս էր իշխեցող բազմաբաղդեա աթենացւոց,
Եւ որդի յորջորջեալ Բուկոլեոնեանըն Սփելոսի։
ԶՄեկիստեւս Պուլիդամաս, եւ Պոլիտէս սպան զԷքիոս
Յառաջնում անդ ճակատուն, եւ զԿլոնիոս՝ վեհն Ագենոր.
Եւ Պարիս ըզԴէիոք 'ի նահատակսն՝ 'ի փախչելն անդ՝
Ընդ ծայր ուսոյն հար յետուստ, եւ ըզպղինձն եհան ընդ թափ։
Աքայեցւոց, մինչ սոքա կապուտէին զեռս ըզնոյա զէնս,
Ի պարկէն խորեալ փոսին ու՛ի շերտափակըն տրուեալ զրոհ,
Այսր եւ անդր խուձապեալք՝ անկանէին 'ի պարիսպ անդր։
Իսկ Հեկտոր առ արածացին ուժգին գոչմամբ բառնայր խրախոյս,
Ի նաւքնեար անդր հրոսել, եւ զարիւնոտ թողուլ կապուտս.
Իսկ զոր ես 'ի նաւացըն մեկուսի տեսից այլուր,
Անդ նմա մահ նիւթեցից, եւ ոչ եղբարքըն՝ ոչ քորք անշուշտ
Զաննիցեն զնեն 'ի մահուն խարոյկածին հրոյն հաղորդ,
Այլ շունք գէշ գէշ ոստոնիս մերոյ հանդէպ ցրրցըռեսցեն։
Զայս ասաց, եւ զերիվարսն մտրակեալ ընդ ուս՝ վարեաց,
Խրախուսեալ կարգ ըստ կարգէ զտրովակացեան, որք ընդ նմա
Սպառնական համուռ զաստմամբ՝ ահեղագոչ աղաղակաւ
Զկառաձիգ ձիսն ուղղեցին, եւ Ապողոն Փուշալին 'ի զլուխ
Զխորափոր փոսին ափունս հեշտաւ ոտիւքըն տապալեալ՝
Ի մէջ անդր հատեաց, եւ կամրրջեաց զայն՝ ճանապարհ
Երկայն եւ լայն կար 'ի շափ հասեալ մըոյ աեղընկեցի,
Յորժամ այր ըղլապեքն փորձեալ կորով արձակեսցէ։
Խուռն հաւէին նոքա նոյ այն, եւ Ապողոն գեմեալ յառաջ՝

Մեծապանծն 'ի ձեռն ապար՝ զաքայեցւոց քանդէր պարիսպ
Դիւրով յոյժ, որպէս թէ ոք մանուկ զաւազն յեզր 'ի ծովուն,
Որ յորժամ տղայօրէն կազմիցէ խաղքս զաղփաղփունս
Անդրէն ընդ խաղ վերըստին ոտիւք ձեռօք ցընդեալ ցրուէ.
Նոյնպէս դու, նետող Գուշակ, զբաղում վաստակ եւ ըզաշխատս
Ցընդեցեր զաքայեցւոց, եւ 'ի նոսին արկեր տագնապ:
Սոցուն այսպէս արգելեալ առ նաւկնւոյն կային ընթեր՝
Քաջալերեալ ըզմիմեանս, եւ աստուածոցն ամենեցուն
Ձեռս ամբարձեալ մեծաձայն աղաչէին իւրաքանչիւր.
Գերենեանըն մանաւանդ Նեստոր՝ խնամօղն աքայեցւոց,
Պաղատէր տարածեալ բազուկս յերկինս աստեղազարդ.
Արամազդ հայր, թէ երբեք ոք անդ յԱրգոս ցորենաշատ
Զարջառոյ կամ զոչխարի ճենճերելով պարարտ ազդերս՝
Աղերսեաց դառնալ անդրէն, եւ ակնարկեալ քո խոստացար,
Յիշեա զայն, Ոլիմպեանդ, եւ զօրս հերքեա զերեանոյթն,
Մի այսպէս զաքայեցիսն 'ի պարտութիւն մատներ տրոյեանց:
Զայս ասաց աղօթանուէր, եւ Արամազդ ամենիմաստ
Ըզնելեան ալեւորին լուեալ զհայցուած՝ մեծ որոտաց:
Իսկ տրոյեանք, առեալ ըզձայն ասպարակրին Արամազդայ,
Եւս քան զեւս յարձակեցին դալոյթ տային յուշ առեալ ըզմարտ:
Օրինակ իմն յաղթ ալիք լայնածաւալ մեծածովուն
Ըստ կողս ելեալ զերդու նաւին՝ 'ի բռնութեան հողմոյն ճեղել,
Քանզի այն է մանաւանդ որ ըզկոհակսըն կուտակէ,
Նոյն տրոյեանք 'ի մեծ խօշիւն անդր ըստ պարիսպն անցանէին,
Եւ ըզձիսն յառաջ վարեալ՝ մարտ առ նաւաց դընէին խելս
Երկսայրի տիգօք մօտուստ, նոքա վերուստ յերիվարացն,
Եւ նոքա 'ի սեաւ քաշեաց անտի բարձանց՝ յորս ամբարձան՝
Մըկընդօք երկայնիւք՝ որ անդ 'ի նաւսն առ նաւակուռ
Կային առ ձեռն յօգուածոյք, 'ի ծայրս խուրեանց պըղընձակապք:
Իսկ Պատրոկլոս, մինչդեռ տակաւ աքայեցիք եւ տրովադեանք
Ի բացէ յեզր նաւացն ըզպատնիշըն կըռուէին,
Ցայնժամ նա 'ի խորանի անդ քաջարւոյն Եւրիպիլեայ
Կայր նըստեալ եւ զըւարճէր ըզնա բանիւք, եւ զծանր վէրսն
Ըզդեղոց ցանէր զարմանս 'ի սեաւ ցաւոցըն դիւրութիւն:
Իսկ յորժամ ըզնդ պատնէշն ետես հրոսեալ ըզտրովադացիսն,
Եւ գուժեաց դանայեցւոցն աղաղակի շփոթ եւ փախուստ,
Ճիչ բարձեալ վայեաց անդէն՝ ձեռացն ափովք կոծեալ զազդերսն,
Եւ յողոց հանեալ՝ բանիւ հեծեծելով բարբառեցաւ.
Ոչ եւս այլ, Եւրիպիլէ, թէպէտ կարօտ ես տակաւին,
Կարեմ կալ մընալ աստ, զի մեծ անշուշտ գըրգռեցաւ մարտ.
Այլ ըզքեզ ըսփոփեսցէ սպասաւորդ, իսկ ես վաղվաղեցից
Հասայ ըշտապ առ Աքիլլէս՝ յորդուցանել զինքն 'ի պատերազմ:

Ո՛ գիտէ, թերեւս 'ի բանս խրատուս շարժեմ զսիրտ նորա
Աստուածով. քանզի բարի է յորդորումըն սիրելւոյ։
Եւ յասել իւրում զայս՝ ընթանային իւր զարշապարք.
Իսկ աքայեցիք անդէն կային ընդդէմ տրովադեանցըն խուժելոց,
Բայց վանել 'ի նաւակայիցն ոչ ուժէին զսակաւաւորսն.
Այլ եւ ոչ տրովադացիք ըզդանայեանց կարէին ասպար
Հարկանել ճեղքանել՝ երթալ խառնել 'ի վրանսն եւ նաւս։
Այլ որպէս կարաբէքն ըզնաւափայտ՝ հարթ հաւասար
Ուղղէ հմուտ հիւսանն 'ի ձեռս՝ որ ամենայն իմաստութեան
Խելամուտ եղէ ճարտար 'ի հանճարոյն Աթենասայ,
Այնպէս աստ հաւասարակ ձգեցաւ մարտ պատերազմին.
Բայց այլք զայլովք նաւակաց մարտնչէին 'ի գուպարած։
Իսկ Հեկտոր՝ մեծափառին Էասայ կայր դէմ յանդիման.
Եւ սոքա զվասն նաւու եղեալ մաքառ՝ ոչ զօրէին,
Ոչ սա զնա զերծուցել եւ հուր զնաւատորմսն հարկանել,
Եւ ոչ նա վանել զսա, քանզի մերձեաց զսա մի աստուած։
Անդ Էաս ճոխատապանն ըզԿալետոր՝ Կլիտեայ ծին՝
Որ հրձիգ լինէր 'ի նաւսն, եհար ընդ լանջըսն գեղարդեամբ.
Թընդեցոյց զգլորեալ զերկիրն, եւ 'ի ձեռացն անկաւ խանձողն։
Իբրեւ յանկն արկանէր ըզհօրեղբօր որդեակն Հեկտոր
Զի 'նդ փոշի թաւալեցաւ առաջի թուխ լաստափայտին,
Տրովադացւոց եւ լիկեանց մեծաբարբառ արկ քաջալերս.
Տրովադացիք եւ լիկեանք եւ դարդանեանք ընթերամարտք,
Մի՛ ուրեք զնայցէք 'ի բաց 'ի ճակատէս յանձկութեան աստ.
ԸզԿլիտեայ հանէք որդին՝ զյառաջամարտիկ նաւացս անկեալն,
Ըզկազմածս իւր կողոպտեսցեն զուցէ տարցեն աքայեցիք։
Զայս ասացեալ արձակեաց յԷաս զնիզակն փայլակնացեալ.
Ի նմանէ վրիպեալ եհար զՄաստորեան ուստրըն Լիկոփրոն,
Զէասայ պաշտօնեայն կիթերացի զբնակեալն ընդ իւր,
Որ զի այր էր սպանեալ յաստուածայինն 'ի Կիթերա։
Զսա 'ի վեր քան զականջն 'ի գլուխն եհար սուր պղընձով,
Մինչդեռ կայր մերձ առ Էաս, եւ 'ի խելաց նաւուն գլորեալ
Յորսայակեալ ընդգետնեցաւ հողաթաւալ, լուծան անդամքն։
Էասայ քըստմընեալ՝ բարբառեցաւ առ իւրն եղբայր.
Քաղցրուենեակդ իմ Տեւկրէ, սպանաւ ընկեր մեր մըտերիմ,
Մաստորեանըն զոր մեք՝ զառ մեզ եկեալն 'ի Կիթերեայ՝
Սիրելի ծնողացս 'ի չափ մեծարէաք անդ յապարանս,
Ըզսա մեծանձնըն Հեկտոր սպան. իսկ ո՞ւր օրհասականքդ
Իցեն նետք, եւ լայնալիճ՝ զոր քեզ Գուշակն ետ Ապողոն։
Զայս ասաց, եւ նա 'ի միտ առ՝ ընթացաւ կաց առ նըմա
Ճապուկն աղեղն 'ի ձեռսին եւ նետընկալ պատականդաբան,
Եւ երագ երագ փըքէին 'ի տրովացիսն ոստուցանէր։

Եւ եհար ըզԿլիտոս՝ Պիսենորայ զորդին շքեղ,
Ըզհամհարզ Պուլիդամայ՝ Պանթոյածին պերճափառին,
Զի կալեալ զերասանակսն աշխատ լինէր ընդ երիվարօքն,
Առ շնորհս Հեկտորի եւ տրովացւոց ընդ այն մըղեալ՝
Ուր թանձրախուռն ջոկատք մըրրկէին գընդագունդ գընդագունդ,
Բայց եհաս նըմին անճիր, զոր չարգել ոք, թէպէտ ցանկայր:
Զի յետուստ 'ի պարանոց իւր մըխեցաւ ցաւոց աղեղըն,
Անկաւ նա 'ի կառացն, եւ երիվարքն ընկըրկեցան՝
Դատարկ կառս հընչեցուցեալ. իսկոյն արքայն Պուլիդամաս
Ա՛ռ 'ի միտ, եւ ինքըն նախ երիվարացն եկն ընդ առաջ,
Զորս եւ յանձն արար յորդին Պրոտիաոնեայ յԱստինոոս,
Եւ բազում յոյժ տայր պատուէր՝ մերձ իւր զձիանն առ ակն ունել,
Ինքն անդրէն դարձեալ երթեալ 'ի նախահատակըսն խառնեցաւ:
Իսկ Տեւկրոս միւս եւըս նետ 'ի պղընձազէնն եհան Հեկտոր,
Եւ առնէր իսկ դըրաւ մարտին առ նաւս աքայեցւոց,
Եթէ զայրն՝ ըզգօն մարտիկ՝ հարեալ նետիւ թափէր զոգին:
Ոչ եկաց սակայն զանխուլ 'ի զգօն միտացն Արամազդայ,
Որ պահեալ զՀեկտոր՝ զՏեւկրոս Տելամոնեան արկ 'ի փառաց.
Զի յըղեալ անդ աղեղան խըզեաց ըղլարն իւր քաջոլոր
Ի կորովս անդ ձըրկացն, եւ պղընձաձոյլ փըքինն յայլ դէմ
Մոլորեալ վըտարանդի, եւ 'ի ձեռացն անկաւ աղեղն:
Իսկ Տեւկրի սոսկացեալ՝ բարբառեցաւ առ իւրն եղբայր.
Ո՛վ աղէտ. զմարտիս մերոյ խորհուրդս 'ի սպառ խըզէ աստուած,
Որ եհան 'ի ձեռացս ընկէց զաղեղըս լիալիճ.
Եւ եբեկ ըզնորոլոր լարս որ այսօր ընդ այգն արկի՝
Կալ 'ի տեւ ժուժկալել թանձրատարափ թռուցեալ նետիցս:
Եւ նըմա պատասխանի Տելամոնեանըն մեծն Այաս.
Է՛ սիրուն, իսկ դու թողեալ 'ի բաց զաղեղն եւ զնետս հերձակս, —
Զի աստուածոյ 'նդ դանայեանըքս մախացեալ խանգարեաց զայն, —
Ա՛ռ 'ի ձեռն ըզցեղարդն երկայնաձիգ, ասպար զուսովքդ,
Եւ մարտիր ընդ տրովացիս, սըրտապընդեա զայլն եւս ամբոխ.
Զի թէպէտ յաղթող եղեն, սակայն եւ մի՛ անմըխշա անջան
Զգեղատախտ կալցին քաջախս, այլ յուշ մեզ յո՛ւշ դուսպար կըռուոյ:
Զայս ասաց. նա զլայնալիճն 'ի վըրանս երթեալ եդ անդր 'ի բաց,
Եւ զուսովք շուրջանակի զչորեքթիթեղն արկեալ ասպար,
Եւ 'ի գլուխն հըզօր եդեալ ըզսաղաւարտըն գեղաշէն՝
Զձիաբաշն՝ յոր զարդմանակ ձօձէր վերուստ ահագնագին,
Եւ առեալ զսուր նիզակն՝ ըզսըրլաքեալըն 'ի սուր պըղընձ
Եւ գընաց, եւ ընթացեալ հապճեպ եկաց առ Այասայ:
Հեկտոր, իբրեւ եւես ըզՏեւկրեան նետսըն վատթարեալս,
Առ տրովեանսն եւ լիկեցիս խրախուսէ բարձ ահեղագոչ.
Տրովացիք եւ լիկեանք եւ դարդանեանք մերձամըրցիկք,

Սիրելիք, արդ լերուք առ խորափոր նաւատորմին,
Ցուց ձեզ այժ պղնդութեանդ, քանզի տեսի աչօքս իմովք
Ըզսլաքինս առն աւագի յԱրամազդայ եղեալ գերեւ:
Զօրութիւն Արամազդայ դիւրաւ յայտ գայ մարդկան 'ի յայտ,
Եւ յորժամ ըզգերագոյնն ընձեռեսցէ փառաց պարծանս,
Եւ մինչ նըւազ առնիցէ եւ ձեռըն տալ ոչ կամիցի.
Որպէս արդ զարգիլացուցն ոյժըս հատեալ եւ մեզ օգնէ:
Այլ համագունդ մարտերուք առ նաւակներօս, եւ որ 'ի ձէնջ
Նետահար կամ տիգախոց հասցէ 'ի մահ եւ յօրահաս,
Մեռցի եւ ոչ ինչ անշուք վասն հայրենեաց լիցի նմա մահ.
Ամուսինն եւ որդիք նորուն ըզկնի իւր ապրեսցին,
Տուն եւ վիճակ իւր անխոռ, աքայեցիքդ յորժամ գնայցեն
Նաւամիբեղ ասատի չուեալ 'ի հայրենի քաղցըր բնաշխարհ:
  Զայս ասաց եւ արծարծ զոգիս եւ զոյժ բոլորեցուն:
Անդուստ եւ յայնըմ կոչէ քաջալերէր զընկերան Էաս.
  Ամօթ, արգիւացիք. այժմ լիցի շահ, կամ կորընչել
Կամ ապրել՝ եւ ըզչարիքս հանել մերժել 'ի նաւակներօս:
Ա՞կն ինչ ունիք, զի թէ Հեկտոր կորդակախորոխ կալցի զնաւակս,
Հետիոտս հասանիցէք իւրաքանչիւր 'ի հայրդ երկիր.
Ո՞չ լըսէք Հեկտորի զամբոխն ոգւոյն խրախուսելոյ,
Որ ահա զնաւահանգէսս հըրձիգ առնել խիզախեալ գայ.
Ո՛ն եւ ո՛ն, ոչ 'ի կաքաւս ինչ հրաւիրէ, այլ 'ի գուպար:
Իսկ մեզ չէք ինչ քան զայս՝ խորհուրդ եւ միտք ազնըւագոյն,
Զոտս 'ի կռիւ հարկանել եւ կալ խառնել զձեռս եւ զկորովս:
Լաւ լիցի՝ կամ կորընչել եւ կամ ապրել մի անգամ,
Քան յերկար հաշել մաշել 'ի թախծալից պատերազմի՝
Առաւիր այսպէս առ նաւս՝ 'ի վատթարաց ասատի արանց:
  Զայս ասացեալ՝ յարոյց զոգիս ամենեցուն եւ զզօրութիւն.
Անդ Հեկտոր զըՍքեդիոս ըսպան զորդին Պերիմեդեայ՝
Զիշխան փոկկէացւոց. Էաս ըսպան զԼաւոդամաս՝
Ըզհետեւաց զօրավար՝ զԱնտենորի զուստրըն շքեղ.
Եւ զՈտոս ըզԿիլլենեան՝ Պուլիդամաս հար սատակեաց
Ըզհամհարզ Փիլեւսենին՝ զեպիացւոց մեծամեծաց պետ:
Զայն տեսեալ՝ դիմեաց Մեգէս, Պուլիդամաս խուսեաց 'ի կողմ,
Ի սմանէ վրիպեաց նա, քանզի թոյլ ոչ ետ Ապոլոն
Թէ զաւակ Պանթոսի՛նդ նախամարտիկս անկցի տապաստ:
Այլ նորա 'ի մէջ կըրծիցըն Կրիզմոսի ցըցեալ զաշտէն,
Սա գլորեալ զարկաւ զգետնի, եւ նա կապտեաց ըզզէնսն յուսոցն:
Ցայնժամ նըմա եկ ախոյեան Դոլոփս 'ի տէգ քաջահըմուտ,
Լամպետեանըն զոր հըզօր մըրցանաց քաջ արուեստագէտ
Ազնըւագոյնըն յարանց ծընաւ Լամպոս Լաւմեդոնեան:
Սա տիգաւ զՓիլեւսենի վահանն եհար անդ շեշտ ընդ մէջ

Հուպ 'ի վերայ յարձակեալ, սակայն պահէր զնա թանձրը զրահ
Զոր կըրէր կարաւանդիւք պատուշաճասար, եւ զոր Փիլեւս
Ած երբեմն յԵփիւրայ՝ 'ի Սելլէիս ջուրց վտակաց.
Զի հիւրընկալ իւր Եւփետէս արանց արքայն էր ընծայեալ՝
Ազանել 'ի պատերազմ ընդ Թըշնամեաց դէմ ամրութիւն.
Որ եւ յայնժամ յորդւէկէն մարմնոյ հերքեաց ըզսատակումն:
Ըզսորա սըրընձաձոյլ եւ Թուխաբաշ գըլխանոցին
Զխորանին յետին սորոտ հարեալ Մեգէս սուր զեղարդեամբ՝
Հատ ընկէց ըզպարզամանակըն ձիազէս, որ ողջ անկաւ
Հողեալ յերկիր, գեռ եւս 'ի գոյն ծիրանեցիրն պայծառափայլ:
Մինչ կայր ակն 'ի յաղԹանակ պատերազմեալ ընդ իւր 'ի տեղ,
Օգնական հասեալ նըմին Մենելաւսն արիական՝
Կաց զանխուլ աեգան առ կողմն եւ զուսն եհար առ 'ի Թիկանց,
Եւ սըլաքն անց մըլեցին ընդ լանջս իւր Թափ մըխեալ յառաջ.
Ի բերանս հարեալ նորա տապալեցաւ Թաւալագլոր:
Դիմեցին երկոքեան զերծուլ յուսոյն ըզպղընձի զէնսն:
Իսկ Հեկտոր առհասարակ ամենեցուն տայր քաջալերս,
Եւ կըշտամբէր նախ զարին Մելանիպպոս Հիկետաոնեան,
Որ երբեմն ըզծանրաքայլ հօտեւէր անդեայս 'ի Պերկոտէ
Մինչ դեռ տակաւին Թըշնամիք չեւ էին հասեալ.
Իսկ յորժամ զանայեցւոց Ճօճձնամականքն եկին նաւեր
Դարձ առար յԻլիոն՝ առաքինեալ 'ի տրովացիս,
Առ Պրիամ օԹեւանեալ՝ պատուեալ նըմին որդւոցըն զոյգ.
Զոր կըրաքեալ Հեկտորի եւ բարբառեալ խօսեցաւ զայս.
Թողացո՞ւք ուրեմն այսպէս, Մելանիպպէ, եւ ո՞չ ըրնաւ
Մտամերձի սիրտ քո սիրան ընդ մահ որդւոյ մերս հօրեղբօր:
Ո՞չ հայիս, զիա՛րդ ընդ զէնսըն Դոլոփի կան Թարթափեալ:
Այլ արի. ոչ եւս հեռուստ ընդ արգոսեանս է մարտընչել,
Մինչ չեւ մեր ըղնոցին սատակեալ կետանս, եւ կամ նոցա
Հիմն յարեւ զբարձր Իլիոս ջընջեալ, սպանեալ ըզքաղաքն բընակս:
Զայս խօսեալ՝ խաղայր յառաջ, զհետ երԹայր այրն աստուածա-
Եւ մեծն Էաս Տելամոնեան զարգիւացիս արդատաղընդէր. [կերպ:
Լերուք յարս, ո՛վ սիրելիք, եւ 'ի մըտի դիջեք զամօԹ,
Պատկառեալ 'ի միմեանց 'ի կարեւոր պատերազմունս:
Յամօթղած 'ի մարդկանէ շատ են ապրեալք քան սատակեալք,
Իսկ փախըստեայց՝ ոչ պարծանք կանգնին եւ ոչ զօրութիւն ինչ:
Ասաց զայս, բայց եւ նոքա խիզախն էին յօժարք 'ի նպաստ,
Եւ զբանսն 'ի միտ առնուին, եւ պատնիշաւ պղընձակուռ
Ցանկէին ըղնաւատորմն, իսկ Արամազդ դըրդէր զտրովեանս:
Եւ դըրդաէր զԱնտիլոքոս Մենելաւսն ահեղագոռ.
Քան 'ըզքեզ, Անտիլոքէ, չէք ոք կըրտսեր յաքայեցիս,
Ոչ համբայն քեզ երագոտն եւ ոչ 'ի մարտըս կորովի.

Արդեօք զայր ոք խոյացեալ հարկանիցէս 'ի տրովացւոց ։
Զայս ասացեալ՝ ճիգն անդրէն գընաց , առկայն ըզնա զարթոյց ։
Եւ թըռեաւ յախոյենաց անտի , ձըգեաց զաշտէն փայլուն
Այս ածեալ շուրջ զիւրեւ ․ իսկ յարձակել առն ըզմըրկումդն՝
Ընկըրկեցան տրովացիք , բայց ոչ նա զգէնն ընդ վայր ընկէց ․
Այլ զորդին Հիկետաւնեայ զՄենալիպպոս խիզախական՝
Որ գիմեալ գայր 'ի կռիւ , եհար ընդ լանջըն առ բատեամբն ․
Եհան գըլորդ յանկանելն , եւ զաչս իւր ծածկեաց խաւար ։
Ոստեաւ Անտիլոքոս , որպէս բարակ սըրավարեալ
Ցեղնարթ մի վիրաւոր , յոր 'ի վազելն յիւրոց խըշտեաց՝
Որսորդէն 'ի նա նետ գիւղեցուցեալ՝ զանդամն եղծ ,
Նոյն 'ի քեզ , Մելանիպպէ , խաղաց արին Անտիլոքոս
Դիմադէրծ տանել ըզզէնդ ․ այլ ոչ զանխուլ եղեւ Հեկտոր ,
Որ նըմին եւ ախոյեան արշաւասոյր 'ի ճակատուն ։
Ոչ եկաց Անտիլոքոս , թէպէտ եւ ժիր պատերազմօղ ,
Այլ փախեաւ սոսկացեալ , իբրեւ գազան եղեռնագործ՝
Որ ըզգամփռըն խոշոշեալ կամ զանդէորդն առ արջառօք՝
Փախուցեալ գընայ մինչ չեւ գումարտակեալ արանց ամբոխ ․
Այսպէս փախեաւ Նեստորեանն , եւ Հեկտորի եւ տրովադեանց
Զայն ահեղ եղեալ ըզհետ՝ նետս հասէին հեծեծելիս ․
Նա դարձաւ եկաց անդէն յընկերակացն հասեալ ջոկ ։
Իսկ տրովեանք , յառիւծուց երեւեալ տեսլ շաղզակերաց ,
Ի նաւկենացըն ձըգէին՝ զԱրամազդայ լըցեալ հրամանս ,
Որ ոյժ մեծ տայէր նոցա , եւ զարգասեանցն ուխս մեղկեալ՝
Ի գերեւ ըզփառսն հանէր , իսկ 'ի նոսա շընչէր խրախոյս ։
Քանզի կամք տըրտէին էին՝ Պրիամոսեանըն Հեկտորի
Տալ պարծանս , 'ի նաւափայտսըն կորածայրս հըրձիգ լինել
Հուր անխափան սաստկատոչոր , եւ զահադէն խընդէր Թետեայ
Բովանդակ հանել 'ի գլուխ ․ զի յայն հայէր զգօնն Արամազդ ,
Տեսանել զամ մի աչօքն ըզբոցակէզ նաւէն ճաճանչ ։
Զի յայնմհետէ վերըստին տրովեանց փախուստ 'ի նաւէնիցն
Հանդերձեալ էր նիւթել եւ դանայեանց շնորհել ըզփառս ։
Ցայս խորհուրդ՝ ըզՊրիամեանն Հեկտոր գըրգէր 'ի խոր մակոյկսն ,
Որ ճիգնին իսկ գըլխովին գէտակն եղեալ յայն նըկըրտէր ,
Եւ մոլէր որպէս Արէս նիզակաճօճ , կամ հուր ծախիչ
Մոլեգնի ՛նդ սարըս լերանց 'ի թաւաթուփ թանձըր մայրւոյ ։
Փըրփուր ըզբերանովըն դիզանէր , եւ աչք նորա
Ի ներքուստ ահաւոր յունից ցայտէր փայլատակունս ,
Եւ գըլխանոցըն զիրանամբքն ահեղակերպ ճօճէր 'ի մարտն ։
Այն զի նա ճիգն Արամազդ յարփւոյն պաշտպան կայր Հեկտորի ,
Եւ ըզնա միայն 'ի խուռն յոգնածողով քաջորերոյ՝
Պատուեալ փառաւորէր՝ որ կարճակեացն էր լինելոց ․

Զի տագնապէր յիւր վերայ զձիակառավարն օրհաս մահուն
Պալլաս Աթենաս յուժգին բազկէ Պէլիասծնին ։
Եւ ցանկայր փլուզանել զձիակառս արանց՝ թեւակոխեալ
Ուրանօր եւ բազմամբոխ տեսանէր զունդ եւ զէնս ընտիր ·
Բայց եւ այնպէս բեկանել զօրէր ինչ ոչ, թէպէտ ճեպէր ։
Զի խումբ գործեալ բըրգաձեւ համբարտակեալ կային ընդդէմ,
Իբրեւ վէմ՝ հուպ 'ի սպիտակ ծով սեպացեալ կարկառակոյս ,
Զի շնչող հողմոց ընդդէմ ունի սրարշաւ հրոսակելոյ ,
Եւ ալեաց լեռնացելոց՝ որ դիմեալ յինքըն խորտակին ·
Դանայեանք նոյն ընդ տրովեանց ժուժկալէին պինդ աներկիւղ ։
Նա սակայն հրացայտ շուրջ փայլակնացեալ՝ ոստեաւ 'ի խուռն ,
Եւ անկաւ յայն իբր ալիք՝ որ յերագ նաւ անկանիցի
Հրահոսակ հողմասուն մըրրկեալ յամպոց , եւ նա բոլոր
Փրփրադէզ ծածկեցաւ , եւ դըժընդակ մըրրկին շունչ
Մըռընչէ յառագաստին , յահէն դողան նաւաստից միտք ,
Զի սուղ ինչ խըտրոցաւ 'ի մահուանէ հատանեն ուղ ·
Այսգունակ 'ի լանջս իւրեանց աքայեցւոց վարանէր սիրտ ։
Սակայն ինքն իբրեւ առիւծ չարախորհուրդ հասեալ յանդեայ՝
Որ յեղտիւրս ծայրածաւալ մարգաց բիւրուց բիւրք արածին ,
Ընդ նոսին անդւորդն 'ի մարտ ընդ գազանին գէտ անհըմուտ
Ի վերայ կըռուել արեան եղջերակոր իւր երընջուն ,
Ցառաջինս եւ 'ի վերջինսըս ցանդ նախրին բերէ պարապ ,
Իսկ նա 'ի մէջ անդր ոստուցեալ կալեալ զերինջըն լափլիզէ ,
Այլք ողջոյն սասանեցան · նոյնպէս յայնժամ աքայեցիք
Ցաստուածուստ , 'ի Հեկտորէ եւ 'ի հօրէն Արամազդայ
Համօրէն փախեան , եւ նա զՊերիփետէս միայն ըսպան
ԶՄիկենացի՝ զԿոպրեայ սիրուն ձետ , այնմ որ գնայր հրեշտակու
ՑԵւրիսթեւս արքայէն առ Հերակլեանն արուորութիւն · [թեամբ
Ի հօրէ անտի ծընեալ 'ի վատթարէն ընտիր որդի
Պէս պէս լաւութեամբք , թէպէտ ոտիւք , թէպէտ մարտիւ ,
Եւ մըտօքն ընդ առաջինսըն Միկենեանց ճոխապաճոյճ ,
Որ յայնժամ Հեկտորի մատոյց ըզփառսըն գերագոյն ։
Զի դարձեալ յետս ընդ կըրուկ՝ ընդ ասպարին հարաւ շըրթունս՝
Զոր կըրէր պըճըղնաւոր՝ սլաքաց ընդդէմ պատնէշափակ ·
Անդ գըլթեալ գայթագղեալ անկաւ յորսայս , եւ գըլխանոցն
Ահաւոր իմն ետ բոմբիւն ըղծամելեօք կործանելոյն ։
Զգաստ եղեւ իսկոյն Հեկտոր եւ ընթացեալ առ նա մատեաւ ,
Հար 'ի կուրծսըն տէգ եւ սպան հուպ առ սիրուն ընկերակցօքն ,
Որ թաղծեալք ըզմըտերմէն՝ ոչ կարացին օգնել նըմա ,
Երկուցեալ յոյժ եւ ինքեանց յաստուածայնոյն 'ի Հեկտորէ ։
Ցանդիման հասին նաւացն , որ ցանկեցին զնոսա վերինքն՝
Որչափ նախն էին հանեալք , եւ խուժէին նոքա զաղքք ։

Իսկ արգեանք յառաջակարգ նաւաց մեկնեալ առ տագնապին
Անդէն առ վրանօքն տային զանեղի միահամուռ,
Ոչ ցրուեալք ընդ Ճամբարն. ամօթ եւ ահ կալաւ զնոսա :
Զի անդուլ յաւէժաբար գոչմամբ միմեանց տային խրախոյս,
Գերեննեանըն մանաւանդ Նեստոր պահպանն աքայեցւոց,
Պաղատէր վասն հարցն եւ մարց՝ միում միում արկեալ աղերս.
Քաջ լերուք, ով սիրելիք, զմարդկան 'ի միտ արկէք զամօթ.
Յուշ լիցին իւրաքանչիւր որդիք, կանայք, ինչք եւ ծընօղք,
Թէպէտ ուրուք կենդանիք եւ թէ ուրուք մեռեալքն իցեն.
Ես նոցա փոխանակ որ չենըն մօտ՝ կամ աստ յողջը,
Պինդ կացէք արիաբար, եւ 'ի փախուստ մի՛ դառնայցէք:
Զայս ասացեալ ընդոստոյց զոգիս եւ զմիտս ամենեցուն:
Զամպ միգին զաստուածառաք յաչաց նոցա բարձ Աթենաս,
Եւ աստի անտի նոցա լոյս մեծ ծագեաց յերկուց կողմանց,
Թէ 'ի նաւացն հանդիսէ, 'ի զուգակիր թէ ճակատուէն:
Եւ տեսին զՀեկտորն ահեղագոռ եւ զիւր համհարզս
Որ 'ի թիկանց կողմանէն 'ի բաց կացեալ կռուէին ոչ,
Եւ որ անդ զերագ նաւուցըն մղէին ըզպատերազմ:
Իսկ մեծանձինն Այասայ չէրեւ հաճոյ սըրտին անդ կալ՝
Ուր անցեալ առ հասարակ կային որդիք աքայեցւոց,
Այլ մեծաքայլ վազվազէր ընդ նաւկներոյն ձեղուանց տախտակս,
Եւ շարժէր 'ի ձեռսն հեծան մի անճոռնի նաւամարտացու,
Մածուցեալ երկաթագամ քսան եւ երկուց կանգնոց 'ի չափ:
Որպէս այր ձիախաղաց յերիվարել հըմտամարզիկ
Երիվարս յորժամ ընտրեալ զատանիցէ չորս 'ի յոգունց,
Ի դաշտէն ընդ արահեան 'ի մեծ ոստան մղեալ վարէ.
Զարմացեալ պըշնուն բազումք, արք եւ կանայք, ինքն անյողդողդ
Միշտ անսայթաք միոյ 'ի միւս վազեալ փոխի, նոքա թըռչին.
Նոյն ընդ երագ նաւուց բազում յարկաց տախտակս ոստնոյր Այաս
Մեծամեծս ընթանալով, եւ ձայնն յերկինըս ժամանէր:
Զի անդուլ ահեղ գոչմամբ դանայեցւոց կարդայր խրախոյս,
Պընդապէս կալ պահպանել ըզնաւատորմն եւ ըզխորանս:
Եւ ոչ Հեկտոր կայր մընայր 'ի կուռ վառեալ տրովեանց գընդէն,
Այլ խարտեաշ որպէս արծուի հաւուց թըռչնոց դիմեալ յերամ
Արօտելոց 'ի Ճարակ ըզգետեզերբ ջուրց վըտակաց
Սագաց կամ խորդուց, երկայնավիզ կամ թէ փորոց,
Խոյանայր այսպէս Հեկտոր ուղիղ 'ի նաւ կապուտագլուխ
Նըկըրտեալ յառաջագէմ, եւ Արամազդ մղեաց ըզնա
Մեծայաղթ ձեռամբն յետուստ, եւ ընդ նըմին դըրդէր զխուժանն:
Եւ անդէն զկարկուրէխս մարտ դառնութեան յարդարեցաւ.
Գոյր կարծել անխոնջելիս եւ անվըկանդս ընդդէմ միմեանց
Պատահեալս 'ի պատերազմ, այնպէս ուժգին ոգորէին:

Եւ այս միտք մարտուցելոցն էին, զի ոչ աքայեցիք
Ակն ունէին ապրելոյ յեզերանէ, այլ սատակման.
Իսկ տրովեանց սիրտ խիզախէր իւրաքանչիւր 'ի լանջս իւրեանց
Հրձիգ զնաւսն առնել՝ ջնջել զդիւցազունսն աքայեցիս:
Սովին խորհրդովք տային առ'ընդ իրեարս ճակատ:
Սակայն բուռն եհար Հեկտոր զանդրընդաչու նաւէն խելաց՝
Գեղանւոյն ծովահերձի, որ 'ի Տրոյա զՊրոտեսիլաւ
Էր բերեալ, եւ ոչ անդրէն 'ի հայրենին դարձոյց երկիր:
Ըզսորա լաստափայտիւն աքայեցիք եւ տրովադեանք
Մօտ առ մօտ ըզմիմեանս սատակէին, ոչ ըսպասեալք
Ի հեռուստ յարձակելոյ սայրից նետից եւ գեղարդանց,
Այլ առ կուրծս արձանացեալք եւ զնոյն ըզմի զգեցեալ ոգի,
Սայրասուր տապարօք եւ փայտատօք մաքառէին,
Եւ Թրովք մեծամեծիւք եւ նիզակօքն երկսերանեան:
Եւ բազում ընտիր ընտիր վաղակաւորք ահագնագոյնք
Սեւագամ զաստապանօքն, որ 'ի ձեռաց՝ որ 'ի յուսոց
Մըրցողացն անկեալք յերկիր. եւ սեաւ զետինն արեամբ հոսէր:
Բայց Հեկտոր՝ զամ մի զխելաց նաւէն կալեալ՝ ոչ եւս եթող,
Այլ բուռն հարեալ զպաղպաջունսն՝ առ տրովացիսն աղաղակէր.
Հուր առէք, եւ գըրգեցէք դուք միահոյլ ըզգուպարանձդ,
Ետ մեզ այժմ Արամազդ քան զամենայն օր արժանի,
Արկանել ըզքառամբ ըզնաւըս, որ այսր ընդ հենդըն դէց եկեալ՝
Հասուցին մեզ զեան բազում առ վատութեան ալեւորացս,
Որ 'ի կամելս առ նաւուցըն խելօք մարտ եդեալ կըռուել,
Եւ ինձ ոչ տային Թոյլ, եւ զժողովուրդն արգելուին:
Արամազդ ահեղամռունչ թէ զմիտըս մեր բախեաց յայնժամ,
Այլ նոյն ինքն առ տեղեաւս ահա խրախոյս տայ եւ հրաման:
Զայս ասաց, եւ սաստկագոյն անկան նոքա յարձակեցին,
Եւ այլ ոչ ժուժէր Էաս՝ բըռնաւորեալ 'ի խուռն արգանց.
Այլ առ խեթի կործանելոյ՝ տեղի տայր խուռն ինչ նահանջեալ
Ի տախտ մի եօթնոտնեան, թողեալ ըզյարկ արգակ նաւուն:
Անդ դէտակն եդեալ կայր, եւ գեղարդեամբն անդըլակի
Վանէր զտրովեանսն 'ի քաջաեաց, թէ ոք բերէր զհուրըն լափլեզ,
Եւ յաւէժ ահեղ գոչմամբ՝ զդանայեցւոց տայր քաջալերս.
Ո'վ սիրելիք, քաջազունք դանայեցւոց, Արեայ պաշտօնեայք,
Լերուք յարըս, սիրելիք, յուշ ժիր աժխոյժք. միթէ իցէ
Փարաւագս ինչ տալ անձանց թէ գոն յետուստ մեզ օժանդակք,
Կամ պարիսպ ինչ հաստատաբինդ՝ արանց պահուստ յեզերանէս:
Չիք ինչ մօտ քաղաք ամուր աշտարակեայ մեզ ապաւէն,
Ուր առ ձեռըն զունդք կայցեն փոխանակել զմեր զօրութիւնս.
Այլ 'ի դաշտ աւադիկ տրովադացւոց կուռ վառելոց՝
Զառ 'ի ծով կոյս 'ի Թշուառ՝ 'ի հարցն երկրէ նըստիմք հեռի:

Վասն որոյ՝ լոյս 'ի բազուկս, ոչ 'ի մարտէն վըհատութեան:
Ասաց, եւ մոլեգնեալ շահատակէր սուր աշտէիւն:
Որ ոք հուր 'ի ձեռս առ խոր նաւս հասանէր 'ի տրովադեանց՝
Ի շնորհս երեսացըն Հեկտորի յորդորելոյն,
Հարկանէր զայն Էաս՝ դիպեցուցեալ երկայն տիգաւն.
Եւ անդ նաւացն առաջի խոցեաց թըւով երկոտասանս:

744



# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱ̀Ն



## ԵՐԳ ՎԵՇՏԱՍԱՆԵՐՈՐԴ

### ՆԱՀԱՏԱԿՈՒԹԻՒՆ ՊԱՏՐՈԿԼԻ

Այսպէս սոքա զգեղատախտ ոգորէին լաստափայտեան .
Իսկ Պատրոկլոս Աքիլլեայ՝ հովուին ազանց՝ կայր առաջի ,
Հեղոյր ջերմ արտասուս՝ իբրեւ աղբիւր թխակայլակ
Որ 'ի բարձր ապառաժէ հոսէ վըտակ նըսեմաստուեր :
Զոր երագոտն Աքիլլեւս տեսեալ դիւցազնըն գըթացաւ ,
Եւ ասէ բարբառեալ առ նա բանիւք թեւաւորօք .
Զի՞ հարեալ կաս յարտասուս , Պատրոկլէ , զերդ աղջիկ մի տղայ ,
Որ ընդ մօրն ընթացեալ՝ աղաչէ զնա բառնալ 'ի գիրկս ,
Հարեալ բուռն ըզհանդերձէն , եւ ճեպելում լինի խափան ,
Եւ 'ի նա նայի լալով կողկողելով՝ զի զինքն առցէ .
Նըմին գունակ , Պատրոկլոս , գորովալիր ողբս հարկանես :
Եթէ զո՞յց ինչ բերեր Միրմիդոնաց կամ թէ եւ ինձ ,
Կամ համբա՞ւ ինչ առանձին դու 'ի Փթիոյ միթէ լըւար :
Կենդանի դեռ եւս ասեն զՄենետիոս Ակտորեան ծեր ,
Ողջոյն Էակոսեանն է եւ Պելեայ 'ի Միրմիդոնս ,
Ընդ որոց յոյժ 'ի յողբ հարկանէաք ընդ մահ նոցա :
Միթէ դու զարգիւացւո՞ց առնուցուս սուգ՝ զի կորընչին
Առ գոգաւոր նաւկներոյն 'ի սակս իւրեանց ժըլատութեան .
Մի՛ պահեր 'ի մտի՝ խօսեաց , զի երկոքեանքս գիտասցուք :
Ասացեր խոր հեծութեամբ առ նա , հեծեալըդ Պատրոկլէ .
Ո՛վ Պելեայ ծնունդ Աքիլլեւս , քաջայեցուցս ըսկայազօր ,

Մի՛ ցամնուր. զի այնպիսի յաքայեցիս բռնացաւ վիշտ։
Զի որ կայի՛ն միանգամ յառաջագոյն քաջք ամենայն,
Անկեալ 'ի նաւսն դընի՛ն՝ որ նետահար, որ տիգախոց։
Տիդեանըն քաջաղօր Դիոմեդէս կայ նետահար,
Տիգախոց Ագամեմնոն եւ Ոդիսեւս նիզակաւոր,
Վիրաւոր եւ 'ի փըքնէ յազդեր Եւրիպիլոս.
Յորոց կան 'ի դարման ամենահնար բըժըշկապետք
Ապաքինել ըզվէրան, իսկ դու դըժոխահեա ես, Աքիլլեւս։
Քաւ մի՛ զիս այդ կալցի՛ն ոխք, զոր դու քինաս՝ արիդ 'ի չար.
Ո՞վ 'ի քէն շահ ինչ երբեք այսուհետեւ տեսցէ որք այլ,
Եթէ ոչ յարգիլեսցուս զոխի՛ր եղեան հալածիցես։
Անագորոյն. չէր քեզ չէր ապաքէն հայր Պեղեւս ասպետ,
Եւ ոչ մայր քո Թետիս, այլ ծով ծընաւ զքեզ կապուտակ,
Այլ քարաժեռ ապառաժք, զի միտք 'ի քեզ են անողորմ։
Իսկ թէ քեզ գուշակութիւն ինչ խէթ 'ի սիրտդ հարկանէ
Եւ քո մայրըն մեծարոյ պատմեաց ինչ քեզ յԱրամազդայ,
Այլ գէթ զիս յղեա՛ ձեպով, եւ զայլ ամբոխ Միրմիդոնաց
Տըւեալ ընդ իս, զի լոյս թերեւս ինչ ծագեցայց 'ի դանայեանս։
Տուր եւս ինձ ագանել զըսպառազէնսըդ քո զուսովքս,
Զի զքեզ յիս թերեւս տեսեալ՝ դիմայցեն տրովեանք 'ի կըռուելոյն,
Եւ ոգի արիականքն առկցեն որդիք աքեանց հաշեալք.
Եւ լինիցի այս՝ թէ եւ դոյզն ինչ՝ ըսփոփանք պատերազմին։
Եւ հեշտիւ անաշխատքս ըզխոնջ արեարն 'ի ճակատուց
Ցտատան անդր 'ի նաւաց եւ 'ի վրանացըս մերժեսցուք։
Զայս ասաց աղերսահայց պաղատանօք՝ յոյժ մանկամիտ.
Զի աներկբայ մահ անձինն եւ չար օրհաս ժըտէր խընդրել։
Երագոտն Աքիլլեւս յոգւոց ելեալ ասէ առ նա.
Ո՛հ զինեւ, դիւցազարմըդ Պատրոկղէ, զի՞նչ ասացեր։
Ոչ յաստուածուստ ինչ ակն ածեալ գուշակութեան զոր գիտիցեմ,
Եւ ոչ մօրս ինչ նազելոյ յԱրամազդայ զրուցեալ ընդ իս.
Այլ այս ցաւ ծանրաթախիծ ըզսիրտ եւ զմիտս իմ հարկանէ,
Յորժամ այր որք ժըպրհեսցի զըրկահարել զհաւասարորդն,
Եւ զըլանալ 'ի պատուոյն հարըստութեամբ գոռոզացեալ.
Այս ինձ ցաւ է դըժընդակ, զի վիշտ բազում կրեցի յանձին։
Զոր որդիք աքայեցւոց ինձ զատուցին պարգեւ զաղջիկն,
Եւ առացեալ էր նիզակաւս՝ քանդեալ զքաղաքն ամրապարիսպ,
Զայն անդրէն Ատրիդէսն Ագամեմնոն առքայ եհան
Ի ձեռաց իբրեւ յուրուք անաշխարհիկ վըտարանդւոյ։
Այլ զանցեալսըն թողցուք. եւ ոչ համբուն ինչ 'ի միտ կայր
Քէն պահել յաւիտեան, այլ զայս եւեթ էր հաստատեալ,
Մի՛ յոխեցըս ցածնուլ՝ մինչեւ եկեալ հասանիցէ
Ըռչուկ եւ խաղմ մարտամբոխ գուպարածին յիմ նաւատորմ։

Իսկ դու զնկեցիր զուստերդ ղիմ պատերազմի չըքնաղ անօթս ,
Եւ իշխան լինիր 'ի կուռ Միրմիդոնաց մըրցասիրաց ,
Քանզի սոյդ՝ տրովեանց մըթին ամօք փոթորկեալ պատեաց ըղնաւս ,
Արգիլեցիք 'ի ծովափըն կոյս մըղեալք՝ կան պաշարեալ ,
Եւ չըմնայ նոցա գետին 'ի ցամաքէն՝ բայց խուռն եւեթ :
Եւ տրովացւոց խիղախեալ քաղաքն ողջոյն հեղաւ զեղաւ .
Զի զիմոյ սաղաւարտիս ոչ արկանեն յակն ըղձակաս
Առ ընթեր փայլատակեալ . անշուշտ անդէն հալածականք՝
Լընուին գիակամբքըն զառուամիջս եւ ըղծործորս ,
Թէ արքայն Ագամեմնոն լեալ էր ընդ իս հեշտ եւ համբոյր :
Իսկ արդ կըռուեն զձամբարաւս , քանզի Տիդեան Դիոմեդի
Ոչ մոլի նիզակն 'ի ձեռան՝ 'ի դանայեանց վանել զեղեռն ,
Եւ ոչ ձայն ինչ յԱտրիդեայ ժըպիրհ գըլխոյն բարբառելոյ
Հընչեաց յունկն իմ երբէք , այլ Հեկտորի մարդախանձին
Բըրդի զայս խըռախուսելոյն ըղտրովացիսն՝ որ բռնանդակ
Գըռեւեցին զռամամբք ըղզպաշտն՝ յաղթահարեալ մարտիւ զաքեանս :
Այլ եւ այնպէս , Պատրոկլէ , արիաբար արբ զինեա
Վանել ըղժանտն 'ի նաւաց , գուցէ 'ի հուր բոցածաւալ
Հըրդեհեալ ըղնաւատորմն՝ հատցեն ըղդարձըն անհնչալի :
Բայց ունկըն դիր , որպէս ինչ ես բանիս կընիք եդից 'ի միտըդ ,
Որպէս զի մեծ ինչ պատիւ եւ պարծանաց բերցես ինձ շուք
Ցամենայն դանայեցւոց , այլ եւ նոքա զչըքնաղ աղջիկն
Այսրէն յիս դարձուսցեն եւ յաւելցեն պայծառ պարգեւս :
Ի նաւացն հեռըքեալ զնոսա՝ դարձիր այսրէն . եւ եթէ քեզ
Շնորհեսցէ առնուլ փառս ահագնաթռունդ այրըն Հերայ ,
Դու մի առանց իմ առկայն ընդ կըռուասէր տրովադացիսն
Իղձ լինելով դուպարել՝ եւս անմեծար զիս առնիցես :
Եւ մի դու , յաշխոյժ խայտալդ ընդ պատերազմ եւ ընդ նախճիրս
Տրովացւոց կոտորելոց , մինչ յԻլիոն զօրավարեր ,
Գուցէ ոք յՈլիմպոսէ իջցէ 'ի գիւղըն յաւէրժից .
Զի զիպաձիգն Ապոլոն սըրտի մըտօք սիրէ զնոսա .
Այլ դարձ մ՚ 'ի նաւատորմըն ծագեալ լոյս՝ դարձցիս այսրէն ,
Եւ թողցես ըզնոսա մըրցել մարտիւ 'ի դաշտի անդ :
Ո՛ հայր , հայր Արամազդ եւ Աթենաս եւ Ապոլոն ,
Թէ չապրեր 'ի մահուանէ ոք 'ի տրովեանց՝ որչափ եւ ենն ,
Նա եւ ոչ յարգիացւոց , եւ երկոքին միայն մեք ողջ ,
Զի միայն քակէաք ըղսըրբանուէր բըրգունս Տրոյայ :
Զայսոսիկ առ միմեանս այսպէս սոքա բարբառէին :
Իսկ Այաս ոչ եւս եկաց՝ 'ի սըլաքաց բըռնադատեալ .
Ընկճէր զնէքն Արամազդայ միտքն եւ տրովեանքըն նետաձիգք ,
Եւ բոմբիւն ահեղագոչ շուրջ զերանամբքն որոտայր
Բախեալ փայլուն գըլխանոցն , որ անդադար կայր մըշտաթաղ

Ի պաճոյճ պղընձապատման , եւ նա յոգնեալ յահեակ ուսոյն
Պընդապահէս միշտ ունելոյ զշարժուն ասպարն այսըր եւ անդր ․
Այլ զբըրդուել ոչ զօրէին՝ սախալեալ նետիւք շուրջ յամենուստ ,
Եւ անդուլ զըժնէ թատուածն ունէր ըզնա , քիրտն եւ սաստիկ
Ի բնաւէն անդամոցն հոսեալ , եւ չէր ոգի կըլանել ․
Ի կուսոյ կուսոյ չարիք յաւելեալ հոծեալ դային զչարեօք ։
Ասացէք ինձ արդ , Մուսայք , ոլիմպական տաճարին բնակք ,
Նախ զիարդ անկաւ հուր 'ի նաւատորմն աքայեցւոց ։
Զէասայ հացի զեղարդնըն Հեկտորի հաւս մատուցեալ
Զարկեալ սուսերըբն մեծաւ 'ի տեղաբունն՝ 'ի տակը սլաքին ,
Ըճշտ ընդ մէջ հատ ընկէց ․ սակայն Էաս Տելամոնեան
Ճօճէր այնպէս 'ի ձեռինն ըղձայրատ բունն , այլ 'ի նմանէ
Բացագոյն անկեալ յերկիր պղընձի սըլաքն հընչեաց շըռնչիւնք ։
Ծանեաւ Էաս յանբիծ սըրտին ըզդիցըն գործ եւ սոսկացաւ ․
Զի զմարտին խորհուրդս 'ի սպառ խըզեալ Արամազդ ահեղամռունչ՝
Ընդ տրովեանց յաղթութիւն կամէր , եւ խոյս ետ 'ի նետից ։
Նոքա զհուրն ամենածախ արկին 'ի նաւն երագաթեւ ,
Եւ անդէն ճարակեցաւ բորբոքեալ բոցն անշիջանելի ։
Այնպէս 'ի խելս անդ հըրատն երթայր սփռէր ծայրածաւալ ․
Աքիլլէ կոծեալ զազդերսն՝ առ Պատրոկլոս ձայն արձակեաց ․
Օ՜ն արի , դիւցազնարմըդ Պատրոկլէ ձիամարտիկ ․
Զոխերիմ հըրոյն յարձակումըն տեսանեմ առ նաւակներոյն ․
Գուցէ զնաւըն ծախեսցեն , եւ անհնարին լիցի փախուստ ։
Ադիր ըզզէնսըն փութով , եւ ես ըզզօրըն խըմբեցից ։
Զայս ասաց , եւ Պատրոկլոս վառէր կազմէր փայլուն պըղնձով ։
Եւ նախ ըզսըրնապանսըն զեղեցիկս յեռ ըզբարձիւքն՝
Ցօրինեալս եւ յարմարեալս արծաթեղէն ճարմանդօք ․
Եւ երկրորդ ապա զզըրահս առեալ 'ի լանջս իւր ըզգենոյր՝
Զնըրկարէնն՝ աստղաճաճանչ՝ զԷակիդեանն երագոտին ։
Եւ զուսովքն արկեալ ածէր զպըղընձի թուրն արծաթագամ ,
Եւ ապա յայնըմ հետէ զվահանըն մեծ հաստահարուստ ․
Եւ 'ի գըլուխն հըզօր եդաւ ըզսաղաւարտն արուեստաւոր՝
Ձիաբաշ , եւ զարգմանակ ճօճէր վերուստ ահեղակերպ ․
Առ երկէն ամուր աշտեայս՝ ձեռինն իւրում պատկանաւորս ։
Այլ չէառ ըզանեփական Էակիդեայ քաջին նիզակ ,
Ըզծանր՝ ըզյաղթ եւ ըստուար , զոր ոչ ոք այլ յաքայեցւոց
Ճօճել զօրէր , այլ միայն ճարտար 'ի նոյն էր Աքիլլէս ,
ԸզՊելեան հացին զոր ետ Քիրոնն նորուն հօր սիրայնոյ
Ի Պելեայ բարձունագագաթէն՝ 'ի սատակումըն դիւցազանց ։
Եւ հրաման ետ զի հապճեպ լըծեսցէ զձիան Աւտոմեդոն ,
Զոր ըզկնի ճակատամարտողն Աքիլլեսի մեծարէր յոյժ ,
Եւ էր իւր մըտերմագոյն 'ի ժուժկալել մարտիցն 'ի գոռ ։

Եւ անդէն Աւտոմեդոն զերամ ձիանն ած ընդ լծով
ԶԱչխէան եւ զԲալիոս՝ որ զոյգ ընդ հողմոյ թռչէին,
Զորս այսոյն Զեփիւռոսի ծնաւ Մրրրիկըն Ճեպոտնէ
Մինչ 'ի մարգս արածէր առ հոսանօքն Ովկիանու :
Եւ 'ի փոկս արտաքինս յաւել զքնաւոր Պեդասոն 'ի կառս,
Զոր Աքիլլէս ստացեալ երբեմն՝ առեալ զաւանն Էետիոնի,
Որ եւ լեալ մահկանացու՝ կից անմահից ընթայր ձիոց :
Իսկ Աքիլլէս ընթացեալ՝ զՄիրմիդոնեան 'ի զէն վառէր
Ընդ վրանօքս վրանս, եւ նոքա զերդ գայլք գիշատիչք՝
Յորոց 'ի սիրտս է նոյին անհընարին այժ ուժգնութեան,
Որ զմեծ եղջերաւոր սպանեալ 'ի սարս զեղջերու՝
Պեղեքեն, բոլորեցեալ երամք կարմիր արիւնաներկ,
Եւ երթան միախուռն 'ի ծմակախառն աղբերակունս
Լափել լեզուաւ նրբեխնիւք զմրկախառն թուխ վտակաց,
Զապառաժայծ արեան զգայյակեալ, եւ սիրտք 'ի լանջսն աներկիւղ,
Եւ որովայնք նոցին կշտացեալ խծկեալ նեղին ցպալարասուն.
Այսպէս Միրմիդոնացն բաղաատաքարք եւ զօրապետք
Ըզքաջասիրտ արբանեկաւ Էակիդեան երագասուն
Զհետոյն, եւ 'ի նոսա կայր Աքիլլեան արիական
Զերիվարս եւ զարեարն տապարաւոր խրախուսեալ :
Յիսուն նաւք էին երագք՝ զոր սիրելին Արամազդայ
Աքիլլէս 'ի Տրոյա զօրավարէր, եւ 'ի մին մի
Արք էին յիսնաւորք 'ի նաւաստեան ընկերակիցք.
Եւ էր հինգ կարգեալ առաջս յորս էր վստահ յառաջնորդել,
Իսկ ինքն՝ էր մեծազօր ամենիշխան հրամանատար :
Միոյ գընդին առաջապետ Մենեսթիոս էր խայտազրահ՝
Որդի Սպերքէոսի յԱրամազդայ ըղջեցեալ գետոյն,
Զոր Պէլէոսեան ծընաւ դուստրըն գեղանին Պոլիդորա՝
Անխոնջէին Սպերքէոսի, կին մարդ 'ի գետ անմահ հարեալ,
Բայց յանուանն՝ 'ի Բովրոսէ 'ի զաւակէն Պերիէրեայ,
Որ առին յայտնի կին արար՝ տուեալ վարձանս օժիտ անթիւ :
Երկրորդին՝ Եւդորոս արիական զօրապետէր,
Աղջկորդի՝ զոր ծընաւ Պոլիմէլէ գեղապարող
Փիլասայ դուստր, այլ նըմին տուեալ հըղօրն Արգոսասպան,
Իւրոյին տեսեալ աչօքն 'ի պարասուր մէջ վարձակաց
Ի պարուն ոսկէփրլէնն ամբոխադողայն Արտեմիսի,
Եւ եղեալ նոյնհետայն 'ի վերնայարկն աղուն Հերմէս՝
Քուներաց ընդ նմա 'ի ծածուկ, որ եւ նըմա զաւակ պայծառ.
ԶԵւդորոս՝ յընթացս առին յոյժ քաջորշու եւ զօր. մարտիկ :
Իսկ առա երբեւ զնա Իլիթիա ծընընդախնամ
Հան 'ի լոյս, եւ տես ըզճառագայթս արեգական,
Ակտորեանն Եքեկլէսի կար զօրութեան առեալ զաղջիկն

Ցապարանայն իւր տայրաւ՝ քնւըս 'ի թեւըրուց աղւեալ օժիտս.
Իսկ Փիլաս ծերն ըղխոշտառքն դայեկեալ սընոյց խնամով,
Խանդակաթ սիրով փարեալ, որպէս թէ զիւր բնութեանք մանուկ։
Երրորդին զօրավարէր արիականն Պեսանդրոս
Մեմալեանն հրաշակաւոր քան զամենայն Միրմիդոնայս
'Ի գուպարել նիզակաւ, յետ համհարզի Պէլէածնին։
Չորրորդին՝ ալեւորն իշխէր Փիւնիկս ասպետապետ,
Հինգերորդին՝ Լայերկեայ ձիաւորն ընտիր Ալկիմեդոն։
Եւ յորժամ զամենեսին դասակարգեալ զօրավարօքն
Ցօրինեաց Աքիլլեւս, պատուէր կրկնեաց ազդողագոյն.
Միրմիդոնք, մի՛ սպառնալիքըն մոռասցինք լսելն ումեք՝
Զոր 'ի նաւսն երագաթեւս սպառնայիք տրովադացւոց
Ցամենայն ժամ յոխութեանս, եւ լինէիք ինձ մեղադիր.
Պէլեայ ձեռ դառնացող, անշուշտ լեղի ջամբեաց քեզ մայրդ.
Անհամբոյր, որ առ նաւուքն ունիս զընկերսդ բռնաբար.
Գէթ անդրէն դարձցուք 'ի տուն անդընդաշու նաւատորմիւս,
Քան զի զամ մի եկն 'ի սիրտդ անկաւ այդ ժանտ բարկութեան մաղձ։
Զայս ըստէպ ժողովեալ բարբանջէիք. արդ եկն եհաս
Գործ մեծ պատերազմի՝ ում ցանկայիքն 'ի սկզբանէ։
Անդ որ սիրտ ոք քաջախրոխ է՝ կռուեսցի 'նդ տրովադացիս։
Զայս ասացեալ մղացոյց զամենեցուն զոգիս եւ զսիրտ.
Սերտեցան դասքն առաւել՝ յորժամ լուան ըզթագաւորն։
Որպէս ոք՝ զի զտան բարձու զորմն յօրինէ հոծեալ քարամբք,
Ըզգոյշ լինել եւ պատրաստ 'ի հողմաշունչ բռնութենէ,
Այնպէս կուռ կային վահանքըն կռմբաւորք եւ սաղաւարտք,
Ասպար յասպար յեց, գըլխանոց 'ի գըլխանոց եւ այր առ այր.
Զիարդէս սաղաւարտք 'ի ձօձ փայլուն գարգմանակաց
Շրփէին ընդ միմեանս. այնպէս կային մօտ առ իրեար։
Բայց արք երկու յառաջոյ զինուորէին բոլորեցուն,
Պատրոկլոս եւ Աւտոմեդոն, միախորհուրդք եւ միաշունչք,
Անդ 'ի գլուխ Միրմիդոնից կալ մարտընչել։ Բայց Աքիլլեւս
Երթ 'ի վրանն եւ զգեղեցիկ ճարտար արկեղն ըղխուփին եբաց,
Զոր 'ի նաւսն արծաթթաթիկն եդեալ Թետիսն էր զի տարցի,
Լըցուցեալ խըձեալ շապկօք եւ հողմապահ պարեգօտիւք
Եւ թաւազարդ օթոցօք. էր անդ իւր սկահ մի յօրինեալ,
Որով ոչ 'ի մարդկանէ ոք զանապակն ըմպէր ըզթուխ,
Եւ ոչ ումեք յաստուածոց՝ բայց հօր ձօնէր Արամազդայ։
Առեալ զայն յարկեղէ անտի սըրբեաց նախ ծըծըմբով,
Եւ լըւաց ապա յորդ ականակիտ ջուրց վտակաց,
Լըւացաւ եւ զձեռըս իւր, եւ սեւորակ լըցեալ գինի,
Եւ 'ի մէջ անդաստակին կացեալ ապա՝ դէտակն յերկինս,
Աղօթէր, եւ չանց թաքուն ըզշանթաղուարձն Արամազդաւ.

Բարբառեալ զայս՝ եռացոյց զամենեցուն սիրտ եւ զհոգւով,
Եւ զրահ եռաց միախուռն 'ի տրոփմունս, եւ նոյնքն 'ի շուրջ
Արձագանգս հարքին ահեղ առ խրախուսանս պատերազմաց:
Տրոփմացիք եւ բերկրեալ սրտին ընդ Մենիփանեայ զաւակին հաւժկաւ,
Ընդ սա եւ զաղաշխանեայն 'ի զէն 'ի զարդ փայլակնացեալ,
Թունդ առ սիրտ ամենեցուն եւ զսամբասանք դղրդեցան.
Խնդացեալք թէ երագոտին Պեղեւսեան որ առ նաւաքն՝
Ընկեցեալ զոխեցն քէն եւ 'ի հանգիստս կայ եկեալ,
Այս ամենայն որք ածէին փախուցեալ 'ի մեծ կորստականէն:
Արձակեաց Պատրոկլոս ընդփայլածուն մեկուսանդին նախ
Անդր 'ի մէջ 'ի հանդիպոյն՝ ուր յոգնախուռնք կուտակէին
Անդ առ խելս նաւի Պրոտեսիլեայ մեծահոգւոյն.
Եւ եհար ընդ Պիրեքմես՝ որ ընդ Պէոնեան հեծելազօրս
ԵԱմիդոնեայ խաղացոյց 'ի յորդահոսն Աքսիոսէ.
Զորոյ զաջն հարեալ ուս, եւ նա յորսայս տապալեցաւ
Հաչելով փոշեթաւալ, զեւրեան ընկերք փախեան Պէոնք,
Քանզի ահ 'ի նոսա յամենեւին արկ Պատրոկլոս՝
Սատակեալ ըզզօրավարն արիագոյն 'ի պատերազմ:
Ի նաւաց վանեալ զնոսին՝ ըզբորբոքեալ հուրըն շիջոյց.
Նաւն անդ մնաց կիսայրեաց, եւ 'ի փախուստ դարձան տրոյեանք
Ահագին խուճապանօք, իսկ դանայեանքըն խուժէին
Ըզդողեալ կարկուրէիւքն, եւ անխափանս յորձանս աղմուկ:
Որպէս յորժամ 'ի բարձու գագաթանէ լերին մեծի
Վարեսցէ կայծակնացայտն Արամազդ զամպ կուտակեալ,
Երեւեին բնաւ դիտանոցք եւ բարձրայօն սարք եւ մայրիք,
Եւ ցնցեալ պատառի յերկնուստ արփին անպարագիծ.
Նոյնպէս մերժեալ դանայեանց 'ի նաւակայեացն զհուրըն սպառնալ՝
Առին դոյզն ինչ ոգի, սակայն կռուոյն չէր դուլ դադար.
Ոչ յերեսաց Արեայ սիրուն պատերազմաց տրոփմացեալք
Թափէին դէմ 'ի փախուստ 'ի սեւաթոյր նաւատորմիղէն,
Այլ հարեալ դեռ 'ի դիմի՝ հալեալ տային 'ի նաւաց խոյս:
Անդ 'ի ցրուել ճակատուն՝ ըսպանէ այր զայր 'ի սահմանաց:
Եւ անդէն նախ առ ժամայն Մենետեայ Քաջն արիական
Զդարձեալըն Արէյլիկեայ զազդրըն խոցեալ սուր մկրընդաւ՝
Թափ ընդ թափ ըզպղնձին 'ի կոտրմանէ անցոյց 'ի կողմ.
Եհերձ զոսկրըն աշտէն, եւ նա յերեսս անկաւ յերկիր:
Ըզթոաս վիրաւորեալ արիական Մենելաւոս,
Որոյ մերկ էին կուրծքն առ ասպարին, զանդամովն եղծ:
Փիլեւէս նիզակաւոր՝ զի յանդրդնեալ դայր Ամփիկլոս,
Անճապարեաց եւ եհար՝ ուր թանձրագոյն է մսրգոյ թանձ
Ի ստորեւ զըստեղին յօղըն, եւ շուրջ զեւրեւ հերձատեցան
Ջիլք եւ կարթէք 'ի սուր սայրին, եւ զաչըս իւր ծածկեաց խաւար:

Իսկ Նեստորեանք, մին խոցեալ զԱրմենիոս հատու տիգաւ,
Անտիոքեան, եւ միւսեալ 'ի կուշս նորա զաշտէն պղնձի,
Զառաջնեաւն անկաւ խոռոմ. բայց տորդն 'ի ձեռս հասեալ Մարիս՝
Դիոնեայ եկն յԱնտիոքեայ՝ յաղագս եղբօրն սըրբազնեալ,
Կանգնեցաւ առ գլխականն. իսկ զայդըն դէպ Թրասիմեդէս
Կանխեալ եհար չէշտ զուսն անմեղեկալ, մինչ չեւ ճիչ մէրս եղեալ նորա,
Եւ զբազուկն արմատախիլ հատ 'ի ներքուց սէգ նիզակին,
Եւ կլարեալ զոսկրըն անդամ բաղադարատեալ՝ ընկէց 'ի բաց.
Ինքն 'ի գետնին Թրնդեւք գլորեալ՝ զաչօք խաւարք մածեալ խաւար:
Այսպէս սոքա երկոքեան յերկուց եղբարցն անկեալ տապաստ՝
Գնացին 'ի մութն անդընդային, ընկերըքն քաջք Սարպեդոնի,
Զորս արդնաւորս Ամիսոդար ծընաւ՝ որ սնոյցն ըզՔիմերայն
Զանմերձենալին անկարակէլ՝ յաղագս մարդկան ժանտ զժընդակ:
Իսկ Ոյլեանն Էաս դիմեալ ձերբակալեաց կենդանւոյն
Ըղկատեալըն առդ 'ի խառն Կլէոբուլոս, այլ նոյն ընդ նոյն
Լոյծ ըզկենսըն՝ մեծակոթ սրովն հատեալ ըզպարանոցն.
Արեամբ տապացաւ սուսերըն ամբոյն, եւ զաչօքս նոր
Կալաւ մահ ծիրանի եւ բըռնահամահ օրհասին բախտ:
Պենելէոս եւ Լիկոնն յարձակեցան 'ի միմեանս,
Զի նիզակօքն 'ի միմեանց վրիպեալ ձըգեալ էին ընդ վայր.
Արդ սոքա երկոքին դարձեալ թըրովքըն ընթացան կից:
Անդ Լիկոնն ըզձեղուն զըլխանոցին եհար խոյրան,
Սակայն հաւոյ յերախակալըն փըշրեցաւ վաղվաղակաւորն.
Իսկ անդրուստ Պենելէոս միջասուրեալ զուլն ընդ ունկանն,
Եմուտ սուսերըն բոլոր, մինչեւ մնաց մորթոյն եւեթ,
Եւ գըլխաւորըն կայր կախեալ, լուծան լըքան անդամք նորա:
ԶԱկամաս, թեթեւ ոտիւքըն ժամանեալ Մերիոնէս,
Ցերմնելըն 'ի կառս եհար յաջ ուսն, անկաւ նա 'ի կառացն,
Եւ հեղձեալ մառախուղ տարածեցաւ յաչըս նորուն:
Սուր պղընձոյն ընդ բերանն Իդոմենեւս հար զԵրիմաս,
Եւ սլաքըն պղնձի եղ 'ի ներքուստ ուղղոյն թափանց,
Ջախեաց զոսկերսն բազկատակս եւ ատամունքըն թափեցան,
Աչքն երկոքին լցան արեամբ՝ զոր 'ի փեռեկ փըչեաց փողէցն
Ընդ բերանն եւ ընդ ռընգունս, եւ զնա մահուն պատեաց թուխ ամպ:
Սոքա պետք դանայեցւոց այր ըզայրն իւրաքանչիւր:
Որպէս գայլք գիշատիչք յոչխարս կամ յուլս յարձակէին
Ի հօտիցն յափըշտակել զորս 'ի լերինս օգտակարքն լքեն
Ի հովուէն խոհանութենէ, եւ 'ի նոսին եղեալ գիտակն
Անդէն վաղվաղակի խըլեն տանին ըզկարատուկս,
Այսպէս դանայեցիք 'ի տրովացիսն եղեալն գրոհ,
Որ մոռացան զբուռն արութիւն՝ Ձիգըն 'ի փախուստ չարաչըշուեալ:
Իսկ Էաս մեծն՝ 'ի Հեկտոր պղընձազէն նիզակաւ յանդ

Հարկանել նիզակաւ, սակայն նա փորձ 'ի պատերազմ
Անպարտան արջառենի պարածածկեալ ըղլայն ուսերն՝
Ուշ 'ի շըչիւն ունէր սլաքաց եւ 'ի շըռինդ աշտէից ·
Զյեղաշուրջ յաղթութիւն մարտին առնոյր անշուշտ 'ի միտ,
Բայց եւ այնպէս կայր եւ մնայր, պահէր զընկերսըն փարելս :
Օրինակ իմն որպէս ամպ յՈւլիմպեան սուրհայ 'նդ երկին
Ընդ արփին ջերոտ՝ յորժամ սըփռէ մըրրիկ յոյժ Արամազդ,
Նոյն եւ սոցա 'ի նաւացն եղեւ խուճապ եւ աղաղակ,
Ոչ կարգաւ ինչ յօրինմամբ անցանելով անդրէն յայնկոյս :
Երագոտն երիվարք զՀեկտոր զինուքըն տանէին ·
Ըզտրովեան բանակն ելեք՝ զըբռնակալեալսըն 'ի մէջ փոսոյն ·
Եւ բազումք 'ի խորափոսի անդ կառաձիգ ժիր երիվարք
Ծայրաբեկ խորտակեալ զքեղիս՝ Թողին զկառս արքայից :
Իսկ Պատրոկլ՛ ըղհետ խաղայր՝ եռանդն ածեալ զանայեանց յոյժ,
Տրովացւոցն հենու չարիս, որ 'ի խօշիւն եւ 'ի խուճապ
Զամենայն լըցին շաւիղս՝ յետ միանգամ ցիր լինելոյ ·
Ի բարձունըս փոթորիկ փոշւոյ 'նդ ամպովք մըրըկեալ սըփռէր,
Եւ ընդ կրունկ վերջոտնեալ ալասըմբակ երիվարեանք՝
Զընթացս յոստան անդր 'ի նաւացն եւ 'ի վրանաց ոլորէին :
Պատրոկլոս՝ ուր գունդագունդ զամբոխակոյտն եւես խըռնեալ,
Խըրախուսեալ անդր արշաւէր, եւ գլորէին արք ընդ սռնաւքըն
Անկեալք յերեսս 'ի կառաց, տապալէին գըլորգըլմամբ երկձիք :
Իսկ յայնկոյս պարկէն փոսին ժիր երիվարըն աստեան անմահք,
Զոր տըւեալ էր աստուածոց շըքնաղ պարգեւըս Պեղէոսի ·
Խաղային յառաջադէմ, եւ յորդորէր սիրտն 'ի Հեկտոր՝
Զոր խընդրէրն հարկանել, այլ տանէր զնա ձիանն երագ :
Զոր օրինակ յամպրոպից ծանրի երկիր Թուխ բովանդակ
Յաշնային աւուրս՝ յորժամ սաստիկ հոսէ տեղ Արամազդ
Սըրտմըտեալ 'ի պատուհաս արանց որ Թիւր ըզդատաստան
Դատիցին հարըստացեալ 'ի յատենի հրապարակաց,
Եւ մերժիցեն զիրաւունս՝ անփոյթ վըրիժուցն արարեալ դից ·
Որոց գետք առ հասարակ յորդահեղեղ առատացեալ՝
Զյոլով բըլըրոց շեղ շեմակս ուղխիցն ողողք զերփեն յայնժամ,
Եւ 'ի ծովըն ծիրանի գլիմեալ գըլլին ահագնամռունչ
Ընդ լերանցըն զառ 'ի Թափս, եւ խաթարին արարք մարդկան ·
Զնոյն զամբոխըն տրովականք ընթանային ուժգին փուշընչմամբ :
Պատրոկլոս իբրեւ պուղեաց ըզգումարտակըն զառաջինս,
Յետս անդրէն վերըստին վարեալ 'ի նաւսըն կոյս դարձոյց,
Ի քաղաքն անդր ըստ ըղձիցն ելանել ոչ Թողացուցեալ,
Այլ անդ ընդ նաւսն եւ ընդ գետն եւ ընդ պարիսպըն բարձրաբերձ
Զհետ մըտեալ սատակէր եւ զյոլովից հանէր վըրէժ :
Եւ հարեալ նախ անդէն ըզՊրոնոոս սուր գեղարդեամբ,

Որոյ մերկ առ վահանին լանջքն երեւէր, երյծ զանգաման,
Եւ զջեանի զարկու Թընդմամբ. խսկ յարձակեալ նա միւսանգամ
Ի Թեսսոր՝ ձեռ Ենոփսեան, — որ յաղԹաանին ոլորկաղեղ
Նըսաէր կըծիկ՝ մըտաղախ, եւ 'ի ձեռացն երեսանեակք
Ջերծեալ հոսեալ ցիր ընդ ցիր, — եւ նա հասեալ հար նիզակաւ
Ձախ կողակն, եւ անցոյց ընդ սասամունըս նորին Թափ.
Եւ կալեալ ղուռնակոԹոմն՝ ըզծընօտիւ ձըգէր կառացն,
Որպէս զի զձուկն ոք ըղսուրբ՝ նըսանեալ 'ի վէմ սարաւանդեալ՝
Ցանդըրնդոց հանէ լարիւ եւ պղղպաջուն պղընձով 'ի դուրս.
Ի կառացն այսպէս ձըգէր փայլուն տեգաւ զերախարացն,
Եւ ԹօԹափեաց 'ի բերանս, զոր յանկանելն ելքք հոգին:
Եւ ապա զԵրկէլաւոս ըզխեղախեալն եհար քարամբ
Ընդ մէջ կառափին՝ որ բոլանդակ հերձաւ յերկուս
Ցամբակուռ զըլխանոցին, եւ ինքն յերկիր գլեցաւ յերեսս,
Եւ հեղեալ տարածեցաւ ըզնովաւ մահ հոգեկորոյս:
Ըստ նորմանէ զԵրիմաս, զԱմփոտերոս եւ զԷպալԹես,
Զդամասաորեան Տլեպոլեմ եւ զԵքիոս եւ ըզՊիրիս,
Եւ զԻփեւս եւ զԵւիպպոս եւ զՊօլիմէլ արգէասեան,
Ըզմինմեամբք առ հասարակ ընկէց յերկիր պարարտարօտ:
Սարպեդոնին երբեւ եսես զանգօտեւած զըրահեալ ընկերսն
Ի Մենիտեան Պատրոկլի ձեռացն անկեալըս զի Թաւալ,
Խրախուսեաց կըշտամբանօք զաստուածանման Լիկիացիսն.
Ամօթ, ով Լիկեանք. եւ յո՞ փախնուք. այժմ էք ըսԹափ.
Ահա ես առնըս այսմիկ պատահեցայց արդ, զի ուսայց՝
Ո՞վ իցէ յաղԹօղդ այդ, որ մեծ ոճիր գործեաց տրովեանց՝
Ըզյօդռւնց եւ ըզքաջաց ծունկս արարեալ կարԹակոտոր:
Ասաց, եւ 'ի զուգեցն յերկիր Թափեաց զինքըն զինուքն.
Անդուստ եւ Պատրոկլի տեսեալ՝ վաղեաց 'ի կառացն էջ:
Եւ սոքին, որպէս անգեղք կորամագիլք, կեռակըրտուցք
Ի բարձու քարաժայռին ուժգին կանչիւք տան պատերազմ,
Այնպէս սոքա գոռալով միմեանց վերայ յարձակեցան: —
Զորս որդին կորովամիտըն Զըրուանեայ զնոսա տեսեալ՝
Գորովեցաւ եւ ասէ առ Հերա քոյրն եւ ամուսին.
Ո՛հ զիս, Սարպեդոնի սիրեցելոյս 'ի մարդկանէ,
Հասեալ է ինձ օրհաս, 'ի Մենիտեան որդւոյն պարտել:
Բայց 'ի յոյզըս խորհըրդոց սիրտս ընդ երկուս միտս հարկանի.
Կամ զի զնա կենդանւոյն յարտօսրալիր դուպարածէն
Ցափըշտակեալ փոխեցից 'ի Լիկիոյ ձոխ ժողովուրդ,
Կամ Թէ տաց 'ի պարտուԹիւն 'ի Մենիտեան քաջին բազկէ:
Եւ նըմա պատասխանի գեղեցկանայն աչեղն Հերա.
Ահաւորդ Զըրուանեան, բան որպիսի՛ ընդ բերան հանէր:
Զայր մի ոք մահկանացու՝ վաղուց յօրհաս ձակատագրեալ՝

Ի չարաշուք մահուանէ միթէ թափիլ կամիս այսրէն.
Արա, բայց այլ աստուածք չհաճոյք քեզ յանձն առ հասարակ։
Ասացից եւ այլ ինչ քեզ, եւ դու 'ի միտ կալջիր ուշիւ.
Թէ 'ի տուն իւր ողջանդ առաքեսցես ըզՍարպեդոնն,
Տես եւ այլ ումեք 'ի դից դուցէ առա կամք եղիցին
Արձակել զորդին սիրուն 'ի պատերազմէ մարտակռուէն.
Զի շատք ըզմեծ տամանու Պրիամեան կան պատերազմեալք
Անմահից զաւակունք, զորս 'ի ցասումն ածցես առաւել։
Այլ թէ քեզ է սիրելի, եւ խորովին ողբայ դու,
Թող ըզնա 'ի խիստ կռուեն 'ի Մենիտեան Պատրոկլի ձեռս
Լինել նըկուն, բայց սակայն 'ի զնալ ոգւոյն իւր եւ կենաց
Առաքեա զՄահ եւ զանոյշ Քուն զի բարձեալ տարցին ըզնա,
Մինչեւ 'ի լայն Լիկիոյ 'ի ժողովուրդն հասանիցեն.
Անդ ըզնա հարազատքն յուղարկեսցեն եւ բարեկամք
Ի գամբան եւ մահարձան. զի այս է շուք վախճանելոց։
Զայս ասաց, մարդկան հայրն եւ աստուածոց ոչ անսաստեաց,
Բայց տարափս ընդ երկիր արիւնեռանդ ածեաց շաղից
Ի պատիւ սիրուն որդւոյն՝ զոր հանդերձեալ էր Պատրոկլի
Սպանանել 'ի գաւառս Տրոյա հեռի յիւր աշխարհէն։ —
Իսկ սոքա իբրեւ դիմեալ հասան առ միմեանս հասանէին,
Անդ յայնժամ Պատրոկլոս ըզհռչականունն Թրասիմէլ,
Զարքային Սարպեդոնի զերեւաւոր պաշտօնեայ քաջ,
Հարուածեալ 'ի ներքին որովայնին՝ զանդամսն եղծ։
Սարպեդոնն երկրորդ դիմեալ փայլուն տիգաւ՝ վրիպեալ անտի,
Զերիվարն եհար Պեդասոս ընդ աջեակ ուսն նիզակաւ,
Որ փառընդացեալ, 'ի փըչել զոգիսն, անկաւ անդ վըռնջելով
Ընդ փոշին հողաթաւալ, եւ շունչ ոգւոյն թռուցեալ գընաց։
Իսկ ամոլքն էին 'ի հեռս, լուծն 'ի ճըռճինչ, խառն երասանք.
Զի որ 'ի փողկան արտաքինն՝ անկեալ դընէր ձին 'ի փոշւոջ։
Եգիտ այսմ Աւտոմեդոն կորովաձեռն դու՛լ եւ ճարակ.
Ի թանձրաթամբ ազդերէն ձըգեալ ըզլթուրն երկայնաչափ,
Կարկառեալ եւ զառընթերն եհատ, չեղեւ ապաժամն.
Ուղղեցան միւս երկոքին եւ զասանձանիւք մըտին 'ի լըլոր.
Խառնեցան եւ արք անդրէն 'ի կենախուզ մարտին գուպար։
Անդ Սարպեդոնն միւսանգամ փայլուն տիգաւըն վրիպեալ,
Աշտէին սայր 'ի վերուստ ահեակ ուսոյն անց Պատրոկլի,
Ցինքն անհասալ. ըզհետ ապա եղ պըղնձովըն Պատրոկլոս,
Եւ սորայն ոչ 'ի նանիր ինչ 'ի բազկէն փախեաւ մըկունդ,
Այլ եհար՝ ուր առագաստն ըզհաստատուն սիրտն անջրպետէ։
Եւ անկաւ որպէս տղոցի եւ կամ բարտի մի տապալեալ
Կամ թեղօշ մի բարձրաբերձ, զոր 'ի լերինս հիւսանց մանկունք
Նորաթեկ տապարօքն հարեն լինել 'ի նաւափայտ,

Նոյն սաստիկ երկմտութեան եւ կասկած կայր նա զի տապաստ
Զաստուածանմանն կործանելով զոգուռան արկեալ յարկեանս հող:
Օրինակ իմն առիւծ հրատեալ յանդեայն բացան բարուլ
Ըղձաբարեալ եւ զմեծամարմն՝ յերկնչուց ջոկ հանդարտընթաց,
Եւ կորընչի առիւծուն ընդ ծամելեացն հեծեծելով,
Նոյնպէսանակ մահահաւար կներանցըն պէս 'ի Պատրոկլէ
Վիրաւոր' գողէս ջանայր եւ զանձկալին կարգայր զընկեր.
Գիշաւկոս սերուն՝ ընդ քաջաց քաջամարտիկ, այժմ յոյժ 'ի դէպ
Կանգնել կալ քեզ նահատակ եւ ճակատել 'ի պատերազմ.
Ցանկալի լիցի քեզ արդ, թէ ժիր իցես, գործել զուայար:
Նախ զորեարն արկանեան՝ բայլիկեանց պետարն յորդորեա
Ընթացեալ ընդ ամենայն, զի կռուեսցին զՍարպեդոնիւ,
Ապա եւ դու յիմ մերայ դընիցես մարտ 'ի սայր պղնձի:
Զի ես քեզ պատուհասեւ ամբոխարանք եւ նախատինք
Լիցիմ միշտ զօր համապազ, եթէ երբեք ապայեցին
Մերկասցին զզէնս յենէն յանկելոյս տատ 'ի կախ նաւաց:
Աղէ պինդ կաց զօրավէս, քաջալերեա եւ զբուռնդն ողջոյն:
Այն ինչ բանքն 'ի բերանն էին՝ կափոյց մահուն վախճան
Զաչըս նորա եւ զռընդուն. իսկ նա 'ի լանջան աքացի
Տրոփեալ կորզեաց բզըկեալըդն, եւ արտոսպքն եկին ընդ հեռ.
Եւ ըղտեպ նիզակին եւ զհոգի ողես թափեաց համայն:
Միրմիդոնք հաւեալ կալան անդ զերիվարս իբր ըղջերըշեալս,
Անձկասցեալս 'ի փախուստ՝ 'ի թափրանոց աւարըսն կառաց:
Գիշաւկոսի գառնացեալս ցաւեաց 'ի լուր ձայնի նորա,
Սիրտ նորա մորմոքեցաւ՝ զի յօգնութիւն ոչ ժամանէր.
Եւ զբազուկն առեալ ձեռամբ ճզմէր մարձէր, զի էր 'ի ցաւս
Ի վիրացըն զոր Տեւկրոս՝ մանեալ զերեան յընկերակցաց,
Զինքն 'ի գլխէն 'ի բարձունըս պատուարին խոցեաց նետիւ:
Եւ կացեալ յաղօթս առէր առ Ապողոն կորովաձիգ.
Լուր, արքայդ, ուր եւ իցես 'ի Լիկեայ ճոխ ժողովուրդ,
Կամ 'ի Տրոյա, զի յամենուստ ուսանք կարող ես դու լսել
Մարդոյ վշտացելոյ, որպէս այժմ յիս հասին երկունք:
Զի է խոց յիս կարեվէր, սայրասուր ցաւք 'ի ձեռս հարան,
Եւ արիւն իմ ոչ գիտէ ընդ ցամաքել, եւ ծանրանայ
Ուսն իմ ինձ 'ի նմանէ, եւ ընդդիմակս ոչ տարակեմ
Պինդ ունել անդրդուելի, ոչ ընդ ոսոխս 'ի կռիւ մատչել:
Իսկ արդ այր ազնըւագոյն կորեաւ՝ որդին Արամազդայ՝
Սարպեդովն, իսկ նա եւ ոչ իւր որդեկին հասանէ մեզ:
Այլ արքայ դու ինձ, զայս վէրըս դառնութեան բըժըշկեսջիր,
Ցածո զցաւս, տուր զօրութիւն՝ զի խրախուսեալ զըլինուորակիցս
Ըզլիկեանս՝ յորդորեցից 'ի զուպարան պատերազմիս,
Եւ ինքնին ընդդիմակամք մահացելոյն մաքառեսցուք:

Զայս խնդրեալ աղերսալի՝ եւ Ապոլոն լուաւ Գուշակին,
Իսկ եւ իսկ անցոյց ըզցաւսն, եւ 'ի վիրէն դառնակըսկիծ
Ցամաքեաց զարիւնըն Թուխ, եւ 'ի հոգին իւր արկ կորով։
Ի սըրտին իւրում 'ի միտ էառ Գլաւկոս եւ ցընծացաւ,
Զի մեծն աստուած ունկընդիր եղեւ փութով հայցմանն իւրում։
Նախ զօրեարըն արխական զԼիկիացւոց պետս ընդոստոյց
Ընթացեալ ընդ ամենայն՝ կալ գուպարել զՍարպեդոնիւ.
Եւ ապա ոտքընթաց խաղայր գընայր առ տրովացիսն,
Առ Պանթոյեան Պուլիդամաս եւ Ագենովր աստուածազան.
Ընթացաւ եւ յԷնիաս եւ 'ի Հեկտոր պըղընձազրահ։
Եւ կացեալ առընթեր՝ ըղթեւաւոր արձակեաց ձայնս.
Հեկտոր, իսկ արդ դու բնաւ իսկ մոռացար զնիզակակիցս
Որ վասըն քո 'ի սիրելեաց եւ հայրենի երկրէն նըժդեհք
Տան զանձինս իւրեանց 'ի մահ, եւ դու չկամիս գալ 'ի Թիկունս։
Անկեալ կայ Սարպեդոնն՝ ասպարաւոր Լիկեանցն իշխան,
Որ պահպանէր օրինօքըն եւ զօրութեամբըն ըզԼիկիա.
Նիզակաւ ըզնա պըղընձին պարտեաց Արէս ընդ Պատրոկլիւ։
Այլ հասէք, սիրելիք, եւ զայրասցին սիրտք ձեր 'ի ձեզ,
Գուցէ զզէնսն առցեն աւար եւ ըզդիականըն զըզուեսցեն
Միրմիդոնքըն սըրտմըտեալք ընդ դանայեանց այնչափ կորուստ,
Զորս առ երագ նաւկներոյն սատակեցաք մըկընդահար։
Ասաց եւ զբնաւ տրովացիսն անտանելի պաշարեաց սուգ,
Անմխիթար, քանզի սիւն էր քաղաքին իւրեանց նեցուկ,
Թէպէտ այր օտարաշխարհիկ. զի զհետ իւր գայր ուժգին ամբոխ,
Յորս ինքնին նա 'ի ճակատս արիապէս շահատակէր։
Դէմ եդեալ յօժարափոյթ չոգան ուղիղ 'ի դանայեանս,
Կարապետէր նոցա Հեկտոր՝ Սարպեդոնի սակս ըզչարեալ.
Բայց Մենիտեան Պատրոկլի դըրդեաց զաքեանս լանջք Թաւամազ,
Առ Էասըն երկոսին ինքնայորդորս ասացեալ նախ.
Այժմ, Էասք, նախանձելի եղիցի ձեզ քերքել զոսոխս,
Որպիսիք երբեմն էիք՝ յառաջագոյն ընդ քաջս արանց։
Անկաւ այրն՝ որ առաջին յաքայեցւոցս ոստեաւ պատնէշ՝
Սարպեդոնն. այլ յանկարծ ըզնա կորզեալ այպանեսցուք,
Եւ աւար ըզզէնսն յուսոցն հարկանեսցուք, եւ զայլ եւս ոք
Ընկերացն՝ իւր վըրէժակաց՝ սատակեսցուք 'ի պըղնձ անգութ։
Ասաց զայս, նոքա ինքնին էին յորդորք 'ի զինամարտ.
Եւ 'ի կողմանց երկոցունց զօրացուցեալ ըզգումարտակս,
Տրովացիք եւ Լիկեցիք եւ Միրմիդոնք եւ Աքայեանք,
Բախեցան ըզդիականամբ մահացելոյն՝ 'ի պատերազմ
Ահագնագոռոգ որոտիւք, եւ զէնք արանց մեծ դոչեցին։
Բայց գիշեր կորըստաբեր դըժնէ խաղմին արկ 'ի վերայ
Արամազդ, զի զսիրային որդւոյն լիցի մարտ դառնաման։

Վանեցին նախ տրովացիք զաքայեցիսն աչակապաւս.
Զի հարաւ ոչ վատ ինչ այր ոք 'ի գնդէն Միրմիդոնաց,
Մեծանձինն Ագակլէսի զաւակ՝ դիւցազնըն Եպիգէւս,
Որ յառաջ 'ի բնակաւէտըն Բուդիոն թագաւորէր.
Իսկ յայնժամ ըսպաննեալ ըզհօրն եղբօր զարի որդեակն,
Առ Պելէոս մատեաւ յաղերս եւ առ Թետիս արծաթաթաթիկ,
Որք ըզհետ ճակատամարտօղն Աքիլլի գնալ առաքեցին
Ցիլիոն 'ի քաջաձի՝ պատերազմել ընդ տրովացիս:
Անդ յայնժամ, 'ի ձեռնարկելն 'ի դին՝ եհար Հեկտոր շըքեղ
Բըռնաքարամբ ըզկատարին՝ ընդ երկուս զայն պատառելով
Ցամրափակ գըլխանոցին, եւ նա 'ի դին անկաւ 'ի պորտ,
Եւ հեղաւ ըզնովաւ ոգեպահանջ օրհասին մահ:
Ցընկերըն մեռանելոյ կըսկըծեցաւ սիրտ Պատրոկլի,
Դէպ ուղիղ 'ի նախահատակսն ոստեաւ 'ի ժիր շահէնի պէս
Որ վարէ հալածական ըզհողամուկս եւ զտարմահաւս.
Այնպէս ուղղորդ 'ի Լիւկեանսն, Պատրոկլէ ձիամարտիկ,
Ընթացար ու'ի տրովացիս, սիրտ քինայոյզ ըզհամհարզէդ:
Եւ զորդին սիրելի զԻթեմենեայ զըՍթենելաւ
Բըռնաքարամբ հար ընդ ուլն եւ զըլաջարդ արար ըզնեարդսն:
Ցետս հարան նախամարտիկք եւ ինքն Հեկտոր պերճապայծառ:
Ի չափ ձիգ արգելընկեցի՝ զոր ոք ուժգին արձակիցէ
Ի գուպար, եւ կամ 'ի մարտ՝ ընդ մահաղէն թըշնամեաց դէմ,
Ետուն տեղի տրովացիք, աքայեցիք հալածեցին:
Այլ քան զայլս յառաջ Գլաւկոս՝ ասպարակիր լիւկեանցըն պետ
Դարձաւ եհար սատակեաց ըզմեծասիրտըն Բաթիկլէս
Քալկոնիսի սիրած զաւակն, որ յԵլլադա բնակեալ 'ի յարկ՝
Փառօք եւ մեծութեամբք 'ի Միրմիդոնս առաւելոյր.
Ըզսորա՝ յանկարծադարձ եհար Գլաւկոս ըզլանջամէջս,
Իբրեւ այն ինչ հետամուտ ըզկնի իւր լեալ բռնան հարկանէր:
Կործանեցաւ արտախաթունդ, աքայեցւոց ծանր եհաս սուգ
Ընդ անկումն առըն քաջի, եւ տրովացիք խընդացեալ յոյժ՝
Ընթացեալ յոգնախուռըն կանգնեցան կացին զնովաւ.
Բայց եւ աքեանք զարութիւն ոչ մոռացան 'նըդդէմ կարողեալք:
Անդ ըսպան Մերիոնէս այր մի վառեալ 'ի տրովացւոց՝
Զլաւոգոն, զարի որդին Ոնետորի՝ քուրմն եղելոյ
Իդայինն Արամազդայ՝ պատուեալ յազգէն աստուածաբար.
Ի ներքոյ ծընօտին եւ ընդ ունկամբ խոցեաց ըզնա,
Գնաց խսկոյն շունչն յանդամոցն, եւ զնա կալաւ խաւար ահեղ:
Էնէաս 'ի Մերիոն ըզպղընձագէնն արձակեաց տէգ,
Ցուսացեալ զխոցուցանել ընթացելումն ընդ վահանաւ:
Այլ նորա տեսեալ անդուստ՝ առ 'ի պղընձի նիզակէն խոյս՝
Ցառաջ կոյս կորացեալ, եւ 'ի թիկանց ուսինն երկայն

ԸզՊերիմոս Մեգասեան, զՄելանիպպոս եւ զԷպիստոր,
Եւ ըզկնի զԵլասոս եւ զՄուլիոս եւ զՊիւղարտէս.
Ըզսոսա սպանեալ, իսկ այլք ուշ 'ի փախուստ եդին անձինս:
Անդ ըզՏրոյս բարձրադրուան առեալ որդւոցն էր աքայեանց
Ընդ ձեռամբ Պատրոկլի, զի մոլէր յոյժ իւր աշտէիւն,
Եթէ Գուշակն Ապոլոն յամրակառոյց չէկայր բըրգանն
Ոլորել նըմա կորուստ եւ արտաւացելոց ձեռն 'ի նըպաստ:
Երիցս յանկեան պարըսպին բարձու Պատրոկլ 'ի վեր հըրոսէր,
Եւ երիցս Ապոլոն վանեալ ըզնա վարէր 'ի բաց
Ի վահանն արփենի բախեալ ձեռօքն անմահական.
Իսկ չորրորդ յորժամ անդամ յարձակեցաւ աստուածօրէն,
Սաստելով ազդանշանելեաց զերագաթեւ խօսեցաւ բանս.
Ի բաց կաց, Պատրոկլէ դիւցազն, ոչ քոյդ ինչ դեղարդեամբ
Հրամանք են քաղաքիս քաջաց տրովեանց աւերածոյ,
Նա եւ ոչ իսկ Աքիլլեայ՝ զօրաւորին յոյժ քան ըզքեզ:
Զայս ասաց, եւ Պատրոկլոս ընկըրկեցաւ բացուստ 'ի բաց՝
Փախուցեալ 'ի հեռաձիգն Ապոլոնի բարկութենէն:
Իսկ Հեկտոր զաւրասարմբակ ձիսն ունէր ցդրամբք Արեւմըտեաց.
Զի յերկմիտս էր՝ կըռուեսցի՞ արդեօք՝ 'ի խաղմն անդրէն վարեալ,
Թէ խրախոյս բարձցէ զօրուն՝ գալ 'ի պարիսպ անդր հաւաքել:
Մինչդեռ յայս կայր մըտախոհ՝ եհաս Գուշակն անդր Ապոլոն,
Ցայր մի նըմանեալ երիտասարդ քաջակորով,
ՅԱսիոս՝ որ քեռի ձիախրոխտին էր Հեկտորոյ,
Հեկաբեայ հարազատ եղբայր, որդի լեալ Դիմասու
Բնակեալըն առ գըրգանդըքն Սանկարեայ 'ի Փռիւգաստան.
Այնմ Ապոլոն քատակեալ՝ Արամազդայ մանուկն՝ ասէ.
Զի՞ է, Հեկտոր, զի դադարեալ կաս 'ի մարտէ. քեզ ոչ ըմբեն:
Որչափ ինչ եմս ընդհատ՝ էցէ՞ւ նոյնչափ քան զքեզ էի հըզօր,
Անդ անդէն դու 'ի կըռուոյս ելանէիր վատախառարակ:
Հա՛պա եկ զհաստատասըմբակ վարեա զձիանդ 'ի Պատրոկլոս,
Ըսպանցես Թերեւս ըզնա, եւ քեզ տացէ զփառսն Ապոլոն:
Աստուածոյն զայս ասացեալ՝ դարձաւ գընաց յարանց դուպար.
Իսկ շըքեղն Հեկտոր պատուէր Կեբրիոնի եա կորովւոյն
Մըտրակել զերիվարսն 'ի կախ. սակայն Ապոլոնի
Գնացեալ եմուտ անդր 'ի խուռն, եւ խռով հարեալ չար յաքայեանս՝
Հեկտորի եւ արտւացւոց մատոյց ըզփառըս պարծանաց:
Բայց Հեկտոր զայլ դանայեամբք արարեալ զանց՝ կոտորէր ոչ,
Այլ 'ի Պատրոկլ անդր ուղղէր զկարծրասմբակ երիվարեանն:
Իսկ անդուստ Պատրոկլոս վաղեալ յերկիր էջ 'ի ձիոցն,
Ի ձախոյ ձեռքն նիզակն, յափըշտակեալ վէմ մի միւսովն
Ըսպիտակ քարաժեռ, զոր բուռն ողջոյն պատեաց նորա,
Եւ Թափ տըւեալ արձակեաց՝ ոչինչ կարի յանձէն խոտոր,

Եւ վրիպեաց ոչ ընդհարուածն, այլ զՀենիօքոսն հար կառավար՝
Զկեբրիոն ընդհարձորդի Պրիամոսի մեծափառին
Զանձնակալն երիվարաց, սուր խարակաւն 'ի ճակատուն,
Զերկոսին յօնսն ջախխեաց վէմն, ոսկրըն ոչ կալաւ ընդդէմ,
Աչք 'ի գետին ընդ փոշի գլեցան առ ոտըս անդ նորա,
Իսկ ինքըն նմանեալ ողողակի՝ Թաւալըգլոր
Ի գեղաշէն կառացն անկաւ, ելեք զոսկերացն հոգին,
Զոր՝ քաղձանօք Պատրոկլէ՝ կատակելով բարբառեցար.
Վա՜շ վա՜շ, խիկ եւ խիկ փոքրոգի այր. ինչ հեշտ ոստնու.
Թէ 'ի ծով ինչ ուրեք լուղակաւէս էր հանդիպեալ,
Ցօղունց յագուրդ պատրաստէր ընկերացն մարթս յուղեալ այս այր՝
Վազս տալով 'ի նաւակէն՝ թէ եւ իցէն անդընդապատոյզք.
Այնպէս աստ 'ի դաշտիս ոստնու գլորու այժմ 'ի կառաց:
Են են արդարեւ եւ 'ի տրոյեանս որսար լողորդ:
Զայս ասէր եւ 'ի դիւցազն անդր ընթանայր 'ի Կեբրիոն
Զարշաւանս առիւծուն, որոյ զփարախս հարեալ աւար՝
Վէրս 'ի լանջըն եառ, եւ կորոյս զինքն իւր զօրութիւն.
Սոյնգունակ, Պատրոկլէ, 'ի Կեբրիոն ոստեար մոլեալ:
Բայց անդուստ եւ Հեկտոր վաղեաց յիւրոց կառացն յերկիր.
Երկոքեան զԿեբրիոնէ ոգորէին իբր առիւծունք
Որ զդէշ արկեալ եղանեկին կլուսեին լերին ուրեք 'ի սնարս
Երկոքեան սովալըլունք եւ մեծամեծըս փըքալով.
Այսպէս զԿեբրիոնէ երկու հըմուտք պատերազմի,
Պատրոկլոս Մենետեան եւ փառացի շըքեղն Հեկտոր,
Բորբոքէին ընդմիմեանց ճեղքուլ իրանս 'ի պղնձէ անգութ:
Իբրեւ զամ մի Հեկտոր կալաւ զգըլխոյն, ոչ եւս թողոյր,
Իսկ Պատրոկլ յայնըմ կուսէ բուռըն զոտիցն հարեալ ունէր.
Եւ այլ տրովեանք եւ դանայիք մարտ ինն հըզօր խըմբէին անդ:
Օրինակ իմն Հարաւ եւ Հիւսիսակ գոռան 'գիրկեարս
Ի թաւուտըս լերանց՝ ընդեր մայրիս առալ 'ի դըղորդ,
Ըզփիճին եւ զհացի եւ ըզզանդալըսըն կարծրատորր,
Որ կռծեն ընդ միմեանս զանձուկանձիւղ ոստոցն ուղէշս
Ի խարշափ ահագնալուր, անդ բեկանելոցըն ճարճատիւն.
Նոյն յերեարըս զիմեալ տրովադացիք եւ աքայեանք
Զարգէին, եւ ոչ ոք ունաւ զկորըստականն յիշէր փախուստ:
Եւ բազում սայրասուր զԿեբրիոնիւ մըխեցան նետք
Եւ 'ի լարիցն աղեղանց ոստուցեալ նետք թեւթեւաթեւք.
Եւ զվահանսըն անարի վէմք խուռնախիտ խորտակէին
Ըզնովաւ մարտուցելոցն. ինքն 'ի մրըրիկ փոշւոյն զառեալ
Մեծայաղթ մեծատարած, հեծելութեանցն անյուշ գընէր:
Մինչեւ շուրջ ընդմէջ երկնաւ թեւապարէր անկն արեւուն,
Ի կողմանան երկոսին զենելին ձեռք, անկանէր զօրն.

Զայս ասաց, եւ զպղնձի սուինն 'ի վիրէն ձգեալ եհան՝
Աքացի տոփեալ 'ի նա, եւ զնա յորսայս ընկէց յարգնէն:
Նոյն հետայն զեղարդամբն յԱւտոմեդոն արագեալ դիմեաց՝
Ցաստուածատիպ պաշտօնեայն երագոտին Էակիդեայ,
Զոր ցանկայր հարկանել, այլ տանէին զնէզն երագ ձիք
Անմահացուք յաստուածոց շնորհեալք Պեղեայ 'ի ձոխ պարգեւս:

867



# Հ Ո Մ Ե Ր Ի

# Ի Լ Ի Ա Կ Ա Ն

---

## ԵՐԳ ԵՕԹՆՈՒՏԱՍՆԵՐՈՐԴ

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Մենելաւոս պահպանէ արիաբար զմարմինն Պատրոկլի. բայց նահանջեալ յերեսաց Հեկտորի՝ յաւարի առնու սա զկազմած նորա եւ զզէնս. Հասանեն Յոյնք 'ի թիկունս եւ խառնին զդիականամբ Պատրոկլի: Մրցումն սաստիկ, մէգ եւ մառախուղ յանկարծուստ, որ յաղօթեմն Այասայ փարատի: Մենելաւոս յղէ զԱնտիլոքոս սիրելին Աքիլլեայ՝ զեկուցանել նմա զմահն Պատրոկլի, եւ ընդ Մերիոնէի բառնան առնեն զմարմինն պաշտպանեալք յԱյասեանց: Ենէաս եւ Հեկտոր ընդ արշաւեցին՝ հալածական վարեն զՅոյնս:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԵՕԹՆՈՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԱՌԱՔԻՆՈՒԹԻՒՆ ՄԵՆԵԼԱՒԻ

Ատրորդին Մենելաւոս՝ Արեայ սիրուն՝ չեղեւ զանխուլ
Զի սպանեալ էր 'ի մարտի անդ Պատրոկլոս 'ի տրովացւոց ։
Անց գնաց 'ի նախահատակսն, եւ 'ի պղնձին վառեալ հրաշէկ
Պաշտպանէր ըզնովաւ, որպէս որթուն մատաղամայր
Անդրանկածին՝ մըրմնջելով, ըզծնընդոց փորձ այն ճնչ առեալ.
Այնպէս շուրջ ըզՊատրոկլիւ Մենելաւոս փարէր խարտեաշ,
Եւ կարկառեալ առ նովաւ զբոլորաշէն ասպարն եւ զտեգ,
Հեւայր սպանել՝ զոր ոք ընդդէմ ոստխիցէ ։
Եւ ոչ ուստըրն Պանթոյեան կորովատեգ եղեւ անփոյթ
Զանարատըն Պատրոկլոս անկեալ, եւ եկն եկաց առ նըր,
Եւ առ Արեայ սիրելըն Մենելաւոս՝ բարբառեցաւ.
Ատրիդէս՝ դիւցազըննունդ Մենելաւէ, իշխան ազգաց,
Յետ անդի, լիք ըզմեռեալդ, եւ ըզկապուտդ արիւնոտ թող.
Զի ոչ նախ ոք 'ի տրովեանց եւ ստորաշխարհ նիզակակցաց
ԸզՊատրոկլ եհար 'ի մէջ 'ի զօրաւոր պատերազմին ։
Ուստի թոյլ տուր ժառանգել ինձ մեծ պարծանս 'ի տրովացիս,
Մի գուցէ հարից ըզքեզ եւ զանուշակ արեւդ հատից ։
Ի յաստուածըն մեծ բարբառեալ խարտեաշն ասէ Մենելաւոս.
Արամազդ հայր, արդարեւ հըպարտութեան չար են պարծանք ։
Ոչ այսչափ փըքացումն է յովազի, ոչ առիւծու,
Եւ ոչ դըժնեայ վարազի՝ որոյ հոգին իւր մեծապէս
Խրոխտացեալ քան զօրէնս 'ի վեր 'ի լանջըն փըքանայ,
Որչափ մանկունք Պանթոյի կորովատեգք կոկոզանան ։
Սակայն ոչ եւ զօրութիւն Հիպերենոր քաջաձիոյն

Վայելեաց տիոցն յարբունս յանդգնել զիս եւ կալ ընդդէմ,
Մարտիկ դք գուղնաքեայ 'ի Դանայեանս համարեալ զիս ․
Բայց ոչ կարծեմ թէ իւրով ոտիւք դարձեալ գընաց անդրէն՝
Զամուսինն իւր սիրելի եւ ծնօղս արգոյս առնել ուրախ ։
Նոյն եւ զքոյդ լուծից կորով, ասեմ թէ ինձ արձանասցիս ․
Այլ ես միտըս քեզ դընեմ՝ մեկնել գընալ 'ի սպայից գունդ,
Եւ ինձ մի կալ ախոյեան՝ մինչ չեւ ինչ չար ընդ քեզ անցեալ ․
Զի գեղեալն՝ եւ անիմաստ դք մանկաբարոյ էառ 'ի միտ ։
Ասաց, այլ չեկն 'ի հաւան, պատասխանի եւըս դարձոյց ․
Արդ ուրեմըն, դիւցազնունդ Մենելաւէ, տացես վըրէժս
Եղբօրն իմոյ զոր սպաներ եւ պանծացեալ մեծաբանես,
Եւ զկինն յայրըս նորամուտ առագաստին եդիր այրի,
Ի կոծ եւ 'ի սուգ ծնողացն իւրոց աղիողորմ ։
Արդ եւ նոցին եղկելեացն ողբոց վախճան արարից ես,
Եթէ զքո կառափն 'ի քէն եւ զզէն եւ զարդըդ քո տարեալ
Պանթոյեայ 'ի ձեռսն արկից եւ Փրոնտիոյ դիւցազնուհւոյն ։
Այլ մի եւ մի՝ ոչ եւս երկար կացցէ պայքարս այս անփորձ,
Նա եւ ոչ թէ անսահման ինչ յաղթութիւն կամ 'ի փախուստ ։
Զայս ասաց եւ եհար ըղբոլորշի վահան նորա,
Բայց չեհերձ ըղպղընձին, այլ կըրկնեցաւ սըլաքն սայր
Ի կարծրակուռ ասպարէն ․ իսկ Ատրիդէս Մենելաւոս
Յարձակեցաւ պղընձովն երկրորդ, առ Արամազդ հայր աղօթեալ ․
Եւ մինչ նա յետս ընկըրկէր՝ խոցեաց ըղզուսն ախոյանացն
Եւ յեցեալ ինքն ուժով 'ի կորովի ձեռն ապաստան՝
Ընդ փափուկ ուլն յայնկոյս էանց սըլաքըն խորամուխ ։
Տապալեցաւ թընդաւորով, եւ հընչեցին զէնքն ըղնովաւ ։
Վարսք նորա՝ տիպ ճըշգըրտեալ Շնորհացն՝ յարիւն թաթաւեցան,
Եւ խոպոպիքն ոսկեմանք եւ արծաթով ընդելուզեալք ։
Որպէս այր դք սնուցանէ զատղարթափթիթ տունկ ձիթենւոյ
Յառանձին վայրի ուրեմն ուղխապարար յորդ վըտակաց՝
Զվայելուչ կանաչազարդ, զոր տատանեն աղջի աղջի
Հողմոց շընչմունք, եւ նա կայ բողբոջէ զծաղիկըն ձիւնափայլ ․
Իսկ եկեալ այս փոթորկեալ մըրըրկախառն յանկարծահաս,
Խըլէ զայն ընջովլին եւ արկանէ 'նդ գետին տապաստ,
Սոյնպէսունակ զԵւփորբոս Պանթոյայ ձեռն նիզակաւոր
Ըսպանեալ Ատրիդեայ Մենելաւի՝ զերծ 'ի զինուցն ։
Եւ օրինակ իմն առիւծ մի լեռնասուն յանձնապաստան
Զձարակաւոր անդէոյ յափըշտակեալ զերինջն ընտիր,
Նախ եբեկ զուլըն նորա՝ յահեղագոր առեալ ժանիսն,
Եւ ապա զիշատեալ լափէ զարիւնն եւ զփորոտին ․
Եւ զնովաւ շուրջանակի շունք եւ որեար արօտական
Ծիչ բարձեալ 'ի հեռուստ աղաղակեն եւ ոչ իշխեն

Ախոյեան ելանել, զի առ հուժգոյն ումեք սաստիկ,
Նոյն 'ի տոցունց ոչ ումեք համարձակեաց սիրտ իւր 'ի լանջս
Առաջի դիմագրաւել Մենելաւեայ մեծափառին :
Անդ Ատրիդէս դիւրաւ տանէր զՊանթոյենին շըքեղ կազմածս,
Ապոլոն եթէ Գուշակին ընդ նմա չէր ինչ խանդացեալ,
Որ զՀեկտոր դըրդեաց 'ի նոյն՝ զաշխոյժն Արեայ հանդունատիպ,
Կերպացեալ յայր՝ 'ի Մենտէս 'ի Կիկոնացն ըսպարապետ .
Եւ բարձեալ առ նա ձայն՝ բարբառեցաւ ըղթըրուշուն բանս .
Հեկտոր, այսպէս սատ այժմիկ զհետ անհասից ընթանաս դու,
Էակեան քաջին ձիոց, սակայն մարդկան մահկանացուաց
Դըժուարին է զնոսին յաղթահարել եւ հեծանել,
Բայց միայն Աքիլլեսի, զոր մայր ծընաւ անմահական :
Ի ժամուս առս Ատրորդին՝ արիական Մենելաւոս
Պատրոկլի կացեալ 'ի պահ՝ զարիագոյնն ըսպան տրովեանց
Զեւփորբոս Պանթոյեան՝ կարծեալ յոխորտ ուժգնութենէն :
Աստուածոյն զայս ասացեալ՝ գընաց անդրէն յարանց գուպար .
Զհեկտորի ցաւ աղէկեզ պատեաց ըղսիրտ սեւաթորմի,
Եւ ապա զաչերն ընդ կարգան ածեալ՝ ծանեաւ անդէն ըղնա
Որ զպայծառ զէնսն կորզէր, եւ զմիւսն դի անկեալ տապաստ,
Եւ արիւնն արտաբերացեալ 'ի սիգալոյց բըղխէր վիրէն :
Եւ գընաց 'ի նահատակսն, 'ի ձեռին զէն փայլակնաձեւ,
Սաստկաձայն գոչելով, յանշէջ հըրոյն Հեփեստեայ տիպ,
Եւ յոխորտըն բարբառ չէանց զորդւոյն Ատրէոսի
Որ յոգւոց ելանելով ասէ առ անձն իւր մեծասիրտ .
Վա՜յ զինեւ, եթէ թողում 'ի բաց ըզզէնսըդ գեղեցիկ
Եւ զՊատրոկլ որ վասն իմոյ վրէժուցս անկեալ դընի աստէն,
Գուցէ ոք 'ի դանայեանց ցասնուցու ինձ, եթէ տեսցէ :
Իսկ միայն եթէ'նդ Հեկտոր եւ տրովացիս առ ամօթոյ
Կացից 'ի կռիւ, գուցէ զմենըս զիս ամբոխք պաշարեսցեն,
Զի զտրովեանս այսր համօրէն ածէ Հեկտոր սաղաւարտաձօձ :
Այլ ըզմէ՞ սիրտ իմ առ իս զայս 'ի խորհուրդս իւր դըրդըռէ .
Յորժամ այր յանդգընեսցի աստուածընդդէմ կըռուել ընդ մարդ՝
Զոր աստուած ինքնին պատուէ, տոյժ մեծ գըլի յանձն իւր ընդ փոյթ :
Արդ ուրեմն 'ի դանայեանց սըրտմըտեսցի ոչ ոք ընդ իս
Տեսեալ հրաժեշտ 'ի Հեկտորէ որ յաստուածուստ պատերազմի :
Օ՛չ թէ տղդ զահեղագոռն Էասայ ինձ լիցի ուստեմն,
Երկոքեան դիմեալք անդրէն՝ գուպարածին առնիցեմք ուշ,
Թէպէտ ընդ աստուածոյ, եւ ըզդիակն հանցուք Թերեւս
Առ Աքիլլեւս Պելիսեան . եւ գուն մի դիւր լիցի վտանգիս :
Մինչ նա դեռ զայսոսիկ ածէր ընդ սիրտ իւր եւ ընդ միտ,
Գունդք եկին հասին տրովեանք, եւ յառաջոյ իւրեանց Հեկտոր :
Ընկըրկեալ նորա՝ եթող ըզդին եւ ստէպ դառնայր հայէր,

Իբր առիւծ մի մօրուանի՝ զոր շունք եւ արք վարեն յանդաստ
Մըկընդօք եւ կանչիւք, սակայն 'ի ծոցն արին իւր սիրտ,
Եւ 'ի դառնալն ակամայ տեղի տուեալ գնացեալ մեկնի.
Նոյն Մենելաւ խարտեշագեղ անցեալ գնաց 'ի Պատրոկլէ,
Ցընկերացն հասեալ 'ի գունդ՝ դարձաւ եկաց դէտակն ունէր
Բոլորշեալ շուրջ անդր 'ի մեծն Այաս յորդին Տելամոնեան.
Եւ ետես ըզնա խոյն յահեկակողմ համուր ամբոխին,
Զի զընկերսն յորդորէր ըմբռնապընդեալ 'ի պատերազմ,
Ցորս արհաւիրս աստուածատուր՝ Գուշակն արկեալ էր Ապոլոն.
Եւ դիմեաց ընթացաւ, եւ վաղ հասեալ՝ ըզբանիւս ասաց.
Եկ, Այաս սիրելիդ, ըզՊատրոկլի գիակամբն
Գուն գնցուք, գոնէ զմարմինն Աքիլլեւսի մատուցուք մերկ,
Իսկ ըզզրահամածըս նորուն գրաւեաց Հեկտոր կորդակաւորս:
Զայս ասաց եւ զԱյասայ քաջամարտին յուզեաց ըզսիրտ,
Ցախոյեանսն եւ ընթացաւ, խարտեաշն ընդ իւր Մենելաւոս:
Իսկ Հեկտոր՝ մերկացուցեալ ըզՊատրոկլոս 'ի պերճ զինուց՝
Ձըգէր զի զգլուխըն յուսոցն հատանիցէ սուր պըղընձով,
Եւ զմարմինն առեալ գէշ ընկենուցու տրոյացի շանց:
Եկն եհաս առ նա Այաս, վահանաւ 'ի ձեռսըն բըրգաձեւ,
Հեկտոր յետըս վերջոնեալ՝ գընայր մեկնէր յընկերաց ջոկ.
Եւ 'ի կառսն եւ զՊատրոկլի գեղեցիկ զէնս ետ տրոյացւոց
Բառնալ յաստանըն տանել՝ 'ի մեծ պարծանս անձին իւրոյ:
Իսկ Այաս ըզՄենիտեան որդւոյն ըզլայնն արկեալ ասպար՝
Իբր առիւծ զորդւովքն եկաց, որում յածելն ըզկորիւնս իւր՝
Արք դիպեսցին որսորդք յանտառս, ինքն առ ուժին մըռնչեալ,
Եւ բովանդակ 'ի խոնարհ արկանէ զյօնսն աչաց ծածկոյթ,
Նոյն Այաս ըզդիւցազարմըն Պատրոկլիւ շուրջ պաշտպանէր:
Եւ 'ի միւս կուսէն եկաց Արեայ սիրուն Մենելաւոս
Ատրիդէս, անհընարին սուգ 'ի սըրտին իւրում յորդեալ:
Այլ Գլաւկոս՝ Հիպողոքեայ ծնեալ՝ լիկացւոց արանցըն պետ,
Ակն 'ի Հեկտոր արկեալ խեթիւ՝ ծանըր բանիւք յանդիմանեաց.
Հեկտոր՝ տեսլեամբ գերապայծառ, յարութենէ յոյժ նըւազեալ.
Քաջութեան ըզքէն հըռչակ զուր ընթանայ զքեհետեւակէդ:
Տես արդ որպէս զոստանդ եւ ըզքաղաքդ ապրեցուսցես
Դու միայն ժողովըրդովքըդ բընակօք Իլիոնի.
Քանզի ոչ ոք 'ի լիկեանց ընդ դանայեանսն 'ի պատերազմ
Խաղասցէ զքաղաքէդ, զի եւ շնորհ ինչ ոչ եղեւ
Մարտ ընդ արըս թըշնամիս դընել անդուլ զոր հանապազ:
Դու զեարդ զայր մի վատթար ճողոպրեսցես 'ի մէջըքորս,
Զուտաւականդ, որ զՍարպեդոնիւ՝ ըզթիկնակից քո եւ ըզհիւր՝
Ընդ վայր հարեր՝ լինել որս արգիացւոց յառ եւ յաւարս.
Որ 'ի կեանս իւրում օգուտ մեծ քաղաքիդ եղեւ եւ քեզ,

Իսկ արդ եւ ոչ հալածել դըստար ըղձանս առ 'ի նմանէն :
Արդ թէ ինձ դու ունկնդիր լիցի յարանց Լիկիացւոց ,
Զուեացեն 'ի տան , եւ Տրոյիայ հասանել գայցէ ծանըր կորուստ :
Զի թէ այժըմ արամացւոց քաջայանդուգն էր զօրութիւն ,
Անասասն , զոր օրինակ 'ի քաջս աղգէ՝ որ մեղքառէն
Ընդ ոսկւորն ախերիմ վասն հայրենի երկրին ճըգնեալ ,
Վաղվաղակի յիշխան Թափեալ լինէր մեր զՊատրոկլոս :
Զի զխանձըս այս յաստան թէ անդր 'ի մեծ երթեալ գնայցէ
Ցարքայինն Պրիամու , եւ կորզեցեալք զայն 'ի խաղմես ,
Իսկ եւ իսկ արդեօքէ զՍարպեդոնէ զեղեցիկ զէնս
Հատուցեն այարէն , եւ զինքն իսկ յի՛շխան սաեալ սարցուք .
Քանզի սան այնպիսայ՝ նաանեակ մեռաւ՝ որ յարդասեանս
Մեծազօրն է առ նաւսդն՝ ինքն եւ սպասեալք իւր զինեալքաւք :
Սակայն դու՝ մեծասըրտին Էասայ կալ իսկ յանդիման
Չիշխեցեր՝ զաչսդն տեսեալ յախոյեանց պատերազմի ,
Թող թէ կալ եւ ոգորել . զի բռնազոյն է քան զքեզ :
Հայեցեալ 'ի նա խեթիւ՝ ասէ Հեկտոր կորդակաձօձ .
Զի՞ այդպիսիդ դու , Գղաւկէ , յանդըգնագոյնըս խօսեցար :
Վա՜հ . ըղձօնամբս կարծեի զքեզ 'ի վեր քան զայլս
Որ միանգամ յարգաւանդն 'ի Լիկիա եցեն բընակք .
Իսկ յարոց այժմիկ ասացեր՝ պարսաւեցից ըղխելըդ 'ի սպառ ,
Որ ասես զիս Էասայ 'նդդէմ չհանդուրժեալ ահաւորին .
Չեք երբեք իմ զարհուրեալ՝ ոչ մարտիւ ոչ ձիոց դոփմամբ ,
Սակայն միշտ աստուածապարպերձն Արամազդայ յաղթող են միտք ,
Որ եւ զայր արլաներայ վանէ , եւ զյաղթանակն հանէ հեշտաւ .
Է ուրեք՝ զի եւ ինքնին իսկ նա դըրդէ 'ի պատերազմ :
Այլ աղէ՝ եկ , սիրելի , կաց առընթեր ինձ եւ տես զգործ ,
Եթէ զօրըս ցերեկ լեալ իմ չ մեղկ , որպէս զըրուցես ,
Թէ զոք արգելեց 'ի դանայեանց քաջայանդուգն 'ի զօրութիւն՝
Ընկըրկեալ 'ի պահելոյ զդիակնացեալըն Պատրոկլոս :
Զայս ասացեալ՝ առ տրոյեանսն երարձ խրախոյս մեծաբարբառ .
Տրովացիք եւ լիկեանք եւ դարդանեանք ընթերամարտք ,
Լերուք արք , սիրելիք , բռնախոյեան յուշ ձեզ կորով .
Մինչեւ ես ըզգեցուցից Աքիլլեայ զէնս արկայց զանձամբ
Ըզգեղեցիկս՝ որ Պատրոկլի յուժոյն զերծի՝ սպանեալ ըզնա :
Զայս ասաց , եւ ելեալ զնաց Հեկտոր սաղաւարտաձօձ
Ցոխերիմ պատերազմէն , եւ ընթացեալ ձիոց ըղձեալ ,
Ոչ 'ի բացէ արագ թափչ զկնդեալ զարբանեակս եհաս ընկերաց ,
Որք յաստանն տանէին զՊեղեայ զէնսն երեւելիս :
Անդ մեկնեալ յաշխարհահեծ պատերազմէն՝ փոխեր նա զզէնսն ,
Եւ զիւրսն ետ քաղաքամարտից արամեանց տանել յիլիոն սուրբ ,
Ըզգենոյր ինքն անեղծս ըզՊեղեան Աքիլլեայ ,

Զորս հօր իւրում՝ սիրելոյ պարգեւեցին դիքն երկնաւորք,
Եւ նորա յալեւորութեան յեցեալ սիրոյ՝ ետ պատանեկոյն.
Սակայն ոչ եւ որդին 'ի զէնս անդ հօրն եհաս յալիս:
Տեսեալ ըղձա մեկուսի ամպրոպայնոյն Արամազդայ՝
Վառեալ 'ի զէն եւ 'ի զարդ աստուածայնոյ Պելէածնին,
Ըզգլուխն իւր շարժեալ՝ խօսեցաւ յանձն իւր եւ ասէ.
Ա՜յ հէք, ոչինչ համարուն մահ քեզ 'ի միտսըդ հարկանէ
Որ առ քեւ կայ մօտալուտ, եւ դու զանմահ զէնս ըզգենուս
Զառն միոյ զօրաւորի՝ յորմէ դողան այլք համօրէն:
Ըզնորա սպաներ զընկերն հեզահամբոյր եւ քաջազօր,
Եւ ըզզէնսն՝ ոչ յարժանն՝ բարձեր յուսոյն եւ 'ի գլխոյն.
Սակայն քեզ մատուցից զօրդիս գանէ յաղթութեան մեծ,
Փոխանակ զի ոչ եւս այլ 'ի դարձելոյդ յայդմ կռուոյ
Ընկալցի Անդրոմաքէ զՊելէածնին զէնս հոյակապ:
Զայս ասեալ Զրուանեանն՝ 'ի կապուտակ յօնս ակնարկեաց:
Հեկտորի պատշաճեցան զէնքն 'ի մարմինն, եւ մտաւ 'ի նա
Ահաւորն եւ գոռ Արէս, լցան անդամք իւր 'ի ներքոյ
Զօրութեամբ եւ կորովով, եւ ընթացաւ առ հեզ դաշնակս
Ցանուանի նիզակակիցսն, եւ մեծանձին Պելէածնի
Զոյգ թուէր նոցա բնաւից՝ զէնսւք նորին փայլատակեալ:
Եւ յածեալ՝ քաջալերէր բանիւք վառեալ զամենեսին,
ԸզՄեսթլէս եւ ըզԳլաւկոս, զԹերսիլոքոս եւ ըզՄեդոնն,
ԶԱստերոպէոս ընդ նմին, զՀիպպոթոոս եւ զԴիսենոր,
ԸզՓորկէս եւ զՔրոմիոս եւ զԵննոմոս հաւահմայ.
Ըզսոսին գրգռելով զերագաթեւ խօսեցաւ բանս.
Լուարուք, ազգք անթիւ շըրջաբընակ օժանդակաց.
Զի ես ոչ յամբոխից ըղձեալ խնդրէի, եւ ոչ կարօտ,
Այսր ըզձեզ 'ի քաղաքացըդ յարուցի զամենեսեանդ,
Այլ զի զկանայս տրովացւոց եւ ըզնոցին մանկունս մատաղ
Պահեսջիք յօժարամտութեամբ 'ի մարտագոռ աքայեցւոց.
Ցայս խորհուրդ՝ պարգեւօք եւ թոշակօք զազգն ըսպառեմ,
Եւ ըզձեր զմայլեցուցեալ պարարեմ զանձն իւրաքանչիւր:
Այլ արդ մի՛ այր դէպուղիղ զիմագրաւեալ՝ կամ կորիցէ
Կամ կեցցէ, քանզի եւ այս իսկ տուր եւ առ է մըրցութեանց:
Իսկ որ զամ մի զՊատրոկլոս՝ թէ եւ մեռեալ՝ կորզեալ տարցի
Առ ձիամուղ տրովացիս, եւ Էաս թոյլ տացէ նմա,
Ահա զկէս կողոպտածոյս տաց եւ ըզկէսն ինձէն կալայց.
Եւ լիցի այս նորին փառք, որչափ եւ ինձ իսկ գըլխովին:
Զայս ասաց, նոքա զաշտեան 'ի վեր առեալ՝ դիմեալ անկան
Դէպուղիղ 'ի դանայեանս ուժով մեծաւ, յոյս մեծ 'ի սիրտ՝
Ժամանել հանել զմեռեալն յԷասայ Տելամոնեանց.
Պանդոյրք. սա 'ւ անտիկ զբազմաց արեւ զնովաւ եհաս:

Եւ ասէ յայնժամ Այաս ցահագնագոռն Մենելաւ.
Ո՛վ սիրուն, ով դիւցազնածնունդ Մենելաւէ, չունիմ ինչ ակն
Եւ ոչ մեզ իսկ երկոցուն դարձ 'ի կռուոյս առնել անդրէն:
Ո՛չ այնչափ ըզՊատրոկլի դիականէն կամ զարհուրեալ,
Որ փոքր մի՝ եւ զորովեանց յագեցուսցէ շընուին եւ զհաւս,
Որչափ զգլխոյ եւ զքումմէ զըլխոյդ վըտանգ ինչ կասկածեմ.
Զի ամպըրոպ պատերազմի Հեկտոր՝ պատէ շուրջ զընդհանուրս,
Եւ մեզ իսկ զըլխովին ակն յանդիման երեւի մահ:
Այլ արդ եկ զաքայեցւոց քաջացն ձայնեա, թէ լուիցէ ոք:
Զայս ասաց, ոչ ինչ հեստեաց Մենելաւոս ահեղագոռ,
Եւ խրոխտաձայն բարբառով գոչեաց 'ի լուր դանայեցւոց.
Է՛ սիրելիք, զօրավարք արգիացւոց եւ իշխեցողք,
Որ բարձակիցք Ատրիդայց՝ Ագամեմնոնի եւ Մենելեայ՝
Յարքունուստ ըմպէին, եւ այր իւրաքանչիւր իշխէին զօրաց,
Եւ պատիւն յԱրամազդայ եւ պարծանացն ընձեռին փառք:
Բայց անհնար է ինձ ըզմին մի զօրավարս հետազօտել,
Զի այնչափ եւս անչափ բորբոքեցաւ կռուոյս գուպար:
Այլ այր ինքն եկեսցէ՝ Նախանձ 'ի մտին եղեալ քինու,
Պատրոկլոս թէ անկցի արեւացի շանց դէչ խաղալիկ:
Զայս ասաց, եւ Ոյլեանն երագ Այաս լըւաւ անդէն,
Եւ նախ ինքն ընթացեալ ընդ պատերազմն՝ եկն ընդ առաջ.
Յետ նորուն Իդոմենեւս եւ զինակիցն Իդոմենի
Մերիոնէս՝ Ենիալեայ մարդասպանին հանգունակից:
Իսկ զայլոցն՝ ո՛վ ոք մըտօք իւրովք զանուանսն ճառեսցէ,
Քանզի ոք յաքայեցւոց ըզմարտն ըզկնի բորբոքեցին:
Տրովադիք համագունդ բախեցան նախ, Հեկտոր յառաջ:
Օրինակ իմն 'ի բերանս յԱրամազդայ դիմեալ գետոյ
Մեծամեծ մռընչեն ալիք դէմ յորձանացն, եւ ծովեզերք
Գոչեն ափնածիրք՝ 'ի ժայթքել անդ ծովուն 'ի դուրս.
Այնքանով գնային տրովադիք աղաղակաւ, իսկ աքայիք
Բոլք առեալ միաշունչք կային զորդւովն Մենիտեան,
Շուրջ ցանկեալ ասպարափակ պըղընձակուռըն վահանօք:
Բայց Զըրուանեանն ըզփայլուն զըլխանոցօք նոցին եհեղ
Մէգ ստուերիկ. զի եւ ոչ ըզՄենիտեանն ատեայր յառաջ
Մինչ դեռ էրըն կենդանի եւ արբանեակ Էակիդեայ:
Եւ դըժգմեցաւ թէ յաւար մատնիցի շանցըն թշնամեաց,
Վասն որոյ եւ զընկերսն 'ի պահպանել ըզնա յարոյց:
Նախ տրովադիք ըզխայտակն աքայեցիս զըրդուեցուցին,
Որ զդիականըն թողեալ փախեան, բայց ոչ զոք 'ի նոցունց
Մեծանձինքըն տրովադիք ջամբ նիզակացն եսուն ըստ կամս,
Այլ ըզդին քարշէին. բայց ոչ յերկար աքայեցիք
Կալոց էին անտի բացէ, զի զնոսա հայ դարձոյց անդէն

Տանէին զփառսն Արգոսականք ուժովք իւրեանց եւ քաջութեամբ
Եւ 'ի վեր քան զհրամանս Արամազդայ, բայց Ապողոն
Զէնէաս գըրգռեաց ինքնին կերպարանեալ 'ի Պերիփաս
Ի նուիրակին Եպիտեան՝ որ առ նորա հարբ ծերացեալ
Քարոզ կացեալ՝ ալեւորեալ էր եւ միտսն հանճարեղ քաջ.
Ցայն 'ի կերպ՝ Արամազդայ ձեռն Ապողոն բարբառեցաւ.
Էնէաս, իսկ զիարդ եւ յակամայ կամս աստուածոց
Փըրկեցէք զբարձր Իլիոս, որպէս տեսեալ եմ զայլ ոմանս
Ի զօրութիւն յուսացեալ եւ 'ի կորով եւ յանձնութիւն
Եւ յիւրեանց զօրականն, ուր եւ նիզակք էին յաղթէ:
Իսկ Արամազդ մեզ կամի քան զդանայեանց ըզյաղթանակն.
Այլ յերկիւղ անհնարին խուճապեալ ձեր՝ ոչ մարտընչիք:
Զայս ասաց, եւ Էնէաս ըզդիմահայեացն զԱպողոն
Նըկատեալ զի կայր՝ ծանեաւ, եւ մեծաձայն ասէ ցհեկտոր.
Հեկտոր եւ այլ զօրավարք տրովադացւոց եւ սատարաց,
Մեզ արդ այս այպանութիւն՝ 'ի սիրելեացն Արեայ յաքայեանց
Վատութեամբ նըկուն եղեալ՝ եւ յԻլիոն զնալ ելանել:
Այլ 'ի դէպ ոք աստուածներ հաւատ մատուցեալ առ իս ասէ
Զվեհն հանճարեղ Արամազդ 'ի ճակատուս մեր զօրավիգն:
Երթիցուք արդ դիմալով 'ի դանայեանս, եւ մի անխռով
Հասուսցեն նոքա 'ի նաւսն ըզՊատրոկլոս զի անկենդան:
Զայս ասաց, եւ յոյժ վառեալ քան զնահատակսն էանց յառաջ.
Եւ նոքա դարձեալ անդրէն ճակատեցան ընդ աքայեանս:
Իսկ յայնժամ Էնէաս խոցեաց տիգաւ զԼէոկրիտոս
Ըզզաւակն Արիսբասայ՝ զԼիկոմեդեայ հըզօր ընկերն:
Ընդ անկումն իւր խորտակեալ Արեայ սիրուն Լիկոմեդէս՝
Մատուցեալ մերձեցաւ եւ արձակեաց զաշտէն փայլուն,
Եւ եհար զՀիպպասոնեանն Ապիսաւոն՝ զհովիւն ազանց՝
Ի լերդին ընդ ստոծանեաւն, եւ նոյնհետայն ըզծնկանն եղծ.
Որոյ էր յողնապտղոյն Պէոնիոյ եկեալ հասեալ,
Եւ 'ի մարտըս քաջամբ այր երկրորդ ըզկնի Աստերոպէի:
Ի գլորումն իւր զորովեալ Աստերոպէոս արիական՝
Եւ նա ինքըն դիմեաց աշխոյժ 'ի կռիւ դանայեցւոց.
Սակայն չեւ եւս էր հընար, զի յամենայնս վահանափակ
Կային որ շուրջ ըզՊատրոկլեաւ, եւ զնիզակս ընդդիմագոյն կարկառեալ:
Զի Էաս զամենեսեան այցէր, եւ տայր խրատս բազում,
Եւ չտայր ումեք թողուլ 'ի մեռելոյն կասել երբեք,
Ոչ ումեք նահատակել յառաջ քան զայլ աքայեցիս,
Այլ կալ մըխեալ ըզխոլաս եւ դէմ ընդ դէմ դընել մարտս:
Զայս պատուէր տայր մեծն Էաս, թանայր երկիր յարեան բոսոր,
Եւ վիրաւորք խառն եւ խիտ թաւալգըլոր անկանէին
Տրոյացւոցն, հանդոյն արի նիզակակցացն, եւ դանայեանց,

Զի եւ ոչ աղջիկն առանց արեան հեղման տային ճակատ .
Բայց սակայն յոյժ զգուշէին, զի ուշ 'ի կարծիս ամենեքին միշտ
Ընդ գունդն ոսկոյն 'ի միմեանց հեռքել ըղձացողն սասանակումն :
Այսպէս սոքա հրագունեալ գուպարէին, եւ չէր սակս
Ոչ զակն արեւուն, ոչ ըղձալուսնին ողջ անարատ .
Զի էին մառախլապատք յասպարիսին քաջք ամենայն
Որ զորդւոյն Մենիտեայ զմեռեալ մարմինն անոյին պար :
Իսկ այլք, սրտմտեալքն եւ բարձրաղէն աքայեցիք
Ցապահովս յարքի ջերմոս ոգորէին, եւ սուր ճաճանչք
Արփւոյն արեգական, եւ յերկնայ երկրէ բնաւ մէգ
Ոչ ցոլանայր, ոչ 'ի լերանց, այլ լղրջամիտ մարտընչէին՝
Ցուպալն նետից միմեանց ըղձուշացեալ բացէ 'ի բաց :
Իսկ նոքա 'ի միջոցին տառապէին չարչարանօք
Ի բալէն եւ 'ի կռուոյն, եւ մաշէին 'ի ժանտ պղնձն
Քաջագունք համօրէն . իսկ արք երկու չեւ 'էին լուեալ,
Արի արք փառազարդեալք՝ Թրասիմեդէս եւ Անտիլոք,
ԶԴատրոկլի անպատմելւոյն ըղմահն, այլ դեռ թուէր նոցա
Ցառաջնում անդ ճակատուն ողջ ընդ տրովեանս 'ի պատերազմ :
Եւ նրկասեալ զկոտորած զինուորակացն եւ ըղխուճապ,
Առանձինն ոգորէին, զայն Նեստորի առեալ պատուէր
Եւ խրախոյս 'ի մրցումն՝ 'ի թուխաւ զերդեալ նաւացն :
Եւ ըզօրն երկայն ոգոյն սոցա գուպար մեծ ժանտ կռուոյ .
Երկոք եւ քրտամբ յաւէժ անդուլ ծունկք եւ ոտքունք,
Ներքուստ ոտք բոլորեցուն, եւ ձեռք եւ աչք էին թաթախ
Ի կռուէին զպաշտօնէիւն արեաւ քաջոտն Էակիդեայ :
Որպէս այր ոք ըզմեծի զուարակի մորթ տայցէ ստրկացն
Ի ձգտել ըզթրջմեալն արբեալ 'ի ճարպ պարարտութեան,
Եւ առեալ նոքա ձգեն բոլորապար անջրպետեալք .
Եւ քամի հիւթն ընդ փոյթ, եւ ճարպն 'ի ներքս տարրանայ
Ի ձգձգել բազմութեանն, եւ յամենուստ պարզի բոլոր .
Այսպէս կողմանքն երկոքեան այսրն եւ անդր քարշէին
Ըզդիակն 'ի խուռն վայրի, զի սիրտ յանձինս յուսայր նոցա,
Տրովեանց ձգել յԻլիոն, եւ աքայեանց 'ի գոգել նաւս,
Եւ գուպար ըղնըմանէ յարեաւ դըժնէ զազանական .
Ոչ Արէս ամբոխազգեաց, ոչ Աթենաս թէ զայն տեսեալ՝
Ունէր ինչ եպերել, թէ եւ բորբեալ 'ի մեծ զայրոյթ :
Այսպիսի Արամազդ յաւուր յայնմիկ ըղԴատրոկլէ
Արկ արանց ուերիվարաց մահահրաւէր ճակատամարտ :
Իսկ դիւցազն Աքիլլէս ըղԴատրոկլի չգիտէր դեռ մահ,
Զի հեռի յոյժ 'ի սրընթաց նաւատորմէն մաքառէին
Ընդ տրովեանցն պարըսպօք, եւ չունէր ակն ինչ 'ի սրտի
Թէ մեռեալ իցէ, այլ ողջ, եւ մինչ 'ի դրունսն ժամանեալ,

Սակայն ոչ եթէ ձեռք ու՛ի նորագործ չըքնաղ 'ի կառաց
Արշաւեսցի Պրիամեանն Հեկտոր, զի ոչ թողացուցից։
Չիցէ՞ շատ՝ զի զզէնսն ունի եւ խորտակեցաւ պարծի այնպէս։
Այլ 'ի ծունկսդ ձեր արկից եւ 'ի հոգիսդ ոյժ եւ կորով
Թափել հանել 'ի կըռուոյն զԱւտոմեդոն 'ի խոր քաջախմբին.
Քանզի գէթ եւըս նոցա շնորհեցից փառս 'ի կատարել,
Մինչեւ երթեալ 'ի գեղապատխան հասանիցեն նաւաց տարմից,
Եւ մըտցէ արեգակն, եւ եկեսցէ սուրբ աղջամուղջ։
Խօսեցաւ զայս եւ շնչեաց 'ի յերիվարսն ուժգին կորով.
Եւ նոցա 'ի բաշխեացն թօթափեալ յերկիր զփոշին՝
Տանէին ձեպով զերագ կառսն ընդ տրովեանս եւ 'նդ աքայեանս։
Եւ թէպէտ եւ զընկերէն թախծեալ, կռուէր Աւտոմեդոն
Ցարձակեալ 'նովին ձիովք, որպէս ճիւղ անգղ 'ի սագուց տարմ.
Զի դիւրով 'ի տրովացւոց մարտամարտութեն ապրեալ փախուստ,
Եւ հեշտիւ հալածելով 'ի բազմախումբ անբառ խաղայր։
Բայց ոչ արանց գործէր նախճիրս՝ ըղձեալ նոցին շահատակել.
Զի եւ չէր իսկ միայնուոյն 'ի նուիրական 'ի կառսն անդ
Նիզակ արձակել, եւ սանձել ժիր զերիվարսն։
Անհազան՝ ուրեմն ըզնա ետես աչօքն այր մարտակից՝
Որդեակն Եմոնեան Լայերկեան՝ Ալկիմեդոն,
Եւ կացեալ յետոյս կառացն՝ յԱւտոմեդոն բարբառեցաւ.
Ո՞ 'ի դից, Աւտոմեդոն, զանմտէտ խորհուրդ 'ի սիրտդ արկ,
Եւ զառողջ միտսդ եհան, երթալ միայն նահատակել
Ցառաջնումն ընդ տրովացիս, ուր զի սպանեալ է քոյդ ընկեր,
Եւ Հեկտոր զանձամբ արկեալ զՊելեդեայ զէնսն՝ խայտայ։
Եւ նմա պատասխանի Աւտոմեդոն՝ Դիովրեան Ձեռ.
Ո՞վ ոք այլ յաքայեցւոց, Ալկիմեդոն, իբրեւ ըզքեզ՝
Ցոյր անմահ ձիոցն 'ի ձեռն իցէ խրոխտումն եւ վարժելիք,
Բայց միայն 'ի Պատրոկլէ՝ յաստուածանման 'ի ճարտարէն
Մինչ կենդանին էր, իսկ այժմ օրհաս եւ մահ եպետ ըզնա.
Այլ ընկալ դու զմըտրակս եւ զերասանս շողշողենիս,
Եւ իջից ես 'ի կառացըս գուպարել 'ի պատերազմ։
Զայս ասաց, Ալկիմեդոն հեծեալ 'ի կառսն մարտարար՝
Բուռն եհար յապուշակին յերկասանական եւ 'ի մըտրակն,
Եւ ոստեաւ Աւտոմեդոն, զոր Հեկտորի վերհէն տեսեալ
Զայն անդէն արձակեաց առ մօտակայն իւր Ենէաս.
Ենէաս, պղընձազրահ տրովացւոց խորհրդական,
Զերիվարսդ զայդ ծանեայ զՊելեդեայ երագոտին
Շողացեալս 'ի պատերազմ պատժաման կառավարօք։
Արդ ակն ունիմ ըմբռնել, թէ կամիցիս դու 'ի սրտէ.
Զի թէ գայցեմ առաջ 'ի նոսին արշաւասայր ասպատակեալ՝
Չիշխեսցեն մեզ ախոյեան 'ի մարտակըռիւ կալ գուպարան։

Էր 'ի տրովկանացն Պոդէս անուն որդի Էետիոնի,
Ընչաւէտ եւ քաջալաւ, զոր յոյժ յաղգին պատուէր Հեկտոր,
Զի էր իւր ամոխաւ խրախճանակից սիրատենչակ:
Ընդ կամար գօտւոյն ըզսա Մենելաւոս եհար խարտեաշ
Մինչ ձեռնէրն 'ի փախուստ, եւ Թափ ընդ Թափ ըզպղինձն եհան.
Անկաւ Թընդմամբ ընդ գետին, իսկ Ատրիդէս Մենելաւոս
Ըզմեռեալն 'ի տրովացւոց կորզեաց 'ի խումբ ընկերակցացն:
Այլ զՀեկտոր հուպ մատուցեալ Ապողոնի քաջալերէր,
Ի ձեւ Ասեան Փենոփայ՝ որ էր նըմա սիրելագոյն
Քան ըզՀիւրոն ամենայն, եւ բնակութիւն տանն յԱբիդոս.
Դիպաղեղն Ապողոնի առեալ զերեսըս իւր ասէ.
Ո՛վ ոք այլ եւս յաքայեանց երկընչիցի, Հեկտոր, 'ի քէն,
Զի այդպէս փախուցեալ ես յերեսաց Մենելաւի,
Որ յառաջ անզօր մարտիկն, եւ այժմ ըզդին բարձեալ միայն
Ի տրովեանցս անցեալ գընայ, սպանեալ եւ զքո սերտ ընտանին,
Զկորովին յախոյեանս՝ զԷետիոնի որդին Պոդէս:
Զայս ասաց, եւ զնա ծածկեաց ցաւոց մըռայլ ամպ սեւաթոյր,
Եւ եմուտ 'ի նախահատակսն 'ի պղինձ հրաշէկ զինավառեալ:
Եւ յայնժամ Զըրոնեանեանն ըզքղանցաւոր եւ զպաղպաջուն
Առ զասպարն, եւ զԻդա պարաքօղեալ հածեալ ամպովք՝
Սաստկակոծ որոտընդոստ փայլատակմամբք գըղըրդեցոյց,
Ետ տրովեանց ըզյաղթութիւն, զարհուրեցոյց զաքայեցիս:
Ըսկիզբն արար փախըստի Պենելէոս բէովտացին.
Քանզի գէմքըն միշտ յառաջս՝ էր տիգահար եղեալ յուսոյն,
Քերեալ ծայրիւ չափ եւեթ, այլ եւ մինչ յոսկրըն երգէծեալ
Սըլաքին Պուլիդամայ, զի սա 'ի մօտ եկեալ եհար:
Մերձեալ ապա խոցեաց Հեկտոր ըզԼէիտեայ ձեռին դաստակ՝
ԶԱլեկտրիոնի մեծանձինն որդւոյ, եւ արկ 'ի գոռալոյն.
Որ փախեաւ բըրբըջելով, զի ոչ եւս այլ յուսայր 'ի սիրտ
Ունել նիզակ 'ի ձեռին եւ մարտընչել ընդ տրովացիս:
Իդոմենեւս զՀեկտորի, մինչ յարձակէրն 'ի Լէիտոս,
Եհար զլանջապանակ զրահից նորա մերձ առ ըստեամբն,
Այլ 'ի բնի անդ սըլաքին՝ բեկաւ գեղարդն երկայնաձիգ:
Ձայն աւին տրովեանք, եւ նա Թըռոյց զաշտէն յԻդոմենեւս
Ի Դեւկալեանն որ 'ի կառսըն կայր, եւ խոյս մի վրէպ անտի՝
Զզինակիր Մերիոնեայ եւ զկառավարըն Կիրանոս
Զըստ իւր եկաւորեալն 'ի բնակաւէտըն Լիկտոսէ, —
Զի նախ հետի եկն Իդոմեն 'ի կըրկնամուղ մեկնեալ նաւացն,
Եւ մեծապանծ յաղթանակ պարգեւելոց էր տրովացւոց,
Թէ ձեպով չէր Կիրանու զձիս երիվարան անդր հասուցեալ.
Նըմա լոյս եկըն նա, եւ վանեաց զօրըն զըժպըհի,
Իսկ ինքն զոգիսըն կորոյս 'ի մարդասպանձըն Հեկտորէ, —

Աքիլլի Պելէածնին երթալ պատմել գոյժ բօթալից ։
Եւ ոչ քո սիրտ յօժարեաց, Մենելաւէ դիւցազնունդ,
Ցօգն ընկերաց նեղելոցն՝ յորոց գընաց Անտիլոքոս,
Եւ անձուկ կարօտալքին Պիլիացւոցն եհաս զընդաց.
Սակայն նա կացոյց նոցա զԹրասիմեդէս դիցանըման,
Եւ ինքըն դարձ վերըստին առ Պատրոկլոս արար դիւցազըն,
Եւ դիմեալ առ Էասեանս կացեալ անդէն բարբառեցաւ.
Արդ ըզնա 'ի նաւատորմն առաքեցի յերագաթեւ
Առ քաջոտն Աքիլլէւս խաղալ գընալ, բայց ոչ կարծեմ
Արդ գալցէ, Թէպէտ եւ յոյժ խիկ սըրտմըտեալ ընդ վեհն Հեկտոր,
Զի եւ ոչ մերկ 'ի զինուց ընդ տրովացիս մըտցէ 'ի մարտ ։
Այլ արդ մեք խիկ ինքեանք մեղէն խորհուրդ խորհեսցուք քաջ,
Եթէ զդին զիարդ հանցուք, կամ Թէ եւ մեք խիկ զըրկումն
Ի տրովեանց մարտս ապրեսցեմք 'ի մահուանէ եւ յօրհասէն ։
Մեծն Էաս Տելամոնեան դարձոյց առ նա պատասխանի.
Քաջ ասացեր զամենայն, ով մեծափառ Մենելաւոս.
Սակայն դու եւ Մերիոն բարձեալ ըզդին երագապէս՝
Ի կըռուոյս հանէք 'ի բաց, մեք 'ի Թիկանց ապարեսցուք
Ընդ տրովեան խուժանին եւ ընդ դիւցազնըն Հեկտորի,
Անուամբս մեք համամիտք եւ համանունք, որ եւ կանխաւ
Ժուժկալեալ ընդ բարկ Արեայ՝ եւ 'ի միմեանց ոչ մեկնեցաք ։
Զայս ասաց, եւ 'ի գետնոյն խլեցին գըրկօք նոքա զմարմինն
Կարի յոյժ վերամբարձ, գոռաց ըզհետ տրովեանն ամբոխ,
Իբրեւ տեսին Թէ զդիակն առին տարան աքայեցիք ։
Դիմեցին իբրեւ զբարակս որ 'ի վարազըն վիրաւոր
Ցարձակին յառաջոյ երիտասարդ ապականաց.
Զի առ վայր մի արշաւին գազանացեալք 'ի պատառել,
Իսկ յորժամ՝ կինձն 'ի կորով իւր ապաստան՝ դառնայ յեւրեանս,
Խոյս տան յետս եւ վարատին յոյս ոք եւ յայն կոյս խուճապաւ.
Նոյն տրովեանք անդուլ առ ժամս ինչ համագունդ հալածէին
Սուսերօք հարկանելով եւ նիզակօք երկսայրէիւք.
Իսկ ընդդէմ մինչ աճոյեան ասոխէին երկ Էասեանք,
Շըրջէր գոյն երեսաց նոցա եւ ոչ խիզախէր ոք
Նահատակել 'ի վերայ եւ մարտ գընել ըզմեռելոյն ։
Այսպէս սոքա տանէին կայտառելով զդին 'ի ճակատէն
Ի նաւսըն գոգաւորս, այլ ճարակէր 'ի նոսա մարտ
Մոլեկան իբրեւ ըզհուր՝ ըզքաղաքէ հարեալ մարդկան,
Զի անկեալ բորբոքի յեղակարծում, եւ ծախին շէնք
Ի ճաճանչ մեծայաղԹ՝ յոր բըռնուԹիւն հողմոյն մռընչէ.
Սոյնպէս սոցա 'ի գնալն իւրեանց ըզհետ մըտեալ ընԹանայր
Երիվարաց եւ մարտիկ արանց շըշուկ ահագնադղորդ ։
Իսկ ինքեանք, ջորիք որպէս 'ի զօրուԹիւն պինդ ժըրագլուխք՝

Ի լեռնէ ձըգեալ ածեն ընդ ճանապարհ առապարին
Ըզգերան կամ ըզհեծան մեծ նաւափայտ, եւ շընչասպառ
Ի փոյթս 'ի ճնշս անդ հալչեն 'ի վաստակոցն եւ 'ի քրտանց,
Նոյն սոքա ճըգնաջան բարձեալ զդիակնըն տանէին:
Զհետ ունէին Այաք յետուստ, որպէս ըզջուրս արգելու գար
Տընկախիտ՝ կարկառեալ ընդ դաշտըն Թումբ երկայնանիստ,
Որ զհըզօր գետոց սաստիկ յորձանս ուղխիցն իսկ բեկանէ,
Եւ անդէն զամենեցուն զըրգանան 'ի դիւրըն շըրջէ կոյս,
Եւ ոչ իսկ հոսանացըն բըռնութիւն խորտակէ զայն.
Նոյնպէս յետս ընդդէմ ըզխաղմըն վանէին միշտ Այասեանք
Ըզտրովկեանցն՝ որ ստէպ կային, եւ մանաւանդ երկուք նոցունց,
Անքիսեանն Էնէաս եւ պերճն Հեկտոր շըքեղաճոխ:
Եւ որպիսի սարեկաց կամ ճայեկաց ամպ խուռնախիտ
Ահագին կականչանօք հալածական գնան 'ի փախուստ,
Տեսեալ ըզցին խոյացեալ՝ ըզթըռչնըրկանց խաշող մըրագն,
Այսգունակ աքայեցւոց որդիքն յԷնեայ եւ Հեկտորէ
Սոսկալի աղաղակաւ գնային՝ կըռուոյ մարտին անյուշք:
Եւ բազում զէնք գեղեցիկք անկան 'ի փոսն եւ զնովաւ շուրջ
Ի փախչել դանայեցւոց, եւ խաղմին չէր դուլ եւ դադար:

757



# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Աշխարահեծ կոծ եւ գոյժ Աքիլլեայ 'ի լուր մահուանն Պատրոկլի. հասանէ մայրն Թետիս 'ի սփոփել, նա սրանալ կամի 'ի վրէժ սիրելւոյն, մայրն արգելու՝ մինչեւ բերցէ նմա նոր զէնս: Հազիւ հազ զօրանան Յոյնք թափել զմարմին Պատրոկլի: Աքիլլեւս հրամանաւ Հերայ ելեալ երեւի առավելանց անզէն յեզր փոսոյն ահագնատեսիլ, եւ յահեղ գոչիւն բարբառոյ նորա տարտափին տրովադացիք, եւ մարմինն Պատրոկլի ելանէ յանդորր: Նսեմու լնէ խաւար. տրովադացիք խորհուրդ արարեալ՝ կան մնան 'ի դաշտին: Աքիլլեւս աշխարէ. Թետիս գնայ առ Հեփեստոս ճարտարապետն աստուած, խնդրէ եւ ընդունի պատենազէնս վասն որդւոյն: Նկարագրութիւն զարմանագործ վահանին:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՈՒԹՈՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ԶԻՆԱԳՈՐԾՈՒԹԻՒՆ

Մըրցէին այսպէս նոքա հանգոյն հրոյ բորբոքելոյ·
Իսկ երագոտն Անտիլոքոս առ Աքիլլեւս հասեալ հրեշտակ՝
Եգիտ ըզնա զառաջեաւ եղջերաբերձ նաւատորմին
Զի ածէր զայն ինչ ընդ միտ, որ վըճարեալն էր եղեալ յանգ,
Եւ յոգւոց հանեալ ասէր 'ի մեծասիրտ անձին իւրում·
Վա՜յ աւաղ· ըզմի՞ դարձեալ աքայեցիքըն վարսագեղք
Խուճապին 'ի նաւսն կոյս ընդ դաշտավայրն ահաբեկեալք·
Քաւ 'ի դից կատարել յոգիս ըզդառն աղէտին զայժ,
Զոր օրինակ յայտ երբեմն արարեալ մայր իմ պատմեաց ինձ,
Եթէ քաջն 'ի Միրմիդոնս, եւ առ իմով իսկ կենդանեաւ,
Ցարեւէ արեգական անկանիցի տրովադաց ձեռամբ։
Անշուշտ ըստուգիւ մեռաւ որդին Մենետեայ քաջ·
Եղկելին· պատուիրեցի եւըս՝ վանեալ զհուրն ոսոխիմ
Դարձ այսրէն առնել 'ի նաւս, եւ մի՛ ընդ Հեկտոր շահատակել։
Մինչ զեւ նա զայսպիսիկ խորհէր ընդ միտս իւր եւ ընդ սիրտ,
Նեստորի մեծափառին եկն եկաց մերձ որդին առ նա
Հոսելով ջերմ արտասուս, եւ ետ ըզգոյժն աղիողորմ·
Ո՛հ զինեւ, որդիդ Պեղեայ քաջասրտին, լըւիցես բօթ
Անհնարին դառնութեան, ում չէր ինչ պարտ յարգիւնըս գալ·
Անկեալ կայ Պատրոկլոս, եւ զմերկ դիոյն տան պատերազմ·
Իսկ ըզզարդըս զինուցն ունի Հեկտոր կորդակախորոխս։
Զայս ասաց, եւ ըզնա պաշարեաց ամպ տըխրութեան թուխ·
Եւ ափոյքըն երկոքումբք զաճիւնախառն առեալ մոխիր՝
Ցանեաց ըզգըլխովն, եւ զշնորհաշուք զարշեցոյց դէմսն,

Ի ծովակին եկին կարգաւ՝ ուր խիտ առ խիտ էին ձգեալ
Կորկոռուրայք Միրմիդոնաց ըզպաշտօնէիցն Աքիլլեաւ շուրջ։
Մինչ հեծէր ծանրաթախիծ՝ մատեաւ առ նա մեծարոյ մայրն,
Եւ կական բարձեալ ճըչիւ՝ կալաւ ըզգլուխ որդւոյն իւրոյ,
Եւ ըզբանս երագաթեւ բարբառեցաւ խաղաղատեալ.
Զի՞ լաս եւ ո՞ր սուգ, որդեակ, ըզմիտըս քո հասեալ կալաւ.
Մի՛ ծածկեր՝ խօսեաց, ահա եւ քեզ 'ի գլուխ յԱրամազդայ
Զոր կանխաւն ինչ միանգամ ձեռս ամբարձեալ աղաչեցեր,
Որդւոցդ աքայեցւոց ամենեցուն վանել ցըմաւս,
Լինել քեզ անձկակարօտ անհընարինս չարչարեալք։
Եւ քաջոտն Աքիլլեւս ասէ առ նա հեծեծելով.
Մայրիկ իմ, զայդոսիկ ինձ Ողիմպեանն ած կատարեաց,
Այլ ինձ զի՞նչ անուշ հեշտանք, զի սիրելին կորեաւ ընկեր,
Պատրոկլոս՝ զոր քան ըզբնաւ մեծարէի ես զընտանեակս,
Հաւասար անձին գըլխոյս. զայն կորուսի, եւ զզէնս Հեկտոր
Սպանեալ տարաւ զահագին՝ պանչելատեսս եւ ըզչըքնաղս,
Զոր աստուածըքըն Պելէւսի պարգեւեցին օժիտ պայծառ
Յաւուրն՝ յորում եւսուն զքեզ մահացուի առն յանկողինս.
Իցէ՛ւ թէ անդ դու մնայիր ընդ ծովայինն անմահսն բնակ,
Եւ ածեալ էր Պելեւսայ մահկանացու զոք ամուսին։
Իսկ այժմիկ, ահա եւ քեզ լիցի անբաւ 'ի միտսդ սուգ
Ընդ մահ որդեկիդ, զոր չընկալցիս դարձեալ 'ի տուն,
Զի չատնու եւ սիրտս 'ի մէջ մարդկան զարեւ տեսանել,
Թէ ոչ նախ գեղարդեամբս հարեալ Հեկտոր փըչէ զոգին,
Եւ զմահուն Մենետեանըն Պատրոկլի լուծանէ վրէժ։
Եւ անդէն պատասխանի նըմա Թետիս արտօսրաթոր.
Վաղավըճաւ լիցիս ուրեմն, որդեակ իմ, ինձ, որպէս ասեսդ.
Քանզի քեզ յետ Հեկտորի անդէն օրհասն է մօտալուտ։
Երագոտն Աքիլլեւս ասէ առ նա խոր հեծութեամբ.
Թող արդէն իսկ մեռանիմ, որ զի չեղայր ինձ յօգն հասանել
Մըտերմիս խոշոշելում, որ յոյժ 'ի հայրչն երկրէ բացեալ
Ծախեցաւ, յիս մերժելոյ ժամանին եղեալ կողկողագին։
Եւ զարդիս, քանզի չդարձայց 'ի հայրենի քաղցըր գաւառ,
Եւ չեղէ Պատրոկլիս եւ ոչ այլոց ընկերաց լոյս,
Յոգունց տապաստ անկելոց 'ի Հեկտորէն աստուածային,
Այլ նըստիմ առ նաւիններովս անօգուտ բեռն ինչ երկրիս,
Այսպիսիս 'ի մարտ՝ որ ոչ 'ի զրահապատեաց աքեայց ոք այլ.
Իսկ յատեան հռետորական՝ են են եւ այլք յոյժ աներձագոյնք։
Ո՛ տայր թէ հեռ 'ի կորուստ գնայր 'ի դից ու 'ի մարդկանէ,
Եւ զայրոյթ՝ որ զիմաստունն անգամ գըրգռէ 'ի գըժնութիւն,
Որ եւ յոյժ անուշակ քան զծորածոյ մեղուն խորիսխ
Ի սիրտըս մարդկան յորդեալ ածէ իբրեւ ըզծուխ,

Որպէս արդ զիս բարկացոյց արանց արքայն Ագամեմնոն :
Այլ զանցեալսն եւ ըղձնացեալս 'ի բաց թողցուք՝ թէ եւ ցաւածք
Ըղձօղկս 'ի լանջըս մեր առ վըտանգիս սանձահարեալ :
Այժմ երթայց ես եւ գըտից ըզսիրային գըլխոյն գահիճն
Ըզհեկտոր, եւ անդ յայնժամ ընկալայց մահ զոր կամիցին
Սահմանել Արամազդ եւ այլ եւս դիքն անմահականք :
Զի չապրեցաւ յօրհասէն եւ Հերակլեանն իսկ զօրութիւն,
Որ Զըրուանեան արքային Արամազդայ էր սիրասնունդ,
Այլ պարտեաց ըզնա մահ եւ Հերայի ծանըր ցասումն :
Եւ ես նոյն, եթէ եւ ինձ հասեալ կայցէ համանգոյն վիճակ,
Անկայց մեռեալ, իսկ այժմուս տարայց ըզփառսըն գեղեցիկ,
Եւ լիցէ 'ի լանջագեղ դարդանուհեաց եւ տրովուհեաց
Զոր սախալեցից երկոքումբք ձեռօք ըզնջել ըզգերարտասուսն
Ի փափուկ այտից իւրոց եւ հառաչել կականալից .
Ծանիցեն՝ զի ձեռընթափ կայի 'նդ երկար ես 'ի մարտէն :
Մի արգելուր զիս կըռուել, թէ եւ առ սէր, չողոքեսցես :
Դիցանոյշն արծաթաթաթիկ Թետիս անդէն դարձուած ասէր .
Յիրաւի են այդոքիկ, որդեակ, եւ չէ ինչ ապիրատ
Յընկերաց տառապելոց հերքել զեղեռըն դըժընդակ .
Այլ քո զէնք գեղեցիկ, պղընձակերտք եւ պաղպաջունք
Յաւարի կան առ տրովեանս, եւ զայն Հեկտոր սաղաւարտաձօձ
Արկեալ զուսովքըն խայտայ, բայց ոչ կարծեմ թէ եւ նա ինքն
Յայնս ընդ երկար նազիցի, զի առ տուրք կայ նորա մահ :
Սակայն մի դու բնաւ երբեք մըտանիցես յԱրէսին խաղս
Մինչեւ զիս քոյով աչօք տեսանիցես այսըր եկեալ :
Զի այգունն ընդ ելանել արուսեկին դառնամ այսրէն
Յարքայէն Հեփեստոսէ բերել քեզ զէնըս վայելուչ :
Զայսոսիկ խօսեալ նորա՝ շըրջեաց թիկունս յորդւոյն իւրմէ,
Եւ առ քորսըն դարձեալ անդրընդայինս՝ ասէ ցնոսա .
Արդ արդ դուք մըտէք 'ի ծոց ծովուդ 'ի լայնալիր՝
Երթալ տեսանել ըզծովային ծերըն եւ զյարկս հօր,
Պատմել նըմա զամենայն . գնացից յերկայնն ես Ողիմպոս
Առ Հեփեստոս արուեստող ճարտարապետ, թէ կամիցի
Որդեկիս իմոյ շնորհել զէնս հոյակապս արփիադեղս :
Զայս ասաց, սուզան նոքա վաղվաղակի յալիս ծովուն .
Իսկ Թետիս արծաթաթաթիկըն դիցանոյշ երթ յՈղիմպոս,
Փութացիս ածել սիրուն իւր որդեկին ըսպառազէնս :
Եւ արդ ձեռք իւր տանէին զինքն յՈղիմպոս, իսկ աքայիք
Փախուցեալք 'ի մարդախանձըն Հեկտորէ անհուն գոչմամբք՝
Երթեալ հասանէին 'ի նաւատորմն եւ յԵլլեսպոնտ :
Սակայն ոչ ըզՊատրոկլոս աքայեցիքն ատոյգաբարձք
Ի նետից կորզեալ էին զԱքիլլէսի սպասեակն անշունչ .

Զի անդրէն հասին առ նա կառք երիվարք եւ հետեւակք
Եւ Պրիամեան ձեռն Հեկտոր՝ կործանութեամբ բոցաւառել։
Բուռն երկիցս եհար յետուստ զոտից նորա պերճն Հեկտոր,
Ցոլացեալ ձըգել հանել, եւ առ տրովեանս ուժգին գոչէր.
Եւ երկիցս Էառք կըրկին՝ զգեցեալք ըզբուռն զօրութիւն՝
Վանեցին 'ի մեռելոյն, սակայն նա պինդ յոյժն ապաստան՝
Էր զի՛նդ ամբոխն յարձակէր, էր զի զանեղի առեալ կոչեալ
Աղաղակէր մեծաձայն, ամենեւին ընկըրկէր ոչ։
Որպէս հովիւք բացօթեայք զառիւծ հրաշէկ սովալլուկ
Ի շաղղոյ չմարթեն վարել, նոյն քաջազէն կըրկին Էառք
Ոչ բաւէին զՊրիամեանն Հեկտոր հերքել 'ի մեռելոյն։
Եւ թափէր իսկ ապաքէն եւ զանպայման փառսըն առնէր,
Եթէ չէր առ Պէլեանն աճապարեալ մըրըրկոտն Իրիս
Սըլացեալ պատգամաւոր յՈղիմպոսէ՝ զի վառեսցի,
ՑԱրամազդայ գաղտ եւ յայլոց գից առաքեալ 'ի Հերայէ։
Եւ առ նա մատուցեալ՝ զերագաթեւ խօսեցաւ բանս.
Օ՜ն արի, Պէլէեանդ, քան զամենայն արս ահաւոր,
Ի Թիկունս Պատրոկլի, յորոյ վերայ մարտ անհնարին
Առաջի նաւացըն կայ, եւ ըսպառեն նոքա զիրեարս.
Սոքա՝ 'ի պաշտպանել ըզմեռելոյն գիտակն անշունչ,
Իսկ տրովեանք՝ հրոսանըւէր զան յԻլիոն ձըգել հողմաւէտ,
Մանաւանդ վեհադըն Հեկտոր ցանկայ շաղել, եւ ջերանի
Խըրելաւ 'ի գիրգ ուղանէն ըզգլուխ նորա վարսել 'ի ձողս։
Այլ արի, մի՛ եւըս կար, 'ի սիրտ քո խնամ անկցի եւ զութ,
Խաղալիկ թէ մատնեսցի տրովացի շանցըն Պատրոկլոս.
Քեզ 'ի բիծ՝ թէ զիականըն զխայլեցին ինչ թըշնամանք։
Երագոտն Աքիլլեւս զիւցազն արար պատասխանի.
Ո՞ զքեզ 'ի գից, դիցանուշ Իրիս, յըղեաց առ իս հրեշտակ։
Կըրկնեալ անդրէն մըրըրկոտն երագ Իրիս ասէ առ նա.
Հերա զիս առաքեաց՝ Արամազդայ ամուսին շըքեղ.
Ոչ բարձրագահ Զըրուանեանն, ոչ յանմահից այլ ոք գիտէ
Ցորոց անդ 'ի ձիւնեղէնն Ողիմպոս շուրջ բնակեալ նըստին։
Քաջոտինն Աքիլլիսի պատասխանեալ ասէ ցընա.
Իսկ զիա՞րդ երթայց 'ի կռիւն, ուր զի ունին նոքա զիմ զէնս,
Եւ մայրն իմ սիրելի չտանէ ինձ թոյլ 'ի զէն վառել,
Մինչեւ ըզնա ինքեն այսրէն իմով աչօք տեսից դարձեալ,
Զի բերել խոստացաւ չըքնաղ անօթս 'ի Հեփեստեայ։
Իսկ զայլոյ չգիտեմ թէ զո՞յր առից ըսնուր ըսպառազէնս,
Բայց միայն թէ զասպարըն զԱյասայ Տելամոնեանց.
Այլ եւ նա ինքըն, յուսամ, ընդ նախահատակն է անդադար,
Նախաճիրըս նիզակաւն ընդ Պատրոկլի մահուն գործեալ։
Մըրըրկոտըն ժիր Իրիս կըրկնեալ անդրէն ասէ առ նա.

Քաջ խոկ եւ մեք եւս տեղեակ՝ զի չբերեալ զէնքդ յաւարի կան ·
Այլ եւ այդպէս 'ի փոյթ երթեալ արտաքոյ երեւեսցիր ·
Զանգիտեալ թերեւս 'ի քէն՝ թողցեն ընդմարտէն Տրովացիք ,
Եւ ոգի աշխատականքն առցեն մանկունք Աքայեցւոց
Նեղեալքն , եւ սակայն սփոփումն ինչ սուղ՝ պատերազմին :
Զայս այսպէս խօսեցեալ՝ եւ մեկնեցաւ ժրագնաց Իրիս :
Իսկ Աքիլլէս՝ սիրելին Արամազդայ՝ յարեաւ եկաց ,
Աթենաս զարկ թիկամբքն հզօր զասպարըն վերջաւոր ,
Եւ զգլուխն յոսկի ամպ պսակեաց աստուածուհեաց պանծալափառն ,
Եւ անդուստ բոց փայլակեալ բորբոքեցոյց ճաճանչաւէտ ·
Ցայտանէ որպէս յորժամ ծուխ մրրրկեալ գնայ յարփին
Ի հեռաւոր ուստեք կղզւոյ զորով զքնին թշնամիք մարտ ,
Եւ ընդ տիւն ցերեկ ահեղ Արէու կռուին նոքա
Ցասմանէ անտի քաղաքաց , եւ 'ի մտանել արեգական
Խիտ առ խիտ ջահք 'ի դիտակ տեղիս վառին , եւ համբառնայ
Ցոլացեալ ճառագայթն առ 'ի տեսիլ սահմանակցաց ,
Զի թերեւս հասցեն նաւուք փրկել զինքեանս յեղերմնէն ·
Ի գլխոյն Աքիլլեայ այսպէս փայլակն յարփին կրցէր :
Ըստ պատնէշն եւ կաց առ փոսն , այլ ոչ խառնէր յԱքայեցիս ,
Քանզի զմօրըն մեծարէր խմաստութեան պատուէր խրատու ·
Անդ կացեալ գոչեաց , գոռաց եւ Աթենաս Պալլաս ուրոյն ,
Եւ ժխոր ահագին 'ի Տրովացիս անդր ընդոստոյց :
Եւ օրինակ իմն աղաղակ հնչէ բարբառ , մինչ գոչէ փող
Ի կենախուզ ոսոխաց պաշարելոց զքաղաքն ուրեք ,
Այսպէս ձայն ազդեցիկ բարբառեցաւ Էակիդեայ :
Եւ նոքա իբրեւ լուան զԷակիդեայն պղնձի զօղանջ ,
Թուլեալ առ սիրտ բոլորեցուն , եւ երիվարք գեղեցկագէսք
Ըղձկանան յետս շրջեցին՝ լեալ ադեաց գուշակ յանձինս ·
Եւ պակեան կառավարք՝ տեսեալ ըզհուրն անշիջական
Ահագնատեսիլ ընդ գլխով Պելիածնին մեծասրտի
Բորբոքեալ 'ի խաժակն աստուածուհւոյն յԱթենասայ :
Անդ առ փոսն երիցս ահեղ գոչեաց դիւցազն Աքիլլէս ,
Եւ երիցս ամբոխեցան տրովացիք եւ պերճ նիզակակիցք ·
Եւ անդէն իսկ առ եռեակ կորեան արք քաջք երկոտասան
Ի կառաց անտի իւրեանց եւ յաշտէիցըն հարուածեալք :
Իսկ Աքայեանք խնդագինն թափեալ յարդանց ըզՊատրոկլոս՝
Հանգուցին 'ի մահիճս , եւ ողբագինն պար զնովաւ
Առին ընկերք , ընդ որս երթայր եւ երագոտն Աքիլլէս
Հեղլով ջերմ արտասուս՝ տեսեալ ըզսերտն իւր մտերիմ
Տարածեալ անդ 'ի դագաղըն վիրաւոր սուր պղընձոյ ,
Զոր կառօք երիվարօք 'ի պատերազմ անդր առաքեաց՝
Եւ անդրէն վերըստին դարձեալ եկեալ ոչ ընկալաւ :

Իսկ զանխոնջն արեգական աչեղն Հերայ մեծապատիւ
Յղեաց դառնալ ակամայ յՈվկիանեան ուխս յորձանաց:
Արեգակն եմուտ եւ դուլ աքայեցիքն դիւցազունք
Արարին հզօր կռուոյն եւ զուգակշիռ պատերազմին:
Յայնժամ կուսէ եւ տրովադեանք անդի առեալ 'ի խիստ մարտէն՝
Ի կառաց արձակեցին զերիվարսն արագաթռիչ,
Եւ մինչ չեւ փոյթ դնել ընթրեաց տարեալ՝ յատեան ժողովեցան:
Հրապարակին եկաց յոտին՝ չհամարձակեալ ուրուք նըստել,
Դողումն ունէր ըզհամանուրս՝ զի Աքիլլէս երեւեցաւ
Որ հարուստ մի դադարեալ կայր 'ի դըժնէ պատերազմէն:
Հանճարեղն առ նոսա Պուլիդամաս խօսել կալաւ
Պանթոյեանն՝ որ նա միայն նըկատէր յառաջ եւ յետոյ.
Ընտանեին էր Հեկտորեայ, 'ի գիշերի միում ծընեալք,
Նա սակայն 'ի բանից, սա նիզակաւն յաղթող յաճախ:
Արդ նոցա խորհեալ զօգուտն՝ ասէ յատեան հրապարակին.
Յայս եւ յայն կողմ, սիրելիք, ըստ արժանի խորհեցարուք.
Այժմ ես յատեան խրատ տամ երթալ, մի մնալ Այգոյն աստուածային
Ի դաշտի աստ առ նաւօքն եւ 'ի բացեայ 'ի պարըսպաց:
Մինչ դեռ այրն այն քինացեալ էր դիւցազնին Ագամեմնոնի,
Դիւրաձեռն 'ի պատերազմ եւ մեզ էին աքայեցիք:
Խընդայի եւ ես առընթեր առ արագաշու նաւատորմին
Յուսացեալ ըմբռնել ըզերկըրկնակոր նաւահանգէսն.
Իսկ 'ի Պելեայ քաջոտն որդւոյն զահի հարեալ եմ չարաչար:
Որպէս բուռն խիստ է հոգին իւր՝ չառնուցու նա յանձն երբեք
Կալ մնալ 'ի դաշտիս, ուր տրովադեցիք եւ աքայեցիք
Ի միջի աստ երկոքեանս հանդէս առնեն ուժոյն Արեայ,
Այլ 'ի վերայ քաղաքիս եւ ըզկանանցս 'ի կռիւ կացցէ:
Երթիցուք արդ յատեան, անսացէք ինձ, զի լիցի այդ:
Արդ գիշեր աստուածեղէն զքաջոտն հանդոյց Պելիածին,
Իսկ վաղիւ՝ 'ի յարձակել նորա 'ի մեզ ըսպառազէն՝
Քաջ ծանիցէ ոք ըզնա, թէ դառնիցէ զմեզ աստանօր.
Զի որ ոք փըրծանիցի՝ ըերըմիթ հասցէ յԻլիոն սուրբ,
Եւ զբազումս կերիցեն շունք եւ անգեղք տրովադացիս.
Եւ ո՛ տայր եթէ բոթդ հեռի լինէր յիմ ունկանէս:
Իսկ իմոց եթէ բանից ունկըն դիցուք, թէ եւ տըրտմուք,
Ըզգիշերս անդ յատենի հրապարակին կազդուրեսցուք,
Եւ զքաղաքն՝ աշտարակք, դըրունք բարձունք տախտակամածք
Երկայնեւք եւ յղկեալք զօդեալք 'ի կողմն՝ պահպանեսցեն:
Եւ ընդ այգս առաւօտուն վառեալք 'ի զէն մեր եւ 'ի զարդ՝
Յաշտարակս անդ կացցուք, եւ դըժընդակ լիցի նըմա
Ի նաւաց թէ գալ կամի կռուել ընդ մեզ ըզպարըսպաւս:
Դարձցի յետս անդրէն 'ի նաւսն, ըզբարձրավիզ երիվարսն

Ցախուռն այսր անդըր յընթաց ըմբռնողքաւք պարտասեալ·
Իսկ 'ի ներքս հրոսէ՝ նորա հալէն ոչ տայէ թոյլ,
Ոչ երբէք աւերեացէ· նախ զինչն երագք կերկեցեն ըմպք:
Հայեցեալ ընդ նա խոժոռ՝ ասէ Հեկտոր կորդակաձօձ·
Ոչ զայդ ինձ, Պուլիդամաս, հաճոյական ինչ բարբառիս,
Զի յուսաս անդըր դառնալ եւ ժողովել տաս մեզ պատուէր·
Չեւ տակաւին յագեցեալ իցէք մնալով յաշտարակս անդ:
Ըզքաղաքըս Պրիամու յառաջ մարդիկ բազմաբարբառք
Բազմոսկի եւ պղնձաւէտ քարոզէին բոլորեքեան,
Իսկ այժմիկ՝ կորեաւ ընտիր ընտիր ապատուցս յապարանից·
Բազումք առ փռիւգացիս եւ յըղձալին Մէոնիա
Ի վաճառ գնացին ստացուածք, երբեւ ցասեաւ մեծն Արամազդ:
Իսկ զի արդ կորովամիտին Զըրուանայ ետ ինձ որդին
Անուլ փառս առ նաւեկներոյն, զաքայեցիս մըղել ցըծովն,
Մի եւս, անմիտ, ցուցցես զխորհուրդըդ զայդ յառեան ժողովրդեան·
Զի ոչ ումեքն ոք գընեցէ 'ի տրովացւոց, եւ ոչ տաց թոյլ:
Այլ եկայք, որպէս ինչ եսս ասեմ, լուիցուք ամենեքին:
Առ ժամայս առէք ընթրիս 'ի ճամբարի առա խումբ 'ի խումբ,
Եւ դիք ուշ ցայգապահուց եւ հըսկեցէք իւրաքանչիւր:
Եւ որ յոյժ 'ի տրոյացւոց է ոք հոգած զընչից իւրոց,
Ժողովեալ տացէ զոքուս 'ի վայելումն ամենեցուն,
Յորոց լաւ իցէ ումեք ժառանգել զայն՝ քան աքայեանց:
Եւ վաղիւ ընդ այգս այգուն վառեալ կազմեալ ըսպառազէն՝
Առ դադեալ նաւատորմին յորդորեսցուք ըզքաջն Արէս:
Թէ տրդարեւ Աքիլլեւս յարեաւ զիւցազն անդ առ նաւուք,
Սորրջացի տպաշաւ, թէ ժըտեսցի· ես ոչ փախեայց
Յերեսաց նորա յահեղ պատերազմին, կացից ընդդէմ
Անդրդուող՝ եթէ տարցի յաղթութիւն մեծ, թէ տարայց ես:
Հասարակ է Արէս, եւ զըսպանօղն ըսպանանէ:
Զայս յասեանն ասաց Հեկտոր, եւ տրովացիք հարին ճայթիւ,
Ըրլամիտք, զի զմիտս իւրեանց եհարձ Պաղլաս Աթենաս,
Եւ միասնակար խորհրդոյն ըղհեա չոգան ըղՀեկտորի,
ԶՊուլիդամայ՝ եւ ոչ ոք, որոյ զբարին տուեալ էր խորհ:
Ընթրիս այնուհետեւ 'ի բանակին առին նոքա:
Իսկ աքայեանք ըզքայգն ողջոյն կոծեալ զՊատրոկլ ողբային,
Եւ նոցին ուժգին ջայլից Պելիաճինն առաջ ըսկըզբն
Ըզձեռսն իւր մարդասպանս 'ի մըտերմին եդեալ 'ի լանջս
Ըստէպ հեծեծանօք, որպէս առիւծ մի թաւամէս
Զորոյ զկորիւնս իւր որսորդ ոք գողացաւ եղջերուահար
Ի թաւուտ խարձից մայրւոյն, ինքն անտառն եկեալ թաղծեալ
Ընդ բազում շըրջի հովիտս հետազօտեալ զառնըն շաւիղս
Թէ ուրեք գըտանիցէ, զի յոյժ դաժան ունի զայրոյթ·

Այսպէս նա խոր թառանչմամբ ասէր 'ի գաւս Միրմիդոնաց·
Ո՛հ աւաղ, բան արդարեւ հանէի անոտի յաւուրն յայնմիկ
Ըղձիւցալն անդ յապարանս փարատաւալելով զՄենիտիոս·
Ասէի՝ թէ դարձուցից քեզ յՈպոյնս զորդիդ շքեղ
Կործանեալ զԻլիոն եւ վիճակեալ յաւարաման :
Այլ Արամազդ զամենայն խորհուրդ մարդկան ոչ կատարէ·
Զի երկոցունցս են հրամանք՝ կարմիր ըղձոյն ներկանել հող
Աստ յերկիր Տրովադա· քանզի եւ զիս 'ի դարձ անդրէն
Ծերունին հեծեալ Պելեւս 'ի յարկս իւր ոչ ժողովեսցէ,
Եւ ոչ մայր իմ Թետիս, այլ աստանօր կալցի երկիր :
Պատրոկլէ, արդ զի զկնի քո գնամ 'ի խոր սանդարամետս,
Ոչ արարից քեզ զթաղումն, մինչեւ ածեալ այսր ընկեցից
Զհեկտորի զէնսն եւ ըզգլուխ՝ ըզքոյ սպանողին մեծոգւոյն·
Եւ առ ուղս խարուկիդ փողոտեցից երկոտասանս
Ի տրովկեանց քաջազն որդւոց առ զայրացուցելս քոյ սպանման :
Եւ կացցես ցայն վայր ինձ առ մահկանացու նաւուքս այսպէս,
Եւ ըզքեւ արտասուօք հեծմամբ ըզտիւ եւ ըզգիշեր
Զոյլեսցեն լանջապէղ դարդանուհիք եւ տրովկուհիք,
Զորըս մեք աստացաք յերկայն 'ի տեգ նիզակ կորովութեամբ՝
Ծախ քաղաքս յաւարի զբազմաբարբառ մարդկան առեալ:
Զայս դիւցազն Աքիլլէս խօսեցաւ անդ, եւ ետ հրաման
Կատուցանել ընկերացն եռոտանի սան մեծ 'ի հրատ,
Զի փութով 'ի Պատրոկլէ լուասցեն զարիւնն եւ զապաժոյժ :
Որ 'ի հուր լուցեալ կանգնեալ զեռոտանին լոգանաց սան՝
Լցին ջրով եւ 'ի ներքոյ կըրկուաս արկեալ բորբոքեցին :
Ցոլանայր բոցն 'ի փոր կաթսային շուրջ, ջուրըն ջեռնոյր :
Իսկ յորժամ 'ի փայլուն պղընձին յեռանդն հարան կայլակք,
Լուացին նոյն հետայն եւ օծին յիւղ պարարտութեան,
Եւ ըզվէրսն լըցին անոյշ իւղովք իննամենիւք·
Եւ յանկողինս հանգուցեալ՝ ըզգեցեցին նուրբ կըտաւով
Ի ոտից մինչեւ յանտոս, եւ 'ի վերոյ սպիտակ ըզգեստու :
Ապա զգիշերն 'ի բուն շուրջ զքաջոտն առեալ Աքիլլէսիւ,
Կոծ եդեալ Միրմիդոնաց՝ աշխարէին ըզՊատրոկլոս : —
Իսկ Արամազդ ասէ ցՀերա՝ ցքոյր հարազատն եւ ամուսին·
Արարեր հուսկ ուրեմն, աչեղդ Հերա գերամեծար,
Յարուցեր զԱքիլլեւսն երագասոտ· եւ արդ անշուշտ
Անդրանիկ 'ի քէն ծընունդ են հերապանծ աքայեցիքդ :
Եւ նմա պատասխանի աչեղն Հերա մեծապատիւ·
Ահաւորըդ Զըրուանեան, բան որպիսի՞ 'նդ բերան հաներ·
Զի եւ մարդ մահկանացու կատարեսցէ զդոյն զայդ առ մարդ,
Որ 'ի մահ դատակնքեալ եւ ոչ այնչափ իմաստակիր·
Իսկ զիա՞րդ, ես որ կարծեմս աստուածուհեաց զիս վեհագոյն՝

Երկրպագումք, եւ յաղթես եւ զի կոչիմ քոյդ ամուսին,
Եւ դու ինքն ես անմահից բոլորեցուն ամենիշխան,
Սրտմտեալ ընդ տրովացիս չէր ինձ օրէն չարիս կազմել:
Արդ այսպէս սոքա զրուցատրէին զայս ընդ միմեանս: —
Իսկ Թետիս արծաթաթաթիկ եհաս 'ի յարկսն Հեփեստեայ
Յանապական՝ յաստեղազարդ՝ 'ի գերապանծն յանմահից կարգ,
Ի պղնձակերտ՝ զոր նա ինքն յօրինեաց Կաղոտանեն:
Եւ եգիտ զնա 'ի քրտան թաթաւեալ շուրջ զփքոցօքն
Եւ փութկոտ, քանզի գործէր եռոտանի կահս քսան,
Զի կայցեն առ որմով հաստակառոյց ապարանիցն,
Եւ ոսկի անիւս եդեալ իւրաքանչիւր էր 'ի յատակն՝
Ինքնաշարժ գալ յերախանսն մտանել աստուածեղէնս,
Եւ անդրէն դառնալ 'ի տուն. զարմանապանչ տեսանելոյ:
Այսչափ նոցա կատարումն առեալ գործոյն, բայց չեւ էին
Գեղարուեստ ունկունքն յօդեալ, զորս հանդերձէր եւ կոփէր զօդս:
Այն ինչ նա յայսոսիկ ներհուն մտօք լինէր աշխատ,
Մերձեցաւ առ նա Թետիս արծաթաթաթիկն աստուածուհի.
Եւ ետես զնա Խարիս արկեալ սպիտակ շղարշաւետ,
Զըքնաղագեղն այն զոր կին Կաղակըրկինն ունէր իւր մեծ.
Ձեռն 'ի ձեռնըն խառնեաց, կոչեաց զանուն իւր եւ ասէ.
Զի՞ է, Թետիս ծըփինատեառ, զի այսր 'ի տունըս մեր եկիր
Մեծարոյդ եւ սիրելիդ, զի յառաջմէն ոչ յաճախես:
Ե՛կ աղէ մատիր յառաջ, զի քեզ հիւրոյթըս պաշտեսցից:
Զայս խօսեալ առաջնորդէր չքնաղագեղն աստուածուհիս:
Եւ տարեալ ապա նըստոյց զնա յաթոռ արծաթագամ
Ի գեղեցիկ՝ յօրինեալ, եւ ընդ ոտիւքն էր պատուանդան,
Եւ ձայնեալ զՀեփեստոս ճարտարապետ ասէ առ նա.
Արի այսրը, Հեփեստէ, ե՛կ, քեզ Թետիս պէտս ինչ ունի:
Պատասխանի ետ նըմա Կաղակըրկինն հըռչակաւոր.
Մեծ արդարեւ ընդ յարկաւ եւ մեծարոյ է դիցանոյշ,
Որ փրկեաց զիս 'ի ցաւոցս յորժամ անկայ բացէ 'ի բաց
Ըաղաշյա մօրըս խելօք՝ որ կամեցաւ թաքուցանել
Զիս ըղկաղս, եւ սրտակեզ կայր ինձ տանջել յայնժամ ցաւովք,
Թէ յիւր ծոցն Եւրինոմէ եւ Թետիս չէր զիս ժողովեալ,
Եւրինոմէ՝ դըստրիկն այն յորձանապատոյտ Ովկիանու:
Առ սոսա՝ ինն ամ բազում ինչ գարբնեցի զարմանագործ,
Ճարմանդ, հիւսկէն քօղէք եւ ապարոշ եւ մեհեւանդ,
Ի խորափոր անձաւի, եւ շուրջ հոսանքն Ովկիանեան
Փրփրադէզ մըռմըռեալ խաղայր գընայր անդադրմնդակ.
Եւ չգիտէր ոք յաստուածոց եւ ոչ ոք մարդ մահկանացու՝
Բայց 'ի Թետեայ ու Եւրինոմեայ 'ի կեցուցչացս որ գիտէին:
Արդ սա եկն 'ի տունըս մեր, եւ ինձ արժան է զամենայն

Թետեայ վարսագեղին փոխարինել կենաց փրկանս :
Այլ դու գիր արդ առաջի նորա հիւրոյթըս վայելուչ,
Մինչեւ ես թօթափեցից ըղձիւքս եւ զայլ ամէն գործիս :
Ասաց՝ յարեաւ 'ի սալէն ահեղ տեսիլ հրադիմական
Կաղ 'ի կաղ, եւ 'ի ներքոյ սրունքըն նըրբենք շութափէին :
Ա՛ռ ըղձիւքըն 'ի հրոյն 'ի բաց, եւ զամենայն անօթ գործոյ
Յոր առնոյն էր վաստակել՝ եդ ամփոփեաց յարկղ արծաթի :
Ըսպունգաւ զերեսս ողջոյն եւ զերկոսին ջնջեաց դաստակս
Եւ զթանձըր պարանոցն եւ զլանջըս խիտ ըղթաւամազ .
Արկաւ ձորձ, ըզգաւազանն էառ ըստուար եւ ել արտաքս
Խոշտապալով, այլ ոսկեայ հարկանէին սպաս աղախնայք
Ոսկեղէնք, շընչաւոր օրիորդաց հանգունակեալք,
Որոց 'ի լանջըսն են միտք, է եւ բարբառ եւ զօրութիւն,
Եւ 'ի դիցն անմահից ըղձեռագործսն են ուսեալ :
Արդ սոքա ժըրանայքն առ արքայի որ ծանրաքայլ
Մերձ ուր էրըն Թետիս չոգաւ նըստաւ 'ի գահ պայծառ :
Ձեռն 'ի ձեռըն կըցեաց, եւ յանուանէն ձայնեաց ասէ .
Զի՞ է, Թետիս ծըփինաւոր, զի այսր 'ի յարկըս մեր եկիր
Մեծարգոյդ եւ ցանկալիդ, զի յառաջմէն ոչ յաճախես :
Խօսեա՛ց զոր 'ի մըտիդ, զի կատարել սիրտս յօժարէ
Թէ կարեմ յաջողիմ առնել, եւ թէ իցէ ինչ հնարաւոր :
Եւ նըմա պատասխանի տայր Թետիս արտասուահոս .
Հեփեստոս, ո՞վ յորոց գամ մի յՈղիմպոս են դիցանոյշք
Այսչափ վիշտըս դըժընդակս յանձին իւրում կըրեաց երբեք,
Որչափ ինձ յամենեցունց ետ Զըրուանեանն Արամազդ ցաւս :
Յայլոց զիս ծովականաց զուգեալ նուաճեաց առըն մարդոյ,
Էակեանըն Պեղեւսի, եւ անկողնոյ առըն մարդոյ
Ակամայ բըռնադատեալ, եւ նա 'ի տան անկեալ դընի
Հաշեալ զառըն ծերութեամբ . եւ աւասիկ միւս եւս ինձ այլ :
Իբրեւ շնորհեաց ինձ զաւակ ածել 'ի լոյս եւ 'ի սընուցանել
Ըզքաջացըն վեհագոյն եւ զբարգաւաճ զերդ խաւարծի,
Զոր սնուցեալ իբրեւ ըզտունկ յագարակի վայր արգաւանդ,
ՅԻ՛լիոն մահկաձեւ նաւուք յղեցի արտմեալ 'ի մարտ,
Եւ չաւից անդրէն 'ի՛ տուն՝ 'ի Պեղեւեանն ընդ ապարանս .
Զի մինչեւ կենդանութեամբ ինքըն զարեւ տեսանիցէ,
Վըշտաբեր է եւ կարեմ ինչ ոչ երթալ օգնել նըմա :
Զոր նըմին 'ի պարգեւ ընտրեաց մանկունքն աքայեցւոց՝
Ի ձեռաց նորա եհան զաղջիկն իշխանն Ագամեմնոն :
Ընդ այն տըրտմեալ մաշէր հոգւով . այլ տրովացիք զաքայեցիս
Պաշարեալ զնաւաց խելօքն՝ ելի արտաքս ինչ ոչ տային,
Եւ ըզնա ծերք մատուցեալ ողոքէին արգիւացւոց,
Եւ բազում երեւելի երեւելի թուէին պարգեւս :

Իսկ նա յանձին ոչ կալաւ երթալ վանել ըզպատուհասն,
Այլ սակայն Պատրոկլի զգեցուցեալ զիւր ըզզէնն եւ զարդ՝
Առաքեաց ըզնա 'ի կռիւն, բաղայ բազում տըւեալ ընդ իւր:
Առ դըրամբքն Արեւմըտից ըզտիւն ողջոյն պատերազմեալք,
Առնուին այն օր զքաղաքն, ըզքաջորդին թէ զՄեմնոնեայ՝
Որ բազում գործէր նախճիրս՝ Ապոլոնի չէր ըսպանեալ
Յառաջին անդ նահատակսն, եւ Հեկտորի տըւեալ պարծանս:
Այսորիկ վասն 'ի քո ծունկս հասեալ կամ արդ, թէ լիցիս հաճ
Վաղամախճան որդեկիս շնորհել վահան եւ սաղաւարտ
Եւ ընտիր սըռնապանս ընդելուզեալըս ճարմանդօք,
Եւ զըրահ, քանզի զոր կայրն՝ հաւատարիմն ընկեր կորոյս
Լեալ նըկուն տրովլեանց, իսկ նա յերկիր անկեալ կայ լերդակեզ:
Եւ նըմա պատասխանի Կաղակըրկինըն հոյանուն.
Քա՛ջ լեր, մի՛ այդորիկ ըզմիտըս քո հարցեն հոգովք:
Երանի թէ զօրէի այնպէս ըզնա տանել պահել
Ի բօթաբեր մահուանէն 'ի ժամանել ժանտ օրհասին,
Որպէս արդ նըմա չըքնաղ մերձ կազցեն զէնք զարմանալիք
Որոց զամ մ՝ 'ի բազմաբիւր մարդկանէն ոք տեսանիցեն:
Զայս ասացեալ եւ ըզնա թողեալ անդէն՝ չոգաւ առ փուքսն,
Ի հուր զայնըս դարձուցեալ՝ հրաման 'ի գործ ետ անկանել:
Եւ քըսան փուքսք անդ 'ի բովսըն փըչէին առ հասարակ
Ըզպէսպէս դիւրավառ օդոյն շոգիսըն շընչելով,
Զի մերթ առ ձեռըն գըտցէն իւրում փութոյն, եւ մերթ այլ մի,
Որպէս ինքն ախորժիցէ Հեփեստ՝ հանել ըզգործն 'ի գլուխ:
Ըզպըղինձն անպարտելի էարկ 'ի հուրն, եւս եւ զանագ
Եւ զոսկին պատուական ընդ արծաթոյն, եւ կանգնեցոյց
Ապա զմեծ սալն 'ի կոճղն, եւ բուռն հարեալ առ 'ի ձեռին
Ըզկռանըն զօրաւոր, եւ 'ի միւսում կալաւ զաքծանն:
Եւ առեալ արար նախ ասպար մի մեծ հաստահարուստ,
Գործ ճարտար՝ կարակնակերտ, ածեալ զնովաւ ծընօտ պայծառ
Երեքկուղ, լուսաճաճանչ, եւ զբառնալեան իւր արծաթի:
Հինգ էին վահանին պատուածք, իսկ նա 'ի ըղնի անդ
Բազում ինչ հրաշակերտս իմաստութեամբ սըրտին գործէր:
Յօրինեաց անդէն 'ի նմա զերկին, զերկիր եւ ըզծով,
ԶԱրեգակն անաշխատ եւ ըզԼուսին լուսապատար,
Անդ զարփիւն ամենայն՝ որովք երկինք են պըսակեալ,
ԸզԲոյլսն եւ զԲազմաստեղս եւ զզօրութիւնն Որիոնի,
Եւ զԱրջըն՝ զոր եւ Սայլ եւս անուանեն յորջորջանօք,
Որ ցանդ անդըր շուրջ եկեալ՝ դէտ յՈրիոն ակն ունի պէշ,
Եւ միայն է անհաղորդ լոգարանացն Ովկիանու:
Անդ արար յօդաձայնից մարդկան կըրկին քաղաքըս չքնաղ.
Ի մինն էին հարսանիք եւ մեծապաս խրախուճանք կոչնոց,

Եւ զհարուածս յառաջատուութ բոցաձաձանչ վառեալ ջահիւք
Ածէին ընդ ատամն՝ հարսանեկան հրճուանք բազում.
Եւ մանկանց պարաւոր շըրջան առեալ կաքաւէին,
Եւ փողք եւ փանդռունք բարբառէին ըղձալիս խրախանց,
Եւ կանայք զարմանալին՝ կացեալ առ դրունս իւրաքանչիւր:
Ժողովուրդն 'ի հրապարակ կային խըռնեալ, յուզէր պայքար.
Այք երկու կողէին ըղտուղանաց փոխարինի
Արկեալ առն ըսպանելոյ. մին լու 'ի լու հրապարակին
Գործէր ոսկոյն հատուցեալ, միւսոյն չառեալ ինչ կայր յուրաստ.
Խընդրէին երկոքեան իրաւարար՝ առնուլ վճիռ:
Երկոցուն կողմանց 'ի նպաստ աստի անտի գոչէր ամբոխ.
Իսկ քարոզք ըզժողովուրդն հանդարտէին, եւ ծերունիք
Բազմէին յողորկ 'ի վէմս 'ի նուիրականն հոլեալ ակումբ,
Եւ զմականսն 'ի նուիրակացն օդաձայնից առեալ 'ի ձեռս՝
Եւ նոքօք յարուցեալ տայէին դատ մի 'ստ միոջէ:
Եւ ոսկւոյ կըրկին քանքար անդէն եդեալ կայր 'ի միջի՝
Տալ այնմիկ՝ որ զիրաւունս իւր 'ի նոսին ցուցցէ ճըշգրիւ:
Իսկ ըզմիւս քաղաքն՝ երկուք պաշարէին զօրաց բանակք
Սպառազէն փայլակնացեալք, որ յերկշուիլ կային խորհուրդ.
Կամ 'ի սպառ աւերել, կամ բաժանել ըզբնաւն յերկուս
Որչափ 'ի ներքս կային ինչք 'ի ցանկալի յայնմ ապարանին.
Իսկ նոցա 'մբոստացեալ՝ զինուորէին գաղտ 'ի դարան:
Ըզպարիսպըն սիրելի կանայքն եւ տղայ մանկունքն պահէր
Ամբարձեալք 'ի նմա, եւ արք եւս ընդ նոսին յեցեալք յալիս:
Նոքա գնային, եւ Աթենաս Պալլաս եւ Արէս վարէր զնոսին,
Երկոքին ոսկեղէնք եւ պաճուճեալք ոսկեհանդերձ,
Գեղանիք եւ մեծանձունք 'ի զէն 'ի զարդ իբրեւ աստուածք,
Ընդ համուրս երեւելիք. իսկ զօրականն էր գոյզն ընդհատ:
Մինչ սոքա հասանէին ուր 'ի դարան թուէր նոցա դէպ,
Առ գետովն ուր եւ ջըրարբքն էին դուարաց բոլորեցուն,
Անդ սոքա բազմէին ամրածածուկք 'ի պղինձ հրաշէկ:
Մեկուսի յամբոխէն նըստէին դէտք իւրեանց երկու,
Նըկատել՝ եթէ տեսցեն զհօտս եւ զանդեայս կորակնեղջերս.
Ելանէին նոքա առժամ, ընդ որս գային կըրկին տաւարածք
Զուարճացեալք 'ի ձայն սրընգաց, եւ դաւաճանաց ինչ անըզգաստք:
Զայն տեսեալ նոցա հեռուստ, փութանակի արշեալ զըրայթ
Անդէոց երամակս, ընտիր սպիտակ ոչխարաց ճահուկս
Օտարէին վըտարանդիս եւ զխաշնարածս հարկանէին:
Իսկ նոքա, լըւեալ ըզչոյժ դուժին շըշուկ առ անդէովք՝
Մինչ բազմեալ կային յատեան հրապարակի, անդէն եւ անդ
Ցերիվարս օդապարիկս հեծեալ ժամման լինէին շոյա,
Եւ զանեղի առեալ զափամբ գետոյն, մարտ արկեալ ճակատ,

Սատակէին ըղձիմեանս 'ի պղընձակուռ նիզակաց սայրս ։
Անդ զեգերէր Հեռ եւ Վըրդով, անդ եւ Օրհաս կորըստաբեր
Զոմն ըմբըռնեալ կենդանի նորոգ խոցով, զայլ ոմն անխոց,
Եւ զայլ ոք կենաղըրաւ՝ ձըգէր զոտիցն ընդ խաղմականն .
Եւ էին զգեստք իւրով ձորձք թաթաւեալ յարեան արանց ։
Ըրջէին զօրէն մարդկան շընչաւորաց եւ կըռուէին,
Եւ զմիմեանց մեռելոց ձըգձըգէին ըզդիականունս ։
Եդ 'ի նմա եւ գեռահերկ արտ մի փափուկ, անդ արգաւանդ,
Լայնատարր՝ երեքկնաւոր, եւ մաճակալք 'ի նմին յոգունք
Տանէին եւ բերէին շըրջեալ հարկիս այսըր եւ անդր .
Որոց 'ի գլուխ ժամանեալ արտավարին դարձադարձիւ՝
Եկեալ այր մի անդէն մատուցանէր նոցին 'ի ձեռս
Դաշխուրան անոյշ գինւոյ, եւ դառնային նոքա 'նդ ակօսս,
Տենչացեալք 'ի խոր անդոյն գալ ժամանել անդրէն յաւարս ։
Հորկանէր այն 'ի թիկանց, եւր արօրեալ, երփըն մըթին,
Թէպէտ եւ էր ոսկենիւթ, եւ հիացումն էր այս մեծ յոյժ ։
Եդ 'ի նմին եւ արտորայ մի հասկաթուռ, յորում մըշակք
Մայրասուր գերանդեօք 'ի ձեռս ըզհունձս հարկանէին ։
Եւ որայքն՝ էր որ յերկիր թօթափէին թանձր ընդ ակօսս,
Էր զոր կապօղք որայիցն առնէին զայնս ողորակապ ։
Եւ որ զորայն կապիցեն՝ երեք ըզհետ գնային նոցա .
Հասկաքաղ մանկտի յետուստ բարձեալ 'ի գիրկսըն բերէին,
Մատուցեալ անդուլ 'ի նոյաստ . 'ի մէջ նոցա պետըն լըռիկ
Ցուպ 'ի ձեռին կայր 'ի վերայ զաւգչին ուրախ բերկրապատառ ։
Կազմէին նաւիրակք կոչունս ընդ թեղօշիւ մի մեկուսի,
Եւ զենեալ եզըն մի մեծ՝ հանդերձէին, եւ անդ կանայք՝
Մըշակացըն հայս յընթրիս՝ թրէին գերմակ ալեւր առատ ։
Եդ 'ի նմին եւ այգեստան մի բարգաւաճ ողկուզալից,
Վայելուչ եւ ոսկեկուռ, եւ սեաւ 'ի խայծ անկեալ ողկոյզքն,
Եւ կանգուն կայր ձողաբարձ յարծաթի խէչըս ծայր 'ի ծայր ։
Առուամէջըս կապուտակս եւ յանագէ զնովին ած ցանկ .
Մի եւեթ էր յայն շաւիղ՝ գընալ կըթելեաց 'ի կութս այգւոյն ։
Կուսածեղ օրիորդք եւ պատանեակք քընքշաբարոյք
Ի հիւսուածոյ սակառս զանուշահամ բերին ածէին .
Ցոյց 'ի մէջ հընչուն քնարաւ մանուկ մի քաղցըր նըւագէր,
Եւ 'նդ աղէս բարեյարմարս գողորիկ ձայնիւ զուգէր գեղգեղ .
Նոքա 'նդ նոյն յերգ ու 'ի շըռինչ յոտին գոփիւն զհետ կայթէին ։
Արար եւս 'ի նմա եղջերաբերձ երընջուց ջոկս .
Եւ երինջքն յօրինեալ էին յոսկւոյ եւ յանագէ,
Եւ բընչելով 'ի գոմոցն եւանէին յարօտըս կոյս
Ըստ վըտակ մի կարկաջուն եւ ըստ շամբուտըն նըրբաստեղն ։
Անդէորդք խառն ընդ երինջսըն ոսկեղէնք երթային չորք,

Եւ ըղձիւ նոցա գամփռունք երագավազք ինն գնային։
Ամեհի առիւծք երկու յառաջընթաց կովուցն 'ի բոյլ
Զբառաչող ցուլն ունէին յահեղ պոչէն վարեալ ընդ քարշ,
Եւ դիմեալ գամփռունք 'ի նոա հասանէին եւ պատանիք։
Իսկ նոցա պատառեալ զմեծամարմին զուարակին մորթ՝
Զփորոտին եւ զարիւնն լափէին բոսորագոյն.
Հովիւքն զուր վանէին՝ յորդորելով ըղձիւք զգամփռունս,
Որ խըրտուցեալ յառիւծուցն չառնուին յանձն գոչել,
Եւ եկեալ եւ մատուցեալ մօտ հաչէին եւ խորշէին։
Արար եւս անդ լուսակիզն հօտից արօտ մի լայնալիր
Կաղակերբկենն հոյակապ՝ 'ի գեղեցիկ հովտի միում,
Գոմս եզանց, մակաղատեղս եւ հանգըրուանս յարկածածուկ։
Դըրուագեաց անդ եւ ըզպար Կաղակերբկենըն հոյանուն,
Այնպէս նըման զոր երբեմն 'ի մեծանիստն անդ 'ի Կնոսս
Դեդալոսն յօրինեաց գեղահիւսակն Արիադնեայ։
Պատանիք անդանօր եւ օրիորդք չքնաղագեղք
Ըղձեացըն զդաստակէ կալեալ միմեանց առնուէին պար.
Աղջկունք նուրբ բարակաման զգեցեալ բեհեզըս կտաւս,
Մանկունքն բանձկան քղամիդս՝ լուսանըկար գոյն ինչ 'ի ձէթ.
Եւ նոցա՝ բոլորեալ էին պսակք գեղեցկահիւսք,
Իսկ սոցա՝ դաշոյնք ոսկիք ըղկամարացն արծաթէից։
Մերթ ոտիւք հանճարեղօք մանեկաձեւ հետ գային շուրջ,
Թեթեւակի յորժ խեցու բրուտ մի զի կալեալ 'ի ձեռս ըզդուրգն
Եւ նստեալ զփորձ առնուցու՝ թէ 'ի շըրջըմն ընթանայցէ.
Եւ մերթ անդրէն կարգ ընդ կարգ հարկանէին կայթս ընդ միմեանս։
Յոգնահոյլք ըղձանչալի պարուն կուտեալ կային զուարթք
Հեշտացեալք, եւ 'ի խրախի նոցին զուսան աստուածեղէն
Երգէր քնարաւ, եւ երկուք ոք յափախթերս անդ խաղալիք՝
Ի սկըսանել նորուն յերգ՝ 'ի մէջ նոցա ճախր առնուէին։
Եդ 'ի նմա եւ ըզգետոյն Ովկիանու մեծ զօրութիւն
Առ վերջին պարունակաւ ճարտարագործ վահանին այն։
Իսկ յորժամ բովանդակեաց զասպարն ըզմեծ եւ հաստատուն,
Յօրինեաց եւ զըրահս քան զճառագայթս հըրոյ պայծառ.
Յօրինեաց եւ սաղաւարտ պինդ յերանունս նորին պատշաճ,
Գեղաշուք՝ բազմաքանդակ, եւ զարդմանակ սորկ ոսկեփունջ.
Յօրինեաց եւ սըռնապանս 'ի կռանակուռ անագ թիթղանց։
Վըճարեալ զկազմածս ամենայն Կաղակերբկենն հըռչակաւորն,
Զամենայն բարձեալ առաւ մօրն Աքիլլեայ եդ առաջի։
Նա որպէս՝ բազէ չահէն՝ 'ի ձիւնեղէն Ողիմպոսէ,
Վառաւածս տարփիագեղս առբերելով 'ի Հեփեստոսեայ։

610

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ԻՆՆՈՒՏԱՍՆԵՐՈՐԴ

### ՀՐԱԺԵՇՏ ՔԻՆՈՒՆ

Առաւօտն 'ի յորձանաց Ովկիանու քրքմազգեցիկ
Ելանէր գայր լոյս բերել մահկանացուաց եւ անմահից ·
Նա զպարգեւսն յաստուածոյն ածեալ եհաս 'ի նաւատորմն ,
Եւ եգիտ ըզՊատրոկլիւ փարեալ զորդին իւր սիրելի՝
Զի գոյժ առեալ կականէր , լային զնովաւ ընկերք բազում ։
Անց եկաց 'ի մէջ նոցին՝ աստուածուհեացն մեծարգոյն ,
Ձեռն 'ի ձեռն իւր խառնեաց , եւ բարբառեալ ասէ առ նա ·
Որդեակ իմ , եկ թողցուք զի կայցէ դա , թէպէտ ցաւանք ,
Քանզի զամ մի աստուածոցն խորհրդով եղեւ նկուն ·
Իսկ դու ընկալ զաւ կազմածս 'ի Հեփեստեայ պանծալիփառս ,
Հրաշազարդս՝ որոց համանման չեւ է ուրուք յուսս իւր բարձեալ ։
Զայս խօսեալ աստուածուհւոյն , եւ առաջի անդր Աքիլլեայ
Եդ ըզզէնսն , շաչեցին բոլոր չքնաղ զարմանութիւնք ։
ԶՄիրմիդոնսն ամենայն կալաւ դողումն եւ չիշխեաց ոք
Կառուցանել ակն 'ի նոսին , այլ 'ի փախուստ դարձան ահիւ ։
Իսկ յԱքիլլեւս ընդ տեսիլն՝ եւս առաւել զարթեան զայրոյթք ,
Աչքն ահեղ վառեցան՝ զարտեւանանցն ներքեւ փայլակն ,
Եւ զաստուածոյն չքնաղ պարգեւսն 'ի ձեռսն առեալ զուարճանայր ։
Հեշտացեալ 'ի զննին հրաշակերտութեան 'ի միտսն իւր ,
Առ մայր իւր եւ ընդ եւ բարբառեցաւ ըզթռչուն բանս ·
Մայր իմ , զէնս աստուած շնորհեաց , բուռ անմահից գործ արժանի ,
Զոր ոչ այր մահկանացու կարող գտցի առնել 'ի գլուխ ·
Եւ արդ ես վառեցայց , այլ մեծապէս յոյժ երկնչիմ ,
Մի՛ գուցէ սպրդեալ ճանճից ընդ պղնձահար խոցուած վիրաց՝

Ծնանիցին որդունս 'ի ներքս՝ տապականել ինձ մինչ ցայնժամ
Զարի որդին Մենիտեայ զանկեալն անշունչ դի անկենդան, —
Զի նորա հասաւ արեան, — եւ նեխեսցի մարմինն ողջոյն ։
Պատասխանի ետ Թետիս արծաթաթաթիկըն դիցանոյշ.
Որդեակ, մի այդպէս տագնապեսցես ըղձիւս քո .
Ես խնամ տարից մերժել 'ի նմանէ զզուանգըն վայրենի՝
Ըզճանճեանն՝ որ զեւտրշեալս յԱրեայ զմարդիկըն ճարակեն .
Զի թէպէտ եւ զտարին 'ի բուն համակ անկեալ կայցէ,
Անվրթար մնասցէ մարմինն, եւ բարեձոյն եւս մանաւանդ ։
Սակայն քո կոչեալ յատեան ըզդիւցազունսն աքայեցիս,
Եւ յուրաստ լեալ 'ի քինուցդ առ Ագամեմնոն հովուին ազանց,
Վառեսջիր ընդ փոյթ 'ի մարտ եւ ըզգեցիր ըզզօրութիւն ։
Զայս խօսեալ, եւ ազդեաց ածխոյժս 'ի նա խրախուսական,
Եւ Պատրոկլի՝ զամբրուշունս եւ ըզկարմիր գինի օշարակ
Ի ռընգունսըն կաթեցոյց առ անարատ պահել մարմնոյն ։
Իսկ քաջազն Աքիլլեւս յարեաւ գընաց զեզերբ ծովուն,
Եւ ահեղ գոչմամբ զարթոյց զաքայեցիսըն դիւցազունս ։
Որ առօրն էին կանխաւ կալ 'ի նաւացն ասպարիսին,
Եւ որ քաշեաց նաւապետըն, եւ ղեկավարք նոցուն ղեկեաց,
Եւ 'ի նաւս համբարապանք էին՝ ուռճկին մատակարարք,
Յայնժամ եւ այնք փութային յատեան, զի Աքիլլեւս երեւեցաւ
Որ յերկարն էր դադարեալ 'ի դըժընդակ գուպարածէն ։
Երթային կաղ 'ի կաղ եւ պաշտօնեայք Արեայ երկուք,
Քաջակորովըն Տիդեան եւ Ոդիսեւսն աստուածային
Յեցեալք 'ի նիզակ, զի դժուարոյր վէրան ունէին դեռ .
Եւ փնացեալ բազմեցան յառաջագահ ատենին անդ ։
Հուսկ յետին ժամանեաց արանց արքայն Ագամեմնոն
Վիրաւոր, քանզի զինքն 'ի կարեւոր պատերազմի
Խոցեաց Անտենորեան Կոոնն 'ի մկունդ պղընձակուռ ։
Իսկ յորժամ ժողով եղեւ աքայեցիք ամբոխահոյլ,
Անդ քաջոտն Աքիլլեւս 'ի մէջ անցեալ բարբառեցաւ .
Ատրիդէս, երկոցունցս ապաքէն լաւ եւս այս լինէր,
Քեզ եւ ինձ, յորժամ մեք առ դառնութեան սրտից մերոց
Հոգեմաշ հեռիւ քինու սրտամըտեցաք յաղագս աղջկան,
Զոր արժան էր Արտեմեայ զրաւել 'ի նաւս աստ նետահար՝
Յաւուրն՝ յորում առի ես աւարեալ ըզԼիռնեսոս .
Զի չլինէր այսչափ աքեանց ատամնացել զերկիր անհուն
Ի ձեռաց թշնամեաց՝ 'ի բարկութեանս իմում խռովեալ ։
Հեկտորի եւ տրովացւոց այն շահ օգուտ, բայց զաքայեանս
Ընդ երկար յիշել կարծեմ զիմ եւ ըզքո գըժտութեան հետ ։
Այլ զանցեալն եւ ըզգնացեալ 'ի բաց թողցուք, թէ եւ ցաւածք,
Առ հարկի տագնապաւ զսիրտս 'ի լանջըս մեր նուաճեալ ։

Թէ ատուգիւ սահմանակցաց բազմերգեան իշխեսցէ այր,
Որ յաւուրս աստ յայսմիկ անկանեսցի զօրիւք կընոջ.
Ցարանց անտի՝ որ միանգամ 'ի քո զարմից են արենէ:
Զայս ասաց, իսկ Արամազդ ոչ 'ի վերայ եկաց դաւոյն,
Այլ երդուաւ երդումըն մեծ, եւ ապա յոյժ ըստապըրջացաւ:
Իսկ Հերա սլացեալ մեկնեալ 'ի գագաթանց Ողիմպոսի՝
Էջ ըշտապ եհաս յԱրգոս աքայական՝ ուր ճանաչէր
Ըզքաջազգին ամուսին Սթենելոսի Պերսէոսեան,
Ըզյըղին սիրուն մանկամբ, եւ եօթն ամիսն 'ի վերայ կայր.
Զոր ծնեալ ընդ առաջ 'ի լոյս հան զանկատարութըն տարաժամ,
ԶԱլկմենեայ ծընունդն արգել եւ խափանեաց զԻլիթիայս:
Եւ զըրոյց առ Զըրուանեանն Արամազդ ինքն երթեալ ասէ.
Արամազդ, փայլակնացայտ հայր, բան մի յուշ առնեմ մըտացդ,
Ահա ծընաւ այրըն քաջ՝ որ տիրեսցէ արգիւացւոց,
Եւրիսթեւս, Պերսէոսեան Սթենելոսի զաւակն՝ ազգ քո,
Որում չէ ինչ անպատեհ արգիւացւոց թագաւորել:
Զայս ասաց, եւ սաստկութեան հարան 'ի խորըս սըրտին ցաւք.
Եւ անդէն բուռն 'ի յԵղեան ըզգեղահերս հարեալ գըլխոյն,
Ցասուցեալ 'ի միտըս իւր, երդուաւ երդումն անդըրդուելի,
ՅՈղիմպոս եւ յերկինն աստեղազարդ մի՛ եւս երբեք
Դարձ առնել Եղերան՝ որ յամենայն ոք մեղանչէ:
Զայս ասաց, եւ ձեռամբն յաստղածածանչ երկնից 'ի բաց
Պըտուտկեալ ընկէց, եւ նա յարարս անդէն եհաս մարդկան:
Հեծէր ընդ այսմն հանապազ՝ տեսեալ զորդին իւր սիրելի
Տաժանեալ յերկս անարժան յԵւրիսթեւսեան մըրցամարտից:
Նոյնպէս անգ յայնժամ եւ իմ մինչ մեծն Հեկտոր սաղաւարտաձօձ
Առ խելըք նաւաստորմին զարգիւացիս կորուսանէր,
Զանկանէր 'ի մըտացս Եղեան յոր գամ մի վըսասեցայ:
Իսկ զի հաս ինձ վըղեան, եւ զմիտս յինէն բարձ Արամազդ,
Կամիմ անդրէն հաճել ըզքեզ եւ ընծայել անբաւ փըրկանս.
Այլ արի՛ արդ 'ի գուպար եւ յորդորեա զայլ եւս ըզազգն:
Եւ զպարգեւսըդ բովանդակ տաց ես աստէն զոր միանգամ
Ոդիսեւս գիւցազն եկեալ 'ի վրանդ երէկ քեզ խոստացաւ:
Թէ կամիս, անսա դու ինձ, թէպէտ ձեռակալ յարիսեան խաղմ,
Եւ զընծայսըդ քեզ ծառայքս յիմմէ անտի հանեալ նաւէն
Բերցեն այսր, եւ տեսցես զի քեզ շնորհեմ սըրտահաճոյս:
Երագոտն Աքիլլէս պատասխանի տըւեալ ասէ.
Ատրիդէս մեծափառ, արանց արքայդ Ագամեմնոն,
Պարգեւել ըզմըրցանակդ եթէ կամիս ըստ արժանի,
Կամ արգելուլ, առ քեզ է. իսկ մեզ այժմէն յուշ լիցի մարտ
Սոյն հետայն, զի ոչ 'ի դէպ կալ աստ խօսիւք ժամավաճառ,
Կամ ըմնաւ իսկ ըստուժել, զի գեռ անգործ կայ մեծ վաստակ.

Այրընտիր լի՛նել յաղթիւ պատանեկաց բոլոր աշխարհս
Ի բերել ըղպատարագս յիմէն նուէս, զոր խոստացաք
Տալ երէկ Աքիլլեայ, եւ ըղկանայն առնել ածցես:
Եւ փութով Տա՛լթիբիոս՝ ընդ աքայեանցըս մեծ բանակ՝
Պատրաստեսցէ կինճ 'ի զոհ Արամազդայ եւԱրեգական:
Իսկ քաջնան Աքիլլէւս դարձոյց նմա պատասխանի.
Ատրիդէս վեհափառ, արանց արքայդ Ագամեմնոն,
Ա՛յլ երբեք տալեւ վայել էցէ ձեզ յայդ հոգալ,
Յորժամ թէ դու՛լ եւ դադար ինչ լինիցի պատերազմին,
Եւ ոչ այսչափ աժխոյժք յիմում սրտիս հարցին յեռանդն.
Իսկ զարդս տապաստ անկեալ կան վիրաւոր զորըս զրաւեաց
Հեկտորըն Պրիամեան՝ շնորհեալ նմա զփառսն Արամազդ:
Դուք 'ի ճաշ յորդորէք, իսկ ես այժմէն առայի հրաման
Նօթիս եւ անճաշակս աքայեցւոց որդւոց 'ի կռիւ.
Եւ ապա յետ այնորիկ, յարեգականըն մըտանել,
Մեծահաց կազմել ընթրիս, զանարգանացըս վրէժ լուծեալ:
Իսկ յառաջ փարգատ քեւ թէ կերակուր կամ ըմպելի
Ընդ որկորս անցանիցէ յետ ընդակցիս մեռանելոյ,
Որ անկեալ կայ 'ի վրանիս պատառոտեալ սուր պղընձով,
Դէմքն 'ի դուրսն կոյս շըրջեալ, եւ ընտանիք կոծապարըք:
Յայն աղագս՝ յիմում սրտիս ոչ այդոքիկ ինչ լինին փոյթ,
Այլ նախճիրք եւ արիւնք, եւ զառանչեն մահընչիւնք արանց:
Առ նա պատասխանի ետ Ոդիսեւս լիահանճար.
Ո՛վ Աքիլլէւս, Պէլեան ճետ, արիադոյնդ յաքայեցիս,
Քաջագոյն ես քան զիս եւ ոչ սակաւ կորովագունեդ,
Իսկ ես գէթ խորհրդովք քան զքեզ կարի յառաջադէմ,
Զի ծընեալ իսկ եմ յառաջ, եւ խելամուտ եղեալ յոգունց.
Վասն որոյ՝ քո սիրտ բանիցս իմոց լիցի երկայնամիտ:
Մարդկան փութանակի գայ հասանէ մարտի յագուրդ,
Յորում ոճ թանձրախուռն հարեալ հոսեաց պղընձն յերկիր,
Սակայն որոյն նիազ յոյժ, ուր Արամազդ հակէ զնըժարսն,
Որ նա ինքն է մարդկան պատերազմացըն համբարակ:
Այլ չէ պարտ աքայեցւոց որովայնիւ սըգալ զմեռեալ,
Զի շատք յոյժ թօթափին հանապազօր եւ յոգնահոյլք.
Իսկ արդ երբ էցէ դու՛լ առնուլ երբեք 'ի հեծութեանց:
Այլ արժան է հողոյ՝ զոր միանգամ մեռանին՝ տալ
Սըրտապնդեալ 'ի հոգի, յետ մի եւեթ օր ողբալոյ.
Իսկ որ յահեղ ճակատէն ճողոպրեցին ողջանդամք,
Յիշել նոցա զըմպելի եւ զկերակուր, զի առաւել
Եւս ընդ արս ոսոխիմս անկասելի զռասցուք ցանգ,
Զանվըկանդն 'ի մարմնի զգեցեալք պըղինձ. եւ 'ի զօրուէս
Մի՛ այլում ինչ ոք խրատու դէտակն եդեալ՝ յետոյս կայցէ.

Զի եւ այլ ինչ յորդորանօքն լինիցի չարոյ նորին՝
Որ առ նաւս արգելեալ մնասցէ, այլ խուռն հարգան առեալ
Ի ձիախրոխտ արշաւեցիցսն շարժեսցուք ընդդէմն Արէս:
Ասաց, եւ զՆեստորի վեհին ընտրեաց զորդիսն յընկեր,
Եւ զՓիլեանն Մեգէս եւ զԹոաս եւ զՄերիոն,
Ընդ նոսին զՄելանիպպոս եւ զԿրէոնեան Լիկոմեդէս.
Եւ եկեալ գնացին 'ի վրան Ագամեմնոն Ատրիդեսի:
Եւ անդէն զոյգ ընդ բանին լինէր առաջ գործոյն վճար.
Բերէին եօթն 'ի վրանէն եռոտանիս՝ զխոստացեալս,
Եւ քսան սանս հրափայլ եւ երիվարս երկոտասան.
Եւ զկանանցն հանէին փութով հմուտս ընտիր ձեռագործոց,
Եւթն եօթնեակ, եւ ութերորդ զգեղեցկայտն Բրիսանոյշ,
Եւ ոսկւոյ՝ տասն ընդ բռնաւ կշռեալ քանքար Ոդիսեւս
Յառաջէր, զայր աքայեանց միւս մանկանցն զհետ պարգեւաբեր:
Եդին 'ի մէջ ատենին. յարեաւ եւս Ագամեմնոն,
Եւ ընդ ձայնին բարբառոյ Տալթիբիոսն աստուածահաւասար՝
Կալեալ ձեռաքն զվարազն՝ երթեալ կայր մերձ հովուին ազանց:
Քուռն հարեալ Ատրիդեայ 'ի սուր դանակին եւ մերկացեալ,
Որ առ մեծի պատենիւք կախեալ կայր միշտ իւր սուսերին,
Ի ստեւոյ կընճռին նուիրեալ երախայրիս, ամբարձեալ ձեռս,
Աղօթէր առ Արամազդ. արգիւեցիք անդ համօրէն
Նըստեալ լուռ ըստ օրինի՝ Թագաւորին դնէին միտ:
Եւ յաղօթել իւր ասէ, զէտակն 'ի վեր յերկինս անդաւ.
Արդ նախ մեծն եւ վեհն 'ի դիս լիցի վըկայ ինձ Արամազդ,
Եւ Երկիր եւ Արեգակն, եւ վրէժխնդիրքըն Գառուհեաք
Մարդկան 'ի խոր սանդարամետս՝ որ սուտերդումն ոք լինիցի,
Զի յաղջիկըն Բրիսէիս չիք իմ երբեք լեալ ձեռնամուխ,
Ոչ 'ի պատճառս անկողնոց վարեալ բռնաւ, կամ այլ իմիք,
Այլ 'ի վրանս իմ անմերձ եկաց մնաց եւ անշաղախ:
Իսկ թէ յայսմ իցէ ինչ սուտ, ցաւս յիմ գըլուխ կուտեսցեն դիք
Բազում յոյժ, որպէս եւ տան մեղուցելոյն երդմամբ 'ի նոյնս:
Ասաց, եւ զվարազըն փողոտեաց ժանտ պըղընձովն.
Եւ ըզնա Տալթիբիոս սպիտակ ծովուն 'ի մեծ անդունդս
Ընկէց թաւալ տուեալ զգլոր՝ ձկանց 'ի կեր. իսկ Աքիլլեւս
Յարուցեալ 'ի մարտասէր արգիւեցիս բարբառեցաւ.
Արամազդ հայր, մեծամեծ դու 'ի մարդիկ տաս մոլորանս.
Զի բնաւ ոչ զոգիս 'ի լանջս իմ Ատրիդէս գրգռէր երբեք,
Եւ ոչ ինձ 'ի հեծձուկս՝ անսասանելի տանէր զաղջիկն,
Այլ Արամազդ աքայեանց յոգունց անշուշտ կամեցաւ մահ:
Բայց երթայք այժմ 'ի ճաշ, զի խմբեսցուք զԱրեայ դուպար:
Զայս ասաց եւ արձակեաց ըզհրապարակն հապճեպելով.
Եւ նոքա ցրուեալ իւրաքանչիւր 'ի նաւս իւրեանց:

Իսկ զընծայս՝ Միրմիդոնքն մեծամեծս կալեալ խնամ
Եւ բարձեալ տարան 'ի նաւ աստուածայնոյն Աքիլլէսի.
Եւ եդեալ զայնս 'ի խորանին եւ զերամակեալ ընկալեալսն,
Ըզձիսն ածին յերամակսն կայտառագոյնք քաջազօրք:
Իսկ ապա Բրիսէիս, ոսկեղէնիկ Աստղկան նման,
ԸզՊատրոկլ՝ իբրեւ ետես խոց վիրաւոր 'ի սուր պղընձեղ,
Հեղեալ ըզնովաւ, եւ ճիչ բարձեալ ցրտէր ձեռօքն
Ըզլանջս իւր եւ զփափուկ ուլն եւ ըզդէմսն գեղեցիկ.
Եւ ասէ կական ողբովք աստուածուհեաց համանըման կին.
Պատրոկլէ, ինձ հեզիկ 'ի սիրտ ողորմ յոյժ սիրելի,
Կենդանի թողի զքեզ ես՝ 'ի խորանէ աստի մեկնելն,
Իսկ այժմիկ դարձ առաքեալ այսրէն գտանեմ մեռեալ ըզքեզ,
Պետդ արանց. յիս ոչ՝ անդուլ վիշտք 'ի վշտաց տանուն զկնեալս:
Քանզի զայրըն զոր ետուն ինձ հայր եւ մայր իմ մեծարոյ՝
Տեսի հանդէպ քաղաքին վիրաւորեալ սուր պղընձով,
Եւ զեղբարսն իմ զերեսեան ըզհամամայրս եւ զմեծարելիս,
Եւ նոքա բոլորեքեան ըզկործանման կրեցին օր:
Սակայն ինձ ոչ տայիր լալ՝ մինչ զայրս ըսպան Աքիլլէւս քաջ,
Եւ զքաղաքըն աստուածեղէն ըզՄինեսեայ դիւցազանցին.
Այլ հաստել զիս ասէիր աստուածայնոյն Աքիլլէսի
Ամուսին օրինաւոր, եւ 'ի Փթիա նաւուք ածեալ՝
Ջհարսանեացն առնել խնճոյս ընդ երախայս Միրմիդոնաց:
Արդ ըզքեզ հեզահամբոյրդ 'ի մահ մեռեալ՝ ողբամ անհատ:
Զայս ասաց արտասուալից, եւ կանայք կոց հառաչէին
Բարբառով ըզՊատրոկլէ, սակայն անձինիւր զիւր աղէտս:
Իսկ զԱքիլլէս ժողովեալ աքայեցւոցն երիցագոյնք
Պաղատէին ուտել ճաշ, եւ նա մերժէր հեծեծելով.
Եթէ ինձ 'ի սիրելի ոք ընկերաց ունկըն դնէ,
Մի ստիպէք զիս, աղաչեմ, 'ի կերակուր եւ յըմպելի
Նախ խմուել սըրտի զմայլել. զի ցաւ սաստիկ հարեալ է յիս.
Ժուժկալեալ մինչեւ 'ի մուտ կացից ցըմուտս արեգական:
Ասացեալ զայս յուղարկեաց զայլ Թագաւորսն զամենայն,
Երկոքեան մնացին Ատրիդք եւ Ոդիսեւս աստուածային,
Եւ Նեստոր եւ Իդոմէն եւ ալեւորն հեծեալ Փիւնիքս,
Փափագէին անդուլութեամբ ըզտրտմամաղձեալն, այլ ոչ իւիք
Սփոփէր 'ի սիրտ՝ մինչ չեւ մըտեալ ընդ արիւնոտ մարտին բերան:
Եւ ըստէպ յիշատակաւն 'ի խոր յոգւոց հանեալ ասէ.
Եւ դու երբեմն առաջէն, քան զայլս ընկերս սիրեցեալդ հէք,
Անձամբ քով 'ի վրանիս ըզճաշն հանէր ինձ մատուցեր
Անդանդաղ եւ ժիրաժիր, յաքայեցւոցն 'ի ճեպս 'ի փոյթս
Առ ձիախրոխտ Տրովացիս զարտասուալին մըղել Արէս.
Իսկ այժմիկ վիրաւոր անկեալ դընիս դու, եւ իմ սիրտ

Անսուաղ 'ի կերակրոց եւ յըմպելեաց, թէ եւ առ ձեան,
Առ անձուկ քո, զի եւ ոչ աղխատագոյն ինչ գոյր կերել.
Նա եւ ոչ իսկ եթէ զհօր իմոյ մահուան լսէի գոյժ, —
Որ թերեւս այժմ 'ի Փթիա խղճուցանէ ջերմ արտասուս
Առ կարօտ այսպիսում որդւոյ, իսկ ես յօտար աշխի
Ատելոյն վասն Հեղինեայ պատերազմեալ կամ ընդ տրովեանս, —
Կամ զորդոյ ինձ 'ի Սկիւռոս սնանի որդի սիրաբողբոջ,
Եթէ կեայ տակաւին Նէոպտողէմս աստուածագեղ:
Զի սիրտս ակն ունէր յառաջն ինձ միայնում մեռանելոյ
Ի ձիաւէտն Արգոսէ հեռի աստէն 'ի Տրովիա,
Եւ 'ի Փթիա դառնալ քեզ, տանել զորդեակս 'ի Սկիւռոսէ
Յերագաթեւ նաւ սեւաթոյր, եւ ցուցանել նմա բոլոր
Զընտացուածս եւ զաղախնայս եւ զտունն իմ մեծ բարձրաձեղուն:
Զի զարդիս ըզՊելէւս կարծեմ մեռեալ անտարակոյս,
Կամ թէ գոյզն եւ տակայծ կենդանութեամբ հիւծեալ 'ի ցաւս
Յանհամբոյր ծերութենէ, եւ յամենայն ժամ ըսպասել
Բօթաբեր իմում գուժին՝ թէ երբ հասցէ մահուս գուժկան:
Զայս ասաց արտասուելով, հեծէր ընդ իւր աւագորեարն
Յուշ ածեալ իւրաքանչիւր զոր ինչ 'ի տան էին թողեալ:
Հայեցեալ յողբականսն Զրուանեանն եկն 'ի գութ,
Եւ անդէն առ Աթենաս բարբառեցաւ զթեւաւոր բանս.
Դուստր իմ, անտես մինչ 'ի սպառ արարեր զայրն ազնուական:
Չիցէ՞ բնաւ ինչ խընամ 'ի քում սրբտիդ ընդ Աքիլլէս.
Աւանիկ առաջի բարձրածայրից նըստեալ նաւուցն՝
Ողբս առեալ աշխարհէ զընկերակից իւր սիրելին.
Այլք 'ի ճաշ ընթանան, իսկ նա նօթի եւ անսուաղ:
Ե՛րթ աղէ, եւ զանուշակ գիցն ըմպելի եւ զկերս անմահ
Կաթեցո 'ի սիրտ նորա, զի մի՛ գուցէ թէ սովեսցի:
Զայս ասացեալ գըրգեցոյց զինքնայօրդորն իսկ զԱթենաս,
Որ հանգոյն հողաթեւեան ագեղաձայնեղն բըրդատոյ
Ոստուցեալ էջ յերկնից արփիաթեւեալ յօդըս վերին:
Նոյն ժամայն ընդ ճամբարն առնուէին զէն աքայեցիք.
Իսկ նա 'ի սիրտ Աքիլլի զանոյշ զանմահ գիցն ումպ եւ ջամբ
Ծորեցոյց՝ զի մի՛ սով դըժոխաձայնն հասցէ 'ի ծունկսն,
Եւ ինքն 'ի յարկս հաստատաշէն՝ մեծազօրի հօրն եւ գնաց:
Իսկ նոքա յերագ նաւուց բացէ 'ի բաց տային հրոսակ,
Եւ որպէս ձեան թանձրախուռն յԱրամազդայ թըռչին տարափք
Ցըրտաշունչք՝ յասպատակել արփիածինն Հիւսիսակի,
Նոյն յայնժամ խիտ ընդ խիտ 'ի նաւկներոյն հոսէին կուռ
Գըլխանոցք լուսաճաճանչ փայլատակեալք, կըմբեայ վահանք,
Եւ զըրահք կարծրածածկոյթ կարաւանդօք, եւ հացի տէգք:
Նըշոյլքն յերկինըս գնային, երկիր բոլոր ծիծաղէր շուրջ

Ցերեկայց շողից պղընձոյն, զուայր մարդկանն ամենատարած թեւով,
Եւ 'ի միջի նոցուն վառէր աստուածային Աքիլլէս:
Կրճտանէին ատամունքն, աչք իւր իբրեւ հրոյ ճառագայթք
Ջահէին կայծակնացայտ, 'ի սիրտ իւր ցաւ դըժոխըմբեր,
Մըռմըռեալ ընդ 'ի տրովեանս եւ զաստուածոյն զընծայս պարգեւս,
Զոր աշխատ լեալ Հեփեստոսի եւ ճարտարեալ էր առ իւր պէտս:
Եւ նախ ըզսըրունապանսն արկեալ ագոյց շուրջ ըզբարձիւքն՝
Ըզչըքնաղս եւ զարծաթի ճարմանդօք ընդելուզեալս.
Եւ ապա զպատենաղէն լանջապանակն ըզկըրծիւքն առ:
Եւ ած զարծաթազամ պըղընձի սուսերն ուսընդանութ,
Եւ եբարձ ապա զասպարըն մեծայաղթ եւ հաստատաբեւտ,
Ոյր բացարձակ զերդ լուսնի հատանէին փայլատակունք:
Իբր 'ի ծովէ երեւեալ նաւավիեղից բացոյ ճաճանչ
Հըրոյ բորբոքելոյ՝ տոշորելոյ 'նդ լերանց բարձունս
Ցասանձէն ինչ հանդըրուան, բայց ըզնոսա բռնի մըրըրիկք
Ընդ անդունդսըն ձըկնաւէտ 'ի սիրելեաց վարեն 'ի տար,
Նոյն յԱքիլլեայ վահանէն 'ի գեղեցիկ եւ 'ի պաճոյճ
Փայլակն յերկինս ընթանայր: Ըզսաղաւարտն ապա բարձեալ
Եդ 'ի գլուխ իւր զամրակուռն, եւ զըլխանոցըն ձիաբաշ
Աստղանիշ ցոլս արձակէր, փողփողէին շուրջ գէսքն ոսկիք
Զորս արկեալ էր Հեփեստոսի խուռն համատարած ըզգագաթամբն:
Եւ փորձէր զանձն Աքիլլէս զինուցաղնայքն 'ի վառուածս անդ
Թէ 'ի դէպ գայցեն նըմին, տարբերիցին կայտառ անդամքն.
Եւ էին նըմին 'ի թեւս, ամբառնային զհովիւն աղանց:
Եւ եհան ըզնիզակն հայրենատուր 'ի գարանէն,
Ծանրը՝ մեծ՝ հաստահաստուտ, զոր ոչ ոք այլ յաքայեցւոց
Կարէր շարժել, այլ միայն հըմուտ 'ի ճօճն էր Աքիլլէս,
ԸզՊէլեանըն հացի՝ զոր սիրելւոյ հօրն ետ Քիրոն
Ի ծայրից Պելիոնեն 'ի դիւցազանցըն սատակումն:
Զերիվարսն Աւտոմեդոն եւ Ալկիմոս հարեալ ըսպառ
Լծէին, եւ սանձոնք գեղապարոյրք պատէին շուրջ.
Եւ հարեալ ճիմս 'ի կըզակըն արըրկեցին զդանդանաւանդսն
Ցետս 'ի կառսըն արընգակապըմս, եւ ըզմըտրակն առեալ 'ի ձեռն
Ըզփայլունն եւ զմայելուշ՝ ոստեաւ 'ի կառսն Աւտոմեդոն.
Եւ յետուստ՝ ըսպառազէն 'ի պատերազմ՝ ել Աքիլլէս
Փայլակերպ 'ի զէն 'ի զարդ իբր արեգակն արփիաճեմ:
Եւ հրամանն ահեղագոչ տայր հայրենի երիվարացն.
Աշխէտ դու եւ Պիտակ, հըռչակաւորուն ձետք Ճեպառնեայ,
Ա՛յլ իմն այդ խորհեցարուք զերծուցանել ըզվերելակդ
Այարէն 'ի դունդ դանայեանց, իբրեւ յազիմք 'ի կըռուելոյ,
Եւ մի՛ զորէն Պատրոկլի թողջիք անդէն զի թաւալեալ:
Ի ներքուստ ըծոյն ասէ առ 'նա ժըրոտն Աշխէտըն ձի, —

Եւ անդէն խոնարհեցոյց ըզգլուխն, եւ բաշք իւր աղբախուռք
Ի վերուստ լծոյն հոսեալք շուրջ ըզսամեօքն հասին յերկիր,
Եւ զնա խօսուն եդ Հերա լուսածըղին աստուածուհին. —
Այժմ ըզքեզ գէթ ապրեցուսցուք, քաջդ Աքիլլեւս,
Բայց առ կամն կայ կորըստեան քեզ օրն, եւ մեք չեմք պատճառ,
Այլ աստուած մեծն եւ Օրհաս ճակատագրին ուժեղագոյն։
Զի եւ ոչ եթէ մերով ինչ յուլութեամբ եւ պղերգութեամբ
Տրովացիքն Պատրոկլի ուսոց զերծին զզարդապանակս,
Այլ արքն յաստուածոց՝ զոր ծնաւ Լատովն վարսագեղ՝
Նա սպան անդ 'ի նախահատակսն, եւ Հեկտորի պարգեւեաց փառս։
Իսկ մեք՝ եւ Զեփիւռի շընչոյն 'ի գնդս ընթանայցեմք,
Զոր ասեն թեթեւագոյն. սակայն ահա եւ քեզ ճակատն
Հրամանք են՝ յաստուածոյ եւ 'ի յառնէ պարտիլ ուժգնին։
Ի խօսել նորուն զայս՝ կալին ըզձայն իւր Պատուհասքն,
Իսկ երագոտն Աքիլլեւս աւէ առ նա ցասմամբ մեծաւ.
Է՛ Քսանթէ, ընդէ՞ գուշակես ինձ մահ, եւ չէ ինչ քեզ արժան.
Քաջ գիտեմ եւ ես ինձէն, հրամանք են ինձ մեռանել աստ
Ի հօրէս եւ 'ի մօրէս բացեալ, համայն եւ այնպէս իսկ
Ոչ կացից, մինչեւ տրովէանք պատերազմաւ ըզմայլեսցին։
Ասաց, վարէր գոչելով զառաջամարտական ձիսն յառաջեան։

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Արամազդայ յատեան ժողովեալ զդիս՝ հրաման տայ երթալ պատերազմակից լինել մարտին՝ յոր կողմ եւ միտք իւրաքանչիւր վարեսցեն ։ Հերա, Պալլաս, Հերմէս, Պոսիդոն, Հեփեստոս իջանեն 'ի թիկունս Յունաց, իսկ 'ի կողմ տրովացւոց կան Արէս, Ապոլոն, Լատոն, Արտեմիս, Աստղիկ եւ Սկամանդր ։ Էնիաս նախ 'ի կռիւ կացեալ ընդ Աքիլլեայ, միգապատեալ զերծանի 'ի ձեռն Պոսիդոնի ։ Աքիլլէս 'ի խառն թշնամեաց կոտորելոց սպանանէ եւ զՊոլիդոր որդին Պրիամու. զՀեկտոր յարձակեալ յԱքիլլէս՝ փրկէ Ապոլոն ։ Քաջութիւնք Աքիլլեայ եւ նախճիրք տրովադացւոց ։

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ՔՍԱՆԵՐՈՐԴ

### ԴԻՒՑԱԿՌԻՒ

Այսպէս 'ի զէն վառէին առ կոր նաւուցն աքայեցիք
Շուրջ ընդ քեւ զանյագդ 'ի պատերազմ, որդիդ Պէլեայ,
Եւ տրովեանք յայնկոյս կուտէ՝ 'ի սարահարթ տափակողմանն:
Իսկ Արամազդ ետ Թեմիսի հրաման յատեան կոչել ըզդիս
Ի ծայրից բազմահովտեան Ոլիմպոսի, եւ նա երթեալ
Պատուէր ետ 'ի տաճար անդր հաւաքել Արամազդայ:
Արդ ոչ ոք 'ի գետոց պակասէր բաց յՈվկիանէ,
Եւ ոչ ոք 'ի Հարսանցըն բնակելոց 'ի զուարթ մայրիս,
Եւ 'ի վտակս աղբերականց ու'ի դալարուտ մարգագետինս:
Եւ եկեալ 'ի դաւիթս ամպրոպայնոյն Արամազդայ՝
Բազմեցան 'ի ողորկատաշ գահլիճս զոր էր 'ի Հեփեստէ
Շինեալ հօրն Արամազդայ՝ հանճարամիտ ըղձօնութեամբ:
Այսպէս սոքա յԱրամազդեան խմբէին յարկ, եւ Գետնադղորդն
Ոչ հեստեւաց աստուածուհւոյն, այլ առ նոսին եւ 'ի ծովէն,
Եւ բազմեալ յակումբ նոցուն՝ զԱրամազդայ միտս փորձէր.
Առ ինչ գործեալ Շանթընկէցդ ձայնեցեր յատեան ըզդիս.
Ըզտրովեանց ինչ արդեօք եւ զաքայեցւոց առնուս խորհուրդ,
Զի սոցուն՝ այժմ հուպ ընդ հուպ վառեցաւ մարտ պատերազմին:
Առ նա պատասխանի ամպայարոյցն ետ Արամազդ.
Խորհրդոցս 'ի վերայ հասեր սրտիս, Երկրասասանդ,
Որոց վասն հոլովեցի. զի խնամ ունիմ կորուսելոցն:
Այլ սակայն կացից նստեալ յՈլիմպոսին ես յարտեւան,
Անդ դիտակըն կալեալ զըւարճացայց 'ի միտըս իմ.
Իսկ դուք այլք երթայք հասէք 'ի տրովացիսն եւ յաքայեցիս,

Երկոցունց տուք թիկունս, որպէս եւ միոջ ուրուք խնդրեն.
Զի Աքիլլէս թէ եւեթ ընդ տրովացիս մըտցէ 'ի մարտ,
Եւ ոչ սուղ ինչ տոկասցեն երագասլին Պէլիածնի:
Զի յառաջ եւ ընդ տեսիլն անգամ սարսեալ խուճապէին,
Իսկ այժմիկ՝ եւ զընկերէն ծանրացասմամբն սրտմտեալ՝
Զանդիմակ գուցէ զպարիսպն իսկ քանդեսցէ տարաժամու:
Զայս ճառեալ Զրուանեանն, եւ կարեւոր բորբոքեաց խազմ:
Ցարեան գնացին դիքն 'ի կռիւ, երկպառակեալք 'ի միտս իւրեանց.
Հերա, Պալլաս Աթենաս 'ի յասպարէս նաւատորմին,
Պոսիդոն երկրակալ, եւ օգտաբեր շահից Հերմէս,
Այն որոյ միտք զարդարեալ իմաստութեամբ էր հանճարով.
Ընդ նոսին գնայր Հեփեստոս՝ յոխորտացեալ յոյժ զօրութեան՝
Կաղս 'ի կաղս եւ 'ի ներքոյ սրունքըն նըրբինք գործէին գուն:
Իսկ Արէս սաղաւարտածոփ 'ի տրովացիս, եւ ընդ նըմին
Գուշակըն գիսաւոր եւ Արտեմիս նետաձըգուհի,
Լետով եւ Քսանթոս, եւս եւ Աստղիկ սիրաժըպտիտ:
Մինչեւ դիք մեկուսի էին յարանց մահկանացուաց,
Խրոխտային յոյժ աքայեանք, զի Աքիլլէս երեւեցաւ՝
Որ յերկարն էր դադարեալ 'ի դժընդակ պատերազմէն.
Եւ քըստմունք խիստ ընդ անդամս ամենեցուն գնային տրովեանց
Ընդ տեսիլըն զարհուրեալք երագասլին Պէլիածնի
Սպառազէն փայլակնեալ՝ մարդախողխող Արեայ 'ի տիպ:
Իսկ յորժամ 'ի զաւմարտակն արանց հասին Ողիմպեանք,
Հեռ սաստիկ ամբոխագոյթ յարեաւ, գոչէր անդ Աթենաս
Կացեալ մերթ առ փոսոյն՝ որ ըստ պարսպին 'ի դուրս հատեալ,
Եւ մերթ՝ առ բազմադղորդ ծովուն ափունս ուժգին գոռայր:
Կանչէր անդուստ եւ Արէս՝ խաւարակուռ մըրրկի գունով,
Մեծաձայն 'ի քաղաքէն գըլխէ զըրգեալ զտրովացիս,
Եւ երբեմն առ Սիմոյեաւ 'ի Գեղասար վազեալ ըրըրուր:
Զերկոսին այսպէս կողմանս յորդորեալ դիքն երջանկաւէտք՝
Արկին զիրեարս, եւ չարաշուք բորբոքեցին անդր 'ի մէջ պատերազմ:
Որոտաց ահեղաձայն եւ աստուածոց հայրն եւ մարդկան
Ի բարձանց, իսկ Պոսիդոն դըղըրդեցոյց 'ի ներքուստ
Զերկիր անվայրափակ եւ զսարաբերձ լերանց կատարս:
Համօրէն աղբիւրաբեր Իդայ հիմունք տատանէին
Եւ գագաթունք, եւ տրովեանց քաղաքն եւ նաւք աքայեցւոց:
Զահի հարաւ եւ յանդունդս Այիդոնեւս սանդարապետեան,
Սոսկացեալ՝ 'ի գահէն 'գոչեաց, փախնչեաց, գուցէ զերկիր
Ի վերուստ պատառեսցէ գետնադըղըրդըն Պոսիդոն,
Եւ կայեանք երեւեսցին՝ մահկանացուաց եւ անմահից
Ահաւորք, խըրթնատեսիլք, յորոց աստուածք իսկ քըստմնէին.
Այնպիսի թընդէր բոմբիւն՝ դիցն 'ի պատերազմ շահատակել:

Քանզի հանդէպ արքային Պոսիդոնի կայր հակառակ
Գուշակն Ապոլոն թեթեւաթեւ նետից բարձող,
Եւ խաժակն Աթենաս աստուածուհին 'դդէմ Արիսի,
Իսկ Հերայի գլխամարտ ոսկեփիլըքինն ամբոխագորդ
Արտեմիսն նետաձգօս՝ կորովաձիգ աստուածոյն քոյր։
Լետովայ գիմակ հզօրն եւ օգտարար շահից Հերմէս,
Եւ ախոյեան Հեփեստի՝ մեծայաղթ գետըն յորձախոր,
Որում դիք Քսանթոս անուն, եւ Սկամանդրոս կարդան մարդիկ։
Այսպէս դիք դից դիմակաց ելանէին, իսկ Աքիլլէս՝
Պրիամեանն Հեկտորի տենչայր ներհակ գալ 'ի վճռեր.
Զի լընուլ մանաւանդ քան զամենայն դրդէր հոգին
Նորուն արեամբ զԱրէս ցըլայգ՝ զանյաղթելին պատերազմօղ։
Զէնիաս նախ դէպուղեալ ըսպայագայութն արկ Ապոլոն
Դէմ ընդդէմ Պէլիածնին, սաստիկ արկեալ 'ի նա կորով.
Եւ զորդւոյն Պրիամու զԼիկայոնի առեալ ըզձայն,
Նոյն 'ի կերպ՝ Արամազդայ ծնեան Ապոլոն բարբառեցաւ.
Էնիաս, տրովեանց վեղուրկ, քո յո՞ւր գնացին ըսպառնալիքն՝
Զոր 'ի նուագըս բաժակաց տրովեան պետացըն խոստացար,
Պելեանն Աքիլլիսի գնալ ախոյեան 'ի պատերազմ։
Փոխանակ Էնիաս պատասխանի տըւեալ ասէ.
Առ ի՞մ, Պրիամեանդ, հրաման տաս իմ անձնս գալ զայդ,
Վիրազին Պէլիածնի նահատակել յանկամս ընդդէմ։
Զի ոչ այժմ ինչ առաջի կամ Աքիլլեայ երագոտին,
Այլ յառաջ եւս այլ երբեմն աշտէիւ զիս փախոյց յԻդայ՝
Յանդգնայս արջառոց մերոց հասեալ ասպատակաւ,
Եւ քանդեալ ըզԼիռնեսոս եւ զՊեդասոս, բայց Արամազդ՝
Զօրութիւն յիս արծարծեալ եւ զծունկս երագս՝ ապրեցոյց զիս։
Եւ անշուշտ սատակէր յԱքիլլի ձեռս եւ յԱթենայ,
Որ նըմին կարապետեալ ընծայէր լոյս եւ խրախուսէր՝
ԶԼէլեգս եւ զտրովացիս 'ի պղնձաղէն կոտորել տեգ։
Վասն որոյ՝ չէք առն ումեք ընդ Աքիլլեայ կռուել ընդդէմ,
Զի կայ ցանդ մերձ առ նըմին յաստուածոց որք վանել զեղեռն.
Թող զի եւ ձիգք իւր թըռչին ուղիղ, եւ ոչ առնուն ըղկայ
Մինչեւ թափ ընդ մարդկեղէն երթեն մարմին. ապա թէ ոչ,
Աստուած զոյգ եթէ դիցէ զմարտին պայման՝ ոչ հեշտիւ յայժ
Պարտեսցէ զիս, պըղընձի թէպէտ լինել պարծեսցի ձոյլ։
Յաւելեալ Արամազդայ ծնեան Ապոլոն ասէ արքայ.
Ո՞ն առեալ եւ դու զիւցազն՝ աղաչեա զդիսն յաւերժականս,
Զի ծնունդ եւ զքեզ Աստղկանն՝ Արամազդայ զդստերն ասեն,
Իսկ նա՝ 'ի ստորային է ումեքէ դիցանուհւոյ.
Քանզի նա՝ յԱրամազդէ, 'ի ծովային սա ծերունւոյն։
Արկ աղէ կըշիռ ըղպղընձն անյաղթ, եւ մի ամենեւին

Դղրդմնէիւքըն խախտեսցէ բանիւք ըղձեղ եւ ստորանձալեզք ։
Առացեալ զայս՝ 'ի հովիւն աղանց շնչեաց զօրութիւն մեծ ,
Եւ 'ի պղինձ հրաշէկ վառեալ՝ խաղաց գընդեաց 'ի նահատակսն ։
Ի լուսածիրն Հերայէ ոչ ծածկեցաւ Ճեան Անքիսեայ
Մինչ յարանց անդ ամբոխի՝ Պելիածնին երթայր գխզան .
Եւ ձայնեալ ըղձիս 'ի մի վայր՝ առ նոսա բարբառեցաւ .
Պոսիդոն եւ Աթենաս , դուք 'ի խորհուրդըս ձեր առաջիք ,
Թէ զիարդ առաջիկայ իրքս այս 'ի գլուխ ելանիցեն ։
Զինուորեալ 'ի պղինձ հրաշափայլ այդ Էնէաս դիմեալ չոգաւ
Ընդդէմ Պելիածնին , եւ Ապոլոն գրգռեաց Գուշակն ։
Այլ մեք եկայք՝ զի զնա մեք դարձուսցուք յետս առ 'ի նմանէ ,
Կամ թէ մի եւ Աքիլլեայ եկեսցէ 'ի մէնջ ոք զօրավիգն ,
Ազդել մեծ 'ի նա կորով , զի ապրաթեալ ինչ մի լիցի ,
Եւ առեսցէ՝ թէ անմահիցըն վեհագոյնք սիրեն ըզնա .
Իսկ սոքա՝ չըքնաղք՝ որ յառաջմէ իսկ մինչեւ ցարդ
Գուն գործեն պաշտպանել տրովաց 'ի մարտ պատերազմի ։
Իջցուք մեք ամենեքեան յՈլիմպեայ յայս ճակատամարտ ,
Զի նմա 'ի տրովացւոց մի հասցէ ինչ կրիցել այսօր .
Իսկ աստ՝ կրեսցէ զոր զամ մի նմա Բախտըն զամենայն
Ի ծնանել իւրում մանկաց , յորժամ երկնեաց ըզնա մայր իւր ։
Բայց Աքիլլեւս եթէ զայս 'ի գից ձայնէն չուսանիցի ,
Երկիցէ՝ 'ի պատահել ուրուք 'ի գից ընդ իւր 'ի մէջ .
Զի ահեղ իմն են աստուածք՝ դէմ յանդիման երեւելով ։
Առ նա պատասխանի ետ Պոսիդոն գետնադղրդող .
Մի , Հերա , ելեալ ըստ միտս ինչ ըղչարիր , չէ քեզ նման ,
Եւ ոչ իմ ինչ կամք իցեն՝ գրգռել 'ի կախ զաստուածս .
Մեզ զայլ գիս , զի զօրագոյն եմք առաւել եւս քան ըզնոյն .
Այլ երթեալ յուղւոյս արտաքս 'ի դիտանոց ինչ նստցուք մեք ,
Եւ թողցուք ըզպատերազմ՝ արանց եւեթ լինել 'ի խնամս ։
Իսկ թէ Արէս կամ Գուշակն Ապոլոն ձեռն արկցեն 'ի կախ ,
Կամ կըրճիմ Աքիլլիսի անկեալ չառայցեն թոյլ մարտընչել ,
Նոյն ընդ նոյն եւ մեզ անդէն մըրցամարտի զարթնուցու խաղս ։
Եւ կարծեմ հանդձեռ վըճար եղեալ նոցին մարտամբախի՝
Դարձցին անդրէն յՈլիմպոս՝ 'ի հրապարակ անդր այլոց դից՝
Ընդ ձեռօքըս մերովք 'ի բռնակ հարկէն պարտեալք ուժով ։
Զայս խօսեալ՝ խաղայր յառաջ կարապետէր Կապուտահերն
Ցորմափակ անդր Հերակլի դիւցազնարմին 'ի բարձրակառ .
Զոր նմա տրովադացիքն եւ Աթենասն եգին Պալլաս ,
Ապաւինել անդր ապրել 'ի նըհանգէն ծովակամէ՝
Ի վանել սորա զինքն 'ի ծովափնէն 'ի դաշտըն կոյս ։
Անդ նըստաւ Պոսիդոն եւ միւս եւս դիք իւրոյ կողմանն՝
Բակ արկեալ շուրջանակի զուսովք իւրեանց ամպ անփեթեկ .

Եւ զգերեալ կանանեն, յաղթական զըրկեալ օրէն,
Վարեցի, բայց Արամազդ փըրկեաց ըզքեզ եւ այլ աստուածք.
Այլ ոչ կարծեմ թէ եւ այժմ ըստ քում մըտաց դըքեզ թափեսցեն:
Իսկ ես տամ քեզ խըրատ, մեկնել 'ի բաց՝ խառնել 'ի վաշտդ,
Եւ մի կալ ախոյեան արձանանալ իմ առաջի՝
Զեւ ինչ չարի պատահեալ. զի եղելումն՝ եւ խօլն է հմուտ:
Իսկ առ նա Էնէաս պատասխանի տուեալ ասէ.
Մի, Պելեանդ, ինձ զերդ մանկան յուսար բանիւք արկանել ահ.
Բա՛ց գիտեմ եւ ես որպէսզի կատակել զըրպարտս եւ ամբարտաւանս:
Ըզմիմեանց գիտեմք եւ զազգ, եւ ըզծընօղըս մեր գիտեմք
Վաղեաց լըսող համբաւուց եղեալ արանց մահկանացուաց,
Այլ ոչ դու ինչ իմոցն, ոչ ես քոյոցդ ականատեսս:
Ըզքեզ՝ 'ի քաջէն ասեն Պեղեայ սերեալ ծընունդ,
Եւ 'ի մօրէ՝ 'ի Թետեայ 'ի ծովածին վարսագեղոյն.
Իսկ ես որդի մեծանձին պանծամ լինել Անքիսեսի,
Եւ ինձ մայր է Աստղիկ, յորոց այսօր մին եւ կամ միւսն
Ողբասցեն զորդին սիրուն, զի տղայական չկարծեմ բանիւք
Որոշել մեզ 'ի միմեանց եւ 'ի կըռուոյս 'ի բաց դառնալ:
Իսկ թէ կամ է ուսանել քեզ զայսոսիկ, լինել հասու
Մերում ազգատոհմիս՝ զոր գիտեն շատք 'ի մարդկանէ,
Արամազդ ամպրոպային ծընաւ նախ ըզԴարդանոս
Որ կառոյց ըզԴարդանիա, զի չեւ շինեալ էր 'ի դիւրի
Նուիրականն Իլիոս քաղաք մարդկան յօդաձայնից,
Այլ յԻդայ բիւրակնէի դեռ 'ի թիկունսըն բնակէին:
Դարդանոս որդի ծընաւ ըզթագաւորըն զԵրիքթոն,
Որ մեծացաւ մեծութիւն քան զըսաւ մարդիկ մահկանացուս,
Որոյ ձիք մատակք 'ի մարգս արածէին երեք հազարք
Խաղացեալ ցընծացեալ մատաղերամ յովանակօք: —
Ի սոցա հարեալ 'ի սէր եւ Հիւսիսակ յարօտսըն անդ՝
Ընդ նոսին անկաւ 'ի կերպ կապուտաբաշ երիվարի,
Եւ նոցին սաղմնաւորեալ՝ ծընան մըտրուկս երկոտասան,
Որ 'ի խայտալն անդ խուրեանց 'ի կենսատուր երկրին երեսս՝
Արշաւեալ ընդ ծայրս արդեանց հասկաց՝ եւ ոչ բեկանէին.
Իսկ թռչնոյ առեալ ընդ ծովուն մինչ կայտառէին լայն մըկանունս,
Ընդ ծայրըս ծըփմանցն ընթանային ալիւսակ ալեաց: —
Երիքթոն ապա ծընաւ ըզՏրովս արքայ տրովադացւոց.
Իսկ Տրովայ քաջընտիրք եղեն ապա մանկունք երեք,
Իլոս, Ասսարակոս եւ դիւցազատուած Գանիմեդէս,
Որ 'ի մէջ մահկանացու մարդկան գըտաւ ամենագեղ,
Զոր եւ դիք վերացուցին՝ Արամազդայ կալ մատռուակ
Առ խորում գեղեցկութեան, զի 'նդ անմահիցըն բնակեսցէ:
Իսկ Իլոս ծընաւ որդի զըսքանչելին Լաւոմեդոն,

Եւ ծընաւ Լաւմեդոնեան ըզՏիթոնոս եւ ըզՊրիամ,
ԸզԼամպոս եւ զԿլիտիոս, զՀիկետաւոն արիական ոստ.
Ասսարակոս ըզԿապիս, ու զԱնքիսես ծընաւ զաւակ,
Անքիսես՝ զքեզ ծընաւ, եւ Պրիամոս զՀեկտոր գիւցազն.
Ի զարմէ աստի պանծամ եւ յարենէ աստի լինել.
Բայց Արամազդ ըզմարդկան առնէ՝ նուազէ զարութիւն,
Որպէս եւ կամք իցեն իւր, զի նա բնաւից է ուժգնագոյն.
Այլ եկ մի մանրեսք մանկաբար այդպէս զայսոսիկ բարբանջեսցուք
Ի մէջ աստ կացեալք 'ի ճակատուս պատերազմի.
Վասն զի գոյ երկոցունց ասել բազում ինչ յոյժ նախեր,
Մինչեւ ոչ հարիւրաթի անգամ նաւու զբեռն բառնալ.
Քանզի ճապուկ է մարդկան լեզու, եւ խօսք 'ի նմա յոլով
Եւ ազգազգս, եւ 'ի ճարակ արօտ բազմեց ցանդ. աստ անդ ճոխ.
Բան զոր գուցէ խօսեսցես, ըզնոյն նըմանն եւ լըւիցես.
Իսկ մեզ զի՞ պիտոյ են կագք եւ խռովական գըժտիւ պայքարք՝
Կալ մըրցել եւ գըժտել միմեանց ընդդէմ իբրու զկանայս,
Որ հոգեհաշ հեռեւ ըերեալք՝ կագին 'զերեարս յանցըս գաւեհից,
Ի դէմ յաճախ եւ անդէմ, զոր եւ ասացէ սըրտմըտութիւն.
Բայց բանիւք՝ զիս զինադրուս յարութենէ ոչ դարձուցես
Չեւ պըղնձով դէմ յանդիման պատերազմել. ծն հայեա հապ
Ըզմիմեանց առցուք ըզհամ 'ի պըղնձակուռ անդ նիզակաց.
Ասաց վարեաց զհըզօր մըկունդն յահեղ ասպարն 'ի սոսկալի,
Եւ վահանըն մեծայաղթ շուրջ մըռընչեաց յաշտէին սայր.
Իսկ Պելեանն յանձնէն 'ի բաց կալաւ զասպարն հուժկու բազկաւ,
Զանգիտեալ 'ի միտըս իւր, գուցէ նիզակն երկայնաստուեր
Մեծանձնին Էնէասայ՝ հեշտիւ ընդ թափ անցանիցէ.
Մանկամիտ, որ ուշ 'ի կուրծըս ոչ արար յիւրում սըրտին,
Զի չեն դիւր ինչ պարգեւքն աստուածեղէնք պանծալեացունց
Տեղի տալ կամ նըկուն լինել արանց մահկանացուաց.
Եւ ոչ յայնժամ Էնեայ քաջամարտին անդ կորովի
Զասպարն եհերձ, աստուածոյն պարգեւ ոսկին կալեալ ընդդէմ.
Ընդ կըրկին թիթղունս էանց, սակայն էին այլ եւս երեք.
Զի պատեանս ած հընգեկին կըռեալ կոփեալ Կաղտանեայն,
Զերկոսին պըղնձաձոյլս, երկուս 'ի խորս անդ յանագէ,
Իսկ ըզմին ոսկեղէն, եւ անդ կասեաւ գեղարդն հացի.
Ապա երկրորդ Աքիլլեւս զերկայնաստուերն ընկէց մըկունդ,
Եւ եհար 'ի բոլորշի վահանն Էնեայ զվերջին ծնօտիւն՝
Ուր անօսր յոյժ ընթանայր պղինձ, եւ յոյժ անօսր արկեալ
Էր կաշին արջառենի, եւ թափ թռուցեալ եղ սըլացաւ
Հացին Պելիոնեան, եւ ընդ իւրեւ թընդաց ասպարն.
Էնեայ 'նդդըճեալ կըծկեալ՝ զասպարն 'ի բաց կալաւ յանձնէն
Ար ահէն, եւ սիրաթափիչ նիզակն ընդ ուսն՝ եկաց յերկիր,

Խորտակեալ զերկոտասն պարածածուկ վահանին ծիրս ։
Ճողոպրեալ յերկայն տեղէն եւ յարուցեալ կանգնեցաւ կաց ·
Ցաւ սաստիկ անհնարին զաչսն 'ի մաւթ մըրայլեցոյց,
Սոսկացեալ՝ զի անդ հուպ վարսեալ կայր զէնն առ իւր ընթեր ։
Այլ Աքիլլէս ձեռընթաց դիմեալ սուսեր սուր 'ի բերան
Գոչելով ահագնաձայն, անդ Էնէաս առ բարձեալ էր
Վէմ մի մեծ՝ գործ անհեդեդ, զոր չէր բերել արանց երկուց
Որպէս առ մեզ են մարդիկ, եւ նա միայն խաղ ձօձէր զայն ։
Եւ անդէն Էնէաս խոյացելոյն կոփէր ժայռիւն
Ի գըլխանոց, կամ յասպարն՝ որ զենքն 'ի ժանտ փըրկեաց մահուան,
Եւ Պելեանն հուպ մատուցեալ՝ սուսերաւն ըզնա յողի զատէր,
Եթէ չէր գետնադղորդէն Պոսիդոնի սուր նըկատեալ,
Որ անդէն յանմահից 'ի դէպն երաստ բարբառեցաւ ·
Ո՛հ, ցաւէ ինձ, ո՜վ դիք, ընդ մեծանձինն Էնէասայ,
Որ իջցէ 'ի դժոխս ընդ հուպ՝ Պելիասածնին պարտեալ 'ի ձեռս,
Ունկընդիր լեալ շըշընջմանց կորովաձիգն Ապողոնի ·
Խելաշուրջ · ոչ օգնեսցէ ինչ նա նըմին 'ի դուժ մահուան ։
Իսկ ընդէ՞ր եղէ սըմա յանձն իւր անպարտ կըրել աղէտ
Զուր փոխան վըխժուց այլոց, որ ինքն անդուլ ձօնէ նըւէրս
Աստուածոցն հաճոյականս՝ 'ի մեծ երկինս օթացելոց ։
Այլ եկայք աղէ զնա մեք ապրեցուսցուք 'ի մահուանէ,
Մի՛ զուցէ եւ Զըրուանեանն խիստ բարկասցի, թէ Աքիլլէս
Ըսպանցէ զնա, զի նըմա ճակատագրեալ է զերծանել,
Զի մի զարմն անզաւակ եւ աներեւեալ բարձցի բնաջինջ
Դարդանոսին՝ զոր Զըրուանեանն 'ի վեր քան զբնաւ սիրէ զորդիսն
Ըզսերեալսն յինքենէն եւ 'ի կանանց մահկանացուաց ։
Զի վաղ ատեաց Զըրուանեանն ըզՊրիամու տոհմին զըրոհ ·
Եւ արդ անշուշտ զօրութիւն Էնէայ տըրովադացւոց արքեսցէ,
Եւ որդիք որդւոց իւրոց՝ որ 'ի յապայս գայցեն 'ի ծնունդ ։
Եւ նըմա պատասխանի մեծապատիւ աչեղն Հերա ·
Դու քեզէն, Երկրադըղորդ, 'ի միտըս քո խորհեսջիր զայդ,
Թէ արդեօք զԷնէաս ապրեցուսցես թէ թողուցուս
Անկանել քաջին՝ 'ի ձեռս Աքիլլէսի Պելիասածնին ։
Քանզի մեք՝ բազում երդմունըս կնքեցաք ես եւ Աթենաս
Ցատենի հրապարակի դիցն անմահից բոլորեցունց,
Մի՛ երբեք պաշտպանել յաւուր չարի զտրովադացիս,
Եւ ոչ այնոյն թէ Տրոյա հըրդեհակէզ տոչորեսցի,
Եւ մանկունք աքայեցւոց արիաքաջք հարցեն ըզհուր ։
Եւ լըւեալ զայս Պոսիդոն գետնասասանն՝ յարեաւ գնաց
Ի ճակատ պատերազմին եւ 'ի շըռինդըն գեղարդեանց,
Եւ եհաս ուր Էնէաս եւ Աքիլլէսն էր վեհափառ ։
Եւ անդէն վաղվաղակի յաչս Աքիլլեայ Պելիասածնին

Ցանկոյ մեզ շամանդաղեալ, եւ ըղձացեալն պղընձակուռ.
Զըզեալ հանեալ յասպարէ անուն մեծանձն Էնէասայ՝
Եդ առ ոտս Աքիլլէսի, եւ զԷնէաս յափըշտակեալ
Վերամբարձ 'ի գետնոյն՝ ընդ խուռնախիտ դիւցազանց կարգս
Ու 'նդ շատ ձիոց սաստեալ վարեալ յաստուածեղէն ձեռան Էնէաս,
Եւ 'ի յետին եհաս ծագ շարաշըշուկ գուպարածին,
Ի տեղին՝ ուր Կաւկոնեայք 'ի պատերազմ սանձուէին զէն։
Առ երի նըմին եկեալ եւ Պոսիդոն երկրասասան՝
Կարգաց առ նա եւ առէ յերագաթեւ ձայնի բարբառ.
Էնէաս, ո՞վ ոք 'ի դից դըրդէ զաղաչեալդ ըղքեզ այդպէս
Ախոյեան վայրենամիտ Պելիասածնին յառնել 'ի կռիւ՝
Որ քան զքեզ ուժեղագոյն եւ սիրելին է անմահից.
Այլ դու նըրք եւ դիպեսցիս ուրեք նըմին՝ 'ի բաց խուսեա,
Զի քան զօրհասս տարաժամ 'ի գըժոխոց մի՛ անկցիս տուն։
Իսկ իբրեւ մահ եւ Հրաման հասանիցեն Աքիլլէսի,
Խրախուսեալ այնուհետեւ ընդ նախառաջեան կըռուեսջիր,
Զի եւ ո՛չ ոք այլ ըղքեզ յաքայեցւոց հարցէ 'ի մահ։
Ասացեալ զայս, զամենայն տըւեալ պատուէրս, եթող զինքն անդ
Ի նոյն յաչացն Աքիլլի ցըրուեաց ըղմէգն աստուածագործ,
Եւ անդէն նա նոյնժամայն բացահայեաց տեսեալ աչօք
Եւ յոգւոց ելեալ առէ ինքըն ցիւր անձըն մեծասիրտ.
Մեծ, ո՛վ դիք, ըղքանչելիս իմն աչօք տեսանեմ զայս.
Ի գետնի աստ կայ նիզակս, այլ նըշմարեմ զայրն ոչ ուրեք՝
Առ որ զայն արձակեցի՝ կըրթեալ զարեան իւր հասանել։
Արդ ուրեմն եւ Էնէաս էր անմահից դից սիրելի,
Եւ ես այնպէս ինչ 'ի զուր կարծէի զնա մեծաբանեալ։
Ո՛ւղջ երթիցէ, ոչ եւս այլ ընդ իս 'ի փորձ խիզախեսցէ,
Այն որ այժմ իսկ մըտադիւր 'ի մահուանէ փախեաւ կորեաւ։
Ո՛ն հապա քաջամարտից դանայեցւոցս հարեալ խրախոյս՝
Ի հանդէպ ընդ այլ տրովկեանս անցեալ մըտից ես շահատակ։
Ասաց՝ թըռեաւ ընդ դասակարգան, եւ մէն միում ասայր քաջալերս.
Մի՛ եւս արդ 'ի տրովկեանց, դիւցազն աքեանք, առնուցուք խոյս,
Այլ առէք, այր ընդ այր ճակատեսցի մըխեալ 'ի կռիւ։
Ինձ թէպէտ եւ քաջի՝ տաղնապ է յոյժ դըժուարաձեռն՝
Ընդ այսքան խուժըս անցանել եւ մաքառել ընդ բոլորից.
Նա եւ ոչ Արէսն աստուած անմահ եւ ոչ եւս Աթենաս
Ընդ կոկորդ այսչափ խաղմից թաւալեցի պատերազմեալ։
Իսկ յոր եմըս կարող ձեռօք՝ ոտիւք եւ զօրութեամբ,
Եւ ոչ դոյզն ինչ յայնցանէ կասեցուցից տըւեալ հրաժեշտ,
Այլ թափ անցեալ ընդ ողջոյն մըխիմ ճակատն, եւ ոչ կարծեմ
Թէ ուրախ ոք 'ի տրովկեանց լիցի հասեալ աշտէիս հուպ։
Զայս ասաց 'ի խրախոյս, եւ տրովկեցւոց արին Հեկտոր

Հրաման տայր սատակութեանց, զանձն Աքիլլէի ՚նդդէմ տալ տակը·
Մեծանձնիկքդ տրովացիք, մի՞նչ երկընչիք ՚ի Պելիդեայ,
Զի բանիւք՝ ես ընդ անմահս իսկ գօտացից ՚ի պատերազմ,
Իսկ ՚ի տէգ՝ դըժուարամարտ, զի են կարի կարծրեզօրագոյնք:
Ոչ Աքիլլէս ամենայն բանից իւրոց առնիցէ զլուխ,
Այլ եղէ զոր կըճեսցէ, եղէ զի՞նչ մէջ հատցէ կըճմլեա:
Ես նըմին ելից դիմակ, թէ ձեռք եղեն իւր բոցանիշ,
Թէ ձեռքն եղեն բոցանիշ, կորով նըման յերկաթ հրաշէկ:
Զայս ասաց խրախուսանօք, ահեղս ամբարձին տրովեանք ընդդէմ,
Որոց ՚ի մի խըռնեցաւ կորով, եւ գոռք յարեան կանչից:
Ապոլլոն յայնժամ Փուշանեն հուպ մատուցեալ առէ ցՀեկտոր·
Հեկտոր, մի՛ բնաւ յառաջս ընդ Աքիլլեայ նահատակես,
Այլ այդրեն կացեալ ՚ի խուռն եւ ՚ի շըջուկ՝ ընկալ ըզնա,
Մի՛ զքեզ ՚ի մօտ ախոյանից կամ առնիցէ սուսերահար:
Զայս ասաց, եւ Հեկտոր եմուտ անդրէն յարանցն ամբոխ՝
Գակուցեալ յաստուածոյն ՚ի լուր ձայնին բարբառելոյ:
Իսկ Աքիլլէս քաջալանջ սասանէ ուժով ՚ի տրովացիսն
Ահագին գոչմամբ, եւ նախ յաղթ եհար զԻփիտիոնէ՝
Ըզքաջն Ոտրինտեան՝ ըզզօրավար ազգաց բազմաց,
Զոր ծընաւ հարսըն Նէիս քաղաքածանն Ոտրինտեւսի
Ի ձիւնեղէն Տմոլեայ ստորոտ՝ ՚ի Հիդեայ ճոխ ժողովրդեան·
Ըզգլխաւորըն գեղապուղեղ՝ ախոյան գիւցազն հար Աքիլլէս
Ըշտ ընդ մէջ կատարիւն՝ որ ընդ երկու հերձաւ ողջոյն·
Նա թունդ եւ թաւալեցաւ, եւ Աքիլլէս պանծայր գիւցազն·
Անկեա՛լ կաս, Ոտրինտեան, քան զամենայն այր ահաւորդ,
Աստ քեզ մահ, բայց է քո տոհմ հուպ առ Գիգեան ծովակըն,
Ուր են քեզ անդաստանքըն նըւիրեալք հայրենատուրք
Առ ձըկնաւէտն Հիլլոսի եւ յորձանուտն Հերմոսի:
Զայս խօսեցաւ պարծ պանծանօք, զաչըս նորուն պատեաց խաւար,
Զոր երիվարք աքայեանց ընդ հեցս անուոյն յօշոտեցին
Յառաջնումն առ ճակատուն· իսկ նա յաւել զԴեմոլէոն
Զկորովի զօրավիգըն մարտի զձեռն Անտենորեան,
Եհար յիրանունան ընդ գըլխանոցըն պղնձածնոտ·
Ոչ ժուժկալեաց սաղաւարտըն պղնձաձոյլ, այլ թափ ընդ այն
Դիմեալ տէգըն՝ եբեկ զոսկըրըն, եւ ուղեղն ՚ի ներքըս անդ
Խառնակեցաւ բովանդակ, եւ զամեհին արար նըկուն:
Եւ ապա զՀիպպոդամաս, մինչ ՚ի կառացն ոստնոյր նա զետ
Եւ յերեսաց իւրոց փախնոյր, ՚ի թիկնամէջն եհար տէգաւ:
Ի թափել հանել զոգին պոռոչէր նա իբրեւ ցուլ՝
Զի բռնչէ ածեալ ընդ քարշ զՀելիկոնեան արքայիւն
Ի ձըգել պատանեաց, եւ Գետնաշարժն յայնըս ցընծայ·
Այսպէս սորա ՚ի մռընչելն՝ արի ոգին զոսկերան ելեք:

Նա երթայր նիզակաձօձ յառաջամարտիկըն Պօլիդոր
Յորդեակըն Պրիամու՝ զոր չարձակէր հայրըն 'ի ճակատ,
Զի յորդիսն էր կըրտսեր ծնընդեամբ եւ իւր սիրասընունդ,
Եւ ոտիւք թեթեւութեամբ զանցուցանէր զամենեքումբք.
Եւ 'ի պատանուն տղայօրէն զոտիցըն չնորհ ցոյցս առնելով
Խոյանայր 'ի նախահառաջսն մինչ զոգին կորուսանել.
Ընթա քաջոտն Աքիլլէս գիւցազըն եհար ընդ արշաւեն
Յաշտէին նեզ՝ յողնամէջն ուր կամարին ոսկի ճարմանդք
Խառնէին ընդ միմեանս եւ խառն 'ի խառն պատէր զըրահ,
Եւ սըլաք նիզակին պատառեաց եւ թափանց ընդ պորտն.
Ինք զուծեալ գլեցաւ 'ի ծունկս, եւ ամպ մըթին անկաւ զնովաւ,
Եւ 'ի կոր հակեալ՝ ձեռօք զընդերսն առ ինքըն ժողովեաց.
Իսկ Հեկտոր իբրեւ ետես ըզհարազատըն Պօլիդոր
Զի զաղիսն ունել 'ի ձեռն՝ 'ի գլել ու 'ի գլոր խաղայր յերկիր,
Մածեաւ յաչսըն մառախուղ, եւ ոչ եւս այլ համբերեաց կալ
Ընդ երկար 'ի բացէ, այլ Աքիլլեայ եկ ընդ առաջ
Ճօճելով նեզ սայրասուր, իբր բոցաւորիկ. իսկ Աքիլլէս
Ընդ տեսանելն եւ ցօլացաւ եւ խրոխտապանծ ընկէց բարբառ.
Աւասիկ այրն որ 'ի սիրտըս իմ եհար խոց կարեվէր՝
Ըսպանեալ ըզմըտերիմն իմ կարեւոր. ոչ եւս անշուշտ
Ի միմեանց խուսափեսցուք ընդ փողս ուղեաց պատերազմին.
Ասաց, եւ առ գիւցազըն Հեկտոր գոչեաց խոժոռ աչօք.
Ե՛կ մօտ եկ, զի փութապէս 'ի կորըստեան հասցես 'ի ծագ.
Աներկիւղ ընդ նա խօսեալ ասէ Հեկտոր կորդակաձօձ.
Մի, դու Պելեանդ, ինձ զերդ մանկան յուսար բանիւք արկանել ահ,
Զի գիտեմ եւ ես արդեօք կապել զըրպարտս եւ սանդարամետս.
Գիտեմ բաւ՝ դու քաջարի, ես քան ըզքեզ կարի նուաղ.
Այլ սակայն, բանդ այդ 'ի գիրկս անդ աստուածոց զընի աւանդ,
Թէ տըրուպս անձինց արդեօք զոգիդ խըլեցեալ ըզքեզ տեգահար,
Քանզի է եւ մըկընդեայս իմում սըլաք իւր սայրասուր.
Ասաց ճօճեալ ըզնիզակն եւ արձակեաց, բայց Աթենաս
Յետըս զայն դարձոյց շընչմամբ 'ի յԱքիլլեայ գերափառէ
Փըչելով զոյգըն ինչ 'ի նոյն, որ 'ի գիւցազըն Հեկտոր չըրջեալ
Երթեալ ընդ կրունկ առաջի ոտից իւրոց անկաւ յերկիր.
Աքիլլէս սակայն յորդոր դիմեաց մոլեալ 'ի մահ նըզովն
Բարբառով ահեղագոռ, այլ Ապոլոն չոգեաց ըզնա
Դիւրագոյնս իբրեւ աստուած, պատեալ 'ի թանձըր մառախուղ.
Երիցս այնուհետեւ հըրոսեալ գիւցազըն Աքիլլէսի,
Երիցս ըզմառախուղըն բուռնատարածած վիրաւորեաց,
Իսկ 'ի չորիր նըւագին աստուածօրէն յարձակելոյ՝
Սպառնալեօք ահագնագոյս բարբառեցաւ զթեւաւոր բանս.
Միւսանգամ փախեար, շուն, 'ի մահուանէ. կայր ան եւ ան

Եւ մրրկեալ ընդ ամենայն փոթորկէ հողմ ըզբոցոյն ցալս ,
Այնպէս նա շուրջանակի մոլեալ տխրաւն տատանածօրէն ,
Փաղաղէր զ'ի մահ նուիրեալսն , եւ թուխ երկիր յարիւն խառնոյր ։
Որպէս ոք զի ածիցէ զլայնաճակատ եզինս 'ի լուծ՝
Ի կասուլ ըզլըմնագոյն գարին 'ի կալ յօրինուորակ ,
Եւ բառաչօղ արջառոցն ընդ կըճղակօք փըշըրին փուլթով ,
Նոյն երիվարք սալասըմբակք ընդ քաջալանջն Աքիլլեաւ
Առաթուր կոտորէին ըզդիակունս եւ ըզվահանս ։
Ներքուստ համակ սռնն էր կառացն եւ շըրջապատն յարիւն թաթախ ,
Յոր կայլակեալ սըրսկէին 'ի սըմբակաց ձիոցըն ցայտք
Եւ յանուոցն անուի հեցից . եւ Պելեանն ուշ ածեր փառաց ,
Թաթաւեալ զանպարտելի ձեռսն յապաժոյժ եւ յաղտաւառ ։





# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

---

ԵՐԳ ՔՍԱՆ ԵՒ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ՔՍԱՆ ԵՒ ԱՌԱՋՆԵՐՈՐԴ

### ՄԱՐՏ ԶԳԵՏՈՎՆ

Իսկ յորժամ եկեալ հասին կարկաչահոս գետոյն 'ի հուն
Ցորձնեռանդըն Քսանթոսի զոր Արամազդ ծընաւ անմահն,
Անդ ըզնոսին վարատեալ՝ վարէր ըզկէսս 'ի քաղաք կոյս
Ընդ դաշտն՝ ընդ որ յաւուրն անդ երէկի աքայեցիք
Խուճապեալ փախչէին 'ի Հեկտորի քաջին մոլեալ·
Խուժէին ընդ այն ազգս տագնապափոյթ հալածականք
Եւ մէգ թանձր առաջի սփռեաց նոցա Հերա կըրձիմ·
Եւ կէսք 'ի գետն յորդաքէմ փոթորկէին յարծաթապատոյտ՝
Անդր 'ի մեծ գըլեալք ձողփիւն, եւ գոչեցին յորձանքըն խոր,
Եւ ափունք շուրջ մեծամեծս հընչեցին ձայնս արձագանգաց·
Լողէին նոքա մաքընչմամբ թաւալ այսր անդր 'ի գըրգամս անդ:
Զոր օրինակ 'ի ճախրել բոցոյ հրատի թեւեն մարախք
Զերծանել 'ի գետ ուրեմն, եւ բորբոքի հուրն անվաստակ
Ցարուցեալ յեղակարծուստ, եւ թօթափին նոքա 'ի ջուրսն,
Նոյն յերեսաց Աքիլլեայ՝ յորձանահոսըն Քսանթոսի
Ուխք ըլնուին խռխռջաձայնք՝ երիվարօք խառն եւ արամբք:
Իսկ դիւցազն ըզնիզակն եթող անդէն 'ի գետեզերն
Ցեցուցեալ 'ի մոշենիս, վազեաց նիզէն անդր աստուածապէս,
Սուր եւեթ 'ի ձեռին, արոճնելով ոճիր աղուեն:
Հարկանէր յաջ եւ յահեակ, եւ ելանէր հեծութիւն ահեղ
Սըրակոծ կոտորելոցն եւ կարմրանայր վըտակն արեամբ:
Եւ զորէն 'ի մեծ վիշապ դըլփինէ ձըկունք փախըստականք
Ըզնաւուց անքոյթ զոգոյ հանդըրուանաց խըռնեին զալուցս՝
Ահագնեալք, զի չարաչար ծախէ զոր ոք ըմբըռնիցէն·

Սոյնպիսի արտավազացին 'ի յորձանուտ ուղխիցն հոսանս
Ղօղէին ընդ գարեւանդս · իսկ ձեռք նորա սպանմամբք խոնջեալ,
Կենդանիս 'ի գետոյն երկոտասանս ընտրեաց մանկտունս
Ի վրէժ մահու Մենետեանն Պատրոկլի քաւութեան զոհ:
Ա՛ռ եհան զնոսին արտաքս ընդարմացեալսն իբրեւ եղնորթս,
Եւ ձեռս յետս կապեաց ճարտարագործ փոկոց խոցեալք՝
Զորս ածեալ ընդհիւսածոյ պարեգօտիւքն էին իւրեանց,
Ետ ցընկերսն տանել 'ի գոգաձեւ նաւաց տորմիղն,
Իսկ ինքն անդրէն խոյացաւ յարեանց նախաճիրըս ճեղքել:
Անդ որդւոյ Դարդանեանն Պրիամու եղ ընդ առաջ
Ի գետոյն փախուցելոյ՝ Լիկայոնի, զոր իւր երբեմն
Ըմբռնեալ յայգեստանէ հօրն էր բռնի վարեալ գերի
Գիշերային հինահարեալ, մինչ 'ի պղինձ սուր զմոլաթզենոյն
Ըզչապքեալ մորճս հատանէր՝ լինել կառաց 'ի շրջանակ,
Անդ նորա յանզգաստից ըմբռնող դիպեցաւն եկն Աքիլլեւս:
Եւ զնա յայնժամ նաւակօքն 'ի շինանիստն ածեալ Լեմնոս՝
Արար վաճառակուր, եւ զգինսն ետ ձեռն Յասոնեան ·
Եւ անտի Թափեաց ընդ Իմբրոսացի հիւրն Էաթիոն
Տըւեալ բազում փրկանակս, եւ յԱրիսբէ յղեաց չքնաղ ·
Իսկ անտի հատուած գնացեալ 'ի հայրենիսն եկն եհաս տուն:
Եւ աւուրըս մետասան ընդ սիրելեան ուրախ լինէր
Ի Լեմնեայ եկեալ այսրէն · յերկոտասաննն անդրէն զնա
ՅԱքիլլի ձեռս արկ աստուած, որ յակամայ կամըս նորուն
Հանդերձեալ էր զնա 'ի Դըժոխոց առաքել յարկս:
Իբրեւ քաջոտն Աքիլլեւս դիպեցաւն եւես զնա մերկիկ
Առանց զըլխանոցի եւ վահանի եւ գեղարդան, —
Քանզի զայդ ամենայն յերկիր ընկէց ընդ քիրտն հարեալ
Ի փախչել անդ 'ի գետոյն, եւ կըթուցեալ ծունկքն 'ի ճըգանց, —
Առ մեծասիրտ իւր հոգւոյն սըրտմըտութեամբ բարբառեցաւ ·
Մեծազարմանչ զայս, ո՛վ դիք, զարմանալիս յաչըն արկանեմ ·
Արդարեւ իսկ արտաքսեցելքըդ մեծանձինք զորս ըսպանի՝
Յարիցեն վերըստին 'ի մըգասպատ մըթից ներքնոց,
Զոր օրինակ եւ սա եկըն փախուցեալ 'ի ժանտ ժամէն,
Որ երբեմն 'ի նուիրականն անդր 'ի Լեմնոս վաճառեցաւ ·
Չարգել ըզնա ալխաւոր ծովուն անդունդք՝ յորոց բռնի խափանեն:
Այլ աղէ՝ եւ զաշակէ տէգիս մերում տացէ զճաշակ,
Զի տեսից եւ ուսայց, թէ նմանապէս դարձցի անդրուստ,
Թէ կալցի հող կենսածին՝ որ զհզօրն եւս ընթաղէ:
Զայս կացեալ խորհէր 'ի մտի · նա պակուցեալ մատեաւ յառաջ
Հըպել 'ի ծունկսն ցանկացեալ, զի կամօքն էր զերծանել
Ի դըժընդակ մահուանէ ու'ի սեւագէմ Օրահասէն ·
Քանզի դիպեցաւն Աքիլլեւս զերկայնաշուք մըկունդն ամբարձ

Հարկանել հրդեհելով. 'ի ծնկան անկեալ նա կարակար
Բուռն եհար, որոյն 'ի վերուստ տէգն յերկիր մխեալ եկաց
Անձկացեալ մեծափափաք 'ի մարդկեղէն յագել մարմնոյ.
Նա միովն կալեալ ձեռամբ ըզծունկսն աղաչէր,
Եւ միւսովն ըզսրածեալ նիզակն ունէր եւ ոչ թողոյր,
Եւ առ նա բարբառելով ըզարագաթռիչ խօսեցաւ բանս.
Փարեալ 'ի ծունկդ, Աքիլլէս, մաղթեմ յիս ակն ած եւ գթա.
Եմ իբր իմն ընդ քեզ աղերս պատկառելի, դիւցազնածին,
Զի առ քեզ է ճաշակեալ իմ նախ զարդիւնս Դեմետրի
Յաւուրն՝ յոր ձերբակալ արարեալ զիս յընտիր այգւոջն,
Ի հօրէ ու'ի սիրելեաց վաճառանաւ վաճառեցեր
Ի Լեմնոս սուրբ, եւ գնոյ հարիւր եզինս ես քեզ արժէք:
Արդ երիցս այնչափ փրկանս ընդ անձին տաց, զի է աւ իմ
Առաւօտ երկոտասան յորմէ հետէ կամս յԻլիոն
Յետ բազում տառապանաց. արդ զիս անդրէն բաղդ անողորմ
Ետ 'ի ձեռս. Արամազդայ հօրն ատելի թըւիմ լինել,
Որ անդրէն զիս քեզ մատնեաց, եւ կարճակեաց ծնաւ զիս մայր,
Դուստրըն Ալտեսի ալեւորին՝ Լաւոթոյէ,
Ալտեսի՝ մրցասիրացըն Լելեգաց թագաւորին,
Տեառըն Պեդասոյ բարձուն՝ զափիւք Սատնիոյսի:
Ըզդուստրն ած Պրիամոս ունէր 'ի կնութիւն, եւ այլս յոլովս.
Ի նմանէ ծընաք երկոքեան, զերկոսեան դու կոտորեսցես:
Զդիւցազնաւորըն Պոլիդոր 'ի նահատակս հետեւակաց
Սլաքաշէկ հարեալ տիգաւ՝ արկեր զնա զի տապաստ 'ի մահ,
Եւ արդ եղեւ աստանօր լինելոյս ինձ, զի չունիմ ակն
Ի ձեռաց քոց ապրել, մինչ զամ մի այսր հասոյց աստուած:
Այլ եւս ինչ քեզ ասացից, եւ դու 'ի միտս քո յեա զայն.
Մի զիս ըսպանաներ, զի համամայր չեմ Հեկտորի
Որ զըսպանեաց ըզմըտերիմդ հաւատարմատէր եւ զքաջազօր:
Այսպէս առ նա Պրիամու շըքեղ որդին աղաղակեցաւ
Բանիւք աղերսանաց, բայց անողոք լըւաւ բարբառ.
Մի, անմիտ, ինձ փրկանս ածեր 'ի յուշ եւ մի պատմեր.
Զի մինչ չեւ էր Պատրոկլի զճակատագրին վըճարեալ կէտ,
Էր ինչ սրտիս սիրելի խնայել յայնժամ 'ի Տրովացւոց,
Եւ զբազումս կենդանւոյն ըզբռնամբ արկեալ՝ գնոց ետու.
Իսկ զարդիս՝ որ ապրեսցէ 'ի մահուանէ չիք ոչ ուրեք
Զոր յիմ ձեռս արկցէ աստուած դէմ յանդիման Իլիոնի
Յամենայն տրովացւոց, յորդւոցդ մանաւանդ Պրիամու:
Մեռի՛ր եւ դու, սիրելի. զի՞ լինիս այդպէս խանդաղատանս,
Մեռաւ եւ Պատրոկլոս՝ վեհեմականն յոյժ քան ըզքեզ:
Ո՞չ տեսանես՝ որպիսի եւ ես անձնեաւս, վայելչագեղ,
Եւ քաջի եմ հօր որդի, եւ դիցանոյշ ծընաւ զիս մայր.

Այլ ձեռակ եւ յիս մահ եւ Օրահասըն բռնաւոր՝
Թէ այգ լիցէ թէ՛նդ երեկս եւ կամ եթէ օր հասարակ,
Յորժամ ոք եւ յինէն առցէ զոգիս 'ի ձեռն Արեայ,
Կամ մըկունդ յիս ընկեցեալ կամ 'ի լարէն սուսուցեալ նետ:
Զայս ասաց, եւ անդ նորա ծունկըքն լըքան եւ սիրուն սիրտ,
Եւ թոյլ ետ ըզնիզակն, եւ տարածեալ զթեւսըն նըստաւ.
Եւ ձըգեալ Աքիլլէս զվաղակաւորն յեսանաւոր՝
Եհար զանրակին առ ուլանն, եւ երկսայրի սուսերն ողջոյն
Մխեց 'ի ներքս անց եմուտ. նա 'ի վերայ երկրին 'գերեսս
Գտասցեալ անկեալ դընէր, վիժէր արիւն թուխ՝ թանայր զհող:
Բուռն Աքիլլէս զոտանէն հարեալ 'ի գետն ընկէց տանել,
Եւ խրոխտով 'ի վերայ նորա զթըռչուն խօսեցաւ բանս.
Կաց արդ այդր ընդ ձուկունս, որ յապահովըս լիզուցուն
Ըզվէրդ ապաժոյժ, եւ ոչ մայրիկ քո կոծեսցի
Յանկողնի եդեալ ըզքեզ, այլ Սկամանդրոս յորձանաւոյզ
Յափըշտակեալ վարեսցէ 'ի ծոց ծովուն 'ի լայնատարր:
Վազս առեալ ձուկն ընդ ալիս 'ի մըկանունս քըղանստարատեւ
Յարիցէ եւ կերիցէ զԼիկայոնի ճարպ ըսպիտակ:
Կորիջիք, մինչեւ զոստանն առցուք զսըրբոյն Իլիոնի,
Փախըստեայք դուք յառաջոյ, եւ 'ի թիկանց սատակելով:
Ոչ օգնեսցէ ինչ ձեզ գետդ յորդահեղեղ՝ ակնանակիտ,
Որում յաճախ խոկ առնէք 'ի վաղընջուց զուարակ բազում,
Արկանէք եւ կենդանույն միասմբակ յուխտն երիվարս:
Այլ մահու չարաւ եւ այնպէս կորիջիք մինչեւ բընաւըդ
ԸզՊատրոկլի մահուն վրէժ եւ զաքայեանց տայցէք տուժից՝
Զորս առանց իմ առ երագ նաւատորմին կոտորեցէք:
Զայս ասաց. 'ի բարկութիւն Գետն 'ի սըրտին բորբոքեցաւ յոյժ.
Կայր լինէր մըտախոհ, եթէ ըզդիւցազըն զԱքիլլէս
Ի մարտէն լըռեցուսցէ, եւ մերժեսցէ զժանտն 'ի տրովեանց:
Բայց անդէն որդին Պէլեայ՝ նիզակ 'ի ձեռն երկայնատարուեր՝
ՅԱստերոպէոս խոյացաւ՝ մոլեալ սպանել սատակաման
Զորդին Պէլեգոնեայ, զոր յորդաահ ծնաւ Աքսիոս,
Եւ դուստր Ակեսամենի Պերիբիա երիցագոյն,
Զի անկեալ ընդ նըմին եհար ըզնա Գետն ուղխաջուր:
Աքիլլէս զիմեաց 'ի նա, եւ նա կըրկին անդ 'ի ձեռին
Եղ եկաց դէմ 'ի գետոյն, եւ արկ Քսանթոս կորով 'ի սիրտն.
Զի բարկութեամբ սըրտմըտեալ ընդ կոտորածն էր պարմանեաց
Զոր վատնէրն Աքիլլէս 'ի ջուրսն, եւ ոչ արգահատէր:
Արդ սոքա իբրեւ մօտ եղեն յիրեարս ընթանալով,
Նախ երագոտն Աքիլլէս դիւցազն առ նա բարբառեցաւ.
Ո՞վ ուստեք իցես յարանց՝ որ խիզախեաց ինձ գալ ընդդէմ.
Եղկելեաց եղանէ մանկունք իմում ուժոյս դիպան:

Եւ նմա պատասխանի Պելեգոնեայ չքնաղ որդին·
Մեծանձնդ Պելեան, ա՜ ի՞նչ ըզզարմ իմ հարցանես·
Ցերկրէ հեռաստանէ՝ ՚ի խոստաւէտն իմ Պէոնեայ,
Զպէոնեանն ածեալ որեար երկայնատէգ, եւ է ինձ արդ
Առաւօտըս մետասան՝ զի յԻլիոն այսր հասեալ կամ։
Իսկ տոհմիս իմոյ սերունդ՝ ՚ի յորդահոսուխն Աքսիոսէ,
Աքսիոս՝ որ ընդ երկիր առաքէ զուխսն ամենագեղ,
Նա ծընաւ ըզՊելեգոն նիզակաւորն, եւ աւանդեն
Զիս սորա ծընունդ, այլ այժըմ մարտիցուք, քաջդ Աքիլլեւս։
Զայս ասաց ըսպառնալեց, բայց Աքիլլեւս զփեցադն ամբարձ
Ըզհացին Պելիոնեան, Աստերոպէոս զիւցազն համայն
Ցեգ կըրկին, զի յերկոցունց եւս ՚ի ձեռացն էր աջողակ·
Եւ միովն աշտէիւ եհար զասպարն, այլ ոչ եհերձ
Ըզվահանն ելեալ ընդ թափ, կըրծիմ ոսկին կաց զիւցազնարհ·
Իսկ միւսովն՝ յարմուկ աջոյ բազկին եհար մօտ քերելով,
Ցայտեաց արիւն սեւորակ, եւ այն զնովաւ անցեալ զնացեալ՝
Ընդ գետինն հարըստեցաւ, յագել մարմնով լեալ տարփաանեց։
Ըզկնի նորուն Աքիլլեւս տապա զհացին ՚ի թուխսս անվրէպ՝
Արձակեաց յԱստերոպէոս, ՚ի սատակել մոլեգնութեալ։
Սըխալեալ ՚ի նմանէն՝ եհար ըզբարձըր զաբեւանդն,
Եւ միջով չափ անդ յափին զհացին ՚ի ծոծ վարսեաց միկունք։
Իսկ Պելեանն յազդերէն ձըգեալ ըզխաբրըն սայրասուր՝
Կատաղեալ սուրեաւ ՚ի նա, եւ նա զհացին Աքիլլեւեան
Ոչ զօրէր կորզել բազկաւն հանել ՚ի զաբաւէնէն·
Շարժեաց երեցըս թօթափեաց՝ քարշել խըլել զայն գուն գործեալ,
Երիցս ելից ակամայ· չորրորդ անգամ կամէր ՚ի մտին
Կըքել եւ բեկանել զԷակիդեայ զհացի զեղարդն·
Այլ Աքիլլեւս ախոյեանաբեալ հասեալ կորզեաց զոգին սուսերը·
Զի զպորտովն եհար ՚ի փորն, աղիքն ՚ի հող խողխողեան ողջ,
Եւ խաւար զաչսըն ծածկեաց ՚ի սըրնգալն անդ թաւալ ոգւոյն·
Ցհրան անդր յարձակեալ Աքիլլեւսի եղերծ ըզզէնսն,
Եւ խրոխտող պարծանօք բարբառեցաւ ըզբանըս զայս·
Այդպէս կաց· ընդ մանկունըս Զըրուանեան հզօրին
Խիստ է քեզ կալ ՚ի գուպար՝ թէպէտ եւ ծնունդ իցես Գետոյ։
Ասէիր ըզքեզ սերունդ յորդախաղաց Գետոյն լինել,
Սակայն ես՝ յազգէ մեծին Արամազդայ լինել պանծամ։
Զիս այր ծընաւ իշխեցող յաճախագունդ Միրմիդոնաց,
Էակեանըն Պելեւս, եւ Էակոս էր յԱրամազդայ·
Որչափ վեհ է Արամազդ քան զծովամէտ Գետոց խոխոջս,
Այնչափ առհմ Արամըզդական աղնուագոյն քան ըզԳետոյ։
Հա՛ քեզ հուպ Գետդ հարուստ, թէ կարիցէ ինչ օգնել քեզ·
Սակայն չէք ընդ Զըրուանեանն Արամազդայ մըրցել ՚ի կռիւ։

Մինչ զոսկերսն անգամ քաղել մի՛ գիտասցեն աքայեցիք ,
Այնչափ ծեփեալ յայն կարակուռ՝ հեստախաղաղ կորուսից ։
Անդ լիցի եւր կափարութիւն , եւ չիցեն պէտք հողակուտի՝
Զինքն 'ի շիրմին մինչ 'ի թաղումն աքայեցիքն յուղարկեսցեն ։
Ասաց՝ խուժեաց յԱքիլլէս մրրրաստեսակ մռլեալ 'ի վեր ,
Փրփրադէզ մռամռալով արեանաղանդ դիակունս ։
Կապուտակ կոհակունք յԱրամազդայ դիմեալ գետոյն
Կանգնեալն ըեանակարկառ՝ ընկլուզանել զՊելէածինն ։
Այլ Հերայ զարհուրեալ զԱքիլլէսէ՝ ուժգին գոչեաց ,
Գուցէ զնա շաղշաղիցէ մեծայաղթ Գետն անդընդապատոյս ։
Եւ անդէն առ Հեփեստոս սիրուն որդին արձակեաց ձայն .
Արի , Կաղոտն , իմ որդեակ . քանզի զՔսանթոսն ուղխեխնահոս
Ախոյեան նմանաւոր քեզ Համբերեաք 'ի մրցամարտ .
Օ՛ն արի փոյթ 'ի նպաստ , հան 'ի հանդէս բոց յորդառատ ։
Աւասիկ ես զԶեփիւռ եւ զպայծառն հարաւոյ՝
Զօդամ մրրրիկ 'ի ծովէն յարուցանել անհընարին ,
Որ հրրդեհ բորբոքախառն հարեալ կիզցէ զտրովադացւոց
Ըղձատափուածն եւ զզէնս . իսկ դու զափամբքն Քսանթոսի
Ծաչուրեա զծառաստանս եւ լեր 'ի նա ինքն իսկ հրրձիգ .
Մի՛ զքեզ ողոք ինչ բանիւք եւ սպառնալեօք արգելուցու ,
Մի՛ դուլար 'ի քո ոստանց , բայց թէ ձայնեալ կարդացից ես ,
Անդ անդէն անձանձրոյթ զանշէջ պահեա քո հրահոսանս ։
Ասաց զայս , եւ ընկենոյր Հեփեստոս զհնուրն աստուածահրրէժ .
Նախ 'ի դաշտին բորբոքէր հրոյն եւ այրէր զդիակունսն
Որ էին անդ յաղթութիւք յԱքիլլէսէ մատնեալք 'ի մահ .
Դաշտն ամբոյն սարսռեցաւ , զիջան վէտ վէտ ալիք վտակաց ։
Օրինակ իբր հիւսիսակ աշնանային վաղ ցամաքէ
Զնորոգ արօտորայն , եւ խրախ լինի մըշակ նորին ,
Նոյն չորացաւ դիւրն համակ , եւ զդիակունսն հրակիզեաց .
Եւ նա զբոցն արփիահրատ ասեալ 'ի գետ անդրր դարձոյց ։
Այրէին նռչդարիք , մոշաւայրիք եւ ուռենեստան ,
Խարակեալ խանձատէր ներգին , կնիւն , վաղամեռուկ ,
Որ զլրատակ վտակօքն թանձրախիտ կային բուսեալ .
Տապնատաքէին եւ ձկնունք եւ այլ կոյտառք՝ որ 'ի պղպջյան ,
Որ ընդ ուխտն գեղեցկեկս յայսկոյս յայնկոյս ասանուէին ձանձր ,
Ի շընչոյն վտանգեալք բազմահրմեռուն Հեփեստոսի .
Կիզուէին եւ կենք Գետոյն , եւ ձայն արկեալ բարբառեցաւ .
Հեփեստէ , չէք ոք 'ի դից կալ առաջի քո բաւական ,
Եւ ոչ ես ընդ քեզ հրրով բորբոքելոյդ այդպէս մարտեայց ։
Թող ըղձեաք , եւ Աքիլլէս գիւղաղն ընդ հուպ ըզտրովադիս
Ցոստանէն անդամ խլեսցէ . իմ զի՞ կայ 'նդ կռիւ եւ ընդ օճան ։
Ասաց հրայրեաց տոչորեալ , եւ եռայրին յըստակ հոսանքն .

Ցանկեալն անդ 'ի գաղտնի՝ 'ի Թուխ գրծնէ եւ անարգել,
Զոր սահման արտորէին էր վաղեմի արանց եղեալ.
Հարեալ նովին զրաւան Արէս ընդ պարանոցն՝ եղծ զանդամն։
Անկեալ գրաւեաց եօթն արտավար եւ թաթաւեաց զհերսն 'ի փոշի,
Շառաչեցին զինուորք զէնքն, եւ Աթենաս Պալլաս ընդ այն
Ծաղր եհեղ եւ պարծելով զԹըռչունս առ նա խօսեցաւ բանս.
Խօթամիտ, տակաւին չասէր 'ի միտ քանի՞ զօրեղ
Պանծանամ ես լինել, զի զզօրութիւնդ ընդ իմ կըշռես։
Այսպէս ահա հատուցիք ըզպատուհաս մօր քոյ մեծնուց,
Որ ոխացեալ ընդ քեզ չարիս նիւթէ՝ զի զքո թողեալ զաքէացիս
Հասանես յօգն 'ի Թիկկն ամբարհաւաճ տրովադացւոց։
Զայս խօսեալ՝ 'ի բաց դարձոյց ըզլուսաւորանն ալփիաբուխս.
Այլ Աստղիկ Արամազդայ դուստր հարեալ բռնան ըզձեռանէն՝
Առ երարձ զհառաչականսն որ զըսմնչն հազիւ յինքն ածեալ եւ անփոփեաց.
Զոր տեսեալ Հերայի լուսածըղի աստուածուհւոյն՝
Իսկ եւ իսկ ըզըթաթեւս առ Աթենաս արձակեաց ձայնս.
Ո՛հ ոհ դուստր անպարտելի՝ վահանակրօղն Արամազդայ,
Շանաձանձն այն միւսանգամ հանէ զԱրէս մարդասպանող
Ցախերէմ պատերազմին ընդ խուռն, այլ դու ընդդէմ ըզկինն։
Զայս ասաց, եւ Աթենաս զհետ մըտանէր խրախուսանեալ.
Եւ Թափով զիմեալ յԱստղիկ՝ 'ի լանջսն եհան բռնաբեկ մի կռուփ.
Եւ նորա լուծան ծունկք եւ սիրելի սիրտն իւր անդէն։
Երկոքեան դաւեալ զնէին 'ի մեղմբնաբուխ երկրին երեսս,
Եւ սորա խրոխտաձայնեալ՝ ասաց ըզբանս երագաթեւս.
Իցիւ այդպէս առդ բոլոր տրովադացւոցն իցեն Թիկունք՝
Ցորժամ ընդդէմ զինազգեաց աքէացւոց եկեսցեն 'ի կռիւ,
Եւ այնպէս խիզախ եւ սրտապնդոտ՝ որպէս Աստղիկ
Զօրավիգն եկեալ Արեայ՝ խմում բաղխեա ընդդիմահար.
Վաղագոյն յայնժամ եւ մեզ 'ի ձակատե լինէր հանգիստ՝
Ի կործանոյ զԻլիոնի զաշտարակըն չէին եղեալ յաւէր։
Ժըպտեցաւ յայն բան Հերա սպիտակաձեռն աստուածուհին։
Բայց աղեղան Գետնադողդողն բարբառեցաւ առ Ապոլոն.
Մեք ըզմե՞ կամք 'ի բացէ 'ի սկըսանել այլոց, Գուշակ.
Չէ ինչ նոյման, եւ յամօթ կըրթեալց մեզ՝ Թէ անկռիւ
Դառնայցեմք յՈլիմպոս՝ յԱրամազդայ պղնձակերտ տուն։
Զեան արի՝ եկ, զի դու կրտսեր ես 'ի տիոց, ինձ չէ պատեհ,
Զի երէց եմ հասակաւ եւ խելամուտ իրաց բազմաց։
Մանկամիտ, իբր անմիտ 'ի քեզ է սիրտ, եւ ոչ յիշես
Որքանիք անցին ընդ մեզ վիշտք վասն զԻլիոնի,
Մեք միայն յաստուածոց յորժամ եկեալք յԱրամազդայ
Ի վարձու մըտաք վիճսն Լաւմեդոնի մինչեւ ցամ մի
Սակ արկեալ փոխարինացն, յայս արարեալ նա տայր հրաման։

444

Արդ պարիսպ ըղձագալըստեան ես կառուցի արտավազդացւոց՝
Ընդարձակ եւ հաստատալից, զի լինիցի չէնն անվրկանդ։
Իսկ դու, Գուշակ, պյամրեղ անդեայն եւ զկարեւրջիւր արամեկէր
Ի գահս անդ հովտախիա եւ Թաւամուր լերինն Իդայ։
Իսկ ըղկէտ հատուցմանն իբրեւ անդին ցրնծալետ ծառք,
Յամենայն 'ի վարձուց յայնժամ գոռոզ Լաւոմեդոն
Բռնաբար զըրկեաց ըզմեզ եւ արձակեաց ըսպառնալեօք։
Քանզի զքեզ՝ սպառնացաւ կապել ձեռօք կապել ոտիւք
Ի կղզիս հեռաստանեայս վաճառել գերի վաճառականուր,
Եւ պնդէր զերկոցունցս 'ի սուր պղնձի կտրել զականջս։
Եւ մեք յետըս դարձաք քինախնդիր սրտմտութեամբ,
Բարկացեալք վասն վարձուն՝ զոր խոստացեալ ոչ վճարեաց։
Արդ ուրեմն այսր աղագաւ ժողովրդեանն ամենես չնորհ,
Եւ ընդ մեզ չընդդիմանիս՝ զի տրովացիքդ ամբարտաւանք
Կորիցեն 'ի սպառ չարաւ, պարկեշտ կանամբք սրբուծովք հանդերձ։
Եւ Նրմա պատասխանի տեառն Ապողոն կորովաձիգ.
Երկրադղորդ, ոչ երբեք առ իմաստունս ունիցիս զիս,
Ի վերայ մահկանացուաց եթէ եկից ընդ քեզ 'ի վէճ,
Թըշուառիցն՝ որ հայլ ծաղկեալ բարգաւաճեն իբրեւ զտերեւս՝
Ի պտղոց երկրին ուտեալք, եւ հայլ ծիւրեալ ծորեն անշունչ։
Օն անդր 'ի բաց Թողցուք ըղկռիւ, սակայն դոքա Թող մարտին։
Զայս խօսեալ՝ 'ի բաց դարձաւ, զի ակն ածեալ եւ պատկառէր
Ընդ եղբօր հօրն իւրոյ 'ի գուպարած ձեռըն խառնել։
Այլ կշտամբեաց ըզնա յոյժ՝ քոյր իւր բազմէրջնչըն գազանաց
Վայրաստանն Արտեմիս, եւ ձայն կարդաց նախատալի.
Փախչիս արդ, Հեռաձիգդ, եւ զյաղթութիւնն բովանդակ
Թողեր Պոսիդոնի՝ տալեալ ամչան նըմին պարծանս։
Խակամիտ, իսկ արդ առ ինչ կըրես զաղեղն այդպէս ունայն.
Մի եւս ապա 'ի հօր տուն լըւայց ըզքո մեծաբանելդ
Որպէս անդ ուրեմն երբեմն 'ի կաճառել աստուածոց անմահ,
Թէ զի՚նդդէմ Պոսիդոնի բըռնամարտիկ իսկ դոռայցես։
Զայս նա. բայց Ապողոն նետողն առ նա ինչ ոչ ասաց,
Այլ բըրդեալ 'ի բարկութիւն Արամազդայ անկինն արդոյ՝
Սաստիւք Թըչնամանաց պատուհասեաց ըզՆետաձգօղն.
Իսկ արդ դու զիարդ իշխես, շուն լիրբ, յառնել ինձ զինամարտ:
Անհնարին եղէց ես քեզ՝ ընդ իս ուժով դալ 'ի կռիւս,
Թէպէտ ես աղեղնաւոր. զի զքեզ սեաւ կանանց առիւծ
Երեւեցոյց Արամազդ, եւ զոր կամիս ես սատակել։
Դիւրագոյն է ապաքէն հարուլ նետիւ գազանս 'ի սարս
Եւ զեղջերս վայրի, քան ընդ վեհից կըռուել ուժգին։
Իսկ Թէ կամիս, հանդէս արա պատերազմի, զի ուսցիս քաջ
Քանիօն զօրագոյն իցեմ ես գալ քեզ 'ի վըսեր ։

Ասացեալ, եւ բուռն եհար յերկոսին ձեռանն ընդդաստակէն
Ահեկաւն, իսկ աջովն յուսոյ նորին շաղեալ զաղեղն
Եւ նոքիմբք ծեծէր զականջօքն ժպտելով, եւ նա հեւ դայր,
Եւ փըլքինքն երագաթեւք թօթափէին ցան աստ անդ ցիր:
Դիցանոյշն լալագին փախեաւ ներքուստ ձեռաքն նորա
Իբր աղաւնեակ 'ի շահենէ սրացեալ 'ի վէմ մի խորափոր
Ցապաւէն, որ չէր նորա ճակատագիր անկանել որս.
Նոյն նա փախեաւ ողբագին, աղեղն եւ նետս անդէն թողեալ:
Իսկ առ Լետոյ խօսեցաւ պատգամաւորն Արգոսասպան.
Լետոյ, ես ոչ ընդ քեզ մաքառեցայց, զի խիստ է յոյժ
Կռուել ընդ ամուսնոյ ամպրոպայնոյն Արամազդայ.
Այլ ըստ սրտի երթ համարձակ 'ի հրապարակ դիցն անմահից
Պարծեցիր՝ թէ յաղթեցեր ինձ բռնութեամբ քոյ զօրութեանդ:
Զայս ասաց. իսկ Լետոյ քաղեաց ըզկոր աղեղն եւ զնետս
Որ այլ այլուր ցրուեալ կային 'ի մանրամաղ փոշւոյն յորձանս:
Արդ սա զնետսն ամփոփեալ՝ չոգաւ ընդհետ դստերն իւրոյ: —
Իսկ նա եհաս յՈլիմպոս՝ յԱրամազդայ պղնձահիմն յարկ,
Չոգաւ նստաւ արտօսրաթոր դուստր 'ի վերայ հօրըն ծընգաց,
Եւ զեւրեւ դողդողջեալ թըւթուէր խիլայն աստուածեղէն:
Զբըբաւանեան հօրն ընդգըրկեալ ըղնա եհարց քաղցրաժըպիտ.
Ո՞վ զայդ յԵրկնաւորաց արար ընդ քեզ, սիրուն դըստրիկ,
Տարապարտուց իբրեւ ընդ մի ոք խակագործ յայտ անխոզէլ:
Եւ նորա պատասխանի գեղապըսակն Ամփախոյոյզ.
Ամուսին քո զիս ըլկեաց, լուսածըղին Հերա, հայր,
Յորմէ կագք եւ կըռիւք յանմահս հասեալ կան 'ի վերայ:
Սոքա զայսպիսեաց իմն ընդ իրեարս դայրն զբանիւք: —
Իսկ Գուշակն Ապօլոն գընաց եմուտ յԻլիոս սուրբ,
Պարըսպին քաղաքին բարեկերտի ունել խընամ,
Զի մի քան զօրահաս քանդեսցեն այն օր դանայեանք:
Իսկ այլքն յՈլիմպոս դարձան աստուածքն յաւէժակայք,
Կիսոցըն խաժողեալ, կէսք սրդաճեմ բերկեալ նազանս,
Եւ բազմեցան առ ամպաթուխն Արամազդայ. բայց Աքիլլէս
Ըզտրովմեանս եւ զձինաձիս երիվարս խառըն սատակէր:
Եւ օրինակ ծխոյն բոց ելեալ կըցի յերկինս 'ի լայն
Ի հըրդեհս ոստանի, եւ բորբոքէ զայն դից ցասումն
Ածեալ երկս ամենեցուն եւ յոգունց վիշտս հասուցեալ,
Նոյն տըրտմեցուցեալ Աքիլլէս եհար 'ի գլուխ վիշտ եւ զմնաղ:
Ծերունին Պրիամոս յաստուածաշինուէր կայր 'ի բուրգանն,
Հայեցեալ ետես զահեղն Աքիլլէս մեծ, եւ զտրովացիսն
Ի փախուստ հեղեալ զբազեալս յիւրմէն, եւ չգոյր ինչ զօրութիւն.
Եւ գուժիւ մեծաւ ճչեալ՝ եկն էջ 'ի վայր յաշտարակէն
Տալ պատուէր քաջազօտի դարապետացն առ պարըսպին.

Ոչ խուճապի ահաբեկ՝ եթէ զհալածեալն ըմբռնեսցէ զչանց·
Եւ թէ զմիւսն անճապարեալ հարցէ 'ի տեղ կամ 'ի փրկելն,
Նա՛ խոցեալ եւս աշտէիւ՝ ոչ վատթարի յարութենէն,
Մինչեւ կամ ճակատ տուեալ պատահեսցէ, կամ պարտեսցի·
Այսպէս ճեան ըղձանչելոյն Անտենորի՝ քաջն Ագենոր
Չկամէր դառնալ 'ի փախուստ՝ չեւ 'նդ Աքիլլի մարտեալ 'ի փորձ·
Այլ զասպարն համաբոլոր դէմ երեսացն կարկառեալ
Եւ 'ի նա կշտեալ նիզակ՝ աղաղակէր մեծաբարբառ·
Բա՛ յոյս մեծ ստացեալ էիր 'ի միտ, Աքիլլէս վեհ,
Քանդել այսօր ըզքաղաքս տրովադացւոց քաջափառաց։
Խակամիտ, զեռ եւս յոլովք յայնմ վերայ գործեսցին ցաւք·
Քանզի եմք յաճախագունդ 'ի ներքս արեար եւ կորովեաց՝
Որ առաջի սիրելի ծնողաց, որդւոց եւ ամուսնոց
Պահպանեսցուք զԻլիոն· այլ կրեսցես աստ դու զօրհասդ
Ահագինդ այդպիսիդ, եւ ռազմահար քաջախիզախ։
Ասաց, եւ զկշռաւոր աշտէն թըռոյց ծանու ձեռամբ,
Եւ զսրունսն 'ի ներքոյ ծընկանն եհար, ոչ վրիպեալ,
Եւ զնովաւ սռնապանին նորակերտ 'ի յանագէ
Ղօղանջեաց ահագնալուր, եւ յետս ընդդէմ 'ի հարկելոյն
Ոստեաւ սըրղինձն, ոչ շամփրեալ, զի աստուածոյն արգել պարգեւքն։
Իսկ երկրորդ դիմեաց Պելեանն առ Ագենոր դիցն դունակ,
Սակայն ոչ թողացոյց առնուլ նըմա փառս Ապողոն·
Այլ ըզնա յափշտակեալ, թանձրատեսակ պատեալ մըգով
Արձակեաց հանդարտիկ 'ի ճակատէն գընալ 'ի բաց։
Իսկ ինքն օգտեալ յամբոխէն անձամբ նենգաւ ըզՊելիդեանն·
Զի նըմին Ագենորի առեալ ճշգրտաբար կերպարանս՝
Կայ 'ի դէմս ընթացիցն, եւ նա ճեպէր ոտիւքն ըզհետ։
Մինչ ինքն ըզնա հալածական վարէր ընդ դաշտ արդիւնաբեր
Շրջեալ առնել ըզգետափն յորձանախաղ Սկամանդրոսի,
Ապոլոն դոյզն ինչ եւեթ յառաջելով պատրէր մանկաւ,
Մինչ զի ակն ունել միշտ՝ իւրով ոտիւքն հասանելոյ·
Այլ տրովէանք փախըստականք՝ 'ի նմին պահու միահամուռ
Խըռնախռնմբոց մըտին յամուրն· եւ գունդագունդ խըռնէր քաղաքն։
Այն զի ոչ կալան նոքա ժոյժ մընալոյ միմեանց արտաքս
Ի շինէն եւ պարըսպէն, եւ գիտելոյ՝ թէ ո՛վ ապրեալ,
Եւ ո՛վ մեռեալ 'ի պատերազմին· այլ 'ի քաղաքն հեղուին փոյթ
Զո՛ եւ որ 'ի նոցանէն ոտք ինչ եւ ծունկք հանէին յանդորր։

607

Ալեւորըն Պրիամոս նախ ինքըն եղեւ ականատես
Զի՛նք դաշտըն գայր սրաւարեալ փայլակնացայտ՝ 'ի մէջ աստեղն
Որ ելանէ աշնանի, եւ ճառագայթք իւր լուսաբուխ
Կարկաջէն խոր գիշերաց 'ի բազմաբոյլ աստեղաց պարս,
Զոր եւ շունն անուանեն Որիոնի՝ յորջորջանօք,
Քան ըզբնաւս ճաճանչաւէտ, բայց է նշան չարագուշակ,
Եւ յորձուտ տօթ տապախառն ածէ 'ի հէք մահկանացուս.
Ցոլմանն այսպէս սորա՝ փայլատակէր պղնձեն 'ի լանջս:
Ճիչ եբարձ ծերունին, եւ ըզդաստակսն համբարձեալ
Ծեծէր ըզգլուխն, եւ գուժիւ կականալից աղաղակէր
Աղաչէր զսիրուն որդեակն, իսկ նա հանդէպ դըրանցն կայր
Բորբոքեալ սրտի մտօք ընդ Աքիլլէի տալ պատերազմ:
Կարկառեալ ծերոյն զբազուկսն՝ ողորմ ողորմ առ նա գոչէր.
Մի՛, Հեկտոր, մի՛ կալ մընար առնըդ այդմիկ, սիրուն որդեակ,
Միայնակ Թափուր յայլոց, զի մի՛ հասցէ քեզ վաղ օրհաս
Ի Պելեանն բաղկէն մահուամբ, զի բռնազօրն է կարի յոյժ:
Ժանտաժուտ, տա՛յր ոք ինձ՝ Թէ այնչափ դից էր սիրելի՝
Որչափ ինձ, վաղ էր ծախեալ շանց եւ անգեղց ըզգէշ նորա,
Եւ սրտիս ծանրաթախիծ ցաւ փարատեալ անհետեւան:
Նա զիս անզաւակեաց յորդւոց բազմաց եւ կորովեաց՝
Կոտորեալ եւ վաճառեալ կըղզեաց կըղզեաց հեռաւորաց:
Եւ զերկուս ահա յորդւոցս, 'ի գալ կուտել արտմեանց յաստանս,
Ոչ կարեմ նշմարել՝ ըզԼիկայոն եւ զՊօլիդոր,
Զորս երկնեաց ինձ 'ի կանայս ազնուազոյն Լաւոթոյէ:
Իսկ կենդանի թէ կայցեն 'ի ճամբարին, ըզնոսի ուրեմն
Ոսկւով եւ արծաթով հանցուք 'ի մեզ, զի կան 'ի տան.
Զի բազում օժտեաց դըստեր իւրում Ալտես հռչականուն ծեր.
Այլ զրաւեալ եթէ իցեն, անդ ընդ յարկաւ իսկ Դըժոխոց
Կըսկիծ ցաւն խոցում սըրտիս եւ մօր նոցին ծնողացս իւրեանց,
Իսկ այլոց 'ի ժողովրդս եղիցի սուղ դիւրամոռաց,
Եթէ մի՛ եւ դու մեռցիս յԱքիլլէսէ բռնահարեալ:
Այլ, որդեակ իմ, եկ մուտ ընդ պարըսպաւ, զի կեցուսցես
Զարս եւ զկանայս տրովացւոց, եւ մի՛ տացես Պելիանծնին
Պարծանըս մեծ, եւ 'ի քաղցրըր արեւէդ անկցիս եւ դու:
Ողորմեա եւ եղկելւոյս ինձ տակաւին ողջամըտի,
Թըշուառիս՝ զոր Զըրուանեանն հայր տատ առ սեամս ալեւութես
Դըժնէ բախտիւ կորուսցէ զանցեալս ընդ փորձ բազում վըշտաց,
Ըսպանելոց որդեկացս եւ զդստերացըս գերելոց,
Քանդելոց առագաստից եւ մանկըտւոյս մատաղերամ
Ըզգետնի հարելոց 'ի խոր խոցեալ պատերազմի,
Եւ նըւանցըս քարշելոց 'ի ժանիրհ ձեռացն աքայեցւոց:
Եւ զիս Թերեւս հուսկ ուրեմն, ուր սուր պղնձով 'ի անէգ կամ նետ

Հարեալ ուրուք՝ յանդամոցս 'ի բաց զոգիս իմ կորուսցէ,
Գէշ գէշ ցըրցըռեսցեն շաղգանիք շունք ընդ անդաստանս,
Զորս 'ի սան խմում սնուցի՝ սեղանակից ինձ պահապանս,
Որ յարիւնս իմ արբեցեալ, գազանացեալ յոգիս ատամբք՝
Ի պատիւթս իմ գընեցեն : Պատանւոյ միշտ է վայելուչ
Անկանել մարտից 'ի սայրն պատառեալ 'ի սուր պղնձոյ.
Զի գեղեցիկ է 'ի մեռեալն ամենայն որ զինչ հայեսցի :
Իսկ զալեւոր յորժամ զգլուխ, եւ ըզմօրուս ալեւորեալս
Եւ զամօթ խայտառակեն ըզծերունւոյ սատակելոյ շունք,
Այն է յոյժ ողորմելի թըշուառականն մահկանացուաց :
Ասաց ծերն, եւ խուռնյեն քարշեալ ձեռօք զծաղկեալ ալեան
Ի գըլխոյն ցըռէր փետէր, այլ չոգոջէր զմիտս Հեկտորի :
Մայրն անդուստ յայլմէ կուսէ գործէր ողբովք լայր եւ աշխար,
Լանջս եւ ծոց մերկացեալ, միւսով ձեռամբն հանեալ զստինն՝
Ըզգալացանթեւ բանս առ նա հեկեկալով բարբառեցաւ.
Հեկտոր որդեակ իմ, յայսցանէ պատկառեսջիր եւ յիս գըթա,
Թէ երբեք ցաւոցածոյց մատուցի քեզ ըստին 'ի լալն,
Յուշ քեզ այն, սիրուն զաւակ, եւ յախոյեանս անդէն վերծիր
Մըտեալ 'ի ներքս 'ի պարիսպս, եւ մի՛ նըմա կալ նահատակ.
Վայրագ, որ թէ ըզքեզ սպանանիցէ, ոչ եւս ուրեմն
Ցանկալիս ըզքեզ լացից, սիրուն բողբոջ՝ զոր ես ծընայ,
Եւ ոչ կին քո յոգնօժիտ, այլ մեկուսի ըզքեզ յոյժ 'ի մէնջ
Առ նաւուքն արգիացւոց շունք կերիցեն երագասունք :
Այսպէս տըքա՛նք սիրելի որդին լալեօք բարբառէին
Բազմապաղատ աղերսիւ. այլ զՀեկտորի միտս ոչ հաճեալ
Աքիլլեայ նա կայր մընայր ահաւորին՝ որ հասանէր :
Եւ զորէն վիշապ վայրագ 'ի ժանտաբուխս ճարակեալ դեղ՝
Սպասէ առն 'ի կաղաղին, եւ բարկ 'ի նա մըտանեն զայրոյթք,
Եւ հայի ահաւորագոյն՝ գալարս առեալ զորջովքն շուրջ,
Հեկտոր այսպէս անշէջ մըրրկեալ հոգւով չըտայր տեղի,
Յեցուցեալ զփայլուն ասպարն 'ի կարկառեալ ոտն ինչ բըրգան :
Բայց առ մեծամեծ իւր ոգի բարբառեցաւ նեղասըրտեալ.
Եղո՛ւկ զիս. զի թէ նա գրունս եւ ընդ պարիսպս անցից 'ի ներքս,
Առաջին Պուղիդամաս ինձ թըշնամանս դընիցէ,
Որ խըրատն ետ 'ի քաղաք առնուլ ածել ինձ ըզտրովեանս
Ըզկորուսիչ գիշերաւ՝ յոր Աքիլլեւս յարեաւ դիւցազն,
Եւ ես ոչ անսացի, եւ օգտակարն լինէր արդեօք :
Իսկ զի այժմ ըզժողովուրդս կորուսի՝ կամակորեալ,
Ամաչեմ 'ի տրովացւոց, 'ի քօղաշուք եւ տրովուհեաց,
Զի քան զիս գուցէ այլ վատթարագոյն ոք ասիցէ.
Հեկտոր յանձն եւ 'ի կորով իւր ապաստան՝ զաղքըն կորոյս :
Զայս ասասցեն. եւ ինձ յոյժ պատկանեսցի յայնժամ յօգուտ՝

Զի թերեւս 'ի վերուստ լցցեն օգնել նոցին նետիւք ,
Նոյնքանիցս անձապարեալ վանել ըղնա յառաջ 'ի դաշտ ,
Բայց եւ նա դարձեալ անդրէն մերձ 'ի քաղաք կայս սրընթայր :
Զոր օրինակ հասանել ընթացեալս չէք ինչ յանուրջս ,
Ոչ փախուցել մին 'ի միւսմէն , ոչ ժամանել կարէ միւսոյն ,
Ըմբռնել նոյնպէս ոտիւք սա զնա չմարթէր , ոչ նա զերծուլ :
Եւ զիարդ էր Հեկտորի յօրահասէ մահուն ապրել ,
Թէ զայս յետին նուագ եւ վերջին ոչ Ապողոն մատչէր առ նա ,
Որ զարթոյց ըզզօրութիւն նորին եւ զծունկսն ձեռնէր :
Իսկ գլխացուցարձն Աքիլլէւս սաստէր դըլխովն 'ի զօրականն ,
Եւ նետիւքըն դառնաթոյն ձիգ 'ի Հեկտոր չըտայր դընել .
Մի խոցեալ ուրուք տարցի զպարծանսն եւ ինքն երկրորդ գայցէ :
Իսկ յորժամ չորիր նուագ ժամանն եղեն յաղբերակունսն ,
Ապա եւ յայնժամ զոսկեղէն կշիռսն Հայրն եհան 'ի վեր ,
Ի նոժարսն ընկէց երկուս երկարաձգուն մահուն վիճակս ,
Ըզմինն՝ Աքիլլի , զմիւսն Հեկտորի ձիահըմտին ,
Եւ զմիջոյն կալեալ ամբարձ , եւ Հեկտորեան օրհասին բաշխ
Ի դժոխս էջ մէտ 'ի մէտ . Գուշակն եւս զինքն Ապողոն :
Եւ առ Պելեանն՝ Աթենայ հասեալ խաժակն աստուածուհւոյն ,
Առ ընթեր մատուցեալ՝ բարբառեցաւ զթեւաւոր բանս .
Այժմ ունիմ արդ , սիրելիդ Արամազդայ՝ վեհդ Աքիլլէւս ,
Մեզ պարծանօք մեծ ածանել աքայեցւոց 'ի նաւատորմն
Ըսպանեալ ըզՀեկտոր զանյագադայնն 'ի պատերազմ :
Չիք արդ այլ եւս նմա փախըստական ապրել 'ի մէնջ ,
Եւ ոչ թէ յոյժ իմն Ապողոն կարօտանձնեալ աշխատ լիցի
Առ ոտս հօրն ասպարակրին Արամազդայ թաւալելով :
Սակայն դու կաց առ անդէն եւ շունչ առ , եւ ես երթամ
Եւ ըզսա ես հաճեմ՝ կալ դուպարել ընդ քեզ 'ի մարտ :
Զայս ասաց Աթենաս , եւ նա բերկրեալ հոգւովն անսաց ,
Եւ եկաց 'ի վերայ պղընձատեգ հացուոյն 'ի յեց :
Իսկ նորա թողեալ ըզնա՝ 'ի գիւտայինն Հեկտոր չոգաւ
Նմանեալ եւ անվրէպ ձայնիւ հանգոյն Դէիփոբեայ .
Եւ կացեալ առընթեր՝ բարբառեցաւ ըղթըռչուն բանս .
Ձիգ ըղհետ մըտեալ , եղբայր , տարաժամէ զքեզ ժիրն Աքիլլէւս
Զբաստանիւքս Պրիամեան երագ ոտիւքն հալածելով .
Ե'կ աղէ՝ զանեղն տացուք եւ պընդապէս կացցուք ըղդէմ :
Եւ նմա պատասխանի մեծըն Հեկտոր սաղաւարտաձօձ .
Ցիրաւի , Դէիփոբէ , ինձ սիրելի էիր կանխաւ
Ի մէջ եղբարց զոր Պրիամոս եւ Հեկաբէ ծընան որդիս ,
Եւ այժմ եւս առաւել զընեմ 'ի մտի մեծարել զքեզ ,
Քանզի՞ նդ յակն արկանելդ՝ յանձին կալար իմ աղագաւ
Ելանել ըստ պարիսպն , իսկ այլք 'ի ներքս անդ կան մընան :

Առ նա կըրկնեալ Աթենաս ասէ խաժաչն աստուածուհին.
Եղբայր՝ յոյժ աղաչէին արդարեւ հայրն եւ մայր արդոյ
Եւ ընկերք միահոյլ՝ զծընկօք փարեալ մի՛ առ միոջէ
Մնալ ինձ անդ, զի այնպիսի դողայ հարեալ կան համօրէն.
Սակայն անձն իմ յիս 'ի ներքս յանհընարին սուգ տառապէր:
Օ՛ն արդ այժըմ զէմ ընդ զէմ մաքառեսցուք արիաբար,
Մի՛ արգեանց ինչ աշտեցի խընայ, տեսցուք թէ Աքիլլէս
Հարեալ ըզմեզ՝ արիւնոտ տարցի՞ կապուտ 'ի գոգեալ նաւսն,
Եթէ թերեւս 'ի քումմէ գեղարդանէդ անկցի տապաստ:
Զայս ասէր Աթենաս եւ նենգանօք կարապետէր:
Իսկ յորժամ ընթացեալ հասին սոքա հուպ առ միմեանս,
Առ նա նախ բարբառեցաւ մեծըն Հեկտոր կորդակախոռոս.
Ոչ եւս այլ, որդիդ Պելեայ, երկեայց 'ի քէն որպէս յառաջին
ԸզՊրիամու մեծ աստանօր փախեայ երիցս, ոչ ժուժեցի
Կալ առաջի եկից քոյ. բայց այժմ հոգիս զիս յորդորեաց
Ի դէմ քեզ հարկանել, զի կամ սպանից կամ զրաւեցիմ:
Այլ արդ եկ՝ ըզդիսն ընդ մեզ կալցուք վըկայս, նոքին լիցին
Վեհագոյն երաշխաւորք եւ ստուգանք պաշտանցս ուխտի.
Մի՛ ես ըզքեզ զըզուեցից զըժնէաբար թըշնամանօք՝
Թէ ինձ տայցէ ժոյժ Արամազդ, եւ ըզհոգիդ քո խլեցեմ.
Այլ աւար առեալ 'ի քէն ըզզըքնաղ զէնսդ, Աքիլլէս,
Տաց աքայեցւոց ըզմարմինդ, ըզնոյն եւ դու՛դ իս արասցես:
Ակնարկեալ շոյան Աքիլլէս 'ի նա տխզաք ասաց՝, ասէ.
Մի՛ նդ իս, Հեկտոր՝ զըժտըրհեդ, ըզպայմանաց ինչ բան ճառեր.
Զոր օրինակ առիւծուց եւ մարդկան չիք ինչ ուխտ անենեղ,
Եւ ոչ գայլք եւ գառինք հաւանընկերք միաբանեն,
Այլ չարիս միշտ 'ի վերայ խորամանգեն միմեանց անդուլ,
Նոյնպէս ոչ գոյ ինձ եւ քեզ գալ 'ի համբոյրս, եւ ոչ դաշինք
Եղիցին մեզ բընաւ, չեւ միոյն զի անկեալ թաւալ
Տալ արեամբն յագուրդ Արեայ՝ զըժոխախեռ գուպարողի:
Զամենայն ազդ քաջութեան յաչըս քո դիր, պէտք յոյժ արդ
Լինել քեզ կորովաձեգ եւ քաջապինդ պատերազմօղ:
Չիք քեզ այլ եւս ինչ փախուստ, եւ Աթենաս ըզքեզ Պալլադ
Նուաճեսցէ փոյթ յիմ աշտէն, այժմ հատուսցես միահաղոյն
Զհամօրէն ցաւս ընկերացս որ 'ի մըկունդ մոլեալ սպաներ:
Ասաց, եւ ճօճեալ զերկայնաստուերն ընկէց նիզակ.
Զոր տեսեալ 'ի հանդիպոյն՝ խուսեաց Հեկտոր շըքեղաձոխ,
Զի նախատես լեալ նըստաւ, եւ պղընձի տէգն անց 'ի վերուստ՝
Վարսեցաւ 'ի գետին, զոր Աթենաս խըլեալ Պալլաս,
Աքիլլեայ՝ գաղտ յիշխանէն արանց մատոյց 'ի Հեկտորէ:
Իսկ Հեկտոր առ հրաշակերտըն Պելիդեան բարբառեցաւ.
Վրիպեցեր, Աքիլլէս աստուածանման, եւ ոչ ծանեար

Թէ եհաս Ճակատագիրս յԱրամազդայ, բայց ասացեր.
Այլ խօսող ոք զըլար եւ խաբեբայ նենգապատիր,
Զի զերկիւղ եւ զարութիւն յանհէ քումմէ մոռացայց ես։
Բայց ոչ յետս 'ի փախըստեայ հարցես նիզակ ընդ թիկնամէջս,
Այլ 'ի կուրծըս զեղտուղեր վարեալ մըխեա յարձակելոյս՝
Թէ աստուած են քեզ, եւ արդ յիմմէ պըղնձի ուրեք խուսեա,
Զոր ո՛ տայր՝ թէ ամփոփեր զայն ամբողջակ 'ի քո մարմինդ.
Ցայնժամ քով ստատկելով թեթեւագոյն լինէր արդեօք
Տրովադացւոցս պատերազմ, զի դու նոցին եղեալ ես մեծ։
Ասաց, եւ ճօճելով զնիզակն հարկ զերկայնաստուեր,
Եւ զետեղեաց անվրէպ 'ի պորտաւորն վահանի Պելիադեանն.
Բայց 'ի բաց թօթափեցաւ անտի յասպարէն, ցասեաւ Հեկտոր
Զի աշտէն երագաթեւ 'ի զուր սլացաւ յիւրմէ բազկէն։
Եւ եկաց կոր 'ի գլուխ, եւ չէր եւս այլ զեղարդն հացի.
Եւ ձայնէր զԴեյիփոբոս սպիտակավահանն ուժգին գոչմամբ,
Եւ խնդրէր 'ի նմանէ մըկունդ երկայն, իսկ նա չէր մերձ։
Խելամուտ եղեւ Հեկտոր յիւրում սրտին եւ խօսեցաւ.
Վա՜հ, անշուշտ դիք յայտնապէս հրաւիրեցին զիս առ'ի մահ,
Զի զդիւցազն համարեցայ զԴեյիփոբոս ընդ իս լինել,
Սակայն նորին 'ի պարըսպին, եւ զառանցեաց զիս Աթենաս։
Իսկ արդ մերձ առ իս է մահ եղեռնաւոր, եւ ոչ հեռի,
Եւ չիք հրաժեշտ, զի հաճոյ 'ի նախնումսն այսպէս եղեւ
Արամազդայ եւ Նետաձիգն՝ որդւոյ նորա, որ զիս կանխաւ
Մըտադիւր պահպանեցին, իսկ այժմ Օրհասս յիս ժամանէ.
Սակայն մի՛ վատաբար կորիցայց բընաւ անփառունակ,
Այլ մեծապարծ ինչ գործեալ եւ ապագայիցն արժանալուր։
Զայս խօսեալ եւ ձըգեալ ըզսուրն հատու վաղակատար՝
Որ կախեալ կայր զաղդերէն՝ ըզմեծամեծն եւ զմեծատարր,
Եւ կըծկեալ ընթացաւ երբեւ արծուի բարձրաթըռիչ՝
Որ յամպոց խաւարային պարզեալ 'ի դաշտ սաստկապէս
Յափըշտակել զորոջ մատաղ կամ զնապաստակ վատաբախտս,
Նոյնպէս Հեկտոր խոյացաւ շողացուցեալ ըզսայրըն սուր։
Սըրացաւ եւ Աքիլլեւս, սիրտ ամեհի լի բարկութեամբ,
Եւ ծածկոյթ արկ ըզվահանն 'ի հանդիման լանջաց իւրոց
Ըզչքընաղն արուեստակերտ, եւ սաղաւարտ չորեքխորան
Տատանէր փայլակնացայտ, եւ գեղափայլ ծածանէին
Ոսկեզէնք զորս Հեփեստոսն էր 'ի խորանան անդ արկեալ հոծ։
Որպէս 'ի խոր գիշերի յարփիայն աստղս առաջ ընթանայ
Գիշերավարըն կառուցեալ գեղեցկագեղ աստղ 'ի յերկինս,
Ցոլանէին այսպէս նշոյլք 'ի սուր սըլաքէն զոր Աքիլլեւս
Հեկտորի դիւցազնածին խորհեալ ոճիր՝ ճօճէր յաջում
Ի կայտառ գիտեալ իրանն, ընդ ո՛ր լիցի զէն դիւրամուտ։

Եւ զնորա մարմինն ողջոյն պատէին զէնքըն պղնձաձոյլք,
Գեղեցիկք, զոր կողոպտեաց ՚ի Պատրոկլէ սպանեալ ըզքաջն.
Այլ երեւէր, ուր անրակըն յօդէն յուսոց ՚ի պարանոց,
Ըմպանափողն՝ յորում եւ է հոգւոյն կորուստ երագահաս:
Ընդ այն զիւցազն Աքիլլեւս ՚ի յարձակմանըն ՚ի վերայ իւր
Մըխեաց զտէգն, եւ ընդ փափուկ ուլն եղ սըլաքըն թափանցանց.
Բայց հատէին պղընձաղէն ոչ ըզկոկորդըն խըզըրատեաց,
Մինչեւ չկարել ինչ խօսել նըմա բանիւք պատասխանի:
Զգետնեցաւ ՚ի փոշւոջ, եւ Աքիլլեւս պանծաց զիւցազն.
Ասէիր երբեմն, Հեկտոր, ՚ի կողոպտելդ ըզՊատրոկլոս,
Անպատուհաս կալ յինէն հեռաւորիս ուէն ինչ չածեալ:
Գանգտյր, նըմա մեծապոր քէնախնդիր անդ ՚ի բացէ
Ի քաջախալն նաւատորմս ըստ նըմանէն մնացեալ եմ՝
Որ ըզծունկըս քո լուծի. եւ արդ ըզքեզ շունքն եւ հաւք
Կեղեքեսցեն զեշաբէշ, իսկ զնոյն ազգանք յուղարկեսցեն:
Եւ յոգնեալ ապաստան սաղաւարտաճօճն ասէ Հեկտոր.
Վասն արեւուդ եւ ծընկացդ, յանուն ծնողացըդ պաղատիմ,
Մի՛ նետեսցես զիս առ նաւսդ՝ պատառեցելոց կեր լինել շանց,
Այլ պղինձ եւ ոսկի բազում առեալ քո ՚ի պարգեւ,
Զորըս հայր իմ եւ մայրըս մեծարոյ մատուսցեն քեզ,
Ըզմարմինս ՚ի տուն դարձո, զի զմահացեալս՝ ՚ի հրոյ խարոյկ
Վիճակեսցեն տրովացիք եւ ամուսինք տրովագացւոց:
Երագոտն Աքիլլեւս խոժոռակերպ ակնամբ ասէ.
Մի՛ դու, շո՛ւն, ծընկօքս խնդրել զիս աղաչեր, եւ մի՛ ծնողօքս.
Ցանկամ՝ սիրտ իմ զիս ինքն եւ զայրացուցեալս յօժարէին,
Յօշել ողջ ողջ ուտել զմարմինդ յոր սակս ինձն արարեր.
Վասն որոյ եւ չիք ոք այն՝ որ ՚ի գըլխոյդ վանեսցէ զշունս,
Նա եւ ոչ՝ տասնապատիկ, քսանապատիկ նոյնչափ պարգեւս
Այսր ածեալ թէ կըշռեսցեն, եւ ուխտեսցեն այլ եւս յոլով.
Նա եւ ոչ՝ եթէ ոք ոսկւոյ բառնալ ըզքեզ տացէ հրաման
Դարդանեանն Պրիամոս, եւ ոչ այնպէս արդ քո մայր
Ցանկողին կողմնեցուցեալ կոծեսցէ զքեզ զիւրըն ծընունդ.
Այլ ծըւռձեսցեն զքեզ ողջոյն պատառ պատառ շունք եւ թըռչունք:
Իսկ Հեկտոր կորդակաձօձ յոգւոց պարզելն ասէ առ նա.
Հայեցեալ ՚ի քեզ ուշիւ՝ ՚ի միտ առնում թէ չգոյր ածել
Զքեզ յաղերս, զի սիրտ անշուշտ ՚ի լանջըս քում է երկաթի:
Այլ արդ տես, զի ինչ գուցէ վրէժխնդրութեան քեզ առնիցիմ
Յաւուրն յորում Պարիս եւ Ապողոն Գուշակին ըզքեզ
Կորուսցեն ըզքաջայաղթըդ հուպ առ դրունս Սկէականց:
Ի խօսել իւրում զայս անկաւ զնովաւ վախճան մահու,
Եւ հոգին յանդամոցըն սըլացեալ էջ ՚ի դըժոխս
Ընդ բախտն իւր ճըչելով, թողեալ զարբունսն եւ զարութիւն:

Առ նա դիւցազն Աքիլլեւս եւ առ անշունչ բարբառեցաւ.
Մեռիր դու. իսկ ես զՕրհասն՝ ուր կամք իցեն Արամազդայ
Եւ այլոց դիցն անմահից դընել վըճիռ՝ անդ ընկալայց :
Ասաց՝ եւ 'ի դիոյն ձըգեալ եհան զարդմնըն պղընձի,
Եւ եդեալ զայն 'ի մի կողմ, զարիւնոտ զէնսն յուսոց զերծայր.
Իսկ 'ի վայրն ընթանային այլ եւս որդիք աքայեցւոց,
Հայէին սքանչացեալք ընդ հրաշալի գեղն եւ հասակ
Հեկտորի՝ առ որ չեկաց ոք մերձ առանց վէրըս տալոյ :
Եւ այր յընկեր ակնարկեալ՝ բարբառէին զայս առ միմեանս.
Ո՛վ զարմանք, քանի՜ կակուղ եւ ձեռնընդել է այժմ Հեկտոր,
Քան յորժամ հուր 'ի նաւսն եհար բոցով բորբոքելով:
Զայս ասէր իւրաքանչիւր՝ եւ մատուցեալ խոցէր ըզնա :
Իսկ քաջոտն Աքիլլեւս դիւցազն առեալ ըզկողոպուտսն՝
Ի մէջ անդր աքայեցւոց կացեալ զթըռչունս խօսեցաւ բանս.
Ո՛վ սիրելիք, զօրագլուխք աքայեցւոց եւ առաջնորդք,
Քանզի զայրըդ զայդ աստուածք 'ի պարտութիւն մատնեցին ինձ,
Որ քան զայլսն ամենեսին բազում ընդ մեզ գործեաց ոճիրս,
Ո՛ն եկայք անցցուք զինուք ըզքաղաքաւս 'ի հանդէսի,
Զի խելամուտ լինիցիմք՝ տրովադացւոց զինչ միտք իցեն.
Թէ զբըրգեակ քաղաքին լըքանիցեն անկմամբ տրոա,
Եթէ տակաւ ժըռեսցին եւ յետ մահուանըն Հեկտորի :
Այլ ըզի՞ զայդպիսիկ բարբառեցի առ իս իմ սիրտ :
Անդ անսուգ եւ անթաղ անկեալ դընի մեռեալս առ նաւս,
Պատրոկլոս, զոր չմոռացայց մինչեւ իցեմ 'ի կենդանիս
Եւ ծունկք իմ սիրելիք 'ի քայլափոխս շարժիցին :
Եւ 'ի Դըժոխս իսկ մեռեալքն եթէ իցեն անյիշատակ,
Սակայն ես եւ անդանօր զսիրուն ընկերս ընդ ուշ ածայց :
Արդ եկայք, աքայեցւոց մանկունք, նուագեալ զյաղթողականն՝
Ի խորափոր նաւատորմն արասցուք դարձ, տարցուք եւ զսա :
Գործանք մեծ ժառանգեցաք, սատակեցաք զդիւցազն Հեկտոր,
Ում պաշտօն տանէին տրովեանք յաստանն իբր աստուածոյ :
Ասաց, եւ 'ի դիւցազն Հեկտոր կազմէր գործ անարժան.
Զերկոցուն ոտից կըրնկանց ծակեալ յետուստ կուսէ զըղձգունս
Ի ներբանից մինչ 'ի կոճս, եւ խըրացս արկեալ արջառենիս՝
Ըզկառացըն կապեաց, եւ զգլուխն եթող դընալ ընդ քարշ.
Եւ յերկձիսն անդ ամբարձեալ՝ առեալ եւ զզէնսըն պերճափայլ՝
Մըտրակեաց յառաջելս, եւ թըռչէին նոքա յորդոր :
Եւ 'ի քարշ ձըգել նորա մըրրկէր փոշին, եւ գէսքըն սեաւք
Ըզվայրօք ածէին եւ կայր հողեալ գըլուխն ողջոյն,
Որ երբեմն էր շնորհալոյս, բայց Արամազդ մատնեաց յայնժամ
Ոսոխացն 'ի թըշնամանս 'ի հայրենի երկրին իւրում:
Այսպէս սորա գլուխն համակ հողաթաւալ կնայր ընդ փոշի :

Իսկ մայրն ըղձերազն փետէր եւ զպայծառ քօղն ընկէց 'ի բաց,
Եւ յորդեակն իւր հայեցեալ՝ գուժեաց ուժգին մեծաձայն։
Աշխարէր ողորմ ողորմ սիրելին հայր, եւ ժողովուրդն
Համօրէն ընդ սուսանն 'ի ճիչ եւ յողբ կայր համակեալ.
Նըման յոյժ էր կերպարանքն՝ իբր Իլիոն թէ բարձրայօն
Հիմն 'ի վեր հարթայատակ հրդեհակէզ սատակիցի։
Հազիւ հազ թէ ամբոխք ըղոըխրալից ծերն ունէին
Որ ընդ դրունսն Դարդանեան ելանել գուն գործէր 'ի դուրս,
Թախանձէր զամենեսին ընդ աղբ թաւալով ու՛ոք ապաւառ,
Ցանկանէ յանուանէ կարդալով զայր իւրաքանչիւր.
Ի բաց կացէք, սիրելիք, թէպէտ 'ի սուգ, թո՛ղ սուք միայն
Ելանել ընդ քաղաքս եւ յաքայեանց դիմել 'ի նաւս.
Զայրըդ զայդ աղաչեսցեմ զեղեռնաւոր եւ ոճրագործ,
Թերեւս ակն 'ի հասակէս ածցէ, ալեացս ողորմեսցի։
Զի եւ նա իսկ այսպիսի է տղաքէն հայրըն Պելէոս՝
Որ զնա ծընեալ եւ սնուցեալ տրտմագացեալ 'ի պատուհաս,
Մանաւանդ ինձ առաւել քան բոլորից՝ ցաւոց մորմոք։
Զի զայնչափ զիմ մանկանցն զուարթածաղիկ արկ յարեւէ,
Զորս ոչ այնպէս ողբամ զամենեսին 'ի կըսկիծս իմ,
Որպէս ըզմեդ զայդ որոյ սուգ ծանր 'ի Դըժոխս իջուսցէ զիս,
Ըզհեկտոր, զոր ո՛ տայր թէ սա 'ի գիրկս իմ մեռանէր.
Զի յագենայ յագէաք ողբովք մերովք եւ արտասուօք
Մայրըն չուառական ծընող նորա եւ ես ինքնին։
Զայս ասէր լալահառաչ, եւ քաղաքքն հեծէր ամբոխ։
Իսկ 'ի կանանս Հեկաբէ հեծեծանացն առաջ ըսկըզբն.
Դառնաձայնէր հիքէս աւ ինչ կեցէ, որդեակ, յետ քո մահուդ
Զարիւ տեսանել, որ ինձ 'ի տուէ եւ գիշերի
Էիր փառք յաստանիս, եւ ընդ քաղաքս համօրէն օճան,
Տրովացւոց եւ արտաւահեաց, զոր իբր աստուած ողջունէին.
Զի էիր նոցա պարծանք մեծ ճշմարտիւ 'ի կենդանւոյ քում,
Իսկ այժմ առաջիկ Օրհաս ըզքեզ ունի եւ մահ։
Զայս ասաց ողբաձայնիւ. կինն Հեկտորի չէր իրազեկ,
Զի ոչ չոգաւ ոք առ նա աստուածապատում զըրուցաւոր՝
Ազդել նըմա զի էր այր նորա մնացեալ արտաքոյ դրանցն.
Այլ նա յայլս ներքին տանըն բարձու կըկէր ոստայն,
Ծիրանի ձորձ երկզգեստ՝ պէսպէս ծաղկեալ նըկարակերպ։
Պատուիրեալ ընդ աղախնեան էր աղախնանց վարսագեղից
Կազմացանել 'ի խարոյկ հրատին ըզմեծն յեռոտանիս
Ի ջերմաջուր Հեկտորի լուացումն 'ի դարձ պատերազմին։
Մեխամիտ. ոչ իմանայր՝ զի յոյժ 'ի բաց 'ի լոգանաց՝
Ըզնա խաժաչն Աթենաս պարտեալ 'ի ձեռն էր Աքիլլեայ։
Ձայն գուժի եւ կականման յունին իւր հընչեաց յաշտարակէն,

Ըղձալի հարսին անդամոցն, 'ի ձեռանէն անկաւ կրկոյն,
Եւ անդէն ձայնարկեաց առ գանգրագեղ նաժշտամանիսն.
Օ՜ն արդ ընդ իս երկուք, երթայց տեսից զինչ գործեցաւ.
Ձայն լսեմ ըզմեծարոյ սկեսրիս, եւ յիս 'ի լանջըս իմ
Թընդայ փաղէ սիրտս 'ի բերան, ծունկքս 'ի ներքոյ 'ի պաղ մածնուն:
Մօտալուտ հասանել արդեւոյն է Պրիամու եղեան անշուշտ.
Քա՛ւ բանդ այդ յականջանէս, այլ մեծապէս յոյժ երկընչիմ,
Գուցէ զդիւցազն Աքիլլէս զքաջայանդուգն իմ ըղձեկանը
Միայնաւոր հասանել ընդ դաշտն 'ի քաղաքէս հալածական՝
Ածնիցէ նըմին զըրաւ 'ի չարաշուք արութենէն
Որ 'ի նմայն էր ատրրայցեալ, զի չկայր երբեք 'ի խառն արանց,
Այլ յառաջակ յառաջակ խաղայր, քաջութեամբ ոչ ումեք յետնորդ:
Զայս ասաց, եւ 'ի տանէն արտագաւ հանգոյն ցընորելոյ
Սիրտ 'ի թունդ եւ 'ի դող. զնովին ընդ իւր եւ աղախնայք:
Իսկ հասեալ յաշտարակն եւ 'ի մարդկանն ամբոխակոյտ,
Եւ կացեալ 'ի պարըսպայինն՝ շուրջ ած զաչերն, եւես ըզնա
Քաղաքէն զէմ յանդիմանն ընդ քարշ վարեալ. եւ ըշխան երագ՝
Զի ձգէին զնին անողորմ 'ի դատարկ նաւս աքայեանց:
Գիշեր խաւարակուռ մածեալ ծածկեաց զականակսն,
Ցետըս կոյս գլորեցաւ, ոգի զոգաշուն անկեր նըւաղ:
Ի բաց հոսեաց 'ի գըլխոյն զակերձաձայքան զարդուցըն շուք,
Զապարօշն, ըզծամակալ եւ զփողոշակն իւր ըղձկոտէն,
Եւ ըզքօղըն զոր Ասպազեան ոսկեգլխեկ նըմա շնորհեաց
Ցաւուրն՝ յորում զնայն էած Հեկտոր սաղաւարտաձօձ
Ի տանէն Էտիոնեայ՝ բիւրս 'ի բիւրուց տըւեալ վարձանս:
Եւ զնովաւ շուրջ արար տագեալ խըռնեալ կայրն տալք իւր եւ ներք,
Ունէին զնին յիւրեանս՝ որ թալանայր ձգեալ 'ի մահ:
Մինչ յողջացն դարձեալ՝ 'ի միտս եղեւ եւ զշունչ առնէին,
Կոծ առեալ աղաօրայիցն՝ 'ի տրտմաձայն արձակեաց ձայնս.
Հեկտոր, վա՜յ ինձ հեղգիս. ուրեմն 'ի մի ծընեալք միաճակ
Դու եւ ես. դու 'ի Տրոյա՝ 'ի Պրիամեանն անդ ապարանս,
Իսկ ես՝ 'ի Թեբէ, յանտառախիտ Պլակեայ ստորոտ,
Ընդ յարկաւ Էտիոնեայ՝ որ զիս սընոյց 'ի տղայ տիոց,
Եղկելի՛ն զդժբաղդելիս. ո՜ արդ թէ բնաւ իսկ չէր ծընեալ:
Իսկ արդ 'ի տուն Դըժոխոց, 'ի ստորերկրեայ խորս անդընդադարեաց
Երթաս դու, եւ զիս 'ի տան ծանրաթախիծ ըզքեալ այրի
Ցապարանսդ թողուս, եւ զնա մանկիկս 'ի ձեռն հասակ՝
Զոր ծընաքըս դու եւ ես թշուառականքս, եւ ոչ լինիս
Դու նըմա 'ի օգնութ, Հեկտոր, քանզի մեռար, եւ ոչ նա քեզ:
Զի թէպէտ եւ ապրեսցի յաքայեցւոց խաղքս արեանց,
Սակայն աշա միշտ ընդ իւր երկիցին ցաւք եւ տառապանք.
Զի օտարք ըզսահմանս անդոյ իւրոց փախախեսցեն:

# Հ Ո Մ Ե Ր Ի

# Ի Լ Ի Ա Կ Ա Ն

---

## ԵՐԳ ՔՍԱՆ ԵՒ ԵՐՐՈՐԴ

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ



## ԵՐԳ ՔՍԱՆ ԵՒ ԵՐՐՈՐԴ

### ՀԱՆԴԷՍՔ Ի ՊԱՏԻՒ ՊԱՏՐՈԿԼԻ

Օրինակ զայս ընդ քաղաքն հեծեծէին տըքա քըքոմք ·
Իսկ 'ի նաւս եւ Հելլեսպոնտոս աքայեցւոց եկեալ ժամուն՝
Սըփռեցան ամենեքին իւրաքանչիւր 'ի նաւս իւրեանց ։
Բայց Աքիլլեւս ոչ ետ Թոյլ Միրմիդոնաց ցըրուել զընաւըլ,
Այլ 'ի մէջ քաջամարտիկ զինուորակցացն անցեալ ասէ ·
Երագաձի Միրմիդոնք, ընկերակիցք իմ սիրելիք,
Մի լուծցուք 'ի կառաց զսմբակասմբակ երիվարեանն,
Այլ առժամ իսկ կառօքս երիվարօքս հուպ մատուցեալ՝
Լացցուք ըզՊատրոկլոս, զի մեռելոց այն է պատիւ ·
Իսկ յորժամ յագեցցուք 'ի զառանցի աշխարանաց,
Արձակեսցուք զերիվարս՝ ամենեքեան ընթրեսցուք աստ ։
Զայս ասաց · գուժեցին համօրէն ձայնիւ առ, եւ սկիզբն ետ Աքիլլեւս ։
Զգեղաբաշխ ձիսն երիցս ըզդիականաւքն վարեցին
Մըրմընջէք, եւ ընդ 'նոսա Թետիս եռանդն էած ողբոց ·
Արտասուօք Թանայր աւազքն, Թանային սպառազէն զէնք՝
Առ անձուկ այնպիսւոյ հնարագիտին խուճապանաց ։
Եւ Պելեանն յարձակմամբ կոծոյն ըսկըզբն առնոր 'նոցա
Եդեալ 'ի լանջս ընկերին ըզձեռսն իւր մարդասպանս ·
Ողջոյն լեր, ով Պատրոկլէ, եւ անդ 'ի տան Սանդարամետին ·
Զոր խոստացայ յառաջագոյն քեզ՝ կատարեմ արդ զամենայն,
Ըզհեկտոր այսըր ձըգեալ՝ շանցդակեր շանց ընկենուլ գէշ,
Եւ մանկունս երկոտասան տրովադացւոց երեւելիս
Առ խարուկիդ խողխողել՝ ընդ քո սպանումն սրտամըտեալ ։
Ասաց, եւ 'ի զիւցազն Հեկտոր երկնեալ գործ անպատեհ՝

Եւ ըղձոյն նըման հանդերձըն ըղձարքեամբ իւրով արկեալ·
Եւ կացեալ 'ի սնարիցն եւ խօսեցեալ ասէ առ նա·
Ննջես, Աքիլլէս, եւ մոռացեալ արարեր զիս·
Ոչ 'ի կենաց իմ Թողուեր զիս անխնամ, այլ 'ի մահուս:
Թաղեսջիր զիս փութանակի՝ զի 'նդ Դըժոխոց մըտից դըրանս·
Ի բաց մերժեն զիս հոգիք՝ հրաժարեալքն ուրուապատկերք,
Եւ բացէ 'ի բաց ոչ 'ներեն խառնել ինձ ընդ գետակն,
Այլ վայրապար մոլորիմ ընդ լայնատարած յարկ Դըժոխոց:
Եւ ըղձանօքդ քեր մնա, լալով խընդրեմ, զի ոչ եւս այլ
Դառնալոցեմ 'ի դըժոխոց՝ մինչ առնիցէք հրոյ զիս հաղորդ:
Զի ոչ եւս կենօք 'ի սիրելեաց ընկերաց 'ի զատ
Նըստեալ խորհուրդ առնիցեմք· այլ զիս Օրհաս դըժնեայ եկուլ՝
Որ հասեալն էր 'ի վիճակ ինձ անդրանկին 'ի ծնընդենէս:
Նա եւ քեզ իսկ, Աքիլլէս աստուածանման, պահէին հրամանք
Զպարըսպաւ քաջատոհմիկ տըրովադացւոցըդ կորընչել:
Քեզ եւ այլ ինչ ասասցեմ եւ տաց պատուէր, եթէ լուիցես·
Մի զոսկերս իմ 'ի քոյոցդ ուրոյն դըներ, Աքիլլէս,
Այլ զեանց ամփոփ 'ի մի, որպէս սընաք 'ի տան ձերում,
Յորժամ զիս 'ի տղայ տիոց Մենետեաս յՕպոյնթէ
Ա՛ռ 'ի տուն ձեր ածաւ՝ առ սըպանի անկեալ արեան,
Յորում աւուր ըզմանուկն Ամփիդամայ հարեալ սպանի
Ընդ խօլ եւ յակամայս, 'ի բարկութեան ըմբռնեալ յաւլանս:
Յայնժամ զիս ժողովեալ Պելեւս առնէր յիւր ապարանս,
Մարդասէր խնամովք սընոյց եւ անուանեաց քեզ պաշտօնեայ·
Նոյնպէս նոյն զոսկերս մեր ամփոփեսցէ զիր սափորն՝
Սափորն այն ոսկեղէն՝ զոր ետ քեզ մայրըդ մեծարոյ:
Առ նա քաջն Աքիլլէս պատասխանի տուեալ ասէ·
Առ իմէ, սիրելիդ գըլուխ, առ իս այսըր եկիր,
Եւ տաս ինձ պատուէր մի 'ստ միոջէ զամենայն զայդ,
Զոր ըլցեալ կատարեցից ես հնազանդեալ քում հրամանիդ:
Այլ այժմ յիս հուպ մատիր, զի գիրկս արկեալ խառն մի միմեանց՝
Ըմփոփեալ յագեսցուք յարտասուս ողբոց ծանրաթախիծ:
Ընդ բանին կարկառեալ ըղձաւորակէր բազկաց ձըղեան՝
Ոչինչ կալաւ, զի հոգին իբրեւ ըղծուխ էանց գընաց
Շըչելով 'ի խորս երկրի, եւ Աքիլլէս յարեաւ ապշեալ,
Եհար ծափ ըղծափս եւ ցաւալին բարբառեցաւ·
Ո՛վ զիք, է ինչ անշուշտ եւ անդ 'ի տան Սանդարամետին
Ոգի եւ ուրուական, բայց չիք ըմբռնել խրատ 'ի նմա·
Զի ողջին Պատրոկլի հեծեցելոյ՝ դըժնեայ ողբոյն
Եկն եկաց 'ի վերայ իմ լալագին եւ սըգաւոր՝
Տալ ինձ պատուէր զամենայն, նըման նմին զարմանալապէս:
Զայս ասաց, եւ զարթոյց յամենեսեան զողբոց անձուկ·

Յայնժամ քաջն Աքիլլէս գնացեալ ըղձեալ ընդ այլ ասպարու.
Ի խարուկէն մեկուսի կայեալ մաղթեաց հողմոց երկուց՝
Հիւսիսոյ եւ Զեփիւռին, ուխտեալ զընտիր ընծայս յաշտից,
Եւ առատ հեղեալ նուէրս ոսկի նուագաւ՝ յաղերս ածէր,
Գալ ըստէպ՝ զի զփայտակոյտն ձեռնեսցի վառել 'ի բոց
Եւ դիակունքն հրդեհեսցին։ Յայնժամ Իրիս երագաթեւ
Ունկն եդեալ խնդրուածոցն՝ եկն առ հողմունսն եհաս հրեշտակ։
Սատակաշունչ Զեփիւռոսին նոքա 'ի տանն առեալ ակումբ՝
Խրախ լինէին 'ի կոչունսն. եւ ընթացեալ եկաց Իրիս
Առ սեամսն կրճեայս. զոր իբրեւ յակն արկեալ տեսին,
Յոտն եկաց բազմականն, եւ մէն մի զնա կոչէր առ ինքն.
Իսկ նա չառ յանձն բազմել, այլ ըղձապատգամ խօսեցաւ.
Ոչ բազմեմ, զի դարձեալ հեռայն յՈվկիանոս գնացեալ հասանեմ
Եթովպիոյն եթովպացւոց՝ ուր անմահիցն մատչին զոհք,
Զի 'նդ նոսին ճաշեմ եւ ես հաղորդակից 'ի զոհամատուցման։
Այլ Աքիլլէս զՀիւսիսոյ եւ զգոչաւորն Զեփիւռոս
Աղաչէ գալ առ ինքն՝ ուխտեալ զընտիր ընծայս յաշտից,
Զի զխարոյկն 'ի բորբոքումն արծարծիցեն՝ յոր կայն եդեալ
Պատրոկլոս զոր կոծեն աքայեցիք համագումար։
Ասացեալ զայս՝ ինքն գնաց. նոքա յարեան անհուն գոչմամբ
Վարեալ զամպս յառաջոյ իւրեանց մեծաւ փոթորկելով։
Եւ եկին փութանակի շնչելով 'ի ծով, ալիքն ուռեան
Ի բարձրահնչ փչմանէն, եւ յարգաւանդն հասին Տրոյա.
Եւ անկեալ 'ի խարուկին՝ մեծ գոչեաց բոցն աստուածահրաշ։
Եւ զգիշերն 'ի բուռն փչեալ ահեղամամուչ 'ի փայտակոյտն՝
Հասին բոց բորբոքեալ, եւ զպայծն 'ի զլուխ ժիրն Աքիլլէս
Կրկնապատաշ բաժակ 'ի ձեռն յոսկեղէն 'ի թակուկէն
Առեալ հեղոյր գինի յերկիր, թանայր համակ զառաջատուրեան,
Եւ զոգի եղկելոյն Պատրոկլոսի ձայնեալ կարդայր։
Որպէս հայր յողբս հարկանի՝ յայրել զոսկերս որդւոյն իւրոյ
Փեսայի, որոյ մեռեալ ըղձէք ծնողացն 'ի սուգ նըստոյց,
Այնպէս ողբայր Աքիլլէս յայրել զոսկերս ընկերակցին,
Սողելով առ խարուկաւն եւ ստէպ ըստէպ յոգւոց ելեալ։
Իսկ յորժամ եկն Արուսեակն աւետաւոր լուսոյն յերկիր,
Ույր ըղհետ 'ի ծով սփռի քրքմահանդերձն Առաւօտ,
Թառամեցաւ անդ հրդեհն եւ դադարեաց բոցոյն բորբոք.
Եւ հողմունք մեկնեցան գնացին դարձեալ անդրէն 'ի տուն
Ընդ Թրակեան ծովուն անդունդս՝ որ ուռուցեալք մռլեալ հեծէր։
Բայց ընդ այլ կոյս Պելեանն 'ի խարուկէն մեկուսացեալ՝
Կործանեցաւ վաստակաբեկ, անկաւ զնովաւ քուն անուշակ։
Այլ նոքա զԱտրիդեաւ ժողովէին միահամուռ,
Որոց զինքն ոտից խօշիւն եւ դղրդելոյն խռնձոյ զարթոյց.

Խոլաբար այսր եւ անդր յապարանսն շըրջէ բազում,
Անդրադարձք իւր օթոցն յարշաւանսն եւ ոչ նուաճէ։
Իսկ խորագէտըն մըտօք՝ վատթարագոյն վարելով ձիս՝
Դէպ անին 'ի կէտն յաւելով ուժն, եւ մօտ քերեալ, շանդիտանայ՝
Ի՛բր ըսկիզբըն ատենաձարձակ առցէ փոկովըն արշաւենեաց·
Այլ եւ պինդ ունի անդուլ եւ գըտնէ միտ 'ի նախընթացն։
Ցայս ցուցից եւ զնըպատակն, եւ ըզգոյշ մի անցանիցէ։
Փայտ մի չոր գըրկաչափ յերեսս երկրին ամբարձեալ կայ,
Կամ կաղնի եւ կամ սարոյ՝ զոր ոչ փըտէ տեղատարափ·
Եւ աստի անտի նորուն կանգնին կըրկին սպիտակ արձանք
Ցելս ուղւոյն, եւ զնովաւք շուրջանակի հարթ ասպարէզ։
Գերեզման թերեւս եղեալ վաղամեռիկ առըն միում,
Կամ յառաջ նախնի մարդկան կոթող կանգնեալ սահմանագլուխ,
Եւ զարդիս զայն եդեալ կէտ դիւցազներուդ ժիրն Աքիլլէս։
Առ սովաւ մօտ քերեալ վարեա դու զկառս եւ զերիվարս,
Եւ դու ինքըն խոնարհեալ 'ի պընդակապ աթոռակին
Դոյզն ինչ նոցին յահեկէն· իսկ զերիվարըն աջակողման
Մըտրակեա սաստկանաձայն, եւ զերասանս իւր թուլացո։
Երիվարդ ահեկին առ կիտիւն հուպ քերեալ անցցէ,
Մինչ կարծիս առեալ թէ կընդամն բարեկերտին՝ անւոյն իւր
Ի նպատակըն շըփեսցի, զգոյշ լեր ասկայն բախել ընդ վիմին,
Զի մի զձիսդ խոցեսցես եւ փըշրեսցես ըզկառսդ քո,
Այլոց 'ի քըրքիջ, եւ քեզ յամօթ եղերանաց։
Այլ ըզգաստ լեր, սիրելի, եւ անձնապահ ըզգօնութեամբ։
Զի թէ զամ մի ձգեալ ըստ նըպատակըն վարեսցիս,
Ոչ գըտցի որ զհետ պընդեալ ժամուն լիցի քեզ կամ անցցէ,
Նա եւ ոչ թէ զդիւցազնեայն վարեսցէ զհետ քո զԱրիոն՝
ԶԱդրեստեայ սուր երիվարըն, որ յաստուածուստ էր 'ի ծնընդոց,
Կամ զընտիրսն որ աստանօր Լաւոմեդոնեանցըն են սընեալք։
Զայս Նեղէանն ասաց Նեստոր, դարձաւ նըստաւ 'ի տեղի իւր,
Զհամառօտս ամենայնի որդւոյ իւրում տըւեալ պատուէր։
Հինգերորդ Մերիոնէս կազմեաց ըզձիս իւր գեղաբաշ։
Եւ 'ի կառսն հեծեալ, վիճակս արկեալ՝ շարժէր զայն Աքիլլէս,
Եւ վիճակ յառաջակարգ եւ Նեստորեանն Անտիլոքեայ։
Իսկ արքայն Եւմելոս ըզկնի նորուն վիճակեցաւ,
Ըստ նըմանէն Ատրիդէս Մենելաւոս կորովատեգ,
Ցետ նորա Մերիոնի եհաս վիճակ երիվարել,
Հուսկ Տիդեան քաջագունին վարել ըզձիսն անկաւ վիճակ։
Կացին կարգաւ, զընտրեցիցըն ցուցանէր կէտ Աքիլլէս,
Ի հեռուստ 'ի դիւր դաշտին, եւ դէտ կացոյց անդ առ նովաւ
Ըզփիւնիքս աստուածատիպ ըզհօրն իւրոյ կապարճակիր·
Միտ եդեալ արշաւանին՝ ըզճըշմարիտն առասցէ յայտ։

Իսկ նոցա բոլորեցուն բարձեալ համայն մտրակ 'ի ձիսն
Եւ շփահեալ փոկովքն առին ձայն բոցաշունչ խրախուսանաց.
Եւ նոքա թափառնակի սրարշաւ ընդ դաշտն ընթանային
Ի բացէ 'ի նաւացն, եւ ընդ լանջօք նոցին փոշի
Ցանէր կայր ամպոյ նման կամ մրրկի փոթորկայոյզ,
Եւ 'ի շունչ հողմոյն հոսեալ ծածանէին բաշիցըն հոյլք:
Կառքըն մերթ ընդ գետնին արգիլանաբեր գնային 'ի սաղ,
Մերթ ընդ օդ խաղէւ 'ի թռիչս, իսկ վարիչք պինդ կային 'ի նիստ.
Բոլորեցուն թընդէր սիրտ ստացուցելոցն 'ի յաղթութիւն,
Ցորդորէին զյովատակսն ընդ հարթըն թռուցեալ. մրրկեալ զփոշին:
Իսկ յորժամ ժիր երիվարք զյետինն ընթացս հանէին յանդ՝
Ցեառ 'ի ծով ալիտակափառ, անդ քաջութիւն իւրաքանչիւր
Եւ 'ի վեր, անդէն ձիանն հարկանէին քաջ ասպարէզ,
Անդ Փերետեան քաջին քաջոտն 'ի դուրս ճայիկքն ստաշէին շըրջա:
Ցետ նոցուն ցոլանային Դիոմեդեանքըն գեղազարք
Տրովացիք՝ ոչ յոյժ 'ի բաց, այլ կարի շատ հուպ առ կըռան,
Մինչեւ այն խմըն թըւէր՝ եթէ 'ի կառսն համբառնայցեն,
Եւ շընչովըն ջեռնուէին թիկունք եւ լայն ուսք Եւմելեայ.
Քանզի զգլուխսն 'ի վերայ նորուն արկեալ սըլանային:
Անցանէին իսկ թերեւս եւ կամ յերկբայս առնէին գէթ,
Թէ Գուշակն Ապոլոն՝ որդւոյն Տիդեայ սըրտմըտեալ չէր,
Որ ընկէց 'ի ձեռաց նորա զմըտրակն արփիաղեղ:
Արտասուք առ զայրացուկն յաչաց նորա թօթափեցան,
Զի զզամբիկսըն տեսանէր երագափոյթ եւս յառաջեալ,
Եւ զի իւրքըն պատժեցան գոռթել առանց ինչ մըտրակի:
Իսկ Ապոլոն՝ որդւոյն Տիդեայ նենգող՝ չէանց զԱթենասաւ,
Որ դիմեալ վաղվաղակի եւ առ հովիւն հասեալ արանց՝
Մատոյց 'ի ձեռսն ըզմըտրակն, եւ յերիվարսն յաւել կորով:
Եւ ապա զհետ Ադմետի որդւոյն պընդեալ սըրտմըտագին՝
Խորտակեաց ըզլուծ ձիոցն աստուածուհին, սարտեան ճայիկքն
Այսր եւ անդր ըստ ճանապարհն, եւ գլորեցան սամիքն յերկիր:
Եւ նա ինքն առ անուին հոլովեցաւ 'ի բազմոցէն,
Արմընկունք իւր եւ բերան եւ քըթափողք ցըտեցան շուրջ,
Ճըմլեցաւ ճակատն առ յօնս, եւ լըցան աչք իւր արտասուօք,
Եւ ոգեղ ձայնին հագագ աղօտացեալ նըւաղեցաւ:
Իսկ Տիդեանն 'ի կողմ եղեալ՝ ըզձիս վարէր սալասըմբակ
Ցոյժ քան զայլս յառաջադէմ, զի ետ ձիոցն Աթենաս ոյժ,
Եւ նըմին պարծանս, ուր զհետ շէկն Ատրիդէս գայր Մենելաւ:
Բայց զերիվարս հօր իւրոյ քաջալերէր Անտիլոքոս.
Գուն եւ դուք դիք, ընդ ոլորս ըստէպ մըտէք ճեպ ըզճեպի.
Ընդ սոսին 'ի հակառակըս մրցանել ոչ հրամայեմ՝
Ընդ Տիդեան քաջին ձիանս, ոյց առ տեղեաւ այժմ Աթենաս

Պարգեւեաց աշխուժութիւն եւ շուք փառաց յաւել նորին.
Այլ զերեկորեան Ատրիդեան ընթրանեցէք, մի՛ յետնեսջիք.
Համայն շոյն, մի՛ նախատեսցէ Մեւսուկ զամբիկն հեղուցու զձեզ.
Եւ ընաւ ընդէ՞ր լցէ ձեզ յետնել, ամ քաջք, եւ լըքանել:
Ահա եւ զայս եւս ասեմ, եւ ճշմարտեալ եղջէ 'ի գլուխ.
Ոչ եւս ձեզ տարցէն խնամք առ Նեստորի հովուին ազանց,
Այլ անդէն ընդ հուպ ըղձեզ սուր պըրըդնձով սատակեսցէ,
Թէ անփոյթ տրաքեալ՝ նուաստագոյն տարցուք պարգեւ:
Այլ ըղհետ պընդեցարուք, ձեզ տուք աղէ 'ի հապ ըշտապ.
Իսկ առա յիմ պարանոց՝ խելս ինչ խառնել՝ հնարաւորել
Զի յանձկի ուրեք ուղւոյն ըղպըրդեցեմ. եւ չըվըրիպեմ:
Զայս ասաց, եւ 'ի սաստից իշխանին ահն ածեալ նոցա՝
Վայր մի ուժգին ընթացան, եւ նոյնհետայն այնուհետեւ
Զնըսատագոյն ուղւոյ նեղուց ինչ Անտիլոք ետես ափին:
Էր պախուրծն գետնոյն՝ ուր ձմերայքն մօրացեալ ջուրց
Խորխորեալ էր զարահեան եւ զվայրն ողջոյն փոսացուցեալ.
Զգուշացեալ 'ի բախմանէ անուոց՝ ընդ այն գնայր Մենելաւ:
Անտիլոք առ 'ի շեղ մըղեալ ըղձիս սալասըմբակ
Զարտուղի խուսափեալ յառաջ վարէր սուղ ինչ 'ի բաց:
Զահի հարաւ Ատրիդէս եւ ձայն եբարձ առ Անտիլոք.
Խօլաբար ձիավարես, Անտիլոքէ, արգել ըղձիդ,
Քանզի նեղ են մեզ անցքս, ընդ հուպ ընդ լայնն անցցես յառաջ,
Գուցէ զեան երկոցունցս ածցես ընդ կառս իմ բախելով:
Զայս ասաց, բայց Անտիլոք եւըս քան զեւս յառաջ մըղէր
Մըտրակ 'ի կուշտ տագնապաւ՝ չըլըւելոյն իբր արարեալ:
Եւ որչափ ինչ գընդակին է կորովի ծըղեռք ձըգուածն՝
Որ արկցէ երիտասարդ՝ հուժկու աւիոցն առնել հանդէս,
Այնչափ 'ի բաց սըլացան, եւ Ատրիդեանքն հարթեան ձայնէք,
Քանզի նա ինքնին կամաւ իսկ արգելաւ 'ի չըվարելոյ,
Զի մի՛ զձանապարհայն ընդհարցին ձիք սալասըմբակք,
Եւ ըղկառսն պընդակազմ չըրջեսցեն վե՛ր 'ի վայր հարեալ,
Եւ 'ի փոշի գլորեսցին նոքին ձեպեալքն 'ի յաղթութիւն:
Եւ խարտեաշըն Մենելաւ գոչեաց առ նա կըշտամբանօք.
Անտիլոք, չիք որ քան զքեզ անօրէն յազգ մահկանացու.
Կորի՛ր. զի սուտ ըղգօն քեզ չասէաք աքայեցիքս.
Այլ ոչ այդպէս, ո՛ն եւ ո՛ն, առանց երդման տարցիս պարգեւ:
Զայս խօսեալ՝ առ երիվարսըն իւր խրախոյս եբարձ, ասէ.
Մի՛ գուք ինձ ինչ կայք մընայք, 'ի սըրտառուչ մի՛ 'նկըղմիք սուգ.
Վաղագոյն նոցին քան ձեր պարտասեսցին ծունկք եւ թաթուք,
Զի անկեալ են երկոքին նոքա յաստեաց առուգութեան:
Զայս ասաց, եւ յահքայէն սաստից նոցա պատկառելով՝
Սաստկագոյն հարեալ արշաւ՝ հասին նոցա հուպ հապըշտապ:

Նըստէին Արգիւացիքն անդ 'ի դիտելն ձիոցն յարշաւանս,
Եւ նոքա Թըռիչս առնել փոթորկէին զփոշին ընդ դաշտն:
Եւ ետես նախ զերիվարսն Իդոմենեւս կրետացւոց պետ,
Զի նըստէր արտաքոյ հրապարակին բարձր 'ի դիտի.
Եւ Թէպէտ եւ 'ի բացէ, զգոչողն լըսեալ՝ զայրըն ծանեաւ,
Եւ նըշմարեաց զերիվարն երեւելի զայլովք զանցեալ,
Որ այլով ամենայնիւ յոտից ցըգըլուխ երաշխ էր նա՝
Սպիտակ նըշ բոլորաձեւ լուսնատեսիլ 'ի ճակատուն:
Յոտն եկաց՝ բարբառեցաւ առ հրապարակն Արգիւացւոց.
Ո՛վ սիրելիք, առաջնորդք Արգիւացւոց եւ զօրագլուխք,
Ե՞ս միայն նըշմարեցեմ արդեօք ըզձիս, եթէ եւ դուք:
Ինձ այլք առաւել յառաջացեալ թուին երիվարք,
Եւ ա՛յլ ոք տեսանի կառավարիչ, իսկ այն զամբիկք
Արգելան յասպարիսին՝ որ ժըրագոյնքն էին ցայն վայր:
Քանզի նախ տեսի զնոսա զնըշդատակաւն առնել պարոյր,
Բայց նըշմարել չկարեմ այժմ, եւ աչք իմ շուրջ շըրջանակաւ
Ընդ դիւրըն տրովական ասպարիսաւոյց կան 'ի զըննին:
Կամ զերծան 'ի վարողէն զանդաղանաւանդք, եւ ոչ զօրեաց
Պինդ ունել սանձ ըզկիրառուն, եւ չաջողեաց ճախրել զնովիմբ.
Անդ կարծեմ գըլեալ ըզնա, համայն եւ զկառսն խորտակեալ,
Եւ օդանալ ըզձայնիկսն առեալ 'ի սիրտ մոլեգնութեան:
Յարուցեալ հայեցարուք եւ դուք՝ զի ոչ ճանաչեմ քաջ.
Ինձ Թըւի սակայն լինել Էտոլացի այր 'ի զարմէ,
Պետ յԱրգեանս, ձիախրոխտին Տիդեայ ծնեալ քաջըն Դիոմեդ:
Ոյլեանն երագ Էաս տայ առ նա քամահարար.
Զի՞ տարաժամ բաջաղես, Իդոմենեւս, քանզի տակա
Բարձրաքայլք այն զամբիկք հեռուստ ընդ լայնն արշաւեն դաշտ:
Ոչ տիովք ինչ մանկագոյն զատանիս 'ի գունդ Արգիւացւոց,
Եւ ոչ սըրատեսիլ ինչ ակնարկեն աչքդ 'ի գըլխոյդ.
Այլ 'ի բաց բանից անդուլ շաղակրատես, չէ քեզ վայել
Լեզուանդար լինել, զի դոյն աստ քան ըզքեզ այլք լաւագոյնք:
Նոյն ձայիկք են նախաքըշտ՝ յառաջադէմքն իսկըզբանէ,
Եւմելեանքն, եւ ինքն առնել զերասանակսն յառաջ ստուգայ:
Սըրտմըտեալ կրետացւոց ընդ նա պետըն՝ դիմախօսեաց.
Էաս՝ քաջըդ խաղմարար՝ չարալեզու, յայլ ամենայն
Տըրպագոյն յԱրգիւացիս, զի միտք են քեզ ապերասան:
Հա՛մա եկ, զեռոտանի եւ կամ ըզսան դիցուք 'ի գըրաւ,
Դատաւոր զԱտրիդեանն Ագամեմնոն մեզ՝ կացուցեալ,
Ո՞ր երկձիք յառաջս եկեն. 'ի տոյժս անկեալ տացես 'ի միտ:
Զայս ասաց, Ոյլեանն յարեաւ անդէն երագն Էաս՝
Սըրտմըտեալ զայրագին՝ պատասխանի տալ խիստ բանիւք.
Եւ անշուշտ իմն անգըրագոյն եւս անցանէր երկոցունց հեռն,

Այրըն քաջ հուսկ զերիվարսն յետոյ վարէ զսալսապըմբակս,
Այլ մըրցանակ՝ բեր տայցուք նըմա զերկրորդն ըստ արժանի․
Բայց սակայն զասպարէզն առեալ տարցի որդին Տիդեայ։
Զայս ասաց, եւ հաճեցան ամենեքին ըստ հրամանին․
Եւ զձիայինըն տայր նըմա 'ստ հաւանութեան աքայեցւոց,
Եթէ չէր Անտիլոքոս որդի մեծանձըն Նեստորի
Յարուցեալ եւ ընդ Պելեան Աքիլլեսի մըտեալ 'ի դատ․
Ո՛վ Աքիլլեւս, յոյժ սըրտմտեցայց ընդ քեզ թէ զբանդ զայդ ատնեսցես.
Հանդերձեալ ես աւագիկ ըզյաղթութեանն հանել յինէն,
Ըզմըտաւ ածեալ զի կառք իւր եւ ժիր ձիք հարուածեցան,
Իսկ նա քաջ էր․ սակայն պարտ էր աղերսել նըմա զանմահս․
Զայդ արարեալ՝ ոչ վերջին քան զամենայն գայր նա վարեալ։
Թէ 'ի գութ ընդ իւր գըթաս եւ սիրելի է քում սըրտիդ,
Է քեզ 'ի խորանսդ ոսկի բազում, է եւ պըղինձ,
Են ոչխարք եւ աղախնայք եւ երիվարք սալսապըմբակք,
Յայնցանէ հան տուր նըմին աստ յետոյ մեծ եւս պարգեւ,
Կամ թէ եւ այժմ իսկ ընդ հուպ, զի գովեսցեն զքեզ աքայեցիք։
Այլ ես ոչ տաց ըզգամբիկն, եւ թող եկեսցէ 'նդ այսր 'ի հանդէս
Ում ումեք յարի արանց կամ իցէ 'նդ իս մըրցել բազկօք։
Զայս ասաց, իսկ Աքիլլեւս զիւցազընըն ժիր՝ ժըպտեցաւ,
Խընդացեալ ընդ Անտիլոք, զի իւր ընկեր էր սիրելի․
Եւ դարձուած արարեալ տայ առ նա զթեւաւոր բանս․
Քանզի հարկ առնես ինձ, Անտիլոքէ, 'ի համբարոց
Պարգեւել զԵւմելոս, եւ զայդ եւս ես կատարեցից։
Տաց նըմա վարապանակ զոր կապուտեցի յԱստերոպէայ
Զպըղընձին, զորով հեղուած ջինջ անագի շուրջ ածէ ծիր,
Եւ յոյժ մեծագին համարեսցի յաչըս նորուն։
Ասաց, եւ ակնարկեալ յԱւտոմեդոն սիրուն ընկերն
Առնուլ բերել 'ի վրանէն, որոյ գնացեալ ածեալ նըմին,
Եւ 'ի ձեռան ետ Եւմելեայ, եւ ընկալաւ նա խընդութեամբ։
Յոտն եկաց 'ի նոսին եւ Մենելաւ, ցաւագին սիրտ,
Անհնարին բարկացեալ սըրտմըտութեամբ ընդ Անտիլոք։
Քարոզն 'ի ձեռս ետ նորին ըզգաւազանն եւ պատուէր ետ
Լռել լինել արգիւացւոց, եւ զինի տայ դիւցազնական այր․
Անտիլոք, մըտաւորդ յառաջագոյն, զի՞ գործեցեր․
Արարեր զփառս իմ յամօթ եւ նենգեցեր զիմ զերիվարս
Յառաջ ըզքոյսըդ մըղեալ ըզկարի յոյժ վատթարագոյնս։
Այլ եկայք, հեղինակք արգիւացւոց եւ նախապետք,
Դատ արարէք երկոցունցս 'ի մէջ, եւ մի առ շնորհուկս ինչ,
Զի մի ոք ասասցէ 'ի պըղընձազգեստ աքայեցւոց,
Զըրպարտեալ Մենելաւի հարըստութեամբ զԱնտիլոքոս՝
Շորթեաց գընաց ըզձիայինն՝ ուր յոռեգոյն էին իւր ձիք,

Սակայն ինքն տառապելեալ զինու զօրու եւ ըղձանութեամբ :
Այլ ծն առեալ ըղձատատասանդ արարեր ես. եւ ոչ կարծեմ
Փաշաման 'ի գանձայեանց ուստեք կրրել, զի պարզ լեցի :
Հա՛պ' արի այսր, Անտիլոքէ դիցասնունդ, ըստ խրատուց
Կաց կանգուն երիվարաց քոց եւ կառացդ զառաջեաւ,
Ճապուկ մտրակդ 'ի ձեռին՝ որով եւ այժմ իսկ վարէիր,
Եւ մերձեալ 'ի ձիոցդ երդուիր յաշխարհակալն 'ի Պոսիդոն,
Ոչ կամաւ զաւ գործելով խնամ կառացդ լեալ խափան :
Ուշիմն Անտիլոքոս ետ փոխարէն պատասխանի.
Այլ հանդարտ լեր, զի կարի կրտսերագոյն եմ ես քան զքեզ,
Գետականդր Մենելաւ, իսկ դու երէց եւ վեհագոյն :
Խելամուտ ես զինչ լինին պատանեկի առըն վրէպք,
Այն զի միտք երագասուր, սակայն անօսր ըղձօնութիւն :
Հանդիպեսցէ ապա քո սիրտ, իսկ ըղձամէտես որ ընկալայ՝
Եւ ինձէն քեզ մատուցից. Թէ խնդրես մեծ եւս ինչ յիմոցս,
Իսկ եւ իսկ տալ քեզ կամիմ, քան թէ յաւէժ քեզ, դիւցասնունդ,
Ցաչաց ելանել, ամպարըշտել եւ առ աստուածս :
Ասաց եւ ած ըղձայիկն որդին մեծանձին Նեստորի,
Ետ 'ի ձեռքս Մենելեայ. եւ նորա սիրտն զուարթացաւ,
Որպէս այն թէ յուռձազարդ 'ի հարաւունս ցօղ շառաչուկ,
Մինչ անդաստանք արտորէից քըստմընաձօձ ձեմին վէտ վէտ.
Նոյն եւ քոյդ, Մենելաւ, պարարեցաւ սիրտ 'ի ծոցիդ :
Եւ ձայնեալ՝ ըղբանս առ նա բարբառեցաւ երագաթեւս.
Անտիլոքէ, սըրտմըտեալս եւ ես զիջից այժմիկ ընդ քեզ.
Զի յառաջին ոչ զառանցեալ ինչ ոք էիր և ոչ խելառ,
Իսկ զարդիս ըղմիտըս քո յաղթահարեաց պատանութիւն :
Յայսմհետէ զգոյշ լիջիր խորամանգել ըղվեհագոյնս :
Զի ոչ ա՛յլ ոք յաքայեանց այր զիս դիւրեաւ ցածուցանէր.
Այլ՝ զի շատ տառապեցար դու եւ բազում ցուցեր վաստակս,
Եւ հայր քո բարեբար եւ հարազատդ, իմ աղագաւ,
Եկից յաղերս քո յայն գէմս, եւ ըղձամեղիկըն շնորհեցից՝
Թէպէտ եւ իմ իսկ էցէ. զի եւ սոքա լիցին հասու,
Թէ բնաւ չէ ինչ իմ սիրտ փըքոցուածոյ եւ անողայ :
Ասաց եւ ետ ընկերին Անտիլոքեայ Նոյեմոնի,
Ըղձայիկըն տանել, իսկ ինքն ըղսանն առ փայլունակ :
Եւ Մերիոն զերկանին քանքարս ոսկւոյն եբարձ առաւու,
Զի չորրորդ էր վարեալ. եւ հինգերիր մընաց պարգեւ՝
Դուշխուրանըն կըրկնատաշտ, զոր Նեստորի ետ Աքիլլէս՝
Ընդ ակումբն արդիւնցուոց ածեալ, եւ մերձ կացեալ ասէ.
Ընկալ եւ դու զայս, ծերունիդ, եւ կացցէ առաս քեզ 'ի պահեստ,
Յիշատակ լինել Թաղմանըն Պատրոկլի, զի ոչ եւս այլ
Տեսցես զինքն յարդիւնցիս. զայս այսպէս տամ քեզ վարձանակ.

Բազմարուեստ ձեռնահրմամբ՝ չորից եղանց 'ի համարի ։
Եւ անդ յառն կացեալ յարդիւացեան ասաց ըզբանս .
Ո՜հ եւ այսըմ մըրցանաց հանդիսաւորք արիք եղէք ։
Զայս ասաց, եւ մեծն Էաս յարեաւ եկաց Տեղամոնեան,
Յարեաւ եւ Ոդիսեւսն իմաստապետ եւ Հնարագէտ ։
Երկոցուն գօտի ածեալ եղեալ 'ի մէջ կրկեսանոցին՝
Ըզմիմեանց զերկրընդխառնն բուռն հարին հուժկու բազկօք ,
Որդունակ տանըն բարձու հեծանաձիգ գարանաւանդք
Զոր զգուշացեալ 'ի թափոյ հողմոց մածոյց հիւսըն ճարտար ։
Եւ Թիկունքըն ճռընչեցին 'ի կաշկանդման հըզօր ձեռաց
Զըգձըգեալք ուժեղապէս, եւ հոսէր քըրտըն խառնաւուս .
Եւ այտուցք արիւնըռուշտ կապուտակեալք ելին 'ի վեր
Խիտ առ խիտ 'ի կողս եւ յուսս, իսկ այնք անդուլ զուգապարէին
Առ անձուկ յաղթանակի՝ վասն յօրինեալ եռոտանւոյն ։
Ոչ Ոդիսեւս սայթաքել զարկուցանել կարէր յերկիր ,
Ոչ Էաս զօրէր, զի 'նդդէմ կայր Ոդիսեւսայ սաստիկ կորովն ։
Իսկ յորժամ տաղտկացուցին ըզբարձաղէն աքայեցիս ,
Յայնժամ մեծն առ նա Էաս բարբառեցաւ Տեղամոնեան .
Բազմահնարդ Ոդիսեւս Լայերտածին դիւցազընունդ ,
Ամբարձ զիս , կամ ես ըզքեզ , Արամազդայ յանձն ամենայն ։
Ընդ բանին ամբարձ ըզնա , բայց Ոդիսեւսայ խելս իմացեալ՝
Հաս եհար զկարթ ոլոքայն յետուստ կուսէ , զանդամսն ելոյծ ,
Յերկիր ընկէց յորսայսեալ, փըլաւ 'ի լանջան եւ Ոդիսեւս ։
Ի զըննին կայր ժողովուրդըն հիացեալ զարմանալեօք ։
Արի դիւցազն Ոդիսեւս երկրորդ եւ ինքըն զարծեաց զուռն ,
Շարժեաց խուռն մ' 'ի գետնոյն , բայց վերացոյց ինչ ոչ սակոյն ,
Այլ ըզծունկս իւր կըրկնեալ՝ երկոքին անդ հուպ առ միմեանս
Բաւալ յերկիր զգետնեալ դըլոր եւ 'ի փոշի թաւթաւեցան ։
Եւ երրորդ եւս անդամ կանգնեալ անդըրէն ոգորէին ,
Թէ ինքնին իսկ Աքիլլէւ չէր յարուցեալ եւ արգելեալ .
Մի եւս այլ զօտէմարտիք եւ մի ճըռնչէք խոշտանգանօք .
Երկոցունցդ է յաղթութիւն , եւ ըզդոյգ պըրսակս առեալ գնասջիք ,
Զի եւ այլոց եղիցի նահատակել աքայեցւոց ։
Զայս ասաց , եւ ունկընդիր լեալ նոցա յոյժ հնազանդ եղեն ,
Եւ 'ի բաց ջընջեալ զփոշին՝ ըզպարեգօտսն արկին զանձամբք ։
Իսկ Պեղեանն այլ եւս անդէն եդ մըրցանակս՝ երագութեան ,
Բաժակ մի արծաթի ճարտարագործ , տանէր վեց մար ,
Առաւելեալ յոյժ գեղով ընդ ամենայն երեսս երկրի ,
Զի գործած էր բազմարուեստ սիդոնացւոց գեղայօրէն ,
Զոր արանց փիւնիկեցւոց ածեալ ընդ ծով մըթասեւակ՝
Եւ ընդ նաւաց հանգըրուանս անցեալ կառուց Թոասայ ձիր ,
Եւ ըզնոյն՝ գինս ընդ որդւոյն Պրիամոսի 'նդ Լիկայոնեայ

Դիւցազին Պատրոկղեայ եւ Եւնէոսին Յասոնեան։
Եւ կարգեաց զայն Աքիլլէս 'ի յաղթանակ իւր մրցակցին,
Որ ոտիւքն արընթացիւք թեթեւագոյն ոք լինիցի.
Երկրորդին՝ եցոյց արջառ մի յաղթանդամ ճարպապատարար,
Կէս քանքար ոսկւոյ յետնոյն, եւ յԱրգոսեանս կանգնեալ ասէ.
Ո՛ն եւ յայս մրցութիւն արիք ելէք 'ի գուպարել։
Զայս ասաց, եւ Ոյիլեանն յարեաւ անդէն երագն Էաս,
Ոդիսեւսն յարեաւ ըզգաստ, ապա զաւակըն Նեստորեան՝
Անտիլոք, որ զամենայն մանկահասակս ոտիւք գլէր.
Եւ անցեալ կացին կարգաւ, եւ ցուցանէր զկէտն Աքիլլէս։
Ի գլխոյ ասպարիսին զերծեալ արշաւ նոցին գնայր.
Սրլացաւ փոյթ Ոյիլեանն, ըզկնի սուրհայր Ոդիսեւս քաջ
Հուպ առ հուպ, զոր օրինակ գեղեցկագօտի կնոջ կրծից
Առընթեր յոյժ բէհզին կայ, զոր հրմտաբար ձըգէ ձեռօքն
Յարկանել թելոյն յառէջս, եւ մօտ առ լանջըս իւր ունի.
Այնպէս մերձ եւ Ոդիսեւս սրրթայր անդէն, եւ 'ի թիկանց
Հարկանէր զհետսն ոտիւք՝ մինչ չեւ փոշւոյն հասեալ 'ի շուրջ.
Եւ 'ի գլուխ նորին ըզշունչն հեղոյր դիւցազնըն Ոդիսեւս
Անդլակի թեթեւ թռուցեալ. գունդն աքայեան աղաղակէր
Առ տըռփօղն յաղթանակի եւ խրախուսէր ըզփութացօղն։
Այլ մօտ յեւս ընթացիցն եկեալ՝ անդէն անդ Ոդիսեւս
Առ մեղուակն Աթենաս աղաղակեցաւ յիւրում սրրտին.
Լուր, դիցանոյշ, եւ օգնական ոտից իմոց հաս բարերար։
Զայս ասաց աղօթելով, եւ Աթենաս լուաւ Պալլաս,
Եւ զանդամսն եդ փոքրոգիս, զոտս եւ ըզձեռսն իւր 'ի վերուստ։
Իսկ մինչ կային առաջի սլանալ թըռչել 'ի մրցանակն,
Անդ Էաս ըղպըրծեցաւ յընթացս՝ հարեալ յԱթենասայ,
Ուրանօր մեծապոռոչ զենեալ եզանց հեղեալ կայր կու՝
Զորս 'ի վերայ Պատրոկլի վարեաց 'ի սպանդ ժիրն Աքիլլէս,
Եւ յապաւառ արջառոյ լըցաւ բերան նորա եւ ունչք։
Իսկ դիւցազն Ոդիսեւս համբերատար՝ անճապարեալ
Բարձ առաւ ըզթակոյկն, եւ պերճն Էաս առ ըզպաճառն,
Եւ կալեալ զեղջերէ վայրի եզինն՝ եկաց կանգուն,
Եւ զքակորըն թըքթըքեալ՝ բարբառեցաւ յարգիւացիս.
Ո՛վ աղէտ, ո՛ն եւ ո՛ն հարուածեաց զոտս աստուածուհին՝
Որ վաղուց մայրօրէն Ոդիսեայ մերձ կայ ձեռնտու։
Զայս ասաց. բոլորեքեան զնովաւ քաղցրիկ ծիծաղեցան։
Իսկ Անտիլոք ըզյետինն առեալ առաւ իւր մրցանակ
Ծըպտելով, եւ 'ի մէջ արգիւացւոց զայս ասաց բան.
Ասացից, բարեկամք, ամենեցուն ձեզ գիտակաց,
Զի արդ ահա եւ անմահք պատուեն զծերսըն հինաւուրց.
Զի Էաս գոյզն ինչ յինէն երիցագոյն է հասակաւ,

Ցակն 'ի բարձունս ընդ ամպովք արկեալ զպողպատեղէն զաղաւնեակ՝
Մինչդեռ ճախր առեալ շրջէր, խոցեաց 'ներքոյ թևոյն ընդ մէջ.
Թռիչ անց փըրքինն՝, իջեալ զատիւք Մերիոնի հարաւ յերկիր,
Իսկ հաւքին 'ի կայմ նըստեալ կապուտապարանոցն լաստանաւայինն՝
Կախեաց զուլն, եւ թըռչարանքն անկան ընդ նոյն թաւափետուրք.
Եւ թևթև յանդգամոյ՝ թըռեաւ հոգին, իսկ ինքն անկաւ
Բացագոյն 'ի տեղւոջէն. հայէր ամբոխն եւ զարմանայր:
Մերիոն ըզփայտատասըն տասնեակն առեալ եբարձ,
Եւ զկացինսն Տեւկրոս տարաւ 'ի նաւս իւր գոգաւորս:
Այլ սակայն Պելեածնին գեղարդըն մի՛ երկայնաստուեր
Եւ սան մ՚ 'ի հուր դեռ անփորձ՝ ծաղկազարդեալ, եդին արժէք,
Բերեալ եդ անդ յատենին, եւ այրք տիգողք յարեան կացին.
Յարեաւ Ատրիդէս Ագամեմնոն իշխանապետ,
Յարեաւ եւ Մերիոն ժիր արբանեակն Իդոմենի:
Իսկ քաջազն Աքիլլեւս գեղեցկագին ասէ 'ի մէջ նոցա.
Ատրիդէս, քանզի գիտեմք քանի զօրես զամենեսեան
Եւ քանիօն յուժգնութիւն եւ յարդենընկէց ես վեհագոյն,
Առեալ քո զմըրցանակըս զայս կալեալ՝ չո՛գ 'ի խոր նաւս,
Իսկ զաշտէն՝ գեղարդանըն մատուսցուք Մերիոնեայ,
Թէ կամիս եւ դու սըրտի մըտօք հաւան. ինձ հաճոյ է:
Զայս ասաց, չըմբռնեցաւ արանց արքայն Ագամեմնոն:
Մերիոնի ետ նա զըմբկուճոյըն պղնձագէն, եւ նոյն՝ գեղեցկագին
Ի նաւկրակն աւանդէր Տաղթիբիոս զշքեղագոյն պարգևեալն:

# ՆԱԽԱԴՐՈՒԹԻՒՆ

Ոչ դադարէ Աքիլլէս 'ի թշնամանելոյ զմարմին Հեկտորի, ընդ որ դժկամակ լեալ դից, տայցէ Թետիս յԱրամազդայ պատգամ առ նա՝ տալ զնա ընդ փրկանաց հօր իւրում. Հրաման տայցէ եւ առ Պրիամոս՝ երթալ տանել փրկանս առ Աքիլլէս եւ փրկել զնա. եւ նա յօժարութեամբ կազմեալ բազում պարգեւօք՝ ելանէ ընդ քաղաքն: Հերմէս հրամանաւ Արամազդայ 'ի կերպարանս ազնիւ պատանեկի ընդ առաջ ելանէ նմա, եւ առաջնորդեալ տանի մինչեւ 'ի խորանն Աքիլլեայ. բանք նոցա ընդ միմեանս: Շնորհէ ծերոյն մարմին որդւոյն, զոր առեալ դառնայ ընդ արշալուսն 'ի քաղաքն՝ նորին Հերմեայ առաջնորդութեամբ. Սուգ եւ ողբք բոլոր քաղաքին. եւ ապա յապարանսն արքունի՝ աշխարանք Անդրոմաքեայ, Հեկաբեայ եւ Հեղինեայ ընդ ձայնարկու կանանց. Թաղումն Հեկտորի:

# ՀՈՄԵՐԻ

# ԻԼԻԱԿԱՆ

## ԵՐԳ ՔՍԱՆ ԵՒ ՉՈՐՐՈՐԴ

### ՓՐԿԱՆՔ ՀԵԿՏՈՐԻ

Երախանքն լուծաւ, ցրուեցան այր իւրաքանչիւր
Ի նաւսն երթեալ երագունս, եւ ամենքն ընթրեաց ըմպաս
Եւ անուշ քնոյ յագելոյ . իսկ Աքիլլէս զողբս հարկանէր
Յուշ զընկերին ածեալ սիրուն, եւ ոչ նիրհումն ամենագրաւ
Նըւաճէր զնմին, այլ դառնայր եւ կողմանէ շըրջէր 'ի կողմ
Առ գութ սիրոյ մանկութեան եւ արութեան Պատրոկլոսի :
Եւ որչափ ինչ միաբանամբ տարաւ ընդ իւր եւ ժուժկալեաց
Մարտից արանց եւ ցաւոց՝ ընդ խռով ալեաց անցեալ ընդ փորձ ,
Զայն ուշ 'ի կուրծս արարեալ՝ հեղոյր արտասուր յորդամղարակ .
Էր զի անկեալ ընդ կողաց, էր զի յորսայս, էր 'ի բերանս ,
Յարուցեալ ապա 'նդ ծովափն 'ի ձեմ զընայր յոգնադառնաւր :
Չվրիպէր 'ի նմանէն այգուն ծագումն ընդ ծով՝ ծովեզր :
Այլ 'ի կառսն լըծեալ զերիվարսն երագաթռիչ՝
Եւ զՀեկտոր յետկուստ կապեալ զուգէցն առ 'ի քարշել,
Եւ երիցս ըզՄենիտեան մահացելոյն ձըգեալ շիրմաւ ,
Դառնայր հանգչէր 'ի վրանսն, արկեալ ընդ հող զայն 'ի յերեսս :
Իսկ բերեալ Ապողոնի գութ եւ ընդ առնըն մեռելոյ ,
Ի մարմնոյն հերքէր զարատ՝ պատեալ ոսկւոյն յասպարն ոսկի ,
Զի մի 'նդ քարշ ածելն ըզնա՝ կեղեքեսցէ ծըւէնս 'ի ծուէնս :
Այսպէս սա սըրտմըտեալ՝ Թըշնամանէր զդիւցազն Հեկտոր :
Բայց հայեցեալ ընդ նա դիքն ողորմէին երանաւէտք ,
Զքաջադէտն Արգոսասպան յորդորէին գողանալ գաղտ ,
Որ այլոց ամենեցուն հաճոյ էղեւ, բայց ոչ Հերայ ,
Եւ ոչ Պոսիդոնի եւ ոչ խաժակն օրիորդին .

Այլ կային որպէս նախուստ յատել ըզսուրբըն զԻլիոն,
ԸզՊրիամ եւ զժողովուրդն առ 'ի մեղաւուքն Ալէքսանդրի,
Որ երգեծ զաստուածուհիսդ յորժամ եկին յիւր հանդըրուանս,
Եւ պատուեաց զայն որ մատոյց նըմա զգըժնէ հեշտ ցանկութիւն։
Այլ 'ի ծագել յայնմհետէ երկոտասան առաւօտուն,
Գուշակին յայնժամ Ապոլոն բարբառեցաւ 'ի դիցն ակումբ.
Անգութ էք, դիք, մնասակարք. ո՞չ ապաքէն երբեմն Հեկտոր
Ձեզ զանդեայց եւ զընտիր ընտիր այծից եկեզ ըզթամբս.
Իսկ դուք այժմ, եւ յետ մահուն, չհանդուրժեցէք թափել ըզնա,
Զի տեսցեն ամուսինն ըզնա եւ մայր իւր եւ որդեակ,
Եւ հայրըն Պրիամոս եւ ժողովուրդք, եւ այրեսցեն
Փութապէս ըզնա 'ի հուր, եւ տրասցեն յուղարկութիւն։
Այլ վիրաւորին Աքիլլեայ կամիք շընորհս առնել, աստուածք,
Որում ոչ միտք են ուղիղ, ոչ սիրտ 'ի լանջս ողորմելի,
Այլ հանդոյն ինն առիւծու խըժդըժականս ուսեալ գիտէ,
Որ մեծաւ մըղեալ ուժով եւ վիսական սըրամըտութեամբ՝
Ի մարդկան խաշն ընթանայ յափըշտակել իւր կերակուր,
Նոյն Աքիլլեւս կորոյս զողորմ, եւ պատկառումն ինչ չիք 'ի նմա,
Որ թէպէտ մեծապէս մնասէ մարդկան, թէպէտ օգնէ։
Ապաքէն եւ զառաւել ոք սիրելին կորոյս ուրեք,
Զեղբայր հարազատ ըզհամամայր եւ կամ զորդեակ,
Աշխարէ եւ կականի, այլ հուսկ ուրեմըն դադարէ.
Զի տոկունս եդին 'ի մարդիկ Հրամանք հոգի համբերատար։
Սակայն դա՝ զդիւցազն Հեկտոր, ըզքարշր արեան յաչացն հատեալ.
Ըզկառաց կապեալ ձըգէ զշիրմաւ սիրուն ընկերակցին։
Իսկ այդ ոչ թէ վայելուչ ինչ է նըմին եւ ոչ յօգուտ.
Գուցէ ակն ինչ քաջութեան իւրում չառեալ՝ զչարիցեմք մեք,
Քանզի զհողն անըզգայութն թըշնամանէ մոլեգնաբար։
Ի ցասումն ընդ նա բըրդեալ լուսածըզին ասէ Հերա.
Ճըշմարտեալ եւ այդ քո բան, Արծաթաղեղն, եթէ 'ի գլուխ,
Թէ զՀեկտոր զուգապատիւ ընդ Աքիլլի համարիցիք։
Այլ Հեկտոր մահկանացու, եւ ըզկըծով դիեալ ըստինս.
Իսկ Աքիլլեւս է զաւակ աստուածուհւոյ զոր իմ ինքնին
Ի սնուցեալ եւ դայեկեալ եւ տըւեալ առն յամուսնութիւն,
Պելէւսի՝ որ քան ըզքնաւս սըրտահաճոյ գտաւ անմահից.
Եւ դուք դիք ամենեքին 'ի հարսանիսն եղէք հաղորդ,
Դու իսկ փանդռամբդ 'ի ճաշն էիր, զովք չարաց՝ մի՛շտ ուխտադրուժ։
Առ նա պատասխանի ամպրոպայինն ետ Արամազդ.
Հերա, մի՛ դըժոխել ամենեւին ընդ աստուածոց,
Զի ոչ նոյն եղիցի դոցին պատիւ, բայց եւ Հեկտոր
Սիրելի յոյժ աստուածոց յԻլիոնականն էր մարդկանէ,
Որպէս եւ ինձ, զի երբեք զհաճոյ ձօնիս չառնէր ապախտ,

Ոչ արդար դահամունք պահպանէին ընաւ յիմ բազկինս ,
Ոչ նուէրք եւ ոչ ձենձերք . որ այդ է մեր բաժին պատուոյ :
Բայց 'ի բաց թողցուք բառնալ գաղտագողի զքաջին Հեկտոր ,
Զի եւ չէք հընար թաքչել յԱքիլլէսէ , առ որում կայ
Ցանկարգեալ միշտ պահապան մայր իւր ըզտիւ եւ ըզգիշեր :
Այլ թէ ոք յաստուածոց երթեալ ձայնէ զԹետիս առ իս ,
Տաց խորհուրդ մի հանճարեղ՝ որով ինքնին իսկ Աքիլլեւս
Ընկալեալ 'ի Պրիամէ փրկանս՝ անդրէն տացէ զՀեկտոր :
Զայս ասաց , եւ մըրրկոտն յարեաւ Իրիս տանել պատգամ ,
Եւ ընդ մէջ Սամոսի եւ Իմբրոսի առապարին
Ոստեաւ 'ի ծով թըխատեսիլ , եւ հեծեցին ջըրոցն անդունդք :
Նա մըխիրճ հարեալ սուզաւ խորս 'ի խորոց իբրեւ զկապարն
Որ 'ի ծայր վայրագաստուն եզին եղջեր ըստորեջեալ
Հասանէ մահաբեր հըմակերացըն ձըկնակաց :
Եւ 'ի գոգ քարանձաւին գիտ ըզԹետիս այլովքն հանդերձ
Որ ակումբ զնորեւ առեալ կային ծովուցն աստուածուհիք .
Ինքն 'ի խումբ պարու նոցին լայր զանըստգիւտ որդւոյն օրհաս
Որում հեռի յիւր աշխարհէն մահ յարգաւանդ մընայր Տրոյա :
Մատուցեալ երագոտն Իրիս առ նա բարբառեցաւ .
Արի , Թետիս . կոչէ անեղծ խորհրդագէտն Արամազդ :
Եւ Թետիս արծաթթաթիկ աստուածուհին պատասխանի .
Իսկ զի՞ առ իս մեծն աստուած յղէ հրաման . ես պատկառեմ
Յաստուածս անդըր խառնել , զի ցաւք անթիւ են 'ի սըրտիս :
Այլ երթայց , ոչ 'ի դերեւ ինչ զոր տայցէն լիցի պատգամ :
Զայս ասացեալ մեծաշուքն յաստուածուհիս արկաւ ըզքօղն
Ըզթուխ՝ քան զոր եւ չէր ինչ սըխրերանգ արկանելի :
ԵԼ գընալ , եւ մըրրկոտն երագ Իրիս կարապետէր ,
Եւ հերձեալ ըզնոքօք սահեալ զծայրին ալիք ծովուն :
Եւ ելեալ 'ի ծովեզրըն սըլացան 'ի վեր յերկինս ,
Եւ գըտին ըզԶըրուանեանն ահեղագոչ եւ զայլս համուռ
Զի զնովաւ կային բազմեալ երջանկաւէտ աստուածքըն յաւէժք .
Ինքն առ հօրն Արամազդայ նըստաւ , տեղի ետ Աթենաս ,
Իսկ Հերա զըրուագն ոսկի գեղգեղափայլ տուեալ 'ի ձեռան՝
Եւ բանիւք անէր ուրախ . Թետիս էարբ եւ ետ անդրէն :
Աստուածոց հայրըն եւ մարդկան առ նոսա սկիզբըն արար խօսից .
ՅՈ՛լիմպոս , աստուածուհիդ եկիր Թետիս , թէպէտ տըրտում ,
Եւ սուգ 'ի սըրտդ անմոռաց՝ զոր ես ինձէն իսկ գիտացի .
Այլ եւ այնպէս մերկացայց՝ յոր պէտս ըզքեզ կոչեցի այսր :
Այս աւուրք ինն են զի կռիւ բանամարտ յանմահս յարեաւ
ԶՀեկտորի գիականէն եւ զշինաւերն Աքիլլէսէ .
Գողանալ յորդորէին ըզքաջագէտն Արգոսասպան ,
Սակայն ես Աքիլլի նօթձեմ զայս փառս եւ ըզպատիւ՝

Զմեծարանս քո եւ ըղձեր պահպանելով մինչեւ յառաջս։
Փութա երթ 'ի բանակն եւ տուր պատուէր քում զաւակիդ.
Պատմեա զցասումն ցասուցեալս, եւ սրտամբեկեալ զիս մանաւանդ
Ցամենայնից բոլորեցունց, զի զայրագին հոգւով մոլեալ
Առ կորզնակոր նաւակօքն ունի զՀեկտոր, եւ ոչ դարձոյց.
Թէ երկիւղած իւիք է յինէն՝ թող տայ զՀեկտոր ընդ փրկանաց։
Սակայն ես առ մեծանձնեն Պրիամոս յղեցից զԻրիս,
Ցաքայեանց երթալ 'ի նաւս եւ փրկել զիւր սիրուն որդեակն,
Եւ ընծայս հաճոյարարս տարեալ տանել առ Աքիլլէս։
Զայս ասաց, լուաւ Թետիս արծաթաթաթիկն դիցանոյշ,
Եւ յարեաւ սլացաւ էջ յՈւղիմպականն 'ի գագաթանց.
Եւ հասեալ 'ի խորանս որդւոյն իւրոյ՝ եգիտ ըզնա
Զի հառ կոլեալ հեծեծէր, եւ սիրասուն ընկերք զիւրեւ
Ժիրաժիր խընամ տարեալ պատրաստէին նըմին ըզճաշն,
Եւ ոչխար մեծ գեղմնաւոր զենեալ 'ի վրանս նոցա կայր։
Մատեաւ մայրըն մեծարոյ եւ անդ նըստաւ իւր առընթեր,
Եւ ձեռամբըն փայփայեալ ըզնա՝ ձայնեաց եւ խօսեցաւ.
Ցե՞րբ, որդեակ իմ, 'ի սուգ եւ տրտմութեան ընկըղմեալ խոր՝
Ըզսիրտ քո հաշեսցես, ոչ կերակուր բերեալ 'ի յուշ,
Ոչ անկողինս. այլ բարւոք է՝ 'նդ կնոջ սիրով ամուսնանալ.
Քանզի ոչ յերկարակեաց իւիք լիցիս ինձ, այլ ահա կայ
Մօտալուտ զօրեղըդ քեզ մահ եւ Օրհասըն բռնաւոր։
Արդ փութով ունկն ինձ մատո. յԱրամազդայ գամ քեզ հրեշտակ.
Խոժոռեալ ըզդիսն ասէ, եւ առաւել զինքն ըզչարեալ
Ի համուրց ամենայնից, զի բարկասիրտ կատաղութեամբ
Առ մահկաձեւ նաւկներոյդ պահեալ զՀեկտոր՝ չետուր 'ի դարձ։
Այլ արդ օն արձակեսջիր եւ առ փրկանս ընդ դիականն։
Երագոտն Աքիլլէս պատասխանի տուեալ ասէ.
Այդպէս լիցի. որ զփրկանսըն մատուսցէ՝ տարցի եւ զդին,
Եթէ զայդ Ողիմպականն յօրդոր սըրտիւ տայ ինձ պատուէր։
Այսպէս սոքա 'ի նաւաց անդ հանդիսին մայր եւ որդի
Խօսս 'ի մէջ առնէին երագաթեւ բանիւք բազմօք։
Իսկ Զըրուանեանն յԻլիոն 'ի Նուիրական յարոյց զԻրիս.
Արի երթ, Իրիս երագ, թողեալ ըզգահգ Ողիմպական,
Տար պատգամ յԻլիոն առ մեծասիրտըն Պրիամոս,
Գրաւաթափ լինել սիրուն որդւոյն երթեալ յաքայեանց նաւս,
Եւ պատարագս Աքիլլեայ տանել սըրտին իւր ողոքիչս,
Առանձինն, եւ մի 'նդ իւր այլ ոք 'ի տրովեանց երթիցէ այր։
Նուիրակ ոք ծերագոյն ընդ իւր եկեսցէ վարել զջորիսն
Եւ ըզսայլն անուահոլով, տալ դարձեալ յաստանն անդրէն
Ըզմարմինն առնուլ տանել՝ զոր Աքիլլէս ըսպան դիւցազն։
Մի անկցի ամենեւին 'ի միտըս իւր մահ եւ մի ահ,

Թափել զորդւն սիրելի. եւ զորովալցեան առհասարակ
Արտաքսէր 'ի գաւթէն կըսկըծելի բանիւք սաստեալ.
Արքէք երթայք 'ի կորուստ, որհամարհանք, այպանալիցք.
Եւ ձեր տունք չիցե՞ն 'ի տան' զի յիս եկիք յորդել թախիծ.
Չէ՞ ձեզ շատ' զի Զբրոււանեանն Արամազդ զիս ցաւովք եհար,
Զի կորուսի զորդիս քաջ. այլ խելամուտ լիցիք եւ դուք,
Զի լինիք այսուհետեւ աքայեցւոց յոյժ դիւրածախ
Ցեա Նորա վախճանելոյն. բայց սակայն իմ մինչ չեւ եղեալ
Քանդելոյ քաղաքիս եւ սասանման ականատես,
Գնացեալ երթանայցեմ 'ի տուն դժոխոց Սանդարամետին:
Ասաց, եւ մականաւն խոլէր զարսն որ տագնապեալ
Ի ծերոյն ելանէին. իսկ նա յորդիսն կարկաչէր,
Նախատեալ ըզՀելենոս, զՊարիս եւ զվեհըն զԱգաթոն,
ԸզՊամմոն, զԱնտիփոնոս եւ զՊոլիտէս քաջամարտիկ,
ԶԴէիփոբ, զՀիպպոթոոս եւ ըզԴիոս զարմանալին:
Իննեցունց սոցա հրամայեաց այր ալեւորըն մեծաձայն.
Ճեպեցարուք, զաւակք չարք եւ ամօթոյք. ո՜չ թէ բոլոր
Հեկտորի դուք փոխանակ սատակեցիք զերագ նաւուքն:
Ինձ եղո՜ւկ չուառականիս, զի ծնայ մանկտի քաջակորով
Աստ 'ի Տրոյա լայնանիստ, յորոց չասեմ պահեալ միացորդ.
ԸզՄեստոր դիցանման եւ զՏրոյիլոս կառամարտիկն,
ԸզՀեկտոր' որ էր աստուած 'ի մէջ արանց, եւ չէր նըման
Զաւակի մահկանացուի առն երեւեալ, այլ աստուածոյ.
Ըզսոսա կորոյս Արէս, եւ համօրէն թողան զըսրամք,
Ստախօսք, կաքաւիչք, 'ի պարանցիկըս հըմտաճարտք,
Գառանց եւ ուլուց ժողովըրդեանն յափըշտակիչք:
Չե՞ւ կցէք տակաւին փութով ըզսայլըն ինձ պատրաստեալ
Եւ բարձեալ զայս ամենայն, որպէս յուղի անկանիցիմք:
Զայս ասաց, եւ նոցա զահի հարեալ 'ի հօր սաստից
Հանին 'ի դուրս ըզյաղթանակն անուաշըրջիկ եւ ջորեկիր,
Գեղեցիկ եւ նորակերտ, եւ կապեցին 'ի նմա զարապան.
Իջուցին եւ 'ի ցըցէն ըզջորեմուտ սամեացն ըզլուծ
Տօսախի, կըմբաւոր եւ յեռիւրեալ օղալամբօք:
Ընդ լծոյն եւ ըզփոկն առեալ բերին զինըննկանգնեան.
Ագուցին զլուծն 'ի քեղին գեղաշիտակ' յառաջսըն իւր,
Եւ 'ի սեպ անգըր քեղւոյն արկեալ յեռսն զօղամանեակն.
Եւ երից առաւ անաւ կաշկանդելով 'ի կուսմ պորտոյն'
Ապա պըրկեալ կարգ 'ի կարգ' ըզծայր փոկոյն ոլորեցին:
Եւ բերեալ 'ի գանձէն' դեղըն 'ի սայլըն 'ի սըրբատաշ
Զանբաւ եւ զանհամար ըզՀեկտորեան գըլխոյն փըրկանս:
Լըծեցին եւ ըզջորիս կարծրասըմբակըս սայլաձիգս,
Զորս երբեմըն Պրիամեայ Միսեանք ետուն շքեղ պարգեւ:

Եւ վարեաց ընդ անդաստանս եւ ընդ դաշտին արօտավայրս։
Յառաջոյ ձգէին ջորիք ըզսայլըն քառանիւ
Զորս Իդէոս վարէր հմտութեամբ, եւ երիվարքն յետոյ կուսէ
Զորըս ծերըն առաջնորդէր ձգէր ըստէպ մտրակ 'ի կուշտ
Հատանել զքաղաքամէջըն. այլ սիրելիքն ռահվարակ
Ողբագին զնորին ըղհետ՝ որպէս 'ի մահ ընթացելոյ։
Իսկ յորժամ ըստ առապարն եկին նոքա հասանել 'ի դաշտս,
ՅԻլիոն անդրէն նոքա դարձ արարին՝ որդիք եւ հօրք։
Սոքա չանցին զերեսաց ահեղագոչն Արամազդայ
Յերթալն ընդ դիւրն, եւ տեսեալ՝ յուղղեցան խնամքն ընդ ալեւորին,
Եւ խսկոյն ձայնեալ զորդին իւր սիրելի զհերմէս՝ ասէ.
Հերմէս, քանզի քեզ հաճոյագոյն է քան այլոց,
Լինել առն ընկերակից, եւ ում կամիս ես հեշտալուր,
Արի էջ, եւ զՊրիամոս յաքայեցւոց խոր նաւատորմ
Այնպէս ած, զի մի տեսցէ եւ մի ոք մի, եւ մի՛ 'մասցէ
Յայլոց դանայեցւոց մինչեւ հասցէ 'ի Պելէոսեանն։
Ասաց զայս, ոչ անսաստեաց Արգոսասպանն պատգամաւորն,
Եւ կապեաց անդէն 'զոտիւքըն ըղթեւաւորեալսն գեղեցիկս,
Ոսկեղէնս, անկապուտականս՝ որ զնա բարձէին թռուցանէին
Ընդ նոյն ասքը եւ ընդ անհուն երկիր՝ շնչոյ հողմոյն 'ի դէպ։
Էառ եւ զգաւազանն՝ իւ արկանէ յաչսըն թըմբիր
Արանց՝ յորոց կամի, եւ զայլս 'ի քնոյն զարթուցանէ.
Զայն 'ի ձեռն առեալ սլանայր հզօրազօրն Արգոսասպան։
Եւ եհաս վաղվաղակի յԵլլեսպոնտոս եւ 'ի Տրոյա։
Խաղայր գընայր կերպացեալ 'ի պատանի թագաւորազն
Այն ինչ զեռ հուժկու յորբունս, որ քաղցրանայց են ատիք իւր։
Արդ նոքա իբրեւ վարեալ ըստ մեծն անցին Իլեայ շիրիմ,
Կացուցին ըղջորիսն եւ զերիվարս ըմպել 'ի գետն,
Զի անկեալ էր յերկիր եւ աղջամուղջ երեկոյին։
Այլ 'ի մօտաւոր հայեցեալ նուիրակին՝ եսես զՀերմէս,
Եւ ձայն 'ի Պրիամոս կոչս արարեալ բարբառեցաւ.
Տես քաջ, Դարդանեանդ. ուշիմ մըտաց հասանել կան իրք.
Այր տեսանեմ, եւ կարծեմ թէ զմեզ աստէն սատակեսցէ։
Այլ եկ ծն երիվարօքըս փախիցուք, կամ փարեսցուք
Ըղծընկամքըն աղերսահայց, զի ո՛ գիտէ դարձցի յողորմ։
Զայս ասաց, եւ միտք ծերոյն խռովեալ՝ եղեւ յոյժ սըրտաթափ,
Ի կարկամ անդամոցն իւր քըստմընեալն խըրձնայան հերք,
Պակուցեալ եկաց, այլ ինքըն Շահաւէտն հուպ մատուցեալ
Զձեռանէ ալեւորին կալեալ եհարց եւ խօսեցաւ.
Իսկ յո՞, հայր, այսպէս զյոմնակս եւ ըղջորիս վարեալ գընաս
Յանմահական գիշերի, մինչ այլք նընջեն մահկանացուք։
Եւ չերկեա՞ր ինչ դու բնաւ յահագնագոյն աքայեցւոց.

Որ ոխերիմ Թըշնամիք շուրջանակի զքեւ մածեալ կան.
Յորոց Թէ զքեզ ոք տեսցէ յերագասլաց սեաւ գիշերիս
Բարձեալ այդչափ կարասի, զի՞նչ լինիցին քո միտք յայնժամ.
Ոչ դու ինչ առոյգանձն ոք եւ ընկեր քո ծերունիդ,
Ի վանել ըզվրիժագործ ոք ձեռներէց եկեալ յեղեան:
Իսկ ես ոչ ինչ գործեցից քեզ չար, նա զայլս եւս հալածեալ
Մերժեցից 'ի քէն, զի հօրըս սիրելւոյ զքեզ նըմանեմ:
Եւ նըմա պատասխանի Պրիամոս ծերն աստուածանման.
Ցիրաւի, սիրուն որդեակ, այդպէս է այդ որպէս ասեդ.
Բայց եւ ինձ ոք յաստուածոց ունի դեռ զաջ իւր հովանի,
Որ այդպիսի ուղեկից ընդառաջել ինձ առաքեաց՝
Բարեներշան՝ իբրու զքեզդ ըղձանչելի յանձն եւ 'ի դէմ.
Իմաստուն ես եւ միտք եւ 'ի ծնողաց բարեփառից:
Եւ նըմա պատասխանի պատգամաւորն Արգոսասպան.
Եւ կարի քաջ, ծերունիդ, զայդ ամենայն արդար ասեր.
Այլ եկ ասա ինձ եւ զայս, եւ պատմեսջիր ճըշմարտութեամբ.
Միթէ զա՞նձըս բազում եւ պատուականս յղես ուրեք
Առ արս օտարազգիս, զի գէթ դոքին մնասցեն քեզ ողջ.
Կամ Թէ ամենեքդ ահաբեկ լըքեա՞լ Թողուք զԻլիոս սուրբ,
Զի այր քաջ այնպիսի կորեաւ դըմաց՝ քոյին որդեակ,
Զի եւ 'ի վայր ինչ ոք չէր քան զաքայեանս 'ի պատերազմ:
Պրիամոս աստուածատիպ ծերն եւ նըմա պատասխանի.
Իսկ դու, քաջդ, ո՞վ իցես, եւ յորպիսի՞ ծնողաց սերեալ,
Որ զկորուստ հեզ որդեկիս գեղեցկապէս ածեր ինձ յուշ:
Պատասխանի եւ նըմա պատգամաբերն Արգոսասպան.
Փորձ առնուս զիմ, ալեւորդ, ըզքաջն Հեկտոր արկեալ 'ի հարց:
Իմ ըզնա բազում անգամ 'ի փառաշնորհ ասպարիսին
Է իմոյս աչօք տեսեալ, եւ 'ի նաւացն երթալ վերայ
Կոտորել զարգիւացիս 'ի սայրասուր մաշեալ պըղնձ.
Հիացեալ կայաք մեք. զի Աքիլլէւս ընդ Ատրիդէս
Ցոխըս մըտեալ՝ չըտայր Թոյլ շահատակել 'ի գուպարած:
Եւ նորին եմ պաշտօնեայ, նոյն եւ զիս ած նաւ բարեկերտ.
Ի նոցա Մըրմիդոնացն եմ, եւ ինձ հայր է Պոլիկտովր
Մեծատուն, իսկ այժմ յեցեալ յալեւորոյթ այդպէս ըստ քեզ:
Են նորա եւ վեց որդիք, եւ ես նըմին եմ եօԹներորդ.
Ընդ նոսին արկեալ վիճակ՝ ինձ եկն եհաս գալ այսր ըզհետ:
Այժմ 'ի նաւացն 'ի դաշտ ելի, զի եւ վաղիւ ընդ այգս այգուն
Ճակատեսցին զոստանիւդ 'ի մարտ խայտակն աքայեցիք.
Քանզի 'նդ նիստն են տաղտկացեալ՝ կապակոտորք 'ի պատերազմ,
Եւ ոչ զօրեն Թագաւորք աքայեցւոց սանձահարել:
Եւ նըմա պատասխանի՝ աստուածակերպ ծերըն Պրիամ.
Իսկ արդ ծառայ Թէ իցես Պելիածնին Աքիլլէսի,

Օ՛ն ուրեմն առնուլ պատանս ինձ զամենայն բաւականութիւն,
Թէ որդեակն իմ կայցէ առ նաւսն արգելօք, թէ Աքիլլէս
Ըզնա յօշ յօշ կոտորեալ ընկէց խուրձըն շանց 'ի գէշ:
Եւ նըմա պատուիրակն Արգոսասպան պատասխանի·
Ոչ կերան, ով ծերունիդ, դեռ եւս ըզնա շունք եւ ոչ հաւք,
Այլ անկեալ նոյնպէս դընի առ Աքիլլեայ նաւն 'ի խորանսն,
Եւ ահա երկոտասան օր է նըմա զի անկեալ կայ,
Ոչ մարմին նորա ժողէի, եւ ոչ որդունք զնեղն հարկանեն,
Որ սովորն են զարս ուտել ըզխողխողեալսըն յԱրէսէ:
Արդարեւ ըզդամբանաւ սիրեցելոյ իւր ընկերին
Անողորմ ածէ զնա 'նդ քարշ՝ յառաւօտեղէն լուսոյն ծագել,
Սակայն ոչ աղականէ· եկեալ քեզէն իսկ զարմասջիր
Զիարդ առոյգ փափկամորթ դընի լուացեալ յապաժուժէն,
Եւ ոչ իւիք ինչ աղտեղեալ· կցեալ եւ վէրքըն բոլորովին,
Որչափ ինչ խոցեցաւ, զի շատք ըզդէնսն հարին 'ի նա:
Այսպէս դիքն երջանկաւէտք հոգ խնամոյ տանին որդւոյդ
Եւս եւ յետ մահուն իւրոյ, զի սիրելի սրտալիցն է յոյժ:
Զայս ասաց, եւ ցընծացեալ պատասխանի ետ ալեւորն·
Ո՛վ որդեակ, անշուշտ բարի է անմահից նուիրել ձօնս·
Զի եւ ոչ ուրեք երբեք՝ մինչ 'ի միջի էր որդին իմ՝
Մոռացօնս արար ըզդիս, որոց կայեանք են յՈլիմպոս,
Յիշեցին զնեղն յայն աղագս եւ 'ի մահու ճակատագրին:
Այլ արդ էկ ընկալ յինէն զգեղեցկագործ բաժակըս զայս,
Պահեա զանձն իմ եւ տարեալ առաջնորդեա ինձ աստուածովքն,
Ի խորան Պելիաածնին մինչեւ երթեալ եղէց ժաման:
Եւ նըմա պատուիրակն Արգոսասպան պատասխանի·
Ըզպատանիս փորձես, ծեր· այլ 'ի բանի չհաւանեցես զիս,
Որ զպարգեւսըդ ընդունել գաղտ յԱքիլլեայ զիս ըստիպես:
Երկընչիմ ես 'ի նմանէն, եւ զնա զըրկել սիրտս յոյժ զըգուշայ,
Գուցէ չար ինչ յիմ գլուխ յառաջիկայդ եղանիցէ:
Բայց ես քեզ առաջնորդ մինչեւ 'ի մեծն Արգոս գնայի
Մըտադիւր 'ի նաւ երագ կամ հետիոտս ուղեկցելով·
Եւ ոչ ընդ քեզ՝ զառաջնորդդ անգոսնելով՝ մարտընչէր ոք:
Ասաց եւ հեծաւ 'ի կառսն եւ յերիվարսըն Շահապետն,
Եւ անդէն զերասանակսն եւ ըզմըտրակն 'ի ձեռս առեալ
Զօրութիւն եռանդնալից շընչեաց 'ի ձիսն եւ 'ի ջորիս:
Մինչ 'ի մարտկոցըս նաւացն եւ 'ի փոսէն հասին պարկէն,
Դեռ եւս անդ ըզբաղեալ կային զընթրեօք պահապանք·
Եարկ քուն զամենեքումբք պատգամաւորն Արգոսասպան,
Եբաց փութանակի զդուրսն եւ պարզեաց ըզփականս,
Եւ եմոյծ ըզՊրիամոս եւ զորս 'ի սայլըն ընծայք շքեղ:
Իսկ 'ի վրանն երբեւ հասին Պելիաածնին 'ի բարձրաշուք՝

Զոր կանգնեալ եւ կառուցեալ Միրմիդոնացւոց էր արքային,
Տաշեալ զեղեւնափայտս, եւ 'ի վերուստ յարկեալ ըզնա
Հարեալ ամնիս 'ի գալարեաց մարգագետնոց զորս հընձեցին.
Եւ անդաստակ չերադաւակ 'ի կուռ խաչից շուրջ ըզնովաւ
Կազմեցին արքային, եւ եղեւնեայ նիգ մի եւեթ
Գընդէր ըզդուրսն. երեք յայլոց աքայեցւոց փակէին զայն,
Եւ երեք բանային ըզմեծայաղթ դրանցըն աղխակ,
Իսկ ինքն Աքիլլէս եւ միայնակ զայն արկանէր.
Զոր եւ յայնժամ Հերմէս օգտամատոյց՝ բաց ծերոյն,
Եւ ըզպերճ ընծայսն եմոյծ երագոտին Պելիադնի,
Եւ իջեալ 'ի կառաց անտի յերկիր բարբառեցաւ.
Եւ, ով ծերունիդ, աստուած անմահ եկի Հերմէս,
Քանզի հայրըն առաքեաց զիս ուղեկից քեզ առաջնորդ.
Բայց արդ ես դառնացից 'ի բաց եւ ոչ մատեայց յաչս Աքիլլեայ,
Զի անպատեհ իսկ էլէ՝ յայտ յանդիման զայս օրինակ
Անմահի աստուածոյ 'նդ մահկանացուս սիրելութիւն.
Իսկ մըտեալ քո եւ գծընկաց Պելիադնին բուռըն հարեալ՝
Պաղատեսցիր յանուն հօր եւ մօր իւրոյ վարսագեղի
Եւ յանուն որդւոյն իւրոյ, զի շարժեսցես ըզսիրտ նորա.
Զայս խօսեալ՝ մեկնեցաւ գընաց Հերմէս բարձր յՈղիմպոս,
Եւ Պրիամոս 'ի կառաց անտի վաղեալ էջ 'ի գետին,
Թողեալ անդ զԻդէոս՝ որ կայր ունէր զձիսն եւ զջորիս.
Ծերն ուղիղ 'ի տունն եմուտ՝ ուր սիրելին Արամազդայ
Նըստեալ կայր Աքիլլէս, եւ անդ 'ի ներքս ըզնա եգիտ.
Նըստէին ընկերքն ուրոյն, իսկ առ նըմա երկուք եւեթ՝
Դիւցազն Աւտոմեդոն եւ Ալկիմոս ոստեան առ՝
Ի սպասու նըմա կային, որ այն ինչ էր զճաշն աւարտեալ
Ուտելոյ եւ յըմպելոյ, եւ դեռ սեղանն առաջի կայր.
Ծածկեցաւ 'ի նոցանէ Պրիամոս մեծն 'ի մըտանելն,
Եւ մատուցեալ բուռն եհար յԱքիլլի ծունկս, եւ համբուրեաց
Զահեղ ձեռսն արիւնահեղս, որդւոց իւրոց յոգունց դահիճս.
Որպէս ծանր եթէ զըմբող ըմբռնէ զայր՝ որ յիւր գաւառ
Ըսպանեալ զայր ոք՝ գաղտ գընայ յերկիր յայլ օտարադէմ
Ի տուն առըն ճոխի, եւ 'ի տեսողսն անկանի ահ,
Նոյն զարմացաւ Աքիլլէս 'ի Պրիամոս վեհին տեսիլ.
Հիացեալ կային եւ այլք, եւ ընդ միմեանս ակնարկէին.
Բայց առ նա Պրիամոս աղերսալից արձակեաց ձայն.
Յիշեսջիր ըզհայրըն քո, դիւցազնըմանդ Աքիլլէս,
Յայն հասակ՝ յորում եւ ես՝ առ դըժնեայ սեամս զառամութեան.
Եւ ըզնա գուցէ թերեւս որ ըզնովաւ շուրջ են՝ նեղեն,
Եւ ոչ ոք գըտանի զերծեան եւ զժանտըն փարատել,
Այլ սակայն՝ նորա գոնէ լըւեալ ըզքո կենդանութիւն՝

Մոլորի անպատիւ առ սատակածոց եւ մահացուաց ։
Այսպէս եռաւն դիք եւ Պելեայ շըքեղ պարգեւս 'ի ծնընդենէն՝
Զարդարեալ քան զամենայն մարդիկ փառօք եւ մեծութեամբ ,
Եւ տիրեաց Մերմիդոնաց ․ եւ անմահին մահկանացուին
Արարին զաստուածուհի ․ համայն եւ այնպէս եւ նմա
Հրամայեաց աստուած չարիս , զի զաւակաց նմա սերունդ
Ոչ եկաց 'ի տան իւրում՝ պայազատել զիշխանութիւնն ․
Այլ մի եւեթ որդի ծընաւ 'ի տարաժամ սահմանեալ մահ ։
Եւ ոչ զայնս իւր խնամեմ , զի յոյժ բացեայ յիմ աշխարհէն
Աստ նըստեալ կամ 'ի Տրոյա՝ քեզ եւ մանկանց քոց պատուհաս ։
Եւ ըզքեզ լըսեմք , ծեր , ընչաւէտ լեալ յառաջագոյն ,
Եւ զոր Լեսբոս 'ի վերոյ , Մակարայ գահն , յինքն ամփոփէ ,
Եւ զոր վերին Փռիւգիա եւ Հելլեսպոնտ անեզրական ,
Զքեզ ծերունիդ ճոխութեամբ նոցին որդւովք լեալ բարգաւաճ ։
Բայց 'ի քեզ յորմէհետէ զայս երկնաւորքն ածին հարուած ,
Զոստանիւ քով հանապազ պատերազմունք են եւ արիւնք ։
Ժոյժ կալջիր , եւ մի անդուլ ողբովք սըգար 'ի սըրտի քում ,
Քանզի ոչ ինչ շահեսցիս աշխարհելով զորդին քո քաջ ,
Եւ ոչ զինքն յարուսցես , նա եւ քեզ այլ ինչ հասցէ չար ։
Եւ նմա պատասխանի Պրիամոս ծերն աստուածանման ․
Մի յաթոռ զիս հրաւիրեր , դիւցազնածին , մինչդեռ Հեկտոր
Կայ 'ի վրանս անկեալ անթաղ , այլ դարձո յիս փութանակի ,
Զի տեսցեն աչք իմ 'ի նա , եւ դու զբազում փըրկանս ընկալ
Զոր բերեալ եմք առ քեզ ․ վայելեսցես դու 'ի նոսին
Եւ յերկիր հարց քոց հասցես , զի խնայեցեր յիս միանգամ
Կենդանի մընալ եւ զլոյս արեգականըն տեսանել ։
Հայեցեալ 'ի նա խեթիւ՝ ասէ քաջոտն Աքիլլես ․
Մի եւս , ծեր , գըրգռեր զիս ․ եւ ես ինքնին 'ի մտի ունիմ
Արձակել քեզ ըզՀեկտոր ․ մայրն իմ առ իս , որ զիսն երկնեաց ,
Դուստրն ծերոյն ծովայնոյ , յԱրամազդայ եկեր պատգամ ։
Խելամուտ եմ , Պրիամէ , եւ զքեզն , եւ չէ յինէն զանխուլ
Թէ 'ի դից ոք ըզքեզ յաքայեցւոցս ած յերագ նաւս ։
Զի չէշխեր ոք 'ի ճամբայս եւ քաջարոյգ մահկանացու
Մուտ առնել , զի եւ ոչ ըզպահապանօքս անցանէր ինչ ,
Եւ ոչ դիւրաւ ինչ մըղեալ բանայր ըզնիգըս դրանց մերոց ։
Վասն որոյ՝ մի եւս 'ի յոյզ ցաւոց ըզսիրտ իմ ամբոխեր ,
Գուցէ քեզ եւս , ալեւոր , լուծեալ զպատուէրն Արամազդայ ,
Ներեցից ոչ 'ի վրանիս , չառնեալ ինչ ակն ողոքողիդ ։
Զայս ասաց ․ եւ զարհուրեալ ծերոյն՝ հլու եղեւ բանին ։
Իսկ Պելեանն իբրեւ առիւծ վաղեաց 'ի դուրս , ոչ միայնիկ ,
Ընդ նմա եղանէին եւ երկոքին ըսպասաւորք ,
Դիւցազն Աւտոմեդոն եւ Ալկիմոս , զորս յոյժ պատուէր

Աքիլլեւս քան զայլ ընկերս յետ Պատրոկլի մեռանելոյ ։
Ի լծոյն յայնժամ սոքա լուծին զձորիսն եւ զերիվարս ,
Եւ ածեալ տարան 'ի ներքս ընդ քաջաձայն քարոզ ծերոյն ,
Եւ յաթոռ նըստուցեալ՝ ելեալ հանին յողորկ սայլէն
Զհեկտորեան գըլխոյն անբաւ փըրկանս , երկուս թողեալ լոդիկս ,
Եւ շապիկ մի նըրբանիւթ ծածկոյթ դիոյն՝ տանել 'ի տուն ։
Եւ աղախնայս կոչեալ՝ պատուէր ետ լուանալ եւ օծանել
Առանձինն ուրեք՝ զի մի տեսցէ զորդին իւր Պրիամոս ,
Գուցէ առ ցաւուս սրտին չքերեալ զայրուցս յորդւոյն տեսիլ ,
Եւ յուզեալ անդ Աքիլլեայ սիրայլն սիրտ՝ զնա սպանեալ
Մեղիցէ 'ի հրաման պատուիրանին Արամազդայ ։
Արդ աղախնայց լուացեալ եւ օծանեալ զնա իւղով
Ըզշապիկն գեղեցիկ եւ զլոդիկն արկեալ զիւրեւ ,
Աքիլլեւս առեալ ինքնին տարեալ զնա եդ յանկողին ․
Ձեռն եւ ընկերքըն առեալ՝ բարձեալ եդին յողորկ յոլնակն ։
Ապա յոգւոց եհ՝ կարդաց յանուանէ զիւր սիրուն ընկեր ․
Ընդ իս մի , Պատրոկլէ , սրդողեսցիս՝ թէ լսիցես
Անդ 'ի տան Դըժոխոց՝ զի փըրկեցի զդիւցազն Հեկտոր
Հօր իւրում սիրելոյ , զի ոչ զըձուձ ինչ ետ փըրկանս ,
Ցորոց որչափ եւ արժանն իցէ հանից եւ քեզ բաժին ։
Ասաց դիւցազն Աքիլլեւս եւ 'ի խորանն անդրէն մըտեալ
Եւ նըստեալ 'ի նոյն բազմոց ճարտարարուեստ , ուստի յարեաւ ,
Ցորմայեցն 'ի հանդիպոյ , բարբառեցաւ առ Պրիամոս ․
Որդին քո , ծերունի , ահա փըրկեալ է՝ ըստ հրամանիդ ,
Եւ դընի յանկողինս , եւ յերեւել առաւօտուն
Տեսցես եւ դու եւ տարցես ․ մեզ արդ ընթրիք լինիցին յուշ ։
Զի ճաշոյ խորհամ կալաւ եւ Նիոբէ գեղաչագեղ ,
Եւ սակայն երկոտասան 'ի տան իւրում կորեան զաւակք ,
Վեցեքին դըստերք նորա եւ վեց ուստերք յարութեան տիս ․
Ըզուստս սպան Ապոլոն յարծաթաձոյլ աղեղանէն՝
Սըրտմըտեալ ընդ Նիոբէ , զայնս Արտեմիս նետաձըգուարձ ,
Զի կարծէր Լետովայ գեղեցկայաւն զանձն հաւասար ,
Նա երկուս , ասէր , ծընաւ , իմ յոգնաթիւ եղեն ծընունդք ․
Այլ նոքա , թէպէտ երկուք , բայց կորուսին զամենեսեան ։
Աւուրս ինն անկեալ դնէին յարեան իւրեանց , չէր որ թաղէր ․
Քանզի էր Զըրուանեանն ըզժողովուրդն յեղեալ 'ի վէմ ,
Եւ զնոսա 'ի տասն աւուրըն թաղեցին դիք երկնաւորք ։
Արդ եւ սա յարտասուացըն պարտասեալ՝ յիշեաց ըզճաշ ։
Իսկ այժմիկ 'ի ծերպս ուրեք յամայաբնակ լերանցամէջս ,
Ի Սիպիլ՝ ուր զօթեւանս աստուածուհեաց ասեն լինել՝
Ըզջարսանցն որ խաղային զԱքելոյեաւ պարաւորակք ,
Անդանօր , թէպէտ եւ վէմ , զաստուածատուք ճաշակէ ցաւս ։

Իսկ ըղձա՝ եւեթ անկեալ ընդ անկողինս 'ի յոյնականն.
Եւ անդէն ձիչ առեալ ընդ ամենայն գուժեալ ոստանն.
Ելէք ասէք, որովայնացիք եւ որովուհիք, ըղձեկտոր,
Թէ երբեք կենդանաւորեալն ընդ դարձեալումն 'ի ճակատէ
Հըրձուեցայք, զի քաղաքիս եւ ամբոխին ցընծումն էր մեծ:
Զայս ասաց, ոչ ոք մնաց 'ի քաղաքին, ոչ այր, ոչ կին,
Զի սուգ անտանելի զամենեսեան եհաս կալաւ,
Եւ առ դուրսըն կուտեցան առ որ ըղձլին ածեալ բերէր:
Փետեցան նախ ըղձոժաւ սիրելի կինն եւ արգոյ մայր
Յարձակեալք յանուահոլով սայլն եւ կալեալ ըղձլուխ նորա,
Եւ ժողով ամբոխին աշխար եդեալ շուրջ պար առնոյր:
Աներկմիտ զօրըն ցերեկ մինչեւ 'ի մուտս արեգական
Կոծէին ըղձեկտոր արտօսրագոչ առաջի դրանցն,
Եթէ չէր ձայն 'ի կառաց բարձեալ ծերոյն առ ժողովուրդն.
Ինձ տեղի տուք մըտանել դրաստուցս, ապա յետ այնորիկ
Յագեսջիք յողբ լալումեան յորժամ տարեալ հանից 'ի տուն:
Զայս ասաց, եւ նոքա մեկնեալ տեղի ետուն սայլին:
Իսկ ինքեանք իբրեւ ածեալ մուծին 'ի յարկսըն հոյակապ,
Ի դրօշածոյս եդին մահիճս, եւ կացուցին մերձ ձայնարկուս
Սկըզբնապար լալեաց՝ որ երգըս քըքուանաց ողբանըւագս
Հանեալ կոծ մեծ ջայլէին, եւ լանէին կանայք յոգւոց:
Լուսածըղին Անդրոմաքէ յողբումն ըսկըզբն արար նոցա
Զմարդասպանըշն Հեկտորի առեալ 'ի մէջ թաթիցն ըղձլուխ.
Ո՛հ այր, 'ի ծաղկընձեւդ հասակ կենացըդ զրաւեցար,
Զիս այրի թողեալ 'ի տան, եւ որդիս դեռ տըղայ մանուկ,
Զոր ծընաքըս դու եւ ես թըշուառականքս, եւ ոչ յուսամ
Թէ յաքրուհս հասանիցէ, զի նախ քաղաքըս սատակի.
Քանզի կորեար այցելուդ, որ եւ ըղձս պահպանէիր
Եւ զպարկեշտ ամուսինսն եւ զմանկըտեակ մատաղերամ:
Արդ նոքա վարեսցին ընդ հուպ գերի գոգեալ նաւուք,
Եւ ես անշուշտ ընդ նոսա, իսկ դու՝ զաւակ իմ՝ կամ ընդ իս
Եկեսցես անդր՝ ուր յանարժան տառապեսցիս երկոց երկուոն
Վաստակեալ առաջըն ժանտի, եւ կամ թէ ոք յաքայեցւոց
Բուռն 'ի քեզ հարեալ արկցէ յաշտարակէն, մահ դըժընդակ,
Առ քինալ, քանզի զեղբայր նորա սպանեալ է Հեկտորի,
Կամ ըղձհայրըն եւ կամ զորդին, զի յոյժ բազումք յաքայեցւոց
Ի բազկէն Հեկտորի զանեալք յատակ խածին կեռեօք.
Զի ոչ թէ մեղկ ինչ ոք էր 'ի կարեւոր մարտի՝ քո հայր,
Վասն որոյ՝ եւ ժողովուրդքըդ աշխարեն զինքն ընդ ոստանս:
Հասուցեր եւ ծընողաց քոց սուգ եւ կոծ անպատմելի,
Ա՛յ Հեկտոր, ինձ մանաւանդ զանձեալ պահին դառնաթոյն ցաւք.
Զի առ իս 'ի մեռանելդ ոչ կարկառեր ձեռս յանկողնոյդ,

Եւ ոչ բան մ՚ ինձ իմաստուն աւանդեցեր՝ զոր յիշեցեմ
Միշտ ըզցայգ եւ ըզցերեկ հանապազօր արտասուելոց:
Զայս ասաց լալագին, եւ կից կանանցն հեծէին յայլք.
Ընդ նոսին եւ Հեկաբէ աղի ողբոց ըսկիզբն արար.
Հեկտոր, իմում սրտիս քան զամենայն որդիս սիրուն.
Մինչ էիրդ ինձ կենդանի, ստուգիւ եւ դից սիրուն էիր,
Որ եղեն խնամոտք առ քեզ եւ 'ի մահու ճակատագրին:
Զի զայլս յորդւոցս 'ի վաճառ հանէր քաջոտնըն Աքիլլէս,
Զոր գամ մի ձերբակալն առնէր, յայնկոյս անդր ծովու՝
Ի Սամոս եւ յԻմբրոս եւ 'ի Լեմնոս անդր անմատոյց.
Իսկ ըզքեզ, երկայնաշեղբ յորժամ պղնձով կորզեաց զոգիդ,
Ած ընդ քարշ բազում անգամ ըզգամբարանաւ ընկերակցին,
Պատրոկլի՝ զոր սպաներ, այլ ոչ այնու յարոյց ըզնա:
Եւ զորդիս փափկամորթին մատաղածին դընես 'ի տանս
Հանգոյն այնմ զոր ըսպան արծաթաղեղնըն Ապողոն
Եկեալ հասեալ յանկարծաթափ նետիւք իւրովք աղուականօք:
Զայս ասաց գեր գործելով, եւ զարթոյց կոծ անզըսպառական.
Ի նոսին ապա երրորդ՝ ողբոց ըսկիզբն առ Հեղինէ.
Հեկտոր, 'ի տայգերացս իմոց սրտիս սերտ սիրելի.
Այր է իմ ապաքէն Աղեքսանդրոս աստուածագեղ
Որ առ ած զիս 'ի Տրոյա. յանկարծ յառաջ կորընչէի.
Զի ահա քսաներորդ է այս տարի այժմ աւասիկ
Ցորմէհետէ անջատեալ 'ի բնաշխարհէս եկի անդուստ,
Բայց երբէք ոչ լըւայ 'ի քէն բան խիստ եւ կամ ըստգիւտ.
Նա թէ եւ այլ ոք 'ի տայգերց, կամ զեղաշուք տալ ոք կամ ներ
Կամ սկեսուրս,— քանզի սկեսրայրս միշտ էր ըստ հօր ներողամիտ,—
Կըշտամբէր ինձ զիս 'ի տան, դու քաղցրութեամբ եւ հեզ բանիւք
Սանձէիր ըզնա խրատելով. վասն որոյ զքեզ, համայն եւ զիս
Արտասուեմ զթըշուառականս, հարեալ ցաւովք սիրտ կարեվէր.
Քանզի չէք 'ի Տրոյա լայնածաւալ այլ ոք ընդ իս
Մարդասէր եւ բարեկամ. ամենեքին քաղցնին յինէն:
Զայս ասաց ողբաձայնիւ, եւ զհետ քըքջուէր ամբոխ անբաւ:
Ալեւորըն Պրիամոս առ ժողովուրդն ասէ ապա.
Արդ ածէք, տրոյագացիք, փայտ 'ի քաղաքս, եւ մի խիթայք
Դաւ ինչ գաղտ յարդեացուց. զի յարձակեալն Աքիլլեայ զիս
Ի սեւաթոյր նաւէններոյն՝ այսպէս եդեւ զայս խոստովան,
Մի՛ խըւեալ ինչ մինչեւ յեւս երկոտասան Առաւօտուն:
Զայս ասաց, նոքա ջորիս ուեղինս 'ի սայլսըն լծեցին,
Եւ երթեալ յանդիման ոստանին գունդ եղեն ճեպով:
Զաւուրս ինն ածեալ սոցա դիզեալ անչափ փայտակոյտ,
Լուսաբեր մահկանացուաց մինչ տասներորդ ծագեցաւ Այգ,
Զարին յայնժամ ըզՀեկտոր բարձեալ հանին արտօսրաթաւալ,

| ԷՋ | ՏՈՂ | ՎՐԻՊԱԿՔ | ՈՒՂՂԵԼԻՔ |
| --- | --- | --- | --- |
| 69 | 35 | *խըղուըրմեան* | *խըղճուըրմեան* |
| 96 | 29 | *սկրունդ* | *սերունդ* |
| 211 | 32 | *Գոլիալեանէս* | *Գոլլիալիանէս* |
| 221 | 23 | *զպղըձասարմբակ* | *զպղընձասարմբակ* |
| 209 — 240 | | *Դէլփոայ, Դէլփոայոս, Տէլփոայ* | *Դէլփոք, Դէլփոքոս, Դէլփոք* |
| 240 | 11 | *Գոլիփեանէս* | *Գոլլիալիանէս* |
| 254 | 7 | *սըրմըռեալ* | *սըրամըռեալ* |
| 275 | 6 | *զՄենալիպպոս* | *զՄելանիպպոս* |

